Batsʻatrowtʻiwn

# ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆ

chʻapʻowtsʻ ew kshrhotsʻ

# ՉԱՓՈՒՑ ԵՒ ԿՇՌՈՑ

nakhneatsʻ

# ՆԱԽՆԵԱՑ

ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԵԱՄԲ

ԵՊԻՓԱՆՈՒ, ԽՈՐԵՆԱՑՒՈՅ ԵՒ ՇԻՐԱԿԱՑՒՈՅ.

Ի Հ. ՅԱՐՈՒԹԻՒՆ ՎԱՐԴԱՊԵՏԷ ԱՒԳԵՐԵԱՆ

Ի ՄԽԻԹԱՐԵԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԵՆԷ:

---

Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՎԱՆՍ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

1821

# ՅԱՌԱՋԱԲԱՆՈՒԹԻՒՆ

Զառանձին բացատրութիւն Զափուց և Կշռոց նախնեաց՝ ունելով մեր յառաջագոյն յօրինեալ 'ի պէտս Բանասիրաց, այժմ ինքնանուէր արդեամբք ազնուական Միլօրտի Սէնդ Էսէֆեան Lord St. Asaph Անգղիացւոյ, որում յայս նուագ վիճակեցաւ մեզ աւանդել զսկզբունս Տաճկական բարբառոյ, ընծայեմք 'ի լոյս՝ յօգուտ, ընդ նմին և 'ի խրախոյս մերոց Համազգեաց:

Հիմն և յորդոր այսր մերումս վաստակոց՝ եղեն համառօտ բանքն Զափուց և Կշռոց ընծայեալ յաղագի մերում Անանիայ Շիրակացւոյ առն Ուսումնականի: Զոր 'ի քննին առեալ մեր՝ գտաք մասամբ յեղցեալ 'ի բանս Մեծին Եպիփանու, և մասամբ մերումս Մովսիսի Խորենացւոյ: Վասն որոյ՝ մինչև էր մեր ձեռն արկեալ 'ի բացատրութիւն Զափուց և Կշռոց առհասարակ, կարևոր համարեցաք ճշգրտել նախ զբանս երեցունց Մատենագրացդ, և ապա նոցին օժանդակութեամբ մխել 'ի գործ: Այլ վասն այսր արժան է լսել զյետագայ ծանօթութիւնսդ՝ սկսեալ 'ի բանից մերոց առաջնորդաց, և զոգցես բևեռական աստեղաց յայս ծով նաւամազգեաց:

Սուրբն Եպիփան Կիպրացի 'ի Չորրորդ դարու, յաւարտ ճառին՝ զոր գրեաց յաղագս Թարգմանութեան Աստուածաշունչ գրոց, խօսի համառօտիւ և յաղագս Զափուց և Կշռոց՝ որ 'ի Սուրբ գիրս: Զայս հատուած բանի նորա թարգմանեալ մեր 'ի Յունականէ՝ դնեմք ընդ բնագրին 'ի նախադրութիս գործոյս, իբր մեկնաբանութիւն համառօտագոյն բանից Շիրակացւոյն: Թէպէտև ուրեք ուրեք առաւել մթութիւն տեսանի յԵպիփան քան 'ի Շիրակացին: Այն զի 'ի կշռաբանութեան անդ Եպիփանու միայն բառս Սիկղ ունի զվերնագիր, և այն ոչ ուղղութեամբ. զոր թէպէտև ուղղէ Պետաւիոս Յեսեան՝ թարգման և ծանօթարար գործոց Եպիփանու, բայց իրաւամբք կասկածի ընդ անհարազատութիւն վերնագրիդ: Դարձեալ 'ի կարգի անդ բանից Եպիփանու դնին նախ Զափք, և մինչև է աւարտեալ նոցա՝ ընդ մէջ մտանեն Կշիռք, և ապա վերստին սկսանի չափաբանութիւն: Այլ 'ի բանս Շիրակացւոյն չգտանեմք զայնպիսի կարգ շփոթեալ. բայց միայն համառօտ և ընտիր կարգաբանութիւն Կշռոց և Զափուց առանձինն՝ ընդ իւրաքանչիւր վերնագրովք:

Անանիա Վարդապետ Շիրակացի (որ և Շիրակունի կամ Շիրակունցի) Համարող առձայնեալ յԵօթներորդ դարու՝ 'ի սակս քաջավարժն լինելոյ յՈւսումնականութեան, բաց յայլոց աշխատասիրութեանց՝ գրեաց և յաղագս Զափուց և Կշռոց կարճ 'ի կարճոյ և հմտաբար, ըստ շաւղաց Մեծին Եպիփանու. որպէս և յաղագս Ասպարիսական Զափուց ըստ Մովսիսի Խորենացւոյ: Եւ զի աշխատասիրութիւն մեր 'ի բացատրութեան անդ Զափուց և Կշռոց՝

յայտնիկ տիրապէս բովանդակի, նմին իրի զՇիրակացին ունիմք մեզ առանձին իմն ուղեցոյց յընթացս գործոյս. մանաւանդ թէ զնորա բանս դիտեմք լուսաբանել ըստ կարի: Այլ թէ որպիսի ոք էր նա, և զինչ արդիւնք ուսումնասիրութեան նորա, արժան է լսել զվկայութիւն նորա զանձնէ՝ հանդերձ պանծալի վկայութեամբ Գրիգորի Մագիստրոսի զյոգնաբեղուն մատենէ նորա, զոր խնդրեաց 'ի Պետրոսէ Կաթողիկոսէ Գետադարձ անուանելոյ:

Բանք Շիրակացւոյն մակագրեալ 'ի գրչագիր օրինակս (1) Յաղագս որդիսոսնեան կենաց խորոց, են այսպիսի: ,,Ես Անանիա Շիրակունեցի՝ որ բաւանդակեցի զդպրութիւն մերոյ ազգիս Հայաստանեայց. և հմուտ եղեալ Աճաշունչ գրոց՝ օր ըստ օրէ լուսաւորէի զաչս մտաց իմոց ըստ բանի Սաղմոսերգողին. և յամենայնի լսէի զերանութիւն իմաստնոցն, և որք իմաստութեան են 'ի խնդիր. որպէս 'ի Սողոմոնէ հրամայեալ, թէ՝ Ստացիր զիմաստութիւն և զգիտութիւն: Եւ յաւել արդեւ զոգիտութիւն՝ իւաւար կոչելով ըղձնունդն: Դու զգիտութիւն մերժեցեր, մերժեցից և ես զքեզ: Եւ ես զարհուրեալ յայսմ սպառնալեաց. և երանութեան կամէի ժամանել, փափաքեցայ իմաստութեան: Եւ յոյժ կարօտեալ արուեստիս Համարողական՝ խորհեցայ, թէ ոչինչ յարմարի բան իմաստասիրութեան առանց թուոյ. կարծելով զսա մայր ամենայն իմաստից: Եւ 'ի Հայս ոչ գտի մարդ, որ գիտակ էր իմաստասիրութեան, և ոչ գիրք Արուեստից ուրեք գտի 'ի յաշխարհիս: Ապա դիմեցի յաշխարհն Յունաց, և հասի 'ի Թէոդուպոլիս. և գտի անդ այր մի փառաւոր՝ հմուտ գրոց Եկեղեցականաց. որ կոչէր Եղիազարոս անուն: Նա պատմեաց ինձ, թէ գոյ այր փառաւոր, և Համարող՝ յաշխարհին Չորրորդ Հայոց, Քրիստուր անուն նորա: Եւ չոգայ արարի առ նա աւուրս վեցամսեայ. և տեսի, զի ոչ ունէր զբաւանդակ արուեստն, այլ՝ սատի և անտի ծայրաքաղ: Եւ անտի գնացի 'ի Կոստանդնուպոլիս: Եւ պատահեցան ինձ 'ի ծանօթից իմոց՝ որք անդ էին, և ասացին ինձ. Ե՞ր յանձն առեր այնքան Ճանապարհ աշխատիլ. Տիւքիկոս Վարդապետն Բիւզանդիոյ հուպ է առ մեզ 'ի ծովեզերն Պոնտոսի՝ որ կոչի Տրապիզոն, լի իմաստութեամբ, և գիտակ Հայերէն դպրութեան... Զայս լուեալ՝ փառաւորեցի զԱճ, որ զփափաք ծառային իւրոյ լնու. որպէս և ասէ. Հայցեցէք, և գտջիք: Եւ երթեալ իմ՝ գտի զնա 'ի վկայարան սրբոյն Եւգինեայ. և պատմեցի զգնալն իմ առ նա: Եւ նա ընկալաւ զիս ուրախութեամբ, և ասէ. Գոհանամ զԱ՜Ճ՝ որ առաքեաց զքեզ խնդիր իմաստից, տանել զարուեստս զայս 'ի վիճակ սրբոյն Գրիգորի. և առաւել ուրախ եմ, զի յինէն աշակերտի աշխարհն այն. զի ես 'ի մանկութեան իմում շատ կացի 'ի Հայս, և օգտութիւն էր 'ի նմա: Եւ վարդապետն Տիւքիկոս՝ որ գնացի առ նա, սիրեաց զիս որպէս զորդի իւր. և պարապեաց 'ի յիս զամենայն խորհուրդս իւր: Եւ ետ ինձ Տէր շնորհս. և ուսայ զարուեստս լիով Համարողութեան, մինչ զի նախանձեալ ընդ իս աշակերտակցացն՝ որք 'ի դրանն Արքունի: Եւ կացի առ նմա զամս ութ. և ուսեալ՝ հմուտ եղէ գրոց

---

(1) Որք ոչ էին այնչափ ուղղագիր:

բազմաց, որք ոչ էին թարգմանեալ 'ի մեր լեզուս: Զի կայր առ նմա անչափ գրեան՝ Գաղտնիք, և Յայտնիք, և Արտաքինք, Արուեստականք, և Պատմագիրք, և Բժշկականք, և Ժամանակագիրք: Եւ թէ մի մի անուանիցեմ. քանզի չիք ինչ գիրք՝ որ առ նմա ոչ գտանէր: Եւ թարգմանութեան այսպիսի ունէր շնորհս 'ի Հոգւոյն սրբոյ. իբրև կամէր թարգմանել զՅունարէն գրեալսն 'ի Հայ, ոչ դեգերումն առնէր՝ որպէս զայլ թարգմանիչսն. հայերէն ընթեռնոյր լեզու՝ իբրև զՀայերէն գրեալս ... Եւ ես տրուպս 'ի Հայաստանեայց ուսայ 'ի նմանէ զհզօր Արուեստս զայս՝ որ թագաւորաց է ցանկալի, և բերի յաշխարհն մեր՝ առանց ուրուք ձեռնտու լինելով. միայն ջանիւ՝ օգնականութեամբն Այ, և աղօթիւք սուրբ Լուսաւորչին: Թէպէտև ոք ոչ եղև շնորհակալ իմոյ աշխատութեանս „. և այլն:

Իսկ բանք Գրիգորի Մագիստրոսի առ Պետրոս Կաթուղիկոս, են օրինակ զայս (1): „ Համարձակիմք միշտ, սովորեալ յառատաձիր պարգևս, զկարևորսն և զպիտանիացուսն յարտևական բաշխելով քեզ՝ որ ոչդ երբէք դանդաղիս, զգիրս Անանիայ Շիրակայնւոյ. որ բազում աշխատութեամբ և յածաչու խոնջմամբ հաւաքեալ 'ի զանազան և յօքնաբեղուն մատենից: Յորում և ենթակայացեալ են՝ ոչ միայն քառիցն արհեստք, այլ՝ բոլոր էակացն խոկմունս. որ են այժմ 'ի տան Տէրունեան. զոր նախ քան զքեզ՝ խրթնացեալ և թագի, ընդ գրուանաւ ծածկէին: Զոր և ինքն իսկ՝ որ մատենագրեաց զայդոսիկ, յառաջնում իւրոյ տրամաբանութեանն բազում տարակուսանս և կեղերջականս սակս մերոյ ազգին անփոյթ առնելոյ զայդպիսի գործառնութիւնս: Յորում մթերեալք են տոգորք ածային, և ենթակայացեալ ամենայն արհեստք մակացութեան: Եւ նախադասեալ է Թուականութեանն և Երաժշտականութեանն՝ որք են 'ի տարորոշ քանակէ տարակացեալք: Իսկ Երկրաչափութեանն և Աստեղաբաշխութեանն՝ որք են 'ի շարունակ քանակէ: Եւ զկնի այսոցիկ յարամանեալք Արհեստք, և Մակացութիւնք, Մատենադրութիւնք, և գրէ եթէ ամենայն բոլոր վարժումն Հռետորական: Թէպէտև մասնաւոր զփոշետեսական զօրէն գործասէր մեղուի ամբարեաց 'ի Մեղուանոցի այդր 'ի բազմավէպ մատենադրաց Քաղդէացւոց, և Յունաց, և ամենայն ազգաց՝ առ 'ի ծանօթ լինելոյ, որ նախ քան զայսոսիկ հաւաքեալն մատեանս, մակացու եղեալ Իմաստասիրութեան: Քանզի որք ոչ նախուստ կրթեալք են բոլորովին, ոչ դոյ հնար թևակոխել զայնպիսի Ածաբանութիւնս. քանզի պարտ է նախ 'ի Բնականէն յՈւսումնականն ամբառնալ, և անտուստ յԱծաբանականն: Քանզի որ այլազգ խորհեսցի, ըստ առացելումն՝ տրամախորհիլ 'ի վերայ Ողոմպիոսի դնել զՈսսոս, և յայնր յարաբարդել զտերևաշարժն Բիղոն. որպէս զի երկին ձեմարան լիցի նոցա: Քանզի յոյժ տարախորհիցն և անտիական մտածութեանցն է բաղձումն այս: Վասն որոյ և Պղատոն իսկ զգուշացուցանէ այսպէս յիւրումն Ածաբանութեանն. Անէրկէրաւտոտ ոտ մի նէրամփէոյէ: Զայսոսիկ ասելով զի մի ոք անկատար 'ի քառիցն ենթակայէ մացէ 'ի

(1) Սոյնպէս և սորա օրինակք սխալագիր էին բազմօք:

Լատրանն։ Քանզի բնաւորեալ էր հրաշալին այն՝ միայն Ածաբանու-
թեանն պարապել. և յայնոսիկ զկրթեալսն հաստատել։ Ըստ օրէն
Հիւսանց՝ որք արհեստին են մակացուք, ոչ նախուստ յանտառս
կամ 'ի մայրս ձեռպեն հատանել փայտս։ Քանզի այլ ոք են պարա-
պեալ այնոցիկ, և այլ ոք հարթեն և սղոցեն. և ապա ծայրագոյնքն
ճախարակօք, և այլովք գործարանօք գեղապանծ զնոսա յարգարեն՝
գահաւորակս, և աթոռս, և այլ ինչ գործարանս։ Այսպէս և որք
ոսկւոյն են պարապեալք, և երկաթոյ, և պղնձոյ։ Եւ արդ՝ քանզի
սակս Մատենին Անանիայի եղև յիշատակ իմաստասիրելոյս մեզ,
բեր՝ ոչինչ խրթին և անյայտաբար կամիմք զհայցուած մեր ծանու-
ցանել մերոյ Լուսաւորչիդ։ 'Ի բազմաց անփոյթ եղելոյ այսպիսի գոր-
ծառնութիւնք և հանդէսք՝ որ ոչ երբէք 'ի Սաադին վարժելոց Գրա-
մարտկոսաց և Քերթողաց հնացեալ, 'ի մոռացումն այսպիսւոյ Մա-
տենի ոչ միայն եղև անկանել, այլև բազմաց։ Որպէս 'ի մերոյն Մով-
սիսէ ուսեալ գտաք, և յայդմ Մատենի մակագրութեան վերծա-
նէաք։ Քանզի Արամեան սերի հպարտութիւն, և անսամոք բնու-
թիւն, և խստապարանոց բարս՝ ոչ սորակայի յայսոսիկ կրթու-
թիւնս յարատևական հաւանել։ Կամ եթէ ոչ փոյթ՝ որք պետակա-
նին հասին բաղդի, մեծարու լինել, և խուզել զկոհեմական ար-
հեստս 'ի զարդ Քարդոնոսական (1) ապարանին. որպէս մեծն Պտ-
ղոմէոն այն, և որք այլք այդպիսիք։ Եւ զի բազում աշխատու-
թեամբ խոնջեալ և տագնապեալ՝ մինչ տակաւին յիմունս անտխա-
կանն ելով տիս, հազիւ հազ մակացու այսմ եղեալ, սուղ ինչ էա-
կացն հասեալ՝ ըստ որում են յԱրաբացւոց, և Քաղդէացւոց, և
Յունաց, ոչ դանդաղեցայց քննութեամբ զփորձ առնուլ։ Եւ խնդ-
րեմք 'ի քումմէ Լուսափայլութենէդ՝ զնորագոյնն Մատեան շնոր-
հել մեզ. զի այժմ մերձ 'ի ծերութիւն հասեալ եմք, և դիւրին վեր-
ծանեալ՝ հասցուք ըստ կարողութեան. զի մի յերկոցունց կողմանցն
ունիցիմք մարտակցութիւնս՝ տեսութեան, և մտածութեան. քանզի
լուսով քո տեսանեմք զլոյս։ Ապա եթէ ոչ այսոքիկ հաճոյ թուես-
ցի քումդ Ածապետական իշխանութեանդ, զոր և կամեցիս՝ այն
իբրև յԱծուստ պարգև համարեալ է մեզ։ Ո՛ղջ լեր փոխանն Այ,,։

Արդ՝ յայս Մատեան Շիրակացւոյն՝ որ էր ըստ վկայութեան
Մագիստրոսի Ներշրջանակաց իմն գիտութիւն (2) անշուշտ համա-
րիմք լինել և բանից Նորա յաղագս Չափուց և Կշռոց։ Այլ ո՞ տայր
մեզ գտանել զայն մատեան, կամ գէթ զանվթար գաղափար նորա.
Զի եօթանեքին օրինակք Չափուց և Կշռոց՝ զոր ունիմք 'ի Գրա-
տան մերում, և որոշեմք զնոսա յընթացս գործոյս ա. բ. գ. դ. ե.
զ. և է. թուանշանօքս, կամ հատակոտր են, և կամ աղաւաղեալ
յանհմտութենէ գրչաց։ Թէպէտև ամենեքին խօսին յաղագս Կշռոց,
այլ ա. դ. և ե. միայն յաւելուն ընդ Կշիռս և զՉափս։ Նոյնպէս
դ. և ե. միայն դնեն 'ի սկզբան Կշռոց զԱսպարիսական չափս Խո-
րենացւոյն։ Յորոց և ա. և բ. միայն կրեն 'ի ճակատու զանուն
Անանիայի Շիրակացւոյ։ Մեք զամենեսին առհասարակ ընծայեմք

---

(1) Խրախարար, զուարճալի. 'ի Յունական բառէս χαρτός.
(2) Ἐγκυκλοπαιδεία ըստ Յունաց։

նմին, Թեպէտև յետինք համառօտեալ իցեն զբանս նորա, և կամ յաւելեալ ինչ 'ի նոսա: Արդ՝ Ա. օրինակն՝ Թեպէտև սխալագիր է բազմօք, բայց ընդարձակ է, և որոշ քան զամենեսին. որ և սկսեալ 'ի փոքունց՝ հանէ 'ի վեր ուրոյն ուրոյն վերնագրովք՝ նախ զԿշիռս, և ապա զՉափս: Է սա համառօտութիւն իմն բանիցն Եպիփանու՝ ընդհականակն դասակարգութեամբ: Զսա՝ իբրև հարազատ գործ Անանիայի Համարողի, ուղղագրեալ բաղդատութեամբ եօթանեցունց օրինակացդ, և՛ բանից Եպիփանու՝ դնեմք առանձին Աղիւսակաւ կշռոցն 'ի նախադրունս գործոյս: Գ. և Ե. օրինակք ընտիր են գրչութեամբ, և միաբան ունին զԿշիռս, և զՉափս. միայն երրակի տարբերին յառաջնոյ անտի. նախ՝ զի համառօտագոյն են քան զնա. երկրորդ՝ չունին 'ի Ճակատու զանուն Անանիայի, և ոչ զվերնագիր 'ի վերայ իւրաքանչիւր կշռոց և չափուց. և երրորդ՝ յաւելուն 'ի սկզբան անդ զԱսպարիսական չափս: Վասն որոյ և մեք զսոցա եւս զուղղագիր օրինակ արժան համարեցաք առանձինն դնել 'ի նախադրունս գործոյս զկնի Ասպարիսական Չափուց Խորենացւոյն: Իսկ Բ. Դ. Զ. և Է. օրինակք են համառօտութիւնք եւեթ Ա. Գ. և Ե. օրինակաց Շիրակացւոյն: Սակայն և այնպէս բազմօք ուղղեն զվրիպանս նոցա:

Մովսէս Խորենացի՝ աշակերտ սրբոց Թարգմանչացն, պատմաբան և աշխարհագիր 'ի Հինգերորդ դարու, գրեաց համառօտիւ 'ի սկզբան անդ իւրումն Աշխարհագրութեան յաղագս Ասպարիսական չափուց, իմն յաղագս չափուց Երկայնութեան՝ ըստ Օտարաչափութեան, և ըստ Գետնաչափութեան. զոր և համառօտեաց նա 'ի գրոց անտի Պապայ Աղեքսանդրացւոյ՝ որոյ գործք Յունարէն չերևին այժմ 'ի միջի: Զայս հատուած բանի Խորենացւոյն ուղղագրեալ բաղդատութեամբ օրինակաց նորա, և բանից Շիրակացւոյն՝ դնեմք դարձեալ հանդերձ կարևոր ծանօթութեամբք 'ի նախադրունս գործոյս՝ զկնի բանից Եպիփանու, և Շիրակացւոյն: Զի նա է մեզ առանձին իմն առաջնորդ յԱսպարիսական չափս:

Զկնի տալոյ մեր զսակաւ ծանօթութիւնսդ յաղագս գործոց երեցունց Չափախօսացդ և Կշռաբանից՝ մնայ մեզ ասել ինչ և յաղագս մերումս աշխատասիրութեան 'ի բացատրութեան անդ համօրէն Չափուց և Կշռոց Նախնեաց: Զոր և յանձին կալաք յաւէտ 'ի սակս երկոցունց պատճառաց. մի՝ առ 'ի ստուգել ըստ կարի զնշանակութիւն նոցա. և երկրորդ՝ առ 'ի դիւրացուցանել զընթացս գրչի Թարգմանչաց յայսոսիկ բառս՝ 'ի յեղուլ անդ յօտար լեզուաց 'ի մերս, և կամ 'ի մերոյս յօտար լեզուս: Արդ՝ ունելով 'ի ձեռին զբազմութիւն բառարանաց այլևայլ ազգաց, և զգործս երևելի չափաբանից և կշռախօսաց՝ ըստ երրեակ տեսութեանցս մտաք 'ի քննութիւն նոցին և 'ի բացատրութիւն: Նախ՝ ջանացաք գտանել զստուգաբանութիւն նոցին ըստ այլևայլ ազգաց, մանաւանդ Յունաց և Պարսից՝ որք են սահմանակիցք մերումս աշխարհի: Եւ 'ի գտանել մեր զնոսա նոյնանիշ և նոյնահնչիւն 'ի մեր և յայլ լեզուս, արձանացուցաք զերկոսին եւս 'ի Ճակատու անդ՝ 'ի զբօսանս լեզուագիտաց: Անդէն որոշեցաք եւս 'ի ներքոյ զլինել նոցա Կշիռ կամ Դրամ, Չափ կամ Ընդունարան՝ ցամաքեղինաց և հեղանիւթոց, և Ասպարիսական չափ ըստ երկայնութեան: Երկրորդ՝ որոնեցաք զորոշ նշանակութիւն նոցին ըստ հասարակաց կարծեաց յայլևայլ

աղինս. վասն որոյ վերստին արձանացուցեալ զնոյն բառս 'ի գլուխ բացատրութեանն՝ եդաք առընթեր նոցա զնոյնանիշ բառս Եբրայեցւոց, Յունաց, և Լատինացւոց համարակօրէն. և առ նմին յաւելաք կարգել զսահման կամ զճիշդ նշանակութիւն նոցին ըստ հասարակ կարծեաց կշռաբանից և չափախօսաց, և յաւէտ իմն ըստ մերումս Շիրակացւոյ: Եւ ապա մանր քննութեամբ 'ի մէջ բերաք զայլևայլ նշանակութիւնս նոցին: Երրորդ՝ 'ի խնդիր եղեաք գտանել զգործածութիւն նոցա 'ի Թարգմանութեան անդ յօտար լեզուաց, մանաւանդ Եբրայեցւոց և Յունաց: Վասն որոյ բազմապատիկ վկայութեամբք Ածաշունչ գրոց ցուցաք զայլևայլ առումն նոցա՝ ըստ այլ և այլ Եբրայական և Յունական բառից՝ որ 'ի Սուրբ գիրս: Որք և բաց 'ի քաջիկ արտայայտելոյ զմիտս հայկական բառիցն՝ բազմօք ձեռնտու լինին և Թարգմանչաց գրոց:

Ուրեք ուրեք ընդ չափս կարգեցաք և զհասարակ անօթս. զի ամենայն ընդունարանք ընդ չափովք անկանին. Թող զի և Եպիփան ընդ Չափս կարգէ զոմանս 'ի նոցանէ. որպէս զՔուռնն, զխան, և այլն:

Զկնի աւարտելոյ մեր զբացատրութիւն Չափուց և Կշռոց նախնեաց սովին օրինակաւ ըստ կարգի Այբուբենից, յաւելաք դնել 'ի վախճանի զարդի չափս և զկշիռս Գաղղիացւոց, վասն լինելոյ նոցա պիտանի յոյժ, և ընդունելի այժմ գոգցես համօրէն Եւրոպացւոց: Զի առանձին բանս 'ի մէջ առնուլ զչափուց և զկշռոց իւրաքանչիւր ազգաց Եւրոպիոյ՝ արտաքոյ էր մերումս սահմանի: Սակայն զկնի Գաղղիական չափուց և կշռոց՝ 'ի շնորհս տաճկագէտ Հայկազանց եդաք զդասակարգութիւն բառից երկոցունց ազգացս՝ ըստ իւրաքանչիւր Չափուց, Կշռոց, և Ասպարիսական Չափուց առանձինն:

Ահաւասիկ ճշգրիտ պատկեր առաջիկայ աշխատասիրութեանս. յորում թէպէտև բազմօք վաստակեցաք, այլ՝ օգուտ Բանասիրաց ազգիս տայ մեզ մոռանալ զամենայն աշխատութիւն. միայն թէ ներողամիտ գտեալ՝ սիրով ընկալցին և զայս ևս վաստակ մեր դուզնաքեայ:

# ΕΠΙΦΑΝΙΟΥ

## ΠΕΡΙ ΜΕΤΡΩΝ ΚΑΙ ΣΤΑΘΜΩΝ.

---

# ԵՊԻՓԱՆՈՒ

## ՅԱՂԱԳՍ ՉԱՓՈՒՑ ԵՒ ԿՇՌՈՑ· (1)

Ἕως ἐνταῦθα φιλοκαλώτατε ἀρκεσθέντες τοῖς προειρημένοις, ἅπασι τὴν τῶν ἑρμηνευτῶν ὑπόθεσιν ἐδηλώσαμεν. εἶθ' ἑξῆς εἰς τὰ ἐπίλοιπα καθὼς (2) ὑπευχόμεθα, σαῖς εὐχαῖς, ἄνθρωπε τοῦ Θεοῦ, τὸν νοῦν ἐπιδῶμεν, περὶ τῶν ἐν ταῖς θείαις γραφαῖς σταθμῶν τε καὶ μέτρων, καὶ ἀριθμῶν δηλώσοντες, πόθεν ἕκαστον ὠνόμασται, καὶ τίνος ἕνεκα οὕτως κέκληται, καὶ πόθεν τὴν πρόφασιν τῆς ὀνομασίας εἴληφε, καὶ τίς ἑκάστου τού-

Յայս վայր՝ ով բարեսէր, նախկին ասացելովքն բաւականացեալ՝ ամենեցուն զթարգմանչացն ցուցաք զպատմութիւն բանիցս· արդ՝ յայսմհետէ 'ի մնացեալսն անդր, որպէս զիջաք քումդ խնդրուածոց՝ այրդ Ա.Յ, զմիտս դարձուսցուք, յաղագս որ յԱ.Ծային գիրս Կշռոցն և Չափուց և Թուոց 'ի դէմս բերելով՝ եթէ ուստ ուստեք իւրաքանչիւրոցն անուանակոչութիւն, և վասն էր այնպէս յորջորջին, և

(1) 'Ընդարձակ քննութիւն թողումք Պետաւիոսի: Չափուց և Կշռոց Եպիփանու՝ (2) Թերևս ὑπεσχόμεθα.

των ἡ ποιότης, καὶ ἡ ὁλκὴ, καὶ ἡ δύναμις.

Μέτρον οὖν ἐστὶ κόρος. κεῖται δὲ ἐν τῷ κατὰ Λουκᾶν Ἐυαγγελίῳ, ὅθεν ὁ Σωτὴρ ἐπαινεῖ τὸν φρόνιμον οἰκονόμον τὸν τοῖς χρεωφειλέταις, ἀντὶ κόρων τοσούτων ἐν τοῖς σφῶν αὐτῶν χειρογράφοις τοσούτων μεταγραψάμενον. ἀντὶ δὲ τοσούτων βάτων ἐλαίου, τοσαῦτα ποιήσαντα.

Ὀνόματα γὰρ εἰσι μέτρων τάδε, λεθὲκ, γόμορ, βάτος, σάτον, μόδιος, κάμος, χοῖνιξ, ὑφὴ σεμιδάλεως, δράξ ἀλεύρου, ἀρτάβη, τρία μέτρα σεμιδάλεως, τρία κανᾶ χονδριτῶν, νέβελ οἴνου, κόλλαθον, ἀλάβαστρον μύρου, καμψάκης ὕδατος, κοτύλη ἐλαίου, κύαθος, μετρητὴς οἴνου, μετρητὴς ἐλαίου, τρυβλίον, ξέστης, ἀμφορεὺς, ἀπόρρυμα, σαβιθὰ, ἶν, χοῦς, στάμνος χρυσῆ, ἐν ᾗ ἀπέκειτο τὸ μάννα, μάρης, κύπρος, κογγιάριον.

ուստի՞ պատճառք անուանակոչութեանդ. և զինչ իւրաքանչիւրնոցա հանգամանք, և կշիռ, և զօրութիւն։

Արդ՝ Կորոսն է չափ. և գտանի յԱւետարանին ըստ Ղուկասու. ուրանօր Փրկիչն գովէ զիմաստուն տնտեսն՝ որ փոխանակ այսչափ ինչ Կորոսի, եւ պարտապանացն այնչափ ինչ գրել 'ի ձեռագիրս իւրեանց. և փոխան այնչափ Բատոսի ձիթոյ՝ այսչափ ինչ դնել(1)։

Իսկ անուանք Չափուցն են այսոքիկ։ Ղեթէկ, Գոմոր, Բատոս, Սատոն, Մոդիոս, Կամոս (կամ Կաբոս), Քինիկս, Իւփէ նաշհոյ, Բուռն ալեր, Արտաբէ, երեք Չափք նաշհոյ, երեք Կանք նաշհոյ, Նեբէլ գինւոյ, Կողղաթոն, Աղաբաստրոն (կամ Շիշ) իւղոյ, Կամփսակ ջրոյ, Կոտիւղ իւղոյ, Կիւաթոս, Մետրետէս գինւոյ, Մետրետէս իւղոյ, Տրիւբղիոն, Քսեստ, Ամփորեւս, Ապորրիւմայ, Սաբիթա, Հին, Քուս, Ստամնոս (կամ Սափոր) ոսկի, յորում կայր մանանայն, Մարիս, Կիւպրոս, և Կոնգիարիոն։

(1) Ղուկ. ժզ. 7.

Εἴληπται τοίνυν ὁ κόρος ἐκ τῆς Ἑβραϊκῆς διαλέκτου, ὃς καλεῖται Χόρ. εἰσὶ δὲ μόδιοι λ'. Χὸρ δὲ λέγεται ἀπὸ τοῦ βουνοῦ ὑποθέσεως. Χαρία γὰρ καλεῖται βουνός. βουνισθέντες δὲ καὶ οἱ τριάκοντα μόδιοι, ποιοῦσι φορτίον καμήλου.

Λεθὲκ δὲ, ὡς ἐν τῷ Ὠσηὲ τῷ Προφήτῃ εἴρηται, ὅτι ἐμισθωσάμην ἐμαυτῷ λεθὲκ κριθῶν, ἐν ἀντιγράφοις δὲ γόμορ κριθῶν, τὸ αὐτό εἰσί. δέκα γὰρ καὶ πέντε μόδιοι σημαίνονται οὗτοι. Λεθὲκ δὲ κατὰ τὴν τῶν Ἑβραίων φωνὴν κέκληται, ὅ ἐστιν ἔπαρμα, ἀπὸ τοῦ δύνασθαι τῷ νεανίᾳ ἐπαρθῆναι τοὺς δεκαπέντε μοδίους, καὶ ἐπιτεθεῖναι τῷ ὄνῳ. τὸ δὲ αὐτὸ καὶ τὸ γόμορ καλεῖται. δύο δὲ εἰσὶ γόμορ, μέγα καὶ μικρόν. ὧν τὸ μέγα ἰσόμετρόν ἐστι τῷ λεθὲκ, δεκαπέντε καὶ αὐτὸ ὂν μοδίων. τὸ δὲ μικρὸν δώδεκα βάθου (2). καὶ τοῦτο ἀπὸ τῆς Ἑβραϊ-

Քոռ՝ առեալ եղև Կորամն յեբրայական բարբառոյ, որ կոչի Քոռ. և է Լ Մոդ: Այլ Քոռ կոչի ՚ի նմանութենէ բլրոյ. քանզի Քարիա կոչեն զբլուրն. և երեսուն Մոդ բլրաձև դիզացեալ՝ առնէ բեռն մի ուղտու:

Իսկ Ղեթեկ՝ որպէս ՚ի մարգարէն Ովսէէ ասի, թէ՝ Վարձեցայ ինձ Ղեթեկի գարւոյ, և յօրինակս ինչ՝ Գոմորի գարւոյ (1), որ է նոյն. քանզի հնգետասան Մոդ նշանակեն այդոքիկ: Այլ Ղեթեկ ըստ Եբրայեցւոց բարբառոյ կոչի, որ է՝ բարձումն. վասն կարող լինելոյ երիտասարդի բառնալ զհնգետասան Մոդ, և դնել ՚ի վերայ իշոյ: Այն սա և Գոմոր կոչի. և կրկին է Գոմոր՝ մեծ, և փոքր: Մեծն հաւասարաչափ է ընդ Ղեթեկի. զի հնգետասան Մոդ է և նա. իսկ փոքրն երկոտասան Բաթոս: Այլ

(1) Ովս. գ. 2. Եբրայականն բնագիրն է * Եւ վարձեցայ զնա ինձ հնգետասան արծաթոյ, և Խոմերաւ գարւոյ, և Ղեթեկի գարւոյ ||: Յունականն է * Եւ վարձեցայ ինձ հնգետասան արծաթոյ, և Գոմորի գարւոյ, և Նեբեղի գինւոյ ||: Իսկ մերս * Եւ վարձեցայ ես հնգետասան արծաթոյ, և Քոռի միոջ գարւոյ, և Մարու միոջ գինւոյ ||:

(2) Թերևս Βάθων. Ըստ Պետաւիոսի Խոմեռ և Ղոմեռ այլ և այլ չափք են առ Եբրայեցիս, թէպէտ և Եօթանասունք հանդէպ երկոցունց ևս դնեն γόμορ, այն է՝ Գո-

κῆς διαλέκτου παρῆκται, συνονύμως τῷ ἐλαιοτριβείῳ καλούμενον βίθ. Βάθου γὰρ ἑρμηνεύεται ἐλαιοτριβεῖον, ἐστὶ δὲ ξέστων πεντήκοντα. τὸ δὲ μέτρον ἐστὶ τῆς τοῦ ἐλαιοτρίπτου ἐργασίας.

Μνασὶς, ἢ μέδιμνος, οἶμαι ἐκ τῆς Ῥωμαϊκῆς γλώσσης παρήχθησαν. τὸ γὰρ μεδιοῦμ, μέσον ἑρμηνεύεται ἐν αὐτῇ τῇ γλώσσῃ. μνασὶς τοίνυν παρὰ Κυπρίοις μετρεῖται καὶ παρ᾽ ἄλλοις ἔθνεσιν. εἰσὶ δὲ καὶ μόδιοι σίτου, ἢ κριθῶν εἰς τὴν τῶν δέκα καὶ ἑπτὰ ξέστων, παρὰ Κυπρίοις μόδιον. μέδιμνος δὲ παρ᾽ αὐτοῖς τοῖς Κυπρίοις διάφορος. τὸν γὰρ μέδιμνον Σαλαμίνιοι, εἴτουν Κωνστάντιοι ἐκ πέντε μοδίων ἔχουσι. Πάφιοι δὲ καὶ Σικελοὶ τεσσάρων ἥμισυ μοδίων αὐτὸν μετροῦσιν.

Σάτον καλεῖται, ἐξ αὐτῆς τῆς Ἑβραΐδος διαληφθὲν, θηλυκῶς δὲ ἐκφωνούμενον. ἐν δὲ τῇ Ἑλληνίδι οὐδετέρως. σάτον γὰρ λέγεται, καὶ οὐχὶ σάτος. ἐστὶ δὲ μόδιος ὑπέργομος, ὥστε πληροῦσθαι μὲν τὸν μόδιον, διὰ

այս և առեալ է յեբրայական լեզուէ. և է համանուն ընդ իւղահանին՝ որ կոչի Բէթ, քանզի Բաթոս թարգմանի իւղահան. և է յիսուն Քսեստ. որ և է չափ իւղահան գործաւորաց։

Մնասիս, կամ Մեդիմնոս թուի ծագեալ ՚ի Հռովմայեցւոց լեզուէ. քանզի Մեդիում[1] կէս լսի ՚ի լեզու նոցա։ Արդ՝ Մնասիս չափ է առ Կիպրացիս, և առ այլ ազգս. և է տասն Մոդ ցորենոյ, կամ գարւոյ։ Մոդ առ Կիպրացիս է եօթնևտասն Քսեստ։ Մեդիմնոսն տարբեր է առ նոսա. զի Մեդիմնոս առ Սաղամինացիս, կամ առ Կոստանդիացիս՝ է հինգ Մոդ. իսկ Պափիացիք և Սիկիլիացիք չորս Մոդոյ և կիսոյ չափեն զնոյն։

Սատոն կոչի ՚ի նոյն եբրայական լեզուէ առեալ. և է իգական առ նոսա. իսկ ՚ի Հելլենականն չէ զոք. քանզի Սատոն ասի, և ոչ Սատոս։ Նոյ է Մոդ գերազեղուն. զի լնու զՄոդ, և առաւելու քան

մոր։ Վասն որոյ և սուրբն Հերոնիմոս զԽօմէռ թարգմանէ Քոռ, և զՔօմէռ՝ Գոմոր։

(1) Լատ. Medium.

δὲ τοῦ ὑπεργίνεσθαι τὸ τέταρτον τοῦ μοδίου. κέκληται δὲ σάτα κατὰ τὴν αὐτὴν διάλεκτον ἐκφωνούμενον, λῆψις, ἢ ἄρσις, ἀπὸ τοῦ τὸν μετροῦντα ἔξει τινὶ τὸ μέτρον λαμβάνειν τε, καὶ κουφίζειν.

զնա քառորդիւ: Իսկ Սատա ըստ նոյն եբրայական բարբառոյ նշանակէ առումն կամ բարձումն. իբր զի՝ որ չափէն, սովոր է առնուլ, կամ բառնալ զչափ ինչ:

Τοῦ δὲ μοδίου τὸ ὄνομα διὰ πολλῆς ἀκριβείας ὑπὸ τῶν Ἑβραίων εὑρέθη εἰκοσιδύο ξέστων ὑπάρχον, οὐχ ἁπλῶς δὲ, οὐδ᾽ ὡς ἔτυχεν, ἀλλὰ διὰ πολλὴν ἀκρίβειαν. ὁ γὰρ δίκαιος μόδιος, καθὼς εἴωθεν ὁ νόμος λέγειν, κατὰ τὸ μέτρον τὸ ἅγιον ἐμετρήθη. τὸ δὲ ἅγιον μέτρον οὐδὲν ἄλλο ἐστὶν, ἢ τὰ κβʹ. ἔργα, ἃ ἐποίησεν ὁ Θεὸς ἐν ταῖς ἓξ ἡμέραις τῆς ἑβδομάδος.

Իսկ անունս Մոդ՝ բազում ճշդութեամբ յԵբրայեցւոց անտի գտանի չափ քսանևերկու Քսեստաց. ոչ վայրապար, և կամ անխորհուրդ, այլ՝ բազում ճշդութեամբ: Քանզի Մոդ արդար՝ որպէս սովորութիւն է Օրինացն ասել, ըստ Սրբութեանն չափու չափեալ լինէր. իսկ Սրբութեանն չափ ոչ այլ ինչ է, բայց իբ̅ գործքն՝ զորս արար Ա̅ծ 'ի վեցեակ աւուրս Շաբաթուն: (1)

Τῇ μὲν γὰρ πρώτῃ ἡμέρᾳ ἐποίησε τοὺς ἀνωτέρους οὐρανοὺς, τὴν γῆν, τὰ ὕδατα. ἐξ ὧν στοιχείων, καὶ κρύσταλλος, καὶ χάλαζα, καὶ παγετοὶ, καὶ δρόσος, τὰ πνεύματα τὰ λειτουργοῦντα ἐνώπιον αὐτοῦ, ἅ τινά ἐστι τάδε, Ἄγγελοι πρὸ προσώ-

Քանզի յառաջնումն աւուր արար զվերին երկինս, զերկիր, և զջուրս. և 'ի տարերց աստի՝ զսառն, զկարկուտ, զեղեամն, և զցօղ: Նա և զհոգիսն պաշտօնեայս առաջի նորա, որք են այսոքիկ. Հրեշտակք յանդիման երեսաց նորա,

(1) Զայստեղւոյ բանսդ Եպիփանու երկրորդէ և խնդրոյս՝ առեալ 'ի նմանէ. Թէպէտև Պետաւիոս աւելորդ ինչ համարի զնա. և ասէ եւս, թէ մարթ էր Եպիփանու զանց առնել զնորօք: Մերս Անանիա Շիրակացի զկարևորսն միայն ընկալաւ 'ի նոցանէ:

που, καὶ Ἄγγελοι τῆς δόξης, καὶ Ἄγγελοι πνευμάτων πνεόντων, Ἄγγελοι νεφελῶν, καὶ γνόφων, χιόνος, καὶ χαλάζης, καὶ πάγου, Ἄγγελοι φωνῶν, βροντῶν, ἀστραπῶν, ψύχους, καύματος, χειμῶνος, φθινοπώρου, ἔαρος, καὶ θέρους, καὶ πάντων τῶν πνευμάτων τῶν κτισμάτων ἀυτοῦ τοῖς ἐν οὐρανοῖς, καὶ ἐν τῇ γῇ, τὰς ἀβύσσους, τήν τε ὑποκάτω τῆς γῆς, καὶ τοῦ χάους, καὶ σκότος, ἑσπέρα, καὶ νύξ, τὸ φῶς ἡμέρας τε, καὶ ὄρθρου. ταῦτα τὰ ἑπτὰ μέγιστα ἔργα ἐποίησεν ὁ Θεὸς ἐν τῇ πρώτῃ ἡμέρᾳ.

Ἐν δὲ τῇ δευτέρᾳ τὸ στερέωμα τὸ ἐν μέσῳ τῶν ὑδάτων, καὶ τὴν διαμέρησιν τῶν ἐπάνω τοῦ στερεώματος ὑδάτων, καὶ τῶν ὑποκάτω τοῦ στερεώματος ἐπὶ πρόσωπον πάσης τῆς γῆς. τοῦτο μόνον ἐποίησεν ὁ Θεὸς ἐν τῇ δευτέρᾳ ἡμέρᾳ.

Τρίτῃ δὲ ἡμέρᾳ τὰς θαλάσσας, τοὺς ποταμοὺς, τὰς πηγὰς, καὶ λίμνας, τὰ σπέρματα τοῦ σπόρου, τὰ βλαστήματα, τὰ ξύλα τὰ κάρπιμά τε, καὶ ἄκαρπα, τοὺς δρυμούς. ταῦτα τὰ τέσσαρα ἔργα τὰ μέγιστα ἐποίησεν ὁ Θεὸς ἐν τῇ τρίτῃ ἡμέρᾳ.

Հրեշտակք փառաց, Հրեշտակք հողմոցն որ շնչեն, Հրեշտակք ամպոցն և միգի, ձեան, կարկտի, և սառին, Հրեշտակք շառաչմանց, որոտմանց, փայլատականց, ցրտոյ, տօթոյ, ձմերայնի, աշնայնոյ, գարնայնոյ, և ամարայնի, և ամենայն շնչոյ՝ զոր ստեղծ նա յերկինս, և յերկրի . զանդունդս, զխորս երկրի, և զտարտարոսն խաւարի, զերեկոյն և զգիշեր, զլոյս տունջեանն, և զառաւօտին ։ Զայսոսիկ եօթանեսին մեծամեծ գործս արար Ած յաւուրն առաջնորդի ։

Յերկրորդումն զհաստատութիւնն 'ի մէջ ջուրց . և զմեկնիլ ջրոցն՝ որ 'ի վերոյ հաստատութեանն, 'ի ջուրց անտի՝ որ 'ի ներքոյ հաստատութեանն, 'ի վերայ երեսաց ամենայն երկրի ։ Զայս ևեթ արար Ած յաւուրն երկրորդի ։

Եւ յաւուրն երրորդի զծովս, զգետս, զաղբիւրս, և զլիճս . զսերմանս սերմանելոյ, զբոյսս, զտունկս պտղաբեր և զանպտուղ, և զանտառս ։ Զայսոսիկ զչորեսին մեծամեծ գործս արար Ած յաւուրն երրորդի ։

Τῇ δὲ τετάρτῃ τὸν ἥλιον, τὴν σελήνην, τοὺς ἀστέρας. ταῦτα τὰ τρία ἔργα τὰ μεγάλα ἐποίησεν ὁ Θεὸς ἐν τῇ τετάρτῃ ἡμέρᾳ.

Τῇ δὲ πέμπτῃ τὰ κήτη τὰ μεγάλα, τοὺς ἰχθύας, καὶ τὰ ἄλλα ἑρπετὰ τὰ ἐν τοῖς ὕδασι, τὰ πετεινὰ, τὰ πτερωτά. ταῦτα τὰ τρία ἔργα τὰ μεγάλα ἐποίησεν ὁ Θεὸς ἐν τῇ πέμπτῃ ἡμέρᾳ.

Τῇ δὲ ἕκτῃ ἡμέρᾳ τὰ θηρία, τὰ κτήνη, τὰ ἑρπετὰ τῆς γῆς, τὸν ἄνθρωπον. ταῦτα τὰ τέσσαρα μεγάλα ἔργα ἐποίησεν ὁ Θεὸς ἐν τῇ ἕκτῃ ἡμέρᾳ. καὶ ἐγένετο πάντα τὰ ἐν ταῖς ἓξ ἡμέραις παρὰ τοῦ Θεοῦ ποιηθέντα, ἔργα κβ′. καὶ συνετέλεσεν ὁ Θεὸς πάντα ἐν τῇ ἕκτῃ ἡμέρᾳ, ὅσα ἐν τοῖς οὐρανοῖς, καὶ ἐν τῇ γῇ, ἐν ταῖς θαλάσσαις, καὶ ἐν ταῖς ἀβύσσοις, ἐν τῷ φωτὶ, καὶ ἐν τῷ σκότει, καὶ ἐν πᾶσι.

Καὶ ἀνεπαύσατο ὁ Θεὸς ἐκ πάντων τῶν ἔργων αὐτοῦ ἐν τῇ ἑβδόμῃ ἡμέρᾳ, καὶ εὐλόγησεν αὐτὴν, καὶ ἡγίασεν αὐτὴν, καὶ ἐδήλωσε δὶ Ἀγγέλου τῷ Μωϋσῇ, ὅτι καὶ εἰκοσιδύο κεφάλαια ἀπὸ Ἀδὰμ ἄχρι τοῦ Ιακώβ. καὶ ἐκλέξομαι ἐμαυτῷ ἐκ τοῦ

'Ի չորրորդումն զարեգակն, զլուսին, և զաստեղս։ Զայսոսիկ երեսին մեծամեծ գործս արար Ա՟ծ յաւուրն չորրորդի։

'Ի հինգերորդումն ըզկէտս մեծամեծս, զձկունս, և զայլ ամենայն զեռունս 'ի ջուրս, զթռչունս և ըզթևաւորս։ Զայսոսիկ զերեսին մեծամեծ գործս արար Ա՟ծ յաւուրն հինգերորդի։

'Ի վեցերորդումն աւուր արար զգազանս, զանասունս, զսողունս երկրի, և զմարդն։ Զայսոսիկ զչորեսին մեծամեծ գործս արար Ա՟ծ յաւուրն վեցերորդի։ Եւ եղև ամենայնն՝ զոր միանգամ արար Ա՟ծ 'ի վեց աւուրս, գործք ի̅բ̅· և կատարեաց Ա՟ծ զամենայն ինչ յաւուրն վեցերորդի, որ ինչ յերկինս, և 'ի վերայ երկրի· 'ի ծովս, և յանդունդս, 'ի լոյս, և 'ի խաւարի, և յամենայնի։

Եւ հանգեաւ Ա՟ծ յամենայն գործոց իւրոց յաւուրն եօթներորդի· և օրհնեաց զնա, և սրբեաց զնա· և ծանոյց Մովսիսի 'ի ձեռն Հրեշտակին։ Որպէս և քսանևերկու են գլխաւորքն յԱդամայ մինչև ցՅակովբ· և ընտրեցից

σπέρματος αὐτοῦ λαὸν περιούσιον ἀπὸ πάντων τῶν ἐθνῶν. αἱ δὲ κεφαλαὶ περὶ ὧν εἶπεν ὁ Κύριος, εἰσὶν αὗται. Ἀδὰμ, Σὴθ, Ἐνὼς, Ἐνὼχ, Ἀρφαξὰδ, Σάλα, Καϊνὰν, Φαλὲκ, Μαλελεὴλ, Ἔβερ, Ῥαγαῦ, Ἰάρεδ, Σεροὺχ, Ναχὼρ, Μαθουσάλα, Θάρα, Λάμεχ, Νῶε, Ἀβραὰμ, Ἰσαὰκ, Ἰακὼβ, Σὴμ, ὁμοῦ εἰκοσιδύο γενεαί. διὸ καὶ εἰκοσιδύο εἰσὶ τὰ παρὰ τοῖς Ἑβραίοις γράμματα, καὶ πρὸς αὐτὰ καὶ τὰς Βίβλους αὐτῶν κβ'. ἠρίθμησαν εἰκοσιεπτὰ οὔσας. ἀλλ' ἐπειδὴ διπλοῦνται πέντε παρ' αὐτοῖς στοιχεῖα, εἰκοσιεπτὰ καὶ αὐτὰ ὄντα, καὶ εἰς κβ'. ἀποτελοῦνται, τούτου χάριν καὶ τὰς βίβλους κζ'. οὔσας, κβ'. πεποιήκασιν.

Ὧν πρώτη Βρισὴθ, ἣ καλεῖται Γένεσις κόσμου. ἐλησιμὼθ, ἥ Ἔξοδος τῶν υἱῶν Ἰσραὴλ ἐξ Αἰγύπτου. οὐδωϊκρὰ, ἣ ἑρμηνεύεται Λευιτικόν. ἰουδδαβὴρ, ἥ ἐστὶν Ἀριθμῶν. ἐλλεδεβαρεὶμ, τὸ Δευτερονόμιον. διησοῦ, ἣ

լինել 'ի զաւակէ նորա ժողովուրդ սեպհական յամենայն ազգաց (1)։ Իսկ գլխաւորքն՝ զորոց խօսեցաւ Տր̄, են այսոքիկ։ Ադամ, Սէթ, Ենովս, Ենովք, Արփաքսադ, Սաղայ, Կայնան, Փաղէկ, Մաղաղիէլ, Եբեր, Ռագաւ, Յարեդ, Սերուք, Նաքովր, Մաթուսաղայ, Թարայ, Ղամէք, Նոյ, Աբրահամ, Իսահակ, Յակովբ, Սեմ։ Միահամուռ քսան և երկու ազգք։ Վասնզի քսան և երկու են և տառք Ալփաբետաց առ Եբրայեցիս. և ըստ այսոցիկ և զգիրս իւրեանց՝ որք են քսան և եօթն, իբ̄ թուեն. այլ քանզի հինգ տառք կրկնակ են առ նոսա, որք և քսան և եօթն գոլով՝ 'ի իբ̄ թիւ համառօտին, յայն սակս և զգիրս՝ որք են քսան և եօթն թուով, 'ի իբ̄ գումարեն։

Որոց առաջինն Բերէսիթ, որ կոչի Ծնունդք աշխարհի. Եղիսէմովթ, Ելք որդւոցն Իսրայէլի յԵգիպտոսէ. Ուդովիկրա, որ թարգմանի Ղևտական. Յուդդաբէր, որ է Թւոււոց. Եղղէդեբարիմ, երկ-

(1) բ̄. Օրէնք. ժդ̄. 2.

ετοῦ Ἰησοῦ τοῦ Ναυῆ. διὼβ, ἡ τοῦ Ἰὼβ. διασωφθεὶμ, ἡ τῶν Κριτῶν. διαρὺθ, ἡ τῆς Ῥούθ. σφερτελεὶμ, τὸ Ψαλτήριον. δεβριϊαμεὶμ, ἡ πρώτη τῶν Παραλειπομένων. δεβριϊαμεὶμ, Παραλειπομένων δευτέρα. δεμουὲλ, Βασιλειῶν πρώτη. δαδουδεμουὴλ, Βασιλειῶν δευτέρα. δμαλαχεὶ, Βασιλειῶν τρίτη. δμαλαχεὶ, Βασιλειῶν τετάρτη. δμεαλὼθ, ἡ Παροιμιῶν. δεκωέλεθ, ὁ Ἐκκλησιαστής. σιρασισεὶμ, τὸ Ἆσμα τῶν ἀσμάτων. δαθαριασαρὰ, τὸ Δωδεκαπρόφητον. Δησαΐου, τοῦ Προφήτου Ησαΐου. διερεμίου, ἡ τοῦ Ἱερεμίου. διεζεκιὴλ, ἡ τοῦ Ἰεζεκιήλ. διδανιὴλ, ἡ τοῦ Δανιήλ. διδέσδρα, ἡ τοῦ Ἔσδρα πρώτη. διδέσδρα, ἡ τοῦ Ἔσδρα δευτέρα. δεσθὴρ, ἡ τῆς Ἐσθήρ. αὗται δὲ αἱ εἰκοσιεπτὰ βίβλοι κβʹ. ἀριθμοῦνται κατὰ τὸν ἀριθμὸν τῶν στοιχείων. ἐπειδήπερ καὶ πέντε στοιχεῖα διπλοῦνται, καθὼς ἄνω προείπωμεν. ἔστι δὲ καὶ ἄλλη μικρὰ βίβλος, ἣ καλεῖται Κινὼθ, ἥτις ἑρμηνεύεται Θρῆνος Ἱερεμίου. αὕτη δὲ τῷ Ἱερεμίᾳ συνάπτεται, ἥτις ἐ-

րորդումն Օրինաց, Դիեսու (1), Յեսուայ որդւոյ Նաւեայ. Դիովբ, Յովբայ. Դիխասոփթիմ, Դատաւորաց, Դիարութ, Հռութայ. Սփերտէղիմ, Սաղմոսարան. Դեբրիյամիմ, առաջին Մնացորդաց. Դէբրիյամիմ, Մնացորդաց երկրորդ: Դէմուէլ, Թագաւորութեանց առաջին. Դադուդէմուէլ, Թագաւորութեանց երկրորդ. Դմաղաքի, Թագաւորութեանց երրորդ. Դմաղաքի, Թագաւորութեանց չորրորդ. Դմէալովթ, Առակաց. Դէկովէղէթ, Եկղէսիաստէս. Սիրասիսիմ, Երգ երգոց. Դաթարիասարա, երկոտասան Մարգարէք. Դիսայիու, Եսայեայ մարգարէի, Դիերեմիու, Երեմիայ. Դիեզեկիէլ, Եզեկիէլի. Դիդանիէլ, Դանիէլի. Դիդեսդրայ, Եզրասայ առաջին. Դիդեսդրայ, Եզրասայ երկրորդ. Դեսթեր, Եսթերայ: Այսոքիկ քսան և եօթն գիրք՝ համարեալ լինին իբ ըստ թուոյ տառից Ալփաբետացն, վասն զի հինգ տառք 'ի նոցանէ

(1) Մասնիկս դ կամ դի 'ի սկզբան բառից՝ է յօդ ըստ Քաղդէացւոց բարբառոյ.

στὶ περισσὴ τοῦ ἀριθμοῦ, καὶ τῷ Ἱερεμίᾳ συναπτομένη.

Οὗτοι οἱ εἰκοσιδύο ἀριθμοὶ πανταχοῦ εὑρισκόμενοι, καὶ ἐν διαφόροις εἴδεσιν ἀριθμούμενοι, ἔν τε τοῖς εἰκοσιδύο ἔργοις, οἷς ἐποίησεν ὁ Θεὸς ἐν ταῖς ἓξ ἡμέραις τῆς κοσμοποιΐας, καὶ ἐν εἰκοσιδύο γενεαῖς ἀπὸ Ἀδὰμ ἄχρι τοῦ Ἰσραὴλ, καὶ ἐν τοῖς εἰκοσιδύο στοιχείοις τῶν γραμμάτων ἀπὸ τοῦ ἄλεφ ἄχρι τοῦ θαῦ, καὶ ἐν τοῖς κβ΄. βίβλοις ἀπὸ τῆς Γενέσεως ἄχρι τῆς Ἐσθὴρ, μέτρον ἡμῖν (1) ἐγενήθησαν κβ΄. ξέστων, ὅ καλεῖται παρ᾽ Ἑβραίοις μόδη, παρ᾽ Ἕλλησι δὲ μόδια, διὰ τὴν τρανότητα, παραπλησίως δὲ καὶ Αἰγύπτιοι μέντοι τοῦτο καλοῦσιν, ὁμοίως δὲ καὶ Σύροι, καὶ Ἄρραβες μόδια λέγουσιν, ὃ ἑρμηνεύεται ὁμολογία. πληρωθεὶς γὰρ ὁ μόδιος, ὁμολογεῖ ὅτι πεπλή-

կրկնին, որպէս յառաջնագոյն ասացաք։ Գոյ և միւս ևս այլ գիրք փոքրիկ, որ կոչի Կինովթ, որ թարգմանի՝ Ողբ Երեմիայ. սա ՚ի թիւ անկանի ընդ Երեմիայ. որ և է արտաքոյ թըւոցդ՝ ընդ մի համար դասեալ ընդ Երեմիայ։

Այս թիւ քսան և երկու ամենայն ուրեք գտեալ, և ՚ի պէսպէս յեղանակս թուեալ՝ ՚ի քսան և երկու գործս՝ զոր արար Ա.Ծ ՚ի վեցեակ աւուրս աշխարհարարութեան, ՚ի քսան և երկու ազգս՝ յԱդամայ մինչև ցԻսրայէլ, ՚ի քսան և երկու տառս գրոց՝ յԱլէփէ մինչև ցԹաւ, և ՚ի քսան և երկու գիրս՝ ՚ի Ծննդոց մինչև ցԵսթեր, եղև մեզ չափ իբ Քսեստաց. զոր կոչեն Եբրայեցիք Մոդէ, և Հելլենք առ դիւրութեան արտասանութեան՝ Մոդիա. ըզնոյն անուն ընծայեն նմա և Եգիպտացիք. որպէս և Ասորիք և Արաբացիք Մոդիա յորջորջեն զնա. որ թարգմանի խոստովանութիւն. քանզի Մոդ յորժամ լնու զնա, խոստո-

(1) Յօրինակին ἐγεννήθησαν.

ρωμαι. καλεῖται δὲ καὶ γνώμων.

Τῷ δὲ ἀριθμῷ τῶν κβʹ. ἔργων τοῦ Θεοῦ τῶν ἀπαρχῆς, καὶ τῶν κβʹ. γενεῶν, ἕως τοῦ Ἰακὼβ, καὶ τῶν κβʹ. βιβλίων ἕως τῆς Εσθὴρ, καὶ διὰ τῆς κβʹ. γραμμάτων ὑποθέσεως, ἐξ ὧν ὁ νόμος τοῦ Θεοῦ ἡμῶν παρέστη, καὶ Θεοῦ διδασκαλία ἡμῖν προτετύπωται, τοῦτο δηλοῦται, ὅτι ἐκ τοῦ νόμου, καὶ τῶν ἐν αὐτῷ μυστηρίων, ὁ Χριστὸς ἡμῖν ἐρχόμενος ἐμαρτυρήθη, καὶ ἀπεκαλύφθη. ὃς ἐλθὼν ἐν τῷ Εὐαγγελίῳ ἐπλήρωσεν ἡμῖν τὸ μέτρον τῆς ζωῆς διὰ τοῦ μοδίου, τουτέστι τῆς ὁμολογίας παντὶ τῷ εἰς αὐτὸν ὁμολογήσαντι, καὶ τὴν ζωὴν παρ' αὐτοῦ κομισαμένῳ. διὸ τὸ μέτρον τὸ ἅγιον Ἑβραῖοι λέγουσιν, ὅ ἐστι κβʹ. ξέστων, κατὰ τοὺς προειρημένους. πολλοὶ γὰρ τῶν ἄλλων ἐθνῶν, ἢ προσέθεντο, ἢ ἀφείλαντο ἀπὸ τοῦ μέτρου τούτου, τοῦ ἀκριβῶς παρ' Ἑβραίοις ἀριθμηθέντος. ἀλλὰ καὶ παρὰ Ῥωμαίοις συμβέβηκεν ὁμοιοκαταλήπτως μοδίου μέτρον καλεῖσθαι, ὥσπερ παρ' Ἑβραίοις τὸ Ἄλεφ τῷ παιδίῳ τὸ μανθάνειν

վան լինի՝ թէ լցայ։ Այն սա կոչի և ցուցակ, կամ չանոն։

Իսկ թուովդ իբ գործոյն Ա.Յ 'ի սկզբանէ, և իբ ազգացն մինչև զՅակովբ, և իբ գրոցն մինչև զԵսթեր, և 'ի ձեռն կարգի իբ գրոց Ալփաբետացն՝ յորոց օրէնքն Ա.Յ ծանուցան մեզ, և վարդապետութիւնն յառաջագոյն տպաւորեցաւ՝ այս ինչ յայտնի լինի մեզ, թէ յօրինաց անտի, և 'ի խորհրդոցն որ 'ի նմա՝ վկայեցաւ և լուսափայլ ցուցաւ, թէ գալոց է մեզ Քս։ Որ և եկեալ Աւետարանաւն՝ ելից մեզ զչափն կենաց 'ի ձեռն Մոդոյ, այսինքն է՝ 'ի ձեռն Խոստովանութեան ամենեցուն՝ որ խոստովանին 'ի նա, և նովաւ գտանեն զկեանս։ Վասն այսորիկ և Եբրայեցիք կոչեն զնա Չափ սրբութեան. որ է իբ Քսեստ ըստ յառաջագոյն ասացելոցս։ Քանզի բազումք յայլոց ազգաց՝ կամ յաւելին, և կամ բարձին 'ի չափոյ աստի. իսկ Եբրայեցիք ճշգութեամբ պահեցին զթիւնորա։ Այն զի և առ Հռովմայեցիս նոյնօրինակ չափ՝ Մոդ կոչի. զի որպէս առ

παραινεῖ. καὶ παρ' Ἕλλησι τὸ Ἀλφεῖν, Ζητεῖν συμβέβηκε καλεῖσθαι. ὅθεν δηλονότι κ̓ τὸ ἄλφα ἐξ Ἑβραΐδος παρηνέχθη εἰς τὴν Ἑλληνίδα. τὸ γοῦν μόδιον, ὡς ἐκ τῆς Ἑβραΐδος εὑρέθη, ὁμολογεῖν λεχθέν, ὡς πολλάκις εἶπον, διὰ τῆς χρήσεως ἑρμηνευόμενον. εἰ μὴ γὰρ αὐτὸν πληρεστάτως γεμίσειέ τις, οὐχ ὁμολογεῖ ὅτι πεπλήρωμαι. πλήσας δὲ τὸ μέτρον, καὶ ῥητλιάσας, ὁμολογεῖ ὅτι πεπλήρωμαι.

Եբրայեցիս Ալեֆ զմանուկ յուսումն յորդորէ, նոյնպէս և առ Հելլէնս բառս Ալփին՝ հետամուտ լինել լսի, յորմէ յայտ է՝ թէ Ալեֆ յԵբրայեցւոց անտի եկանց առ Հելլէնս։ Արդ՝ Մոդ ըստ որում յեբրայականն գտանի, Խոստովանութեան լսի, որպէս բազում անգամ ասացաք. և թարգմանի առ՚ի պէտս։ Քանզի եթէ չլցցէ ոք զնա լիալիր, ոչ խոստովանի, թէ լի եմ. այլ ՚ի լնուլ անդ զնա չափ թաթաղուն՝ խոստովան լիցի, թէ լցեալ եմ։

Κάμος [1] δὲ ἐξ αὐτῆς τῆς διαλέκτου διάφορον μέτρον ἐστὶν, ἤγουν τὸ τέταρτον μοδίου.

Կամոս (կամ Կաբոս) ելանէ ՚ի նոյն եբրայական բարբառոյ. և է չափ հաւասար չորրորդ մասին Մոդոյ։

Χοῖνιξ δὲ καὶ ὑφὴ ἓν μὲν ἐστὶ, διττῷ δὲ ὀνόματι κέκληται, ἔστι δὲ δύο ξέστων καὶ ποστημορίου.

Քինիկս և Իւփէ նոյն է, և երկակի անուամբ կոչի. և է կրկին Քսեստ, և սակաւ մի աւելի։

Δρὰξ [2] ἀλεύρου, τοῦτο ἀπερίεργον ἐστὶ, καὶ πᾶσι δῆλον.

Բուռն ալեր. սա դիւրին իմն է, և ամենեցուն յայտնի։

Ἀρτάβη, τοῦτο τὸ μέτρον παρ' Αἰγυπτίοις ἐκλήθη.

Արտաբէ է չափ առ Եգիպտացիս. և է եօթա-

(1) Κάμος ըստ Պետաւիոսի պարտ է լինել Κάβος. քանզի և ՚ի մերս Շիրակացի է Կաբոս, և ոչ Կամոս։

(2) Զյունական բառդ δράξ նախնիք մեր թարգմանեն յԱծաշունչ գիրս Բուռն, ափ, ձեռն, և այլն։

ἐστὶ δὲ ἑβδομηκονταδύο ξεστῶν. ἐκ πολλῆς δὲ ἀκριβείας καὶ τοῦτο οὕτως συνήχθη. ἑβδομηκονταδύο ἄνδρες τότε τὸν πῦργον ᾠκοδόμουν, ὅτε καὶ εἰς ἑβδομηκονταδύο γλώσσας ἐκ μιᾶς συνεσχέθησαν. ὅθεν καὶ μέροπες ἐκλήθησαν εἰς τὴν μεμερισμένην φωνήν. τὸ δ' αὐτὸ (τὸ) μέτρον καὶ ὁ μετρήτης ἔχει, κατὰ τὸ μέτρον τὸ ἅγιον.

նասուն և երկու Քսեստ Բազում ճշդութեամբ և սա այսպէս ունի : Եօթանասուն և երկու արք յայնժամ զաշտարակն շինեցին, յորժամ յեօթանասուն և երկու լեզուս 'ի միոյ անտի բաժանեցան. յորմէ և Մերոպէս կոչեցան վասն բաժանման բարբառոյն : Նոյն այս չափ՝ և Մետրետէս կոչի ըստ չափու Սրբութեան :

Τρία μέτρα σεμιδάλεως, ἃ τοῖς Ἀγγέλοις Ἀβραὰμ τῇ Σάῤῥᾳ ἑτοιμάζειν προσέταττεν, ἐξ ὧν μέτρων ἐγκρυφίαν (1) ἄρτου γενέσθαι ἐνετείλατο. ταῦτα δὲ τὰ μέτρα ἕκαστον γόμορ ἐχώρει.

Երեք չափք նաշհոյ. զորս պատուիրեաց Աբրահամ Սարայի պատրաստել վասն Հրեշտակաց. և հրամայեաց նովին չափով նկանակս առնել : Եւ այսորիկ չափք մէն մի հաւասար են Գոմորի (2) :

Τὸ δὲ γόμορ δέκατον ἦν τοῦ μεγάλου μέτρου, τουτέστι τῆς ἀρτάβης, ὅ γίνεται ἑπτὰ ξέστων καὶ πέμπτον.

Իսկ Գոմոր (3) է տասներորդ մասն մեծի չափուն, այսինքն է՝ Արդուի. որ լինի եօթն Քսեստ, և հինգերորդ մասն միոյ Քսեստի :

Τρία κανᾶ χονδριτῶν, ἔνθα εἰώθασι τότε ἀποτίθεσθαι τοὺς χονδρίτας. ἔστι δὲ εἶδος ἄρτου εἰς δύο τεμνομένου.

Երեք խանք նաշհոյ. յորս սովորութիւն էր երբեմն դնել զնկանակս, որ էր տեսակ ինչ երկբաժին հացի :

(1) Թերևս ἐγκριφίας ἄρτου.

(2) Ծննդ. ԺԸ. 6. Ուր եբրայականն է Սատոն, և ոչ Գոմոր. և ըստ Թարգմանչաց մերոց Գրիւ: Սատոն ըստ Պետաւիոսի է երեսներորդ մասն Քոռի, և Գոմոր՝ հարիւրերորդ :

(3) Գոմոր մեծ ըստ Պետաւիոսի է նոյն ընդ Քոռի կամ ընդ Խօմէրի. իսկ փոքրն ընդ Ղօմէ

Νέβελ οἴνου, ὅπερ ἐστὶ μέτρον ξέστων ρν'.

Τὸ σάτον νς'. ξέστων ὑπάρχει.

Ἀλάβαστρον μύρου, βικίον μὲν ἐστὶν ὑέλινον, χωροῦν λίτραν ἐλαίου (2) τὸ δὲ μέτρον ἐστὶ ξέστου τὸ ἥμισυ. ἀλάβαστρον δὲ κέκληται διὰ τὸ εὔθρυπτον.

Καμψάκης ὕδατος, ιβ'. ξέστων ὕδατος ἐστὶ τὸ μέτρον. ὁ δὲ τῷ Ἡλίᾳ ἑτοιμασθεὶς καμψάκης, τεσσάρων ἐστὶ ξέστων.

Ἐστὶ τὸ μέτρον κοτύλη, ἥμισυ ξέστου ὑπάρχει. κέκληται δὲ κοτύλη ἀπὸ τοῦ τὸν ξέστην εἰς δύο κόπτεσθαι.

Κύαθος ἐστὶν ἕκτον ξέστου. μεδεκὼθ δὲ, λέγει τοὺς κυάθους ἡ γραφή. τὰ δὲ μασμαρὼθ λέγει τοὺς διϋλιστῆρας, οὓς καὶ ἠθμοὺς καλοῦμεν. τῷ αὐτῷ δὲ ὀνόματι ἀμφότερα κέχρηνται, ἐπεὶ καὶ τὴν αὐτὴν ἐνέργειαν ἔχουσι.

Τρυβλίον, ὀψόβαφον ἐστὶ τὴν πλάσιν, ἤτοι παροψὶς,

Նեբէղ գինւոյ, որ է չափ ՃԾ Քսեստաց։

Սատոն ունի ԾԶ քսեստ։

Աղաբաստր իւղոյ. է Բեկկիոն ապակեղէն (1). որ տանի Ա լիտր մի իւղ. և է չափ կէս Քսեստի։ Իսկ կոչեցաւ Աղաբաստր վասն դիւրաբեկութեանն ։

Կամփսակ ջրոյ. է չափ ԺԲ Քսեստաց ջրոյ։ Իսկ Կամփսակն պատրաստեալ վասն Եղիայի՝ (3) էր չորս Քսեստ ։

Կոտիւղ է չափ. և է կէս Քսեստ. և կոչեցաւ կոտիւղ վասն ընդ երկուս զՔսեստն բաժանելոյ ։

Կիւաթոս է վեցերորդ Քսեստի։ Մեդեկովթ (4) կոչէ զԿիւաթոսս գիրն, և Մասմարովթ զԴիւղիստերս. զորս և Իթմոսս կոչեմք. և երկոքին ևս վարին նովին անուամբ. քանզի և զնոյն ունին զօրութիւն ։

Տրիւբղիոն. անօթ է խոր և լայն, որպէս Պա-

ռի, որ և է հարիւրերորդ մասն մեծին ։

(1) Աղաբաստր ըստ Գետաւիոսի է քարեղէն. իսկ Բեկկիոն՝ խեցեղէն և ապակեղէն ։

(2) Յօրինակին ἔλαιον.

(3) Գ. Թագ. ԺԷ. 6.

(4) Մեդեկովթ ըստ Գետաւիոսի Թերևս է Մենակովթ. Երեմ. ԾԲ. 19.

ἥμισυ δὲ ξέστου τὸ μέτρον ἔχει.

Ξέστης ὁ Ἀλεξανδρινὸς δύο λιτρῶν φέρει ὁλκὴν ἐν τῷ ἐλαίῳ.

Ἀπόῤῥυμα δὲ παρὰ μόνοις Θηβαίοις μετρεῖται. ἥμισυ γὰρ τοῦ Σαΐτου ἐστίν. ὁ δὲ ἀληθινὸς Σαΐτης ξέστων ἐστὶν κβ'.

Σαβιθὰ, τοῦτο Συριατικόν ἐστι τὸ ὄνομα, ὃ ἑρμηνεύεται ληνιαῖον (1) ἄντλημα, παρὰ Ἀσκαλωνίταις ξέστων κβ'.

Ἶν, τὸ ἶν μέγα ξέστων ἐστὶ ιη'. τὸ δὲ ἅγιον ἶν ξέστων θ'.

Χοῦς ἐστὶ ξέστων η'. τὸ δὲ καλούμενον ἅγιον, ξέστων ϛ', ὅ ἐστι δωδέκατον μετρητοῦ.

Τάλαντον ἐστὶ τὸ ὑπερβάλλον πᾶν σταθμώμενον μέτρον, κατὰ δὲ τὸν ληρισμὸν (3) ρκέ. λιτρῶν ὑπάρχει.

Ἓξ λεπτὰ ταλάντου, ἑπτὰ ἀσσάρια. τὰ δὲ ἑπτὰ λεπτὰ τῶν ἀσσαρίων ρ'. ὑπάρχει δηνάρια.

բոփսիս. և ունի զչափ կէս Քսեստի։

Քսեստ ըստ Աղեքսանդրացւոց ունի զկշիռ երկուց Լտերաց իւղոյ։

Ապորրիւմայ չափ է միայն առ Թեբայեցիս. և է կէս Սայիտ։ իսկ Սայիտն ճշմարիտ՝ է իբ Քսեստ։

Սաբիթա. է սա բառ Ասորւոց, և թարգմանի չափ հնձանի. և է իբ Քսեստ առ Ասկաղոնացիս։

Հին. Հին մեծ՝ է ժը Քսեստ. իսկ Հինն սրբութեան՝ Թ Քսեստ։

Քուս է Ը Քսեստ. իսկ որ կոչին Սրբութեան՝ Զ Քսեստ. որ է երկոտասաներորդ մասն Մետրետեսի (2)։

Տաղանդն է մեծագոյն քան զամենայն չափս կշռոց. և ըստ կշռոյ Լտեր՝ է ճիե Լիտր։

Վեց Լեպտոն Տաղանդի՝ է եօթն Ասարիոն. և եօթն Լեպտոն Ասարիոնաց՝ է Ճ Դենար (4)։

(1) Պարտ է լինել λημνιαίον.
(2) Աստանօր՝ մինչև է աւարտել Եպիփանու զբան Չափուցն, սկսանի խօսել յաղագս Կշռոց։
(3) Թերևս λιτρισμόν.

(4) Ցայս բան Եպիփանու այնչափ մթութիւն նշմարէ Պետաւիոս, մինչև աղաղակել. Այսպէս շնորհս մատուցանէի, եթէ ոք ծանուցանէր ինձ զմիտս բանիցդ այ

Ὁ ἀργυροῦς δὲ ἐτυπώθη ἀπ' ἀρχῆς τὸ νόμισμα, ἐκ δὲ τῶν ἀσσαρίων τοῦτο ἐτυπώθη. φασὶ δὲ τὸν Ἀβραὰμ εἰς τὴν Χαναναίαν τὸν τύπον ἐννοχέναι.

Τοῦ δὲ ταλάντου τῶν ρκέ. λίτρα μία. ἡ δὲ λύτρα δεκαδύο οὐγγίαι ὑπάρχει. ἡ δὲ οὐγγία ἔχει στατῆρας δύο.

Ὁ δὲ στατὴρ ἥμισυ μὲν οὐγγίας, ἔχων δὲ δίδραγμα.

( Περὶ σίμου ) σίκλος, ὅ λέγεται καὶ κοδράντης, τέταρτον μὲν ἐστὶ τῆς οὐγγίας, ἥμισυ δὲ τοῦ στατῆρος, δύο δραγμὰς ἔχον. τῆς γὰρ οὐγγίας ἦν ἡ δραγμή.

Ἐκαλεῖτο δὲ ὁλκὴ ἡ δραγμὴ τοῦ ἀυτοῦ σταθμοῦ τῷ σίκλῳ τῷ σταθμίζοντι κατὰ καιρὸν τὴν τρίχα τοῦ Ἀβεσαλὼμ, ὅτε ἐκουρεύετο, ὁλκὴν ἔχουσαν ρκέ. σίκλων,

Արգիւրոն տպաւորեցաւ Դրահեկանն 'ի սկզբանէ. և տպաւորեցաւ նա յԱսսարիոնաց (1). զԱբրահամ ասեն մուծանել զտիպ նորա յերկիրն Քանանացւոց:

Հարիւր քսան և հինգերորդ մասն Տաղանդի՝ է Լիտր մի: Իսկ Լիտր է երկոտասան Ունկի: Եւ Ունկի է երկու Ստատեր:

Եւ Ստատեր՝ որ է կէս Ունկոյ, է Դիդրաքմայ (2) մի:

Յաղագս Սիմոսի (3): Սիկղ, որ կոչի և Կոդրանտ, է չորրորդ մասն Ունկոյ, և կէս Ստատերի, և երկու Դրաքմէ. քանզի Դրաքմէ ութերորդ մասն է Ունկոյ:

Եւ կոչեցաւ Դրաքմէ Սկիւ նովին կշռով Սիկեղ, որով կշռէին ըստ ժամանակին զհերս Աբիսողոմայ՝ յորժամ փոքրէր. և էր կշիռ նորա Ճիե

դոյինկ: Եւ յաւելու ասել. Ըստ Հեսիւքիոսի Ղեփտոն և Ասսարիոն են վեցհազարերորդ մասն Տաղանդի:

(1) Ըստ Պետաւիոսի պարտ է լինել 'ի փոխ Ասսարիոնաց:

(2) Չորեքդրամեան Դիդրաքմայ ըստ Պետաւիոսի, և ոչ Երկդրամեան:

(3) Յաղագս Սիմոսի: Այս վերնագիր յանդէպս, և վրիպակաւ դնի 'ի բանս Եպիփանու, եթէ չիցէ մուծեալ 'ի տխմարաց: Զի զի՞նչ պէտք են վերնագիր դնել աստանօր միայն, և ոչ այլուր. Թող զի՝ որպէս ծանուցանէ Պետաւիոս, σίμου պարտ է լինել σίκλου, զի է նա վերնագիր Սիկեղ, և ոչ Սիմոսի:

ὅ ἐστιν οὐγγία σίκλου ἑνὸς, γινομένη λίτραι δύο ἥμισυ.

Սիկղ, որ է Ունկի Սկեղ միոյ. որ առնէ երկու] լիտր և կէս (1)։

Ὀβολὸς, καὶ αὐτὸς ἐν ἀργυρίοις τετύπωτο. μέτρον δὲ εἶχε καὶ οὗτος τῆς οὐγγίας, οὐκ ἐξ ἀργύρου πεποιημένος, ἀλλὰ ἀπὸ σιδήρου. ἦν δὲ καὶ ἕτερος ὀβολὸς ἐξ ἀργύρου τυπούμενος, νόμισμα ὤν, ὃ ἦν λεπτότατον, ὀγδοηκοστὸν τῆς οὐγγίας. λέγει γὰρ ἐν τῷ Λευιτικῷ, τὸ δὲ δίδραγμον εἴκοσι ὀβολοί. ὅτι δὲ, τέταρτον ἐστὶ τῆς οὐγγίας τὸ δίδραγμον, ἤδη ἐδιδάξαμεν.

Ոբողոս. և նա յԱրգիւրիոնս (2) տպաւորեցաւ. և ունէր զչափ Ունկոյ. ոչ յարծաթոյ արարեալ, այլ՝ յերկաթոյ։ Կայր և այլ Ոբողոս՝ յարծաթոյ տպաւորեալ, Դահեկան փոքրիկ. ութսներորդ մասն Ունկոյ. քանզի ասի 'ի Ղևտականն. Դիդրաքմայն քսան Ոբողոս (3). վասն զի Դիդրաքմայն չորրորդ մասն է Ունկոյ, որպէս ասացաք։

Χαλκοὶ, τούτους οἱ Αἰγύπτιοι ἐφεύροντο. ἀργύρια δὲ ἐστὶ τετυπωμένα δύο, καὶ παρὰ Ἀλεξανδρεῦσι τὰ ἀργύρια καλοῦνται χάλκινα. ἔστι δὲ ὁ χαλκοῦς τῷ σταθμῷ ὄγδοον οὐγγίας, ὡς ἡ δραγμή.

Քաղկոսք. զայսոսիկ Եգիպտացիք գտին. արծաթի տպաւորեցան երկու. և Աղեքսանդրացիք զԱրծաթիս կոչեն Քաղկոսս։ Եւ է կշիռ Քաղկոսին ութերորդ մասն Ունկոյ, որպէս և Դրաքմէի (4)։

Μνᾶς, ἥτις τῇ Ἑβραΐδι μνήμη καλεῖται. ἡ δὲ Ἰταλικὴ μνᾶς τεσσαράκοντα

Մնաս, որ կոչի եբրայեցերէն Մնիմի (5)։ Իսկ Մնասն ըստ Իտալացւոց՝

(1) Ազաւաղեալ են այս բանք Եպիփանու ըստ Պետաւիոսի։

(2) Իմա՛ յարծաթիս։ Բայց ըստ Պետաւիոսի Արգիւրիոն նշանակէ աստանօր զամենայն ազգ դրամոց, նա և զպղնձի։

(3) Ղևտ. իէ. 25.

(4) Քաղկոս կամ Պղնձի՝ ասէ Պետաւիոս, ըստ Պողուկսի է ութերորդ մասն Ոբողոսի, և ըստ Սուիդասայ՝ վեցերորդ. որ և է ընդհանուր անուն, և նշանակէ զպղնձի, զարծաթի և զոսկի դրամս, և զկշիռս նոցա։

(5) Մին կամ Մանէհ ըստ Եբրայեցւոց։

στατήρων ἐστὶν, ὅπερ οὐγγίων κ'. λίτρας μιᾶς καὶ διμίρου.

Ἀργυρίων δὲ πολλοὶ τύποι κατὰ καιροὺς γεγόνασι.

Τὸ δὲ νουμίον τετύπωται ἀπὸ τοῦ Νουμᾶ τινος βασιλέως τῶν Ῥωμαίων.

Δίχρυσον δὲ ἐκάλουν οἱ παλαιοὶ τὸ ἥμισυ τοῦ ἀργύρου.

Τὸ δὲ ἄργυρον, τοῦτο ἐστὶν ὅ οἱ Ῥωμαῖοι μιλιαρίσιον καλοῦσιν, ὅ ἑρμηνεύεται στρατιωτικὸν δόμα.

Τὸ δὲ δίχρυσον καὶ τοῦτο ἀργύριον ἦν, ὅπερ ὕστερον κίβδηλον ἐκλήθη, ἐξ αἰτίας τοῦ ἀναιρεθῆναι τὸν κατὰ καιρὸν βασιλέα, καὶ ἐκβληθῆναι τὸν αὐτοῦ χαρακτῆρα ἐκ τοῦ διχρύσου, ὅς ἦν αὐτῷ ἐμφερόμενος. ἔκτοτε γὰρ ἔνθα ἂν εὑρέθη τὴν τοῦ ἀναιρεθέντος βασιλέως φέρων εἰκόνα, κίβδηλος ὠνομάζετο, ἤγουν ἀδόκιμος.

Φόλης, ὅ καὶ ταλάντιον καλεῖται. διπλοῦν δὲ ἐστὶν,

է քառասուն Ստատեր, այն է՝ Ի Ունկի. որ է Ա լիտր մի, և ութ Ունկի։

Արգիւրոնաց բազում տիպք եղեն յայլևայլ ժամանակս։

Իսկ Նումիոն տպաւորեցաւ ՚ի Նումայէ ումեմնէ՝ որ էր թագաւոր Հռովմայեցւոց։

Դիխրիւսոն (1) կոչեցին նախնիքն զկէս Արգիւրոնի։

Եւ Արգիւրոն այն է՝ զոր Հռովմայեցիք Մեղիարիսիոն (2) կոչեցին. որ և թարգմանի Զինուորական պարգև։

Դիխրիւսոն. և նա արծաթի է. որ զկնի կոչեցաւ անհարազատ՝ ՚ի պատճառս սպանանելոյ զոմն արքայ, և ջնջելոյ զպատկեր նորա ՚ի Դիխրիւսոնէ անտի՝ յորում էր նա տպաւորեալ. և յայնհետէ այն դրամ՝ որ ունէր զպատկեր արքային սպանելոյ, անուանեցաւ անհարազատ, միանգամայն և անփորձ։

Փոլ, որ և Տաղանդիոն կոչի, է կրկնակի՝ ՚ի կրկին

(1) Դիխրիւսոն Երկոսկի լինի ըստ Հայումս։

(2) Մեղիարիսիոն կամ Մեղիարիս ըստ Պետաւիոսի էր փոքրիկ դրամ արծաթի իբրև ըղ-Ղեփտոն։

ὑπὸ δύο ἀργύρων συγκείμενον, οἵ γίνονται σμή. δηνάρια, καὶ φόλης δύο λεπτοὶ κατὰ τὸν δηναρισμόν. ἀλλ' οὐ κατὰ τὸν ἀργυρισμόν.

Μάρης, μέτρον ἐστὶ παρὰ Ποντικοῖς, δύο ὑδριῶν, ἡ δὲ ὑδρία αὐτοῖς δέκα ξέστων ἐστὶν, ὥστε εἶναι τὸν κύπρον εἴκοσι ξέστων Ἀλεξανδρεινῶν.

Κύπρος παρὰ τοῖς αὐτοῖς Ποντικοῖς μέτρον ἐστὶ ξηρῶν γεννημάτων, μόδιοι δύο, ὅ λέγεται εἶναι παρ' αὐτοῖς χοινίκων πέντε. ὁ δὲ χοίνιξ παρ' αὐτοῖς ξέστων ἐστὶ πέντε, ὥστε εἶναι τὸν κύπρον ξέστων κ'. ὁ γὰρ μέγας παρ' αὐτοῖς μόδιος ξέστων κδ'.

Κόλλαθον ἐστὶ παρὰ τοῖς Σύροις τὸ ἥμισυ τοῦ ὑγροῦ σάτου. ἐστὶ δὲ ξέστων κέ.

Κογγιάριον δὲ μέτρον ἐστὶν ὑγροῦ, καὶ αὐτὸ παρ' Ἑβραίοις ἐκφωνούμενον. τοῦτο τὸ μέτρον ἐστιν ἐν χρονογραφίαις Εὐσεβίου, καὶ τῶν ἄλλων χρονογράφων δηλούμενον, ὡς ἕκαστος τῶν τότε βασιλέων κατὰ φιλοτιμίαν τῷ δήμῳ Ῥωμαίων,

Արգիւրոնաց բաղկացեալ. որ լինի ՄԸ Դենար։ Իսկ է փողն՝ երկու Լեփտոն ըստ կշռոյ Դենարի, այլ ոչ Արգիւրոնի (1)։

Մարիս չափ է առ Պոնտացիս՝ երկու Հիդրիա. իսկ Հիդրիա է Ժ Քսեստ առ նոսա, մինչև լինել Կիւպրոսի (2) քսան Քսեստ ըստ Աղեքսանդրացւոց։

Կիւպրոս է չափ ցամաքեղինաց առ նոյն Պոնտացիս՝ Երկու Մոդ. զոր և ասեն լինել առ նոսա հինգ Քինիկս։ Իսկ Քինիկս առ նոսա՝ է հինգ Քսեստ. մինչև լինել Կիւպրոսի Ի Քսեստ. քանզի մեծ Մոդն առ նոսա՝ է ԻԴ Քսեստ։

Կողաթոն է չափ հեղանիւթոց առ Ասորիս՝ կէս Սատոն. և է ԻԵ Քսեստ։

Կոնգիարիոն է չափ հեղանիւթոց. որ և լսի առ Եբրայեցիս (3). և է նա չափ յիշատակեալ 'ի ժամանակագիրս Եւսեբեայ, և այլոց 'ի ժամանակագրաց, թէ զիարդ իւրաքանչիւր թագաւորք այնր ժամանակի պատուասիրու-

(1) Աստանօր դարձեալ սկսանին բանք Եպիփանու յաղագս Չափուց։

(2) Պարտ է լինել Մարիսի։

(3) Իմա առ Հրէայս առ ժամանակօք Եպիփանու։

πρὸς εὐφρασίαν ἐχαρίζοντο, ὅ ἑρμηνεύεται συνημμένον, ἢ συνεστραμμένον.

Թեան աղագաւ տային զայն 'ի պարգեւս յուրախութիւն ժողովրդեանն Հռովմայ. որ թարգմանի համախմբեալ:

ΤΕΛΟΣ.

ՎԱԽՃԱՆ.

# ԱՆԱՆԻԱՅ ՇԻՐԱԿՈՒՆՈՅ

## ՀԱՄԱՐՈՂԻ

## ՅԱՂԱԳՍ ԿՇՌՈՑՆ ԵՒ ՉԱՓՈՑ (1)

---

## ՅԱՂԱԳՍ ԿՇՌՈՑ

### Յաղագս Ասարիոնի (2), Լեպտոնի (3), և Դանգի (4)։

Աշխու ը Դարեհատաց կոչի Ասարիոն. (5) իսկ ըստ Հելլենականին Լեպտոն (6) կոչի. բայց ըստ Եբրայեց-

(1) Յեօթանց անտի օրինակաց Չափուց և Կշռոց Շիրակացւոյն՝ զորս ունիմք առ մեզ, ա. օրինակն ունի զայս վերնագիր սխալագիր. Անեայ Շիկացւոյն Համարողի վասն Կշռոյն: Որ և զկնի Կշռոյն յաւելէ զՉափս՝ առանց երկրորդելոյ զանուն հեղինակին, եդեալ առանձին վերնագիր այսպէս. Յաղագս Չափոյ: Նոյնպէս և բ. օրինակն ունի զնոյն վերնագիր, բայց ուղղագոյն ևս՝ այսպէս. Անանիա Շիրակունւոյ Համարողի վասն Կշռոյն: Իսկ այլք են անվերնագիր: բ. և գ. որք ոչ ունին զՉափս, զկնի Կշռոց դնեն և յաւելուած ինչ, որպէս կարծեմք՝ արարեալ 'ի յետնոց: Նոյնպէս ունի և գ. իսկ դ. և ե. յառաջ քան զԿշիռս և զՉափս դնեն և զԱսպարէսական Չափս Խորենացւոյն, ոմն վերնագրով. Յաղագս ընթացից արեգական, և համարոյ Չափոյն: Մեք զա. օրինակն դնեմք աստանօր՝ ուղղագրեալ զայն բաղդատութեամբ այլոց օրինակաց, և մեկնաբանեալ հանդերձ համառօտ ծանօթութեամբք:

(2) ա. Ասարիոնի. բ. Ասարոնի. գ. Ասարիոնին:

(3) ա. Ղոբտոնի. բ. Ղիփտոնի. գ. Լիբտոն:

(4) գ. Դանկի:

(5) Յոյն ἀσσάριον. ա. և է. Ասարիոն. բ. Ասարոն. գ. Ասայիոն:

(6) Յոյն λεπτόν, որ նշանակէ՝ բնիւն, լուծայ, նուազարակիփ, տանգ, պղինձ, խեցեւէն, և այլն: ա. Ղիբտոն. բ. և գ. Ղեփտոն:

ւոյն (1) Նուազութիւն, որ է Ունսօր. և ըստ Հայումս կոչի Դանգ (2)։

### Յաղագս Փշտէ։

Աշխու Գ Դարեհատաց ըստ Պարսկական լեզուի կոչի Փշիտ։ (3)

### Յաղագս Կերատէ։

Աշխու Գ Դարեհատաց լինի միոյ Կերատի (4) կշիռ։

### Յաղագս Սէնգէ (5)։

Աշխու Ե Կերատաց կոչի Սինգ։ (6)

### Յաղագս Գրամարէ։

Աշխու Գ Կերատաց լինի Գրամար (7) մի։

### Յաղագս Տրմսէ (8)։

Աշխու Ը Կերատաց լինի Տրմէս (9) մի։

(1) Մարիանոս Յոնեան 'ի դիրս Չափուց և Կշռոց համարի, թէ բառս Ասսարիոն եղանէ յԵբրայական բառէս Ղասէրէթ, որ նշանակէ տասներորդ. և է ևս անուն չափոյ. և թէ՛ յԱսսարիոնէ ծագեալ իցէ Լատին բառս Assis կամ Assarium, որ է տասներորդ մասն Դենարի ըստ Հռովմայեցւոց։ Թերևս զայսնուազութիւն կշռոյ ակնարկէ Շիրակացին՝ յասելն ըզ-Ասսարիոն նուազութիւն կամ անօսր ըստ Եբրայեցւոց։

(2) Պարսկերէն Տանգ կամ Տանկ, և 'ի մեզ՝ Դանգ կամ Դանկ։

(3) Պարսկերէն Փէշիզ կամ Փէշիզ։ ա. Փշտիկ. գ. Փշտի։ Երկոքին ևս վրիպակք գրչի. զի այս բառ յՈւղղական հոլով է Փշիզ, և 'ի Սեռականն Փշզի։

(4) Կերատ՝ Յոյն κεράτιον, և Պարսկերէն Ղիրատ. և նշանակէ եղջիւր կամ խռիղ եղջեր։

(5) ա. Սինկի. բ. Սիգի։

(6) Պարսկերէն Սէնկ է անուն կշռոյ։ ա. Սինկ. գ. Սիկ. որպէս և 'ի լուսանցս Սիգ։

(7) Յոյն γραμμάριον. ա. Գրար. գ. Գրամարի։

(8) ա. Տրմսի։

(9) Պարսկերէն Թէրմէսէ։ բ. Տրմեսի. գ. Տրմես։

## Յաղագս Սեմսի (1) ։

Կշիռ ժբ կերատաց լինի Սիմէս (2) մի ։

## Յաղագս Դահեկանի ։

Կշիռ իդ կերատաց լինի Դահեկան (3) մի ։
Իսկ մանր բաժանեալ զԴահեկանն՝ լինի Սիմէս բ, Տրմէս գ, Դրամար (4) դ, Սինգ (5) զ, Կերատ իդ, Փշիտ (6) լբ, Դանգ իը, և Դարեհատ (7) ղզ ։

## Յաղագս Սատերի և Դրամի ։

Կշիռ Սիմէսի և Դրամարի (8) կոչի ըստ Եբրայեցւոցն Սատեր (9). և ըստ Հելլենականին Ոբողոս (10). և ըստ Եգիպտացւոց Քաղկոս (11). վասն զի Աղեքսանդրացիք զԱրծաթն (12) Քաղկիմա (13) կոչեն ։ Իսկ ըստ հասարակաց խօսից կոչի Դրաքմէ (14) ։ Որ է ը մասն Ունկոյ (15) ։ Իսկ ըստ Հռովմայեցւոցն Կապետոն (16) կոչի. վասն զի Կապու (17) Գլուխ լսի. քանզի Օգոստոս կայսր եդ հարկս ըստ գլխոյ Դրաքմէ մի (18) ։

(1) ա. Սիմիսի ։
(2) Լատին Semis.
(3) Պարսկերէն Տէհկէանի ։
(4) գ. Գրամարտ ։
(5) ա. և բ. Սինկ ։
(6) գ. Բշիտ ։
(7) ա. և գ. Գարէհատ ։
(8) գ. ունի. Կշիռ գ Գրամարի ։
(9) Սատեր է բառ Լատին stater, և Յոյն στατήρ. իսկ Եբրայեցերէն կոչի Շէգէլ, այն է՝ Սիկղ ։
(10) Յոյն ὀβολός, որ է Դանգ ։
(11) Յոյն χαλκοῦς, Պղինձ ։
(12) Զօր և է դրամ ։
(13) Յոյն χάλκινα, Պղնձեայ ։
(14) Յոյն δραχμή, Դրամ կամ Տրամ ։
(15) ա. և գ. Նուկոյ ։
(16) Լատին բառն է capitum, գլխոյ (իմա Հարկ գլխոց, կամ Գլխահարկ) ։ ա. և գ. Կապիտոն. բ. Կապէտոն ։
(17) Պարզ է լինել Կապուտ, զի Լատինն է caput, գլուխ ։
(18) Թերևս իմանայ զԵրկդրամեանն՝ զոր պահանջէին 'ի Պետրոսէ հարկահանք կայսեր, որպէս կարծեն ոմանք ։

## Յաղագս Սկեղ (1) և Մետի:

Կշիռ Դահեկանի և Միմեսի (2) կոչի ըստ Եբրայեցւոցն Սիկղ (3). և ըստ Հելլենականին Մէտ (4). և ըստ Հռովմայեցւոցն Մեղիարիս (5). և ըստ Հայոց Փորչէ (6): Որ է Զ մասն Ունկոյ. և ունի ԼԶ Կերատաց կշիռ:

## Յաղագս Ունկոյ (7):

Կշիռ Զ Դահեկանի լինի Ունկի (8) մի:
Եւ մանր բաժանելով զՈւնկին՝ լինի Սիկղ Դ, Դահեկան Զ, Սատեր Ը, Միմես ԺԲ, Տրմես ԺԸ, Դրամար ԻԴ, Սինգ ԼԶ, Կերատ ՃԽԴ, Փշիտ ՃՂԲ, Դանգ ՄՁԸ, և Գարեհատ ՇՀԶ:

## Յաղագս Լիտեր:

Կշիռ ԺԲ Ունկոյ կոչի Լիտր (9). և Թարգմանի ըստ Հռովմայեցւոց լեզուին Հարթութիւն. բայց անուանի յամենայն լեզուաց Լիտր (10):

Եւ մանր բաժանեալ զԼիտրն՝ լինի Ունկի ԺԲ, Սիկղ ԽԸ, Դահեկան ՀԲ, Սատեր ՂԶ, Միմես ՃԽԴ, Տրմես ՄԺԶ, Դրամար ՄՁԸ, Սինգ ՆԼԲ, Կերատ ՌՉԻԸ, Փշիտ ՍՅԴ, Դանգ ՎՆԾԶ, և Գարեհատ ՑՋԺԲ:

## Յաղագս Մնասի:

Մնասն ըստ Իտալացւոցն ԻԴ Ունկեաց կշիռ է. որ

(1) ա. Սկեղի:
(2) ա. Դահեկանի և կիտոյ:
(3) Եբրայեցերէն Շէքէլ: ա. Սկեղ. բ. Սիկլ. գ. Սիղկ:
(4) Թերևս 'ի բառէս μέτρον, չափ:
(5) Լատին milliarensis կամ millenarius, Յոյն μελιαρίσιον, հազարերորդ (մասն):
(6) Նշանակութիւն այսր բառի անծանօթ է մեզ, զի չգտանեմք այլուր:
(7) ա. Ունկւոյ. գ. Նիկոյ:
(8) Լատին uncia, և Յոյն οὐγγία. գ. Նուկի:
(9) Յոյն λίτρα, Լատին libra, որ նշանակէ կշիռ, հաւասարութիւն, և հարթութիւն: ա. Լիտրը. բ. Լտերն:
(10) Այս բառ գրեթէ զնոյն

լինի Գ Լիտր և կէս (1), և Ը Ունկի. և ըստ Եբրայեցւոց Մնասն Արծաթի Թարգմանի (2). և ըստ Եբրայեցւոց Բ Լիտր և կէս (3)։

## Յաղագս Նոմիսմայի։

Նոմիսմայ (4) ըստ Հռովմայեցւոցն Դահեկան անուանի. վասն զի Նոմիսմայ (5) անուն էր Թագաւորի, և ըստ իւրում անուանն Նոմիսմայ անուանեաց (6)։

## Յաղագս Կենդինարի։

Կենդինարն Ճ Լիտր է. և անուանեցաւ ըստ Հռովմայեցւոց լեզուին (7). զի Կենդու (8) Ճ լսի. և է Կենդինարն (9) ՌՄ Դահեկան։

Իսկ մանր բաժանելով զԿենդինարն (10), լինի Ունկի ՌՄ, Միկղ ՌՊ, Մատեր ՔՌ, Միմես ԺԴՌԴՃ, Տրմես ԻՏՌՌ, Դրամար ԻԸՌՊ, Մինգ ԽԴՌՄ, Կերատ ՃՀԲՌՊ, Փշիտ ՄԼՌՆ, Դանգ ՋԽԵՌՌ, և Դարեհատ ՈՂՏՌՄ։

հնչումն ունի յամենայն լեզուս՝ սակաւիկ ինչ տարբերութեամբ։

(1) Բ. և Գ. ունին միայն՝ Գ Լիտր։

(2) Մնաս՝ Յոյն μνᾶ կամ μνᾶς, և Եբրայեցերէն Մէն կամ Մանէհ, որ և թարգմանի Համր կամ Հանգամ։ Թերևս կարի ասել թէ Մնասն առ Եբրայեցիս նշանակէ զմասն, կամ զայսչափ գումար ինչ դրամոց։

(3) Բ. ունի. Ըստ Թեբայեցւոց Բ Լտերք և կէս։

(4) Յոյն νόμισμα կամ νοῦμμος, և Լատին numisma կամ nummus, Դահեկան կամ Դրամ կէնփէաւ։

(5) Պարտ է լինել Նումա ըստ Եպիփանու. Լատին Numa, և Յոյն Νουμᾶ. որ էր անուն երկրորդ Թագաւորի նախնի Հռովմայեցւոց՝ կոչեցեալ Նումա Պոմպիլիոս։

(6) Առնու զայս բան յԵպիփանէ, որ ըստ Պետաւիոսի չունի ինչ հաստատութիւն։

(7) Լատին centinarius, հարիւրեակ կամ հարիւրաւոր. Յոյն κεντηνάριον.

(8) Լատին centum, հարիւր։ ա. Կենդիու. գ. Կենդու։

(9) ա. Կենդարն. գ. Կենդինարն։

(10) ա. զԿենդարն։

## Յաղագս Դրամի (1)։

Դրամ ըստ Պարսկական լեզուի անուանեցաւ (2). և յարծաթ ոչ տպաւորեցաւ (3). որ է Ճ մասն (4) Լտեր։ Եւ Սատեր Դ Դրամոց կշիռ (5)։ Եւ Պայուսանիկն (6) Ծ Լիտր է. որ է Ռ Սատեր. որ լինի Ռ Դրամակշիռ և Թիւ (7)։

## Յաղագս Տաղանդի։

Տաղանդն (8) ՃԿԵ Լիտր է։ Զսա Թուողք Մոնադ (9) կոչեն։

Եւ մանր բաժանելով զՏաղանդն՝ լինի Ունկի ռչ, Սիկղ Յ, Սատեր ժբռ (10), Սիմէս ժըռ, Տրմէս իէռ, Դրամար լզռ, Մնգ ծզռ, Կերատ բՃժզռ, Փշիտ բՃծըռ, Դանգ զՃլբռ, Դարեհատ ըՃկզռ։ Եւ լինի Տաղանդն Դահեկան Ք։

## Յաղագս Քանքարի։

Քանքարն (11) ՃԼԸ Լիտր է (12)։

(1) Այս բառ հոլովեալ դրամ, դրամի՝ նշանակէ զկշիռ. իսկ դրամ, դրամոյ՝ զդահեկան։

(2) Պարսկերէն Տիրէմ կամ Տիրհէմ։

(3) Գ. Արծաթ ոչ տպաւորեցաւ. Ա. օրինակն զոգցես ունէր յարծաթոյ տպաւորեցաւ։

(4) Բ. ՃԲ մասն Լտեր։

(5) Բ. ունի. Սատերն Ա Դրամակշիռ է, և Բ կուռ։

(6) Այս բառ անծանօթ է մեզ. Թերևս իցէ նուազական ձայնն Պայուսակ, որ է քսակ. և եդեալ փոխանակ գումարի ինչ դրամոց։

(7) Բ. դռ դրամակշիռ և Թիւ։ Գ. Ռ դրամի կշիռ և Թիւ։ Այլ այս հատուած յաղագս դրամի՝ Թուի մեզ լինել միջանկեալ ինչ, և կամ 'ի յետնոց մուծեալ 'ի բանս Շիրակացւոյն։

(8) Յոյն τάλαντον. զոր Եբրայեցիք կոչեն Քիքար. յորմէ և 'ի մեզ Քանքար։

(9) Յոյն μονάς, μόναδος, Մոնաս, Մոնադ կամ Մոնակ։ Ա. Մոնոթադ. Գ. Մոնակ։

(10) Յետագայքդ պակասին 'ի Ա. մինչև ցԴարեհատ։

(11) Եբրայեցերէն Քիքար. զոր Յոյնք կոչեն τάλαντον. յորմէ 'ի մեզ Տաղանդ։ Թարգմանիչք մեր 'ի հին Կտակարանս՝ ուր եբրայական բնագիրն է Քանքար, զնոյն հանդէպ նորա Տաղանդ. իսկ 'ի հին և 'ի Նոր Կտակի՝ ուր յունական բնագիրն է Տաղանդ, զնոյն Քանքար։ Եւ զի կրկին բառք են առ մեզ, և ոչ միակ՝ ըստ Եբրայեցւոց և Յունաց, նմին իրի և Շիրակացին առանձին կշիռ ընծայէ երկաքանչիւր նոցա։ Զոր րոց զքննութիւն անա յերկոսին բառսդ։

(12) Ա. Ասատնոր աւարտէ զբան

Այս մանր բաժանեալ զՔանքարն՝ լինի Դահեկան ԹՌՋԼԴ (1), Միտքս ԺԹՌՊՀԸ, Տրմքս ԻԹՌՄԸ, Դրամար ՎՃՂԷՌԽԴ, Մինգ ԵՃՂՎՌԺԴ, Կերատ ԸՃԼԸՌՆԿԴ, Փշիտ ՎՃԺԷՌՋԾԸ, Դանգ ՎՃՀՎՌՋԻԸ, և Դարեհատ ԹՃԾԴՌՊԾԴ։

Այս համաքեալ զամենայն մասունս Քանքարի՝ լինի Դահեկան ՔՋԼԴ (2)։

կշռոյն ։ Գ. յաւելու. ՃԼԸ Լիտր, և չէս եւրեալ, և ունեփանեալ։

(1) Գ. Բիւր։

(2) Աստանօր աւարտին բանք կշռոց Ա. և Գ. օրինակաց։ Իսկ Բ. յաւելու զյետագայ բանսդ։ * Ունկի, որ է Ունծայ. Կերատ, որ է Կուտ. Սատեր, որ է ԺԴ Կուտ. Լիտրայ, որ է Լողարիկոն, ՀԲ Մթխալ. Դրամն ԺԴ Կուտ է. Մթխալն ԻԴ Կուտ է. Դահեկանն մի ոսկի է. որոյ կշիռն յամենայն ազինս մի և նոյն է. և թէ ուրեք գտանիցի պակաս, արտաքոյ քանակի ոսկւոյն է. զոր և գաղտ անուղղայք արարեալ են։ Նուկին Գ Դահեկան է. Լիտրն ԺԲ Նուկի է, որ լինի ՀԲ Դահեկան. Սատերն Ը մասն է Նուկոյն. և Դահեկանն 'ի Գ մասունս բաժանեալ, և մի մասն պակասեալ՝ Բ մասունս լինի Սատեր մի. և Սիկղ չորրորդ մասն է Ունկոյ, որ է Դահեկանի կիսոյ չափով. Կենդինարն Ճ Լիտր է, որ է ԷՌՄ Դահեկան. Տաղանդն ՃԿԵ Լիտր է, որ լինի ԹՌ Դահեկան։ Գրեցաւ Կշռոց անուանքն, չափքն, քանիքն, թիւքն, մասունքն, որպիսութիւնքն, հանդամանքն։ Փոքր արարչին ԱՅ ‖։ 'Ի նոյն Գ. օրինակն գտանի և այլ յաւելուած ինչ առանձին վերնագրով՝ այսպէս. * Որպիսութիւնք Կշռոց՝ որք յիշին 'ի Սուրբ գիրս, պարզ մեկնութեամբ ստուգեալ։ Սիկղն և Երկդրամեանն և Դիդրաքմայն Բ Դրամ են. և Բ Դրամն Ե Դանկն է. և Դանկն Բ Գարեհատ է. և Ժ Դանկն Դրամ մի է. Ի Դանկն Բ Դրամ, որ է Սիկղ մի. Ծե Սիկղն Մնաս մի է. Մնասն Ճ Դրամ է. վաթսուն Մնասն Քանքար մի է, որ է ՎՌ Դրամ. Քանքարն և Տաղանդն նոյն է. Սատերն Գ Դրամ է ‖։ Այլ մեք զամենայն վրիպանս գրչաց եօթնեցունց օրինակացդ 'ի հաշիւս անդ Կշռոց Շիրակացւոյն՝ ոչ կամեցաք մի ըստ միոջէ նշանակել, իբրև անօգուտ ինչ. բայց գնեմք աստանօր զՃիշդ աղիւսակ նոցա յօրինեալ 'ի մինջ բաղդատութեամբ ամենայն օրինակաց նորա. և այն՝ Արաբացւոց թուանշանօք, 'ի դիւրութիւն համարակաց։ Այն զի հայկական տառիւքս կամ թուանշանօքս այլ և այլ եղանակաւ գրեն զնոսա գրչագիր օրինակք մեր։

# ՑԱՂԱԳՍ ՉԱՓՈՒՑ (1)

## Յաղագս Քսեստի:

Չափ առաջնորդ Չափուց Քսեստ (2). և այսպէս ամենայն լեզուք անուանեն (3). բայց ըստ աշխարհաց աշխարհաց (4) այլ և այլ չափ է: Ըստ Աղեքսանդրացւոց և Իտալացւոց և Պոնտացւոց բ̅ Լտերաց կշռորդ է. ըստ Կաստրացւոց իբ̅ Ունկեաց կշռորդ (5). իսկ 'ի Նիկոմիդիա ի̅ Ունկեաց կշռորդ է: Բայց ըստ Հելլենականին Քսեստն սակաւ ինչ պակաս է 'ի բ̅ Լտերաց կշռորդէ (6):

## Յաղագս Կոտիւղի:

Կոտիւղ (7) կոչի Քսեստին կէսն:

## Յաղագս Տրիփղոնի (8) և Պարապսի:

Տրիփղոն (9) Ակաւառակ է բոլորակ և խոր. նոյն և Պարոպսիդոս (10) կոչի. և ունի կէս Քսեստի:

(1) Ա. Վասն Չափուց:
(2) Յոյն ξέστης, Լատին Sextus, Վեցերորդ:
(3) Գ. և Ե. Քսեստ ըստ ամենայն լեզուաց կոչի:
(4) Գ. և Ե. Ըստ գաւառի գաւառի:
(5) Ա. սխալագրութեամբ ունէր. Կապպադոկացւոց իբ Ունկեաց կշռորդ:
(6) Ողջոյն այս հատուած յաղագս Քսեստի՝ բազմօք խաթարեալ էր 'ի Ա. զոր մեք ըստ կարի ջանացաք ուղղագրել՝ համեմատութեամբ Գ. և Ե. օրինակաց:
(7) Յոյն κοτύλη.
(8). Ա. Տրիփողոնի:
(9) Յոյն τρυβλίον, որ ըստ ճիշդ տառադարձութեան լինի Տրիւբղիոն:
(10) Յոյն παροψίς, παροψίδος. 'ի Հայումս գնի 'ի սեռական հոլովն: Ա. Պարապսիդոս:

### Յաղագս Բեսինի:

Բեսին է (1) բոլորակ Ապակեղէն. ունի կէս Լիտր. և կոչի ըստ Հայոց Շիշ (2):

### Յաղագս Պիմճնիայի:

Պիմճնիայ (3) Ապակեղէն պարզ. Դ մասն Քսեստի:

### Յաղագս Պեղլեոյ կամ Պեդդեոյ:

Պեղլիկս կամ Պեդդիկս (4) կրկին Ապակի է, և ունի նոյնչափ Դ մասն Քսեստի:

### Յաղագս Կապսակի:

Չափ չորից Քսեստաց կոչի Կապսակ (5). զոր Հայն Սրուակ ասէ:

### Յաղագս Քուղայի:

Չափ Դ Քսեստի ըստ Եբրայեցւոցն կոչի Քուղայ (6). որ է ԺԲ մասն Արդուի:

(1) Յոյն Βικίον, բէկիոն' ըստ Եպիփանու: Բայց թէ զիարդ Բեսին լեալ իցէ 'ի Հայսումս, չունիմք ինչ ասել հաւաստի:

(2) Գ. և Ե. ունին. Շիշ իւղոյն որ յԱւետարանին' Բեսին է, բոլոր ապակեղէն. ունէր կէս Լիտր:

(3) Զայս բառ չգտաք' ոչ յԵպիփան, և ոչ այլուր:

(4) 'Ի սխալագիր օրինակն Ա. ոչ կարացաք տիրապէս որոշել' Պեղլիկս արդեօք, եթէ Պեդդիկս իցէ գրեալ այս բառ. Նոյնպէս և 'ի վերնագրի անդ զսեռական նորա. վասն որոյ և մեք զերկոսին ես եդաք: Այլ որպէս զՊիմճնիայ, նոյնպէս և զսա ոչ գտաք այլուր. նմին իրի և ոչ եմք հաւաստի ընդ ուղղութիւն գրչութեան նոցա:

(5) Յոյն καψάκης կամ καμψάκης. Ըստ թարգմանչաց մերոց Կամփսակ: Գ. և Ե. Կափսակ:

(6) Յոյն χοῦς, Քուս կամ Քուղ յուղղականն:

### Յաղագս Կաբոսի ։

Չափ ժա̃ Քսեստի կոչի Կաբոս (1)․ որ է կէս Մոդիոյ ։

### Յաղագս Ապորեւմայի (2) ։

Չափ ժա̃ Քսեստի կոչի Ապորիւմայ (3) ըստ Թեբայեցւոց լեզուի․ և է նոյնչափ կէս Մոդիոյ ։

### Յաղագս Մոդիոյ ։

Չափ իբ̃ Քսեստաց լինի Մոդ մի (4)․ որ կոչի Խոստովանութիւն ըստ իբ̃ Գլխաւորաց, և ըստ իբ̃ գրոց Կտակարանաց, և ըստ իբ̃ գրոց Այբուբենից Եբրայեցւոց․ զոր կոչեն չափ Արդարութեան (5) ։

### Յաղագս Գրուի ։

Չափ իբ̃ Քսեստաց լինի Գրիւ մի (6)․ որ է նոյնչափ Մոդիոյ ։

### Յաղագս Սաբիթայի (7) ։

Չափ իբ̃ Քսեստաց կոչի Սաբիթայ (8)․ որ է նոյնչափ Մոդիոյ ։

(1) Յոյն κάβος․ Ըստ Թարգմանչաց մերոց Կապիճ ։

(2) ա․ Վրիպակաւ ունի․ Յաղագս Իմայի ։

(3) Յոյն ἀπόρρυμα, Ապորրէւմա կամ Ապորէւմայ․ ըստ այսմ և գուք մեք յօրինակիս առեալ յԵպիփանէ ։ ա․ դարձեալ և սաստ վրիպակ կրճատմամբ ունի Եւիմայ ։

(4) Յոյն μόδιος․

(5) Տես զանչափ ընդարձակութիւն սոցին 'ի բանս Եպիփանու ։

(6) Թերևս նոյն է ընդ Պարսկական բառիս Ղորի ։ գ․ և է․ ուղղութեամբ ունին․ Գրիւոյ գ̃ ։

(7) ա․ Սակիտարի ։

(8) Յոյն σαβιθά․ ա․ Սակիտար ։ 'ի գ̃․ և 'ի է̃․ ունին Սայիթ․ իսկ յԵպիփանն՝ Սայիթ կամ Սայիթիս, σαΐτης, և Սաբիթա ։ Ոչ գիտեմք, թէ Սախիթարն ա․ օրինակին՝ ո՞ր 'ի սոցանէ իցէ աղաւաղութիւն ։ Մեք յօրինակիս զՍաբիթայն ընտրեցաք դնել ։

## Յաղագս Մարի ։

Չափ ծ Քսեստի լինի Մար մի (1). և ըստ Հելլենականին Սատոն (2) կոչի. զոր կոչեն չափ Հնձանի ։

## Յաղագս Արդուի ։

Չափ հբ Քսեստաց լինի Արդու մի (3). և ըստ Հելլենականին Արտաբոս կոչի. բայց եդաւ յԵգիպտացւոցն Որմոբ (4), որ է քարեծողով. և Եբրայեցիք վարեն նովին չափով՝ յԵգիպտացւոց առեալ ։

## Յաղագս Քոռու ։

Չափ պձ Քսեստի լինի Քոռ մի. և կոչի Եբրայեցւոցն և Ասորւոց՝ 'ի Հայոց առեալ (5). և է խ Մոդոյ չափ ։ Իսկ Քոռն ըստ Հելլենականին Կորոս (6) լսի. և է նոյն չափ խ Մոդոյ. որ ունի պձ Քսեստ (7) ։

## Յաղագս Կիւաթոսի ։

Կիւաթոս (8) չափ է գինւոյ արկանելոյ յապակիս. և կոչի ըստ Ատտիկեցւոց լեզուի Անդլիտերիոն (9). գինեհան է երկայնադաստակ, որպէս զՃաշակ, վասն 'ի խորութենէ կարասոյն զգինի հանելոյ (10) ։

(1) Յոյն μάρης ըստ Պոնտացւոց ։

(2) Յոյն σάτον.

(3) Արդու նոյն է ընդ Յունականիս ἀρτάβη, որ ըստ ճիշդ տառադարձութեան լինի 'ի մեզ Արտաբէ կամ Արտաբ. թէպէտև ձ. կոչէ զայն ըստ Հելլենականին Արտաբոս ։ Դ. և Է. ունին Արտաբ ։

(4) Որմոբ թերևս իցէ μέροψ Եպիփանու. բայց Մեհրօդոյ կամ Մեհրօդոյ ըստ Եպիփանու, և ըստ մերումս Եզնկայ՝ նշանակէ քածանոցն ։

(5) Եբրայեցերէն քոռ ։

(6) Յոյն χορός.

(7) Դ. և Է. աստանօր աւարտեն զբան Չափուց ։

(8) Յոյն κύαθος. Ըստ Թարգմանչաց մերոց՝ Ճաշակ ։

(9) Յոյն ἀντλητήριον.

(10) Ողջոյն հատուածդ յաղագս Կիւաթոսի կարէ իմն աղաւաղեալ

## Յաղագս Կաղամադեկոյթին և Մասամարոյթեայ ։

Կաղամադեկոյթ (1) և Մասամարոյթ (2) ՚ի գրոց Եբրայականաց ոչ է թարգմանեալ (3). արդ՝ ո՞ւր գտանիցես զայս անուանս ։ Գիտասջի՛ր, եթէ Կաղամադեկոյթն Եմպելի (4) ասի. և Մասամարոյթն Դաշակ՝ որով զպղինձն հանեն (5) ։

էր ՚ի ա. մեք այդչափ միայն կարացաք ուղղագրել՝ առ ՚ի չգոյէ ընտիր օրինակի ։

(1) Այս բառ ընդ վերնագրի խուռամ թուի, թէ ունի լինել Մետէկոյթ ըստ յունականին Եպիփանու μετεχώθ.

(2) Յոյն μασμαρώθ ըստ Եպիփանու ։ Այսպէս է և յԵրեմ. ծբ. 19. ՚ի յունական օրինակն Քսեստոսի. ուր ՚ի մեզ դնի Ամասարակոյթ ։

(3) Զի տառադարձութեամբ միայն եդեալ են զերկոսին բառսդ ։

(4) Մեդեկոյթ կամ Մեթեկոյթ ըստ Եպիփանու, և ըստ Մեկնչաց՝ նշանակէ Գինեհան կամ Ձաղոյ ։

(5) Աստանօր յաւարտ Զափուցս յաւելու գրիչն կամ գաղափարողն ա. օրինակին. * Օրինակս խիստ ծուռ էր, թողութիւն արէք վասն Տեառն || ։ Զնոյն թողութիւն և մեք համարձակիմք խնդրել յորոց ՚ի ձեռին ունին, և կամ կարող են ՚ի ձեռս բերել զընտիր օրինակն գործոյս ։

# ՄՈՎՍԻՍԻ ԽՈՐԵՆԱՑՒՈՅ

## ՅԱՂԱԳՍ ԱՇԽԱՐՀԱՑՈՅՑ ՉԱՓՈՅ (1)

Յորոյ (2) ինքնագիր (3) բոլորակէ (4) տիեզերական գրութեանցն (5) առեալ Պապպայ Աղեքսանդրացւոյ (6) համառօտաբար երկրագրութիւն (7)։ Յորմէ և մեր այլ (8) ծայրաքաղ արարեալ՝ գրեցաք զմեծամեծսն և զնշանաւորսն միայն, և զչափ (9) որչափութեան (10) Չափուցն (11). ոչ ըստ յատակիս (12) երկրի, այլ՝ ըստ տարերց (13) բարձր (14) լերանց տեսութեամբ (15), ընդ օդդ (16) ան-

(1) Խմն յաղագս Երկայնաչափութեան. որ սկսանի յերկրաչափական Գծէ, և ձգի մինչև ցՓարսախ և ցՍտադիոնս հողագնացս։ Զայս վերնագիր եգաք մեք հայելով 'ի բանս Խորենացւոյն՝ որ 'ի սկզբան Աշխարհագրութեան իւրոյ զչափս երկայնութեան առանձին իմն կոչէ Ասպարիսական չափս՝ 'ի սակս յաճախ գործածութեան Ասպարիսի յԵրկայնաչափութեան անդ։

(2) Պտղոմեայ Աշխարհագրի։ Երկու գրչագիր օրինակք Աշխարհագրութեան Խորենացւոյն, և երկու տպագրեալք 'ի Վէնէտիկ և 'ի Լոնդոն՝ ունին յորս։

(3) Մի գրչագիր ունի ինքնատեր. մի գրչագիր՝ ինքնատէր. և երկու տպագրեալք՝ ինքնագէր։

(4) Երկու գրչագիրք, և երկու տպագրեալք ունին՝ բոլորակէն։

(5) Երկու գրչագիրք, և երկու տպագրեալք՝ տիեզերագրութեանցն։

(6) Ըստ Անգղիացի Թարգմանչաց Խորենացւոյն՝ Պապ կամ Պապոս Աղեքսանդրացի սակաւ մի յառաջ էր քան զԽորենացին՝ առ ժամանակօք մեծին Թէոդոսի։ Այլ յունարէն գործք նորա ոչ գտանին այժմ։

(7) Երկու գրչագիրք, և երկու տպագրեալք՝ երկրագրութեան։

(8) Այլ 'ի մի օրինակ ևեթ գտանի։

(9) Մի գրչագիր, և երկու տպագրեալք՝ զչափ. որպէս և մի գրչագիր՝ զչափն։

(10) Երկու գրչագիրք, և երկու տպագրեալք՝ որչափութեանցն։

(11) Չափուցն չեք յայլ օրինակս։

(12) Յայլ օրինակս յատակի։

(13) Տարերց չեք յայլ օրինակս։

(14) Երկու գրչագիրք՝ յարաբարձր. և երկու տպագրեալք՝ բարձրացեալ։

(15) Երկու գրչագիրք՝ տեսութեանց. և երկու տպագրեալք՝ տեսութեան։

(16) Մի գրչագիր, և երկու

ցանելով. 'ի ձեռն գործարանաց (1) Նկատելով (2) զնշոյլս արեգական և լուսնի և աստեղաց, ըստ անցնիւր տանց (3) եօթն 'Լահանգացն (4) փոփոխմամբ (5) Սահմանաց (6):

Իսկ է Սահմանն բան կարճառօտ յայտնիչ բնութեան ստորակայ (7) իրողութեան. (8) որ զիւրն 'ի ներքս փակէ, և զայլոցն (9) 'ի բաց որոշէ. և չափէ զՄասնն (10):

Իսկ է Մասն (11) հինգ հարիւր Ասպարէզ (12). և Ասպարէզն է հեռակացութիւն (13). այսինքն է՝ Ստաւան (14) մի: Իսկ է Ասպարէզն (15) ըստ Օդաչափութեան (16)

տպագրեալք՝ ընդ օտս. մի գրչագիր՝ ընդ յօթս:

(1) Այսինքն՝ 'ի ձեռն Աստեղաբաշխական կամ Երկրաչափական գործեաց:

(2) Մի գրչագիր, և երկու տպագրեալք՝ Նկարելով:

(3) Մի գրչագիր՝ ըստ տանց երրոց. միւս այլ՝ ըստ տանց երր. իսկ երկու տպագրեալք՝ ըստ տանց երեանց:

(4) Իմա Աշխարհագրական Գօտեաց:

(5) Մի գրչագիր, և երկու տպագրեալք՝ փոփոխման. մի գրչագիր՝ փոփոխմանց:

(6) Իմա Աշխարհագրական Աստիճանաց:

(7) Երկու տպագրեալք՝ ենթակայ. յայլ գրչագիրս չիք:

(8) Բառքս բան կարճառօտ յայտնիչ բնութեան ստորակայ իրողութեան եթէ չիցեն 'ի յետնոց մուծեալ 'ի բանս Խորենացւոյն՝ որպէս կասկածին Անգղիացի Թարգմանիչք նորա, յաւէտ են բացատրութիւն Տրամաբանական Սահմանի, վասն որոյ և արտաքոյ Երկրաչափականին: Սակայն մարթ է ասել, թէ այն բառք են կրկնութիւն միայն յետագայ բառիցն որ զիւրն 'ի ներքս փակէ, և զայլոցն 'ի բաց որոշէ. և չափէ զմասն: Զի որպէս Տրամաբանական սահմանն, նոյնպէս և Երկրաչափականն յայտնէ զբնութիւն ենթակայ իրողութեան, այսինքն՝ փակելոյ զիւրն 'ի ներքս, և զայլոցն 'ի բաց որոշելոյ:

(9) Յայլ օրինակս՝ զայլն:

(10) Մասն Յոյն μοῖρα, Լատին Gradus, Աստիճան. վասն որոյ Մասամբն իմանայ աստ Խորենացին զ360 երկրաչափական Աստիճանս՝ յորս բաժանեն Երկրաչափք և Աստեղաբաշխք զբոլորակ գնտոյն երկրի և երկնից:

(11) Իմա Աստիճանն: Յերկրաչափական Աստիճանաց անտի ընկերզբն առնէ խօսել յաղագս Ասպարիսական չափուց. զի առաջին նպատակ Երկրաչափից և Աշխարհագրաց է չափել կամ որոշել զՍահմանս երկրի ըստ Աստիճանացն լայնութեան և երկայնութեան:

(12) Մի գրչագիր Ասպարէս: Ասպարէզ ըստ Պարսկական լեզուի կոչի [illegible], այն է՝ Զէ[illegible]:

(13) Յայլ օրինակս հեռագնացութեամբ:

(14) Ստաւան ըստ Պարսից կոչի [illegible], այն է՝ [illegible] կամ [illegible]:

(15) Աստի սկսանին Դ. և Ե. օրինակք Շիրակացւոյն խօսել յաղագս Ասպարիսական չափուց:

(16) Իմա ըստ ուղիղ գծի ձգեալ յօդս, որով և բաժանի 'ի գետ-

Քայլ հարիւր (1). և Քայլն վեց Ոտն. և Ոտն վեշտա-սան (2) Մատն: Մղոնն է Ասպարէզ եօթն (3):

Իսկ Ասպարիսաց Ասպարէզն (4) հարիւր քառասուն և երեք Քայլ. և Մղոնն է եօթն Ասպարէզ. որպէս զի լինել Գետնաչափութեամբ (5) Մղոնն հազար Քայլ: Եւ Փարսախն (6) երեք Մղոն (7) է:

Բայց Օդաչափութեամբ երկրաչափութեան (8) է Մասն հինգհարիւր Ասպարէզ՝ 'ի լայնն և նոյնչափ յեր-կայնն (9) չորեքկուսի (10). որպէս զի լինել Մասինն եօ-թանասուն և մի (11) Մղոն. չորս եօթն (12) և քսան և ութ:

Արդ՝ այս Չափուս չափեցին զերկիր, և զծով (13):

Ծաւչափութենէ անտի որ ոչ է միշտ ըստ ուղիղ գծի: Մի գրչագիր վրիպակաւ ունի օղաչափու-թեանց, որ պարտ է լինել գէթ օդաչափութեանց:

(1) Մի գրչագիր, որպէս և գ. և ե. օրինակք Ճիրակացւոյն ունին ճէ. իսկ միւս այլ գրչա-գիր՝ ճծ:

(2) Երկու գրչագիրք, և եր-կու տպագրեալք՝ վեց մատն:

(3) Յօրինակս ինչ Դ:

(4) գ. և ե. օրինակք Ճիրա-կացւոյն ունին՝ խոլ ըստ Պարսից Ասպարիսին:

(5) Իմա Երկրաչափութեամբ:

(6) Մի գրչագիր՝ Խորասան. գ. և ե. օրինակք Ճիրակացւոյն՝ Խորասան: Մի գրչագիր՝ Փա-րասան: Պարսկերէն կոչի Փարսէնկ կամ Փէրսէնկ:

(7) Յոյն μίλιον.

(8) գ. և ե. օրինակք Ճիրա-կացւոյն ունին Երկրաչափութեան. յայլ օրինակս Խորենացւոյն չիք այս բառ:

(9) Երկու գրչագիրք ունին՝ 'ի լայնն Երկրաչափութեան, և նոյնչափ երկայն: Երկու տպագրեալք՝ 'ի լայնն Երկրաչափութեան, և նոյնչափ երկայնութեանն: գ. և ե. օրինակք Ճիրակացւոյն՝ 'ի լայն և 'ի յերկայն.

(10) գ. և ե. Օրինակք Ճիրա-կացւոյն ունին չորեքկուսի միայն: Որք և ստէ աւարտեն զբանն Աս-պարիսական չափուց:

(11) Մի գրչագիր՝ հէ:

(12) Մի գրչագիր՝ չորս եօթն. և միւս այլ՝ չորեք է:

(13) Ցայս վայր են բանք Խո-րենացւոյն յաղագս Ասպարիսական չափուց. զորս և մարթ է պարզա-բանել այլով օրինակաւ: «Մասնն կամ Աստիճանն Աշխարհագրա-կան է 500 Ասպարէզ: Եւ Աս-պարէզն է չափ հեռաւորութեան ըստ Ձիընթացից, կամ Վտաւան մի. որ և ըստ Օդաչափութեան է 100 Քայլ: Եւ Քայլն է 6 Ոտն կամ Ոտնաչափ: Եւ Ոտն է 16 Մատն կամ Մատնաչափ: Եւ Մղոնն ըստ Օդաչափութեան է 7 Ասպարէզ: Իսկ Ասպարիսաց կամ Պարսից Ասպարէզն ըստ Գետնաչափութեան է 142 . $\frac{6}{7}$ Քայլ. և Մղոնն 7 Ասպարէզ, և 1000 Քայլ: Եւ Փարսախն 3 Մղոն է: Բայց Օդաչափու-թեամբ Մասնն կամ Աստիճանն է 500 Ասպարէզ 'ի լայն, և նոյն-

չափ յերկայնն՝ չորեքկուսի. որպէս զի լինել Մասին կամ Աստիճանի՝ 7 1· $\frac{3}{7}$ Մղոն: Բայց եօթն Ասպարէզ կամ Մղոն միքառակողմեան եւեթ՝ լինի քան և ութ Ասպարէզ կամ չորս Մղոն ըստ երկայնութեան, այսպէս. ||




Եւ ահա յերկասին ձեւոց եւս չորս կամ չորիցս եօթն բազմապատկեալ, և կամ գումարեալ ՚ի միասին՝ կացուցանեն զթիւդ քան և ութ: Զայս վերջին հաստուածն եթէ իցէ արդարև Խորենացւոյն, մեք այսչափ միայն կարացաք իմանալ:

Անգղիացի Թարգմանիչք նորա դնեն աստանօր զայս ծանօթութիւն. * Պտղոմէոս (աշխարհագիր) զերկայնութիւն երկրի ասաց լինել ՃՁ Մասն (կամ Աստիճան), և զլայնութիւն նորա Ձ Աստիճան: Իսկ ՚ի Հասարակածէ մինչև ՚ի Թուլիս կղզի ըղստահման հիւսիսային լայնութեան նորա թուէ ԿԷ Աստիճան. և ՚ի միւս կողմանէ Հասարակածին՝ ԺԷ Աստիճան||: Այլ մեք յընդհանուր լուսափայլութիւն բանից Խորենացւոյն՝ արժան համարիմք դնել աստանօր զհամառօտութիւն չափուց արդի Ուսումնականաց և Երկրաչափից. որ և բովանդակի յայս բան ոտանաւոր՝ ՚ի Լատին և ՚ի Հայ բարբառ:

Quatuor è Granis Digitus componitur unus.
Est quatuor in Palmo Digitus, quatuor in Pede Palmus.
Quinque Pedes Passum faciunt. Passus quoque centum
Viginti quinque Stadium dant. Sed Milliare
Octo dabunt Stadia; duplicatum dat tibi Leucam.

Չորք Գարեհատք՝ են ՚ի Մատին,
Եւ Մատնաչափք՝ չորք ՚ի յՈւղկին.
Քառեակ Ուղուկք՝ յՈտնաչափին,
Հինգ Ոտնաչափք՝ ՚ի Քայլ դընին.
Քայլ քսան և հինգ՝ ընդ հարիւրին,
Ասպարիսին՝ չափու չափին.
Այլ Ասպարէզ՝ ըք ութեքին,
Մըղոնաչափ՝ յերկարաձգին.
Իսկ երկրորդեալ՝ չափ Մըղոնին,
Հանգրուաչափ՝ է Փարսախին:

## ՑԱՂԱԳՍ ԸՆԹԱՑԻՑ ԱՐԵԳԱԿԱՆ

# ԵՒ ՏԱՄԱՐԱՑ ԶԱՓՈՒՑ

### ԸՍՏ ԿՐԿԻՆ ՕՐԻՆԱԿԱՑ

## ՇԻՐԱԿԱՑԻՈՅՆ (1).

*Եթէ կամիցիս գիտել, թէ այսօր արեգակն քանի հոլովումն առնու՝ և կամ քանի Ասպարէզ ընթանայ, կա՛լ զժամս աւուրն, երեսնապատկեա՛, և այնչափ հոլովումն առնու. կա՛լ զհոլովմունսն, հինգհարիւրապատկեա՛, և այնչափ Ասպարէզ ընթանայ (2)։*

*Ասպարէզն է ըստ Օդաչափութեան Վրայլ ճէ. և Վրայլն զ Ոտն. և Ոտն ժզ Մատն։ Եւ Մղոնն է Ասպարէզ։ Իսկ ըստ Պարսից Ասպարիսին ճխզ Վրայլ. որպէս լինել Գետնաչափութեամբ Մղոնն ռ Վրայլ։ Եւ Խորասխն զ Մղոն. բայց Օդաչափութեամբ երկրաչափութիւն Մասն ԵՃ Ասպարէզ 'ի լայն և յերկայն՝ չորեքկուսի միաչափ։*

*Տաղանդն (3) Կշռոյ անուն է. որ է ճիե Լիտր. և*

*(1) Զկնի առանձինն կարգելոյ 'ի Նախադրութեանս գործոյս համառօտ ծանօթութեամբք զբանս Եպիփանու, Շիրակացւոյն, և Խորենացւոյն՝ կարևոր դատեցաք ուրոյն արձանացուցանել և զբանս զ. և է. օրինակաց Շիրակացւոյն. որ է կարճ 'ի կարճոյ և ընտիր բովանդակութիւն երեցունց նախակարգեալ գործոցդ։ Եւ թէպէտ ոչ կրէ նա 'ի ճակատու զանուն Շիրակացւոյն, այլ մեք նմին ընծայեմք և զայս՝ վասն լինելոյ գէթ համառօտութիւն ինչ կշռոց և չափուց նորին. վասն որոյ և 'ի վերնագրիս անխիղճ եդաք զանուն Շիրակացւոյն՝ զկնի ճակատու երկոցունց օրինակացդ։*

*(2) Զայս կանոն ընթացից արեգական՝ զորոյ զքննութիւն թողումք Աստեղաբաշխից, արժան համարեցաք դնել աստանօր, առ 'ի ամբողջ պահելոյ զբանս երկոցունց օրինակացդ։*

*(3) Աստի սկսանի զ. օրինակն՝ որ է համառօտութիւն կշռոց սոցա։*

ձիթ Լիտրն ինն ու Ասարիոն (1) ըստ համարոյ։ Իսկ Եբրայեցիք զՏաղանդն Քանքար կոչեն։ Իսկ Մնաս և Մոնաթ նոյն է (2)։ Կենդինարն ճ Լիտր է. և Լիտրն հբ Դահեկան. և Դրամով յորժամ կշռես, ճ Դրամ։ Ունկին զ Դահեկանի կշռորդ է. և ժբ Ունկին (3) Լիտր մի։ Ունկին դարձեալ բ Սատեր է։ Մին Սատերն սակաւ ինչ պակաս է 'ի դ Դրամէ, որ է կես Ունկոյ։ Ծ Ունկին բճ (4) Սիկղ է, որով կշռէին զհերս Աբիսողոմայ (5). որ է Դահեկան գճ։ Սատերն կես Ունկոյ (6) է, որ է դ Դրամի կշռորդ։ Դրաքմէն (7) բ Դրամակշիռ է։ Դիդրաքմայն դ Դրամակշիռ է. Դիդրաքմայն և Սատերն մի է (8)։ Սիկղն բ Դրամ. Սրբութեան Սիկղն Ի Դանգ։ Արգիւրոնն (9) Արծաթի Դահեկանի անուն է, զոր էառ Յուդայ 'ի քահանայիցն։ Դենարն (10) Դահեկանի անուն է. և Դահեկանն իդ Կերատ. և Կերատն կորիզ եղջրուենոյ (11), որ է չորից Գարւոց (12) կշռորդ. և իդ Կերատն լինի ղզ Գարեհատ։ Դրամն զ Դանգ է. և Դանգն ժբ Գարի։ Մոնաթն ինն ու Ասարիոն (13) է. ըստ Հելլենականին Լեպտոն կոչի, որ է անօսր, որ է Դանգ. զոր Քս հինգ ձագի վաճառ ասաց. և ըստ Եբրայեցւոցն Ասարիոնն նուազութիւն կոչի։ Ըստ ժամանակին Դահեկանն Ի Ասարիոն էր. և Դահեկանն էր Արծաթի։ Աշխարհագիր ըստ Հռովմայեցւոց Կապի-

(1) Գ. Ասպարիոն, որ է վրիպակ գրչի. զի պարտ է լինել Ասսարիոն կամ Ասարիոն։

(2) Զերկոսին եւս հանէ 'ի յունական բառէս μονὰς, μόναδος. բայց ոչ ուղղութեամբ։

(3) Գ. Նուկին. Է. Ունկին։

(4) Է. բԺ. վրիպակաւ։

(5) Գ. Ունի. Աբիսողոմայ որդւոյն Դաւթի։

(6) Գ. և Ե. Ոսկւոյ. որ ոչ է ուղիղ։

(7) Գ. և Է. Դրագմէն. Զ. Դրակմէն։

(8) Ողջոյն հատուածդ Դիդրաքմայի պակասի 'ի Գ։

(9) Գ. և Է. Ագերոն. Զ. Արգիւրոն. երկոքին եւս վրիպակք գրչաց։

(10) Յոյն δηνάριον, Լատին Denarius, փոխեալ կամ փոխոց։ Զ. Դինար։

(11) Զ. Եղջեւրենոյ. Գ. եղջերւոյենոյ։

(12) Գ. և Է. Գարոց. Զ. Գարւոց։

(13) Գ. դարձեալ վրիպակաւ Ասպարիոն։

տոյն, որ է ըստ Գլխոյ. զի Կապա գլուխ է (1)։ Մնասն ըստ Իտալացւոցն խե̄ Ունկեաց կշռորդ է. և ըստ Եբրայեցւոցն (2) է̄ Լտեր և կիսոյ. և ըստ Եբրայեցւոց Արծաթ Թարգմանի։ Սիմքս կէս Դահեկանի է։ Տրմքս երրորդ մասն Դահեկանի է։

Քսեստ ըստ ամենայն լեզուաց կոչի. բայց ըստ գաւառի գաւառի այլ և այլ չափ է։ Ըստ Աղեքսանդրացւոցն է̄ Լտերաց կշռորդ է. և ըստ Իտալացւոց և Կաստրացւոց ի̄ Ունկեաց։ Այսինքն խեցեղէն է չափ իը̄ Քսեստաց։ Կորոս ըստ Հելլենացւոցն, և Եբրայեցւոցն Քոռ, որ է Լ Մոդ (3)։ Կաբոս, կէս Մոդոյ (4)։ Արտաւ, որ ասի Արդու, չորրորդ մասն Մոդոյ. որ է հբ̄ Քսեստ։ Մար՝ ըստ Հելլենացւոցն Սատոն, ծ̄ Քսեստ. և է չափ հնձանի։ Գոմոր (5), որ է Արդու ըստ Հելլենացւոցն՝ ժե̄ Մոդոյ չափ։ Գորիւք զ̄, որ է մի Մոդ (6). որ է չափ Արքութեան. իսկ Հելլենացւոցն զ̄ Զափ (7) ասէ։ Շիշ իւղոյն որ յԱւետարանին՝ Քսեսին է, բոլոր ապակեղէն. ունէր կէս Լիտր։ Կափսակ այրւոյն՝ զոր Հայն Սրուակ ասէ, զ̄ Քսեստաց չափ, որպէս Սափորն մանանային (8)։

(1) Ջուղղութիւն վրիպանաց այսց բանից ունիս գտանել 'ի ծանօթութեան անդ ա̄. օրինակի Շիրակացւոյն։

(2) Է. Ունի Եբրայեցւոց՝ սըրբագրութեամբ օտար գրչի։

(3) Գ. վրիպակաւ ունի Մուքը։

(4) Գ. Մոթոյ։

(5) Գ. և Է. Վրիպակաւ ունին Դոմոր, որ պարտ է լինել Գոմոր. զի եբրայականն է Ղօմէր կամ Խօմէր, և յունականն γομόρ.

(6) Գ. Մոթ։

(7) Ըստ Յունականին τρία μέτρα 'ի բանն ծննդոց ԺԸ. 6.

(8) Աստանօր յաւարտ Չափուցս Գ. ունի և յաւելուած ինչ 'ի յետնոց՝ սովին բանիւ։ * Քանքարն և Տաղանդն զո̄ Դահեկան է ըստ Եբրայեցւոցն։ Քայլն զ̄ Ոտն է. և Մղոնն ռ̄ Քայլ է։ Դարձեալ՝ Քանքար և Տաղանդն ինն ռ̄ Դահեկան է ըստ Քերթողացն և Բառագրոցն։ Դահեկանն գ̄ Տրմքս է, և բ̄ Սիմքս է, իդ̄ Կերատ է։ ա̄ Կանգուն է̄ Բուռն է։ Ուսիր գրոց աշակերտ, զի Ա̄Ծ ողորմի ժառանգեմ. և Ա̄Ծ ձեզ ողորմի։ Ղանթարն Շամայ ճ̄ Լիտր է Արծիշու Լիտրովն. իսկ Հռոմոց Ղանթարն իբ̄ Լիտր է մերովս ||։

Յաւարտ Նախակարգեալ բանիցդ՝ ժամ է մեզ արդ՝ առաջնորդութեամբ նոցին մատչել 'ի քննութիւն Կշռոց, և Չափուց, և Ասպարիսական Չափուց առհասարակ՝ որոց միանգամ գտանին յԱծաշունչ մատենի, և 'ի գիրս Նախնեաց մերոց։

*ԶԱՄԵՆԱՅՆ՝ ՉԱՓՈՎ ԵՒ ԹՈՒՈՎ ԵՒ ԿՇՌՈՎ ԿԱՐԳԵՑԵՐ‖։

*Իմաստ. ԺԱ.* 21։

# ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆ

# ՁԱՓՈՒՑ ԵՒ ԿՇՌՈՑ

## ՆԱԽՆԵԱՑ

---

### ԱԳՈՒՌ

*Պարսկերէն Թերևս Ախէր կամ Ակնուր*:

*Չափ ցամաքեղինաց և հեղանիւթոց*:

ԱԳՈՒՌ կամ ԱԳՈՒՌՆ. Ասորայեցերէն խօֆէն. Յունարէն δράξ կամ χείρ. Լատիներէն pugnus կամ pugillus.

Է չափ ձեռին մարդոյ. և է նոյնանիշ ընդ բառիցս Բուռն և Ափ: *Լից զԱգուռս քո կայծակամբք հրոյ‖. Եզեկ. Ժ. 2: Ուր Յոյն բնագիրն յօրինակս ինչ է χείρ, ձեռն, և յայլս δράξ, բուռն:

Ախէր ըստ բառարանին Պարսից՝ նշանակէ ցանօթ խոր. Թուի մեզ, Թէ զնորին նմանութիւն բերէ 'ի մեզ բառս Ագուռ:

Իսկ Ակնուր ըստ նոյն բառարանին Պարսից՝ նշանակէ աղիւս Թրծեալ. զոր 'ի մեզ դարձեալ կոչեմք Ագուռ. ըստ այնմ. *Աղիւս Թրծեալ հրով, Ագուռ՝ կացցէ 'ի ջրի լաւ քան զքար‖. Վարք Հարանց. Ժզ: Օր ոմանք [illegible] կամ անփորձելի Թարգմանեն. բայց մեզ Թուի լինել նոյնանիշ ընդ բառիցս՝ աղիւս Թրծեալ հրով. քանզի և 'ի Լատին Թարգմանութեան այսր բանի Հարանցս դնի միայն աղիւս Թրծեալ հրով, և չիք Թարգմանութիւն բառիս Ագուռ:

Այլ քանզի երկրորդ նշանակութիւն սորա օտար

է յիմաստից անտի Եզեկիէլի, նմին իրի և մեք յունէրէ անտի Պարսից յաւէտ գուշակեմք զԱգուան, քան զյունէրէ նոցա։ Տես Բուռն, և Ափ։

Աման, Թերևս 'ի բայէս Ամամ։

ԱՄԱՆ. Եբր. քէլի. Յոյն. ἄγγος կամ ἀγγεῖον. Լատ. vas.

Ե. հասարակ անուն ամենայն Անօթոց և Ընդունարանաց։ * Յաման մի ամանեսցես‖. Բ. Օրէնք. ԻԳ. 25։ * Առ քեզ ցորեան ... և հաճար. և արկցես զայն յԱման մի խեցեղէն‖. Եզեկ. Դ. 9։ * Միոյն բարձեալ երիս Ամանս հացի‖. Ա. Թագ. Ժ. 3։ * Լնուլ զԱմանս նոցա ցորենով‖. Ծննդ. ԽԲ. 25։ * Առէք 'ի պտղոյ երկրիս յԱմանս ձեր‖. Անդ. ԽԳ. 11։ * Ամենայն ըմպելի, որ ըմպիցի յամենայն Ամանի‖. Ղևտ. ԺԱ. 34։ * Չէր Թափեալ յԱման յԱմանոյ‖. Երեմ. ԽԸ. 11։ * Ժողովեցին զբարի բարին յԱմանս‖. Մատթ. ԺԳ. 48։ * Առին ձէթ Ամանօք‖. Անդ. ԻԵ. 4։ * Երկուս Ամանս գինւոյ‖. Ա. Թագ. ԻԵ. 18։ * Առէք 'ի ձեռս ձեր զարծաթն՝ որ դարձուցաւ յԱմանս (Յոյն μάρσιππος, տոպրակ) ձեր‖. Ծննդ. ԽԳ. 12։ * Մի լիցի յԱմանի (Յոյն μάρσιππος. Եբր. քիս, որ է՝ Քսակ ըստ Հայումս) քում կշիռ, և կշիռ մեծ և փոքր‖. Բ. Օրէնք. ԻԵ. 13։ * Քանզի թէ ուղղորդ զԱմանսն գործեցեալ էր կերակրոյն, յախանձանացն մինչև յերաստանն՝ դէպ լինէր դժնդակագոյն ինչ լինել‖. Փիլոն։ * Ոնչաբեր երակք՝ շնչոյն Ամանք, ոչ օդ միայն ունին յինքեանս՝ անխառն և մաքուր, այլ և արիւն ... քանզի երկու են Ամանք՝ երակք և շնչափողք‖. Նոյն։ * Հասանեն մինչև յԱմանս երկամանցն‖. Նոյն։ * Զգտեսցի մինչ 'ի մարմին և 'ի զգայական Ամանսն‖. Նոյն։ * Յաման մաշկեղէն արկեալ‖. Նարեկ. ԽԵ. 3։ * Յայգ 'ի նորա լուսոյն 'ի լուսնի Ամանն լոյս ծագէ‖. Եզնիկ. ԾԲ։ * Մտինք՝ կաթինն Աման են‖. Նարեկ. Քէն. Երգ. Է։

Յաւելլաք զայսչափ օրինակս վասն Ամանոյ՝ առ 'ի

ցուցանել զընդհանուր նշանակութիւն նորա։ Յոյնական բառդ ἄγγος կամ ἀγγεῖον, նախնիք մեր թարգմանեն եւ Անօթ. որպէս ունիս տեսանել 'ի նմա։

### Ամասարակոյթ. Այլք. Համբիշրակօթ.

Չափ հեղանիւթոյ։

ԱՄԱՍՄԱՐԱԿՈՒԹ. Յոյն μασμαρῶθ. Լատ. pelvis կամ phiala. Էր մի յանօթոց տաճարին. որ եւ ըստ հասարակ կարծեաց Մեկնչաց՝ էր Տաշտ կամ Սկաւառակ եւ կամ Բաժակ։ * Առաւ եւ զԱպփոյթն, եւ զԱմասարակոյթն||. Երեմ. ԾԲ. 19։ Տես զայսմանէ 'ի Կադամադեկոյթ եւ 'ի Մասմարոյթ։

### Անդլիտերիոն. Յոյն 'Αντλητήριον.

Չափ հեղանիւթոյ։

ԱՆԴԼԻՏԵՐԻՈՆ. Լատ. vas ad hauriendum, haustrum. Յիշատակէ զայս բառ Շիրակացին 'ի կարգի անդ չափուց 'ի բառն Կիւաթոս, այսպէս. * Կիւաթոս չափ է գինւոյ արկանելոյ յապակիս, եւ կոչի ըստ Ատտիկեցւոց լեզուի Անդլիտերիոն. գինեհան է երկայնադաստակ որպէս զԲաժակ՝ վասն 'ի խորութենէ կարասոյն զգինի հանելոյ||։

### Անօթ։

ԱՆՕԹ. Եբր. Քէլի. Յոյն σκεῦος. Լատ. vas.
Է հասարակ անուն ամենայն Ամանոց եւ Ընդունարանաց. * Եւ Անօթ կաւեղէն՝ յորում եփեսցի, փշրեսցի. եւ եթէ 'ի պղնձի Անօթի եփեսցի, քերեսցէ զնա, եւ ջրով ողողեսցէ||. Ղեւտ. Զ. 28։ * Եւ եհան ծառայն Անօթս ոսկւոյ, եւ Անօթս արծաթոյ||. Ծննդ. ԻԴ. 53։ * Սպանցեն զմի հաւն յԱնօթ խեցեղէն||. Ղեւտ. ԺԴ. 5։ * Սեղանն Անօթ կերակրոց է||. Փիլոն։ * Իբր

դոյզն Անօթիւ յԱդենականն աղբերէ առեալ ։ Շնորհ. Ներբ. Հրեշ. * Ստինք Անօթ կաթին ։ Վարք Հարանց. Դ. 147 ։ Դնի սա բազում անգամ և փոխանակ բառիս Աման. բայց երկոքին ևս ոչ են տիրապէս Չափ, այլ ընդհանուր անուն Չափուց ։

## Աշխարհագիր.

### Կշիռ և Դրամ։

ԱՇԽԱՐՀԱԳԻՐ. Նշանակէ զհարկն թագաւորական հանեալ 'ի ձեռն աշխարհագրի ։ Յիշատակեն զայս բառ Դ. և Ե. օրինակք Տիրակացւոյն 'ի կարգս Կշռոց, այսպէս. * Աշխարհագիր, ըստ Հռովմայեցւոց Կապետոյն, որ է ըստ գլխոյ. զի Կապա (կապուտ) գլուխ է ։ Իսկ սովաւ իմանան զԵրկդրամեանն կամ զՍատերն՝ զոր Հարկահանք (ըստ կարծեաց բազմաց՝ Կայսեր Հռովմայեցւոց) պահանջէին 'ի Պետրոսէ ։ Վասն որոյ և Ա. Բ. և Դ. օրինակք 'ի բառն Սատեր և Դիդրաքմէ՝ ունին այսպէս. * Կշիռ Սիմեսի և Դրամարի՝ կոչի ըստ Եբրայեցւոցն Սատեր, և ըստ Հելլենականին Ոբղոս, և ըստ Եգիպտացւոց Քաղկոս. վասն զի Աղեքսանդրացիք զարծաթն Քաղկիմա կոչեն ։ Իսկ ըստ հասարակաց խօսից կոչի Դիդրաքմէ, որ է Ը մասն Ունկոյ ։ Իսկ ըստ Հռովմայեցւոցն Կապետան կոչի. զի Կապու (կապուտ) գլուխ լսի. քանզի Օգոստոս Կայսր եդ հարկս ըստ գլխոյ Դիդրաքմէ մի ։ Իսկ քանզի ըստ Ղուկայ աւետարանագրի Օգոստոս Կայսր արար զաշխարհագիրն, յայն սակս և Դ. և Ե. օրինակք զհարկն նորա կոչեն Աշխարհագիր ։ Իսկ թէ ուստի առեալ իցէ Տիրակացին զԿապետոնն, կամ զԱշխարհագիրն, չունիմք ինչ ասել հաւաստի ։ Այլ ըստ Յովսեպոսի ոչ միայն Օգոստոս, այլև Պոմպէոս, Յուլիոս, Վեսպասիանոս և Դոմետիանոս՝ եդին հարկս ըստ գլխոյ 'ի վերայ Հրէից ։ Յորոց միջի Վեսպասիանոս՝ զկնի աւերման տաճարին Երուսաղեմի, հրաման ետ Հրէից՝ զԵրկդրամեանն կարգեալ 'ի Մովսէսէ (Ելք. Լ. 13.) վասն

տաճարին, հարկել Կապետոլինի Հռովմայ։

Զաշխարհագիր ըստ որում համար ժողովրդեանն, կոչեն յոյնք ἀπογραφὴ, և լատինք descriptio. Իսկ ըստ որում հարկ, ըստ Յունաց կոչի κῆνσος, և ըստ Լատինացւոց census և capitatio. Զերկոսին միանգամայն յայտ առնեն այս բանք Գ. Մակաբայեցւոց. * Զամենայն ազգն Հրէից յԱշխարհագիր խառնել՚ի կարգս հարկի ծառայութեան ||. Բ. 14։

## Ապորրիւմայ. Յոյն Ἀπόρρυμα.

Չափ հեղանիւթոյ։

ԱՊՈՐԻՒՄԱՑ կամ ԱՊՈՐՐԻՒՄԱՑ։ Անուն զայս բառ՚ի Ա. օրինակն Չափուց Շիրակացւոյն. բայց կրճատմամբ կամ աղաւաղմամբ լեալ է Եւէմայ, այսպէս. * Չափ ժբ. Քսեստի կոչի Եւէմայ ըստ Թեբայեցւոց լեզուի. և է նոյնչափ կէս Մոդոյ ||։ Զայս բան առեալ է Շիրակացին յԵպիփանէ՝ որ ունի այսպէս. * Ապորիւմայ չափ է միայն առ Թեբայեցիս, և է կէս Սայիտ. իսկ Սայիտն ճշմարիտ՝ է իբ. Քսեստ ||։

## Ապփովթ. Յոյն Ἀπφώθ.

Չափ հեղանիւթոյ։

ԱՊՓՈՎԹ. Եբր. հասէֆէմ. Լատ. hydria. Էր մի յանօթոց Տաճարին. զոր ոմանք իմանան Սափոր, ոմանք Սկաւառակ կամ Ափէ, այլք Սան, և կէսք Բաժակ։ * Էառ և զԱպփովթն և զԱմասարակովթն ||. Երեմ. ծբ. 19։ Թարգմանիչք մեր պահեալ են զյունական հնչումն։

## Ասպարէզ. Պարսկ. Ասպարէս կամ Ասպարէզ.

### Չափ երկայնութեան:

ԱՍՊԱՐԷԶ կամ ԱՍՊԱՐԷՍ (Ձիընթացք, ըստ Յունաց ἱππόδρομος) Յոյն στάδιον. Լատ. stadium (Ստադ կամ Ստադիոն ըստ Հայումն): Է չափ երկայնութեան. որ է ըստ արդի Աւստրիականաց՝ ութերորդ մասն Մղոնի, այն է 125 Քայլ, կամ 625 Ոտն երկրաչափական: Այնպէս դնէին և բազումք 'ի նախնեաց. զի ասէ Մորաքոն. * Որպէս բազումք (համարին) Մղոնն է ութասպարիսեան‖: Իսկ բազումք և եօթնասպարիսեան դնէին զՄղոնն, քանզի ասէ Մուփսաս. * Մղոնն է չափ ճանապարհի՝ եօթն Ասպարէզ‖: Իսկ մերս Խորենացի և Շիրակացի կրկնակի առնուն զԱսպարէզն. մի՝ ըստ Ոտնաչափութեան, և միւս ևս՝ ըստ Գետնաչափութեան: Ոի ունի Խորենացին. * Ասպարէզն է հեռաւորութիւն, այսինքն է՝ Ստաւան մի: Եւ է Ասպարէզն ըստ Ոտնաչափութեան՝ Քայլ հարիւր: Եւ Քայլն վեց Ոտն. և Ոտն վեշտասան Մատն: Մղոնն է Ասպարէզ եօթն: Իսկ Ասպարիսաց Ասպարէզն հարիւր քառասուն և երեք Քայլ. և Մղոնն է եօթն Ասպարէզ. որպէս զի լինել Գետնաչափութեամբ Մղոնն հազար Քայլ‖:

Իսկ 'ի գիրս Աստեղաբաշխութեան՝ որ յանուն Շիրակացւոյն, և յաշխարհագրական բանս ինչ յետնոց գտնի այսպիսի ինչ, թէպէտև՝ որպէս կարծեմք, լի վրիպանօք անհմուտ գրչաց: * Ասպարէզն ունի Կանգունս չորեքհարիւր և յիսուն: Իսկ ըստ առաջնոցն հինգհարիւր 'ի սրտէն: Մատն հինգհարիւր Ասպարէզ է, և մի Ասպարէզն հարիւր Մղոն (թերևս Քայլ) է. և մի Մղոն երկու հազար և հինգ հարիւր Կետաձիգ է: Ըստ Պարսից մի Մատն (թերևս Մղոնն) հազար Քայլ է‖:

Երզնկացին 'ի մեկնութեան բնաբանիս * Եթէ ոք տարապարհակ վարիցէ զքեզ Մղոն մի, երթ ընդ նմա

և երկուս» յիշատակէ և զԱսպարէզն օրինակ զայս. * Մղոնն Փարսանգն է. զոր Չինեթաց մի ոմանք անուանեն, և այլք Չայնահաս, և կէսք Վարընկէց, և ոմանք Ետամձիգ մի. բայց ճշմարտապէս Ասպարէզն է, որ է Ստաւան. հազար Բայլ ըստ երկրաչափական արհեստին»: Այլ ոչ նուազ մթութիւն տեսանի և 'ի բանս սորա: Մինինքի գերմանացի ևս 'ի Տաճկական յԱրաբական և 'ի Պարսկական բառարանի իւրում երկոտասան հազար Բայլ կամ Կանգուն ընծայէ փարսախի կամ Փարսանգին Պարսից: Բայց այսոքիկ ոչ են տիրապէս չափ Ասպարիսի, այլ լայնաբար ևեթ ընծային նմին:

Սոկեբերան 'ի մեկնութեան բնաբանիս * Բեթանիա մերձ էր յԵրուսաղէմ իբրև Ասպարիսօք հնգետասան» երկու Մղոն ընծայէ հնգետասան Ասպարիսացդ, յասելն. * Իսկ եթէ Ասպարիսօք հնգետասան հեռի էր Բեթանիա, այսինքն՝ Մղոնօք երկու, զիա՞րդ չորեքօրեայ մեռեալ լինէր Ղազարոս»:

Իսկ մերս Սամբրէ 'ի ճառն Յարութեան Ղազարու՝ երեք Մղոն ընծայէ այդոցիկ հնգետասան Ասպարիսացդ, քանզի ասէ. * Մերձ էր գեղն յԵրուսաղէմ Մղոնաւ երիւք»:

'Ի Սուրբ գիրս հասարակօրէն առեալ լինի Ասպարէզն իբրև ութերորդ կամ եօթներորդ մասն Մղոնի՝ ըստ հաշուի Յունաց և Հռովմայեցւոց. վասն որոյ և գտանի միայն 'ի յունարէն բնագիրս Ստադիոն անուամբ. զոր նախնիք մեր թարգմանեն ևս երբեմն Ստաւան. և առնուն զայն՝ է՛ զի իբրև նոյնաչափ ընդ Ասպարիսի, և է՛ զի իբրև կէս նորա. որպէս ունիս տեսանել 'ի բառն Ստաւան: Եւ այսոքիկ են վկայութիւնք Ասպարիսի 'ի Սուրբ գրոց: * Որ է մերձ յԵրուսաղէմ իբրև Ասպարիսօք հինգ». Բ. Մակ. ժա. 5: * Որ հեռի էր յԵրուսաղեմէ հարիւր և վաթսուն (Յոյն վաթսուն») Ասպարիսաւ». Ղուկ. իդ. 13: * Վարեալ իբրև Ասպարէզս քսան և հինգ, կամ երեսուն». Յովհ. զ. 19: * Երկայնութիւն նորա հազար հարիւր և վեց (Յոյն հազար և վեցհարիւր) Ասպարէզ». Յայտ. ժդ.

20։ * Զափ երկայնութեան նորա երկոտասան հազար Ասպարէզ‖. Յայտ. իա. 16։

Այլ Ասպարէզն երբեմն առեալ լինի լայնաբար եթէ ՚ի Սուրբ գիրս, և եթէ առ արտաքինս, փոխանակ որ և իցէ երկարաձիգ հեռաւորութեան. որպիսի է յայն բան Աւետարանին. * Եւ նաւն մեկնեալ էր ՚ի ցամաքէն բազում Ասպարիսօք՝ ծփեալ յալեացն‖. Մատթ. ժդ. 24։ Իսկ Յունական բնագիրն ունի այսպէս. * Եւ նաւն էր արդէն ՚ի խորս ծովուն՝ ծփեալ յալեացն‖։ Վասն որոյ անհնար է մեզ որոշել զչափ Ասպարիսի ըստ ամենայն մատենագրաց։ Միայն հնար մեզ ասել, թէ Ասպարէզն հասարակօրէն առեալ լինի իբրև ութերորդ, կամ եօթներորդ մասն Մղոնի. իսկ երբեմն լայնաբար նշանակէ զոր և իցէ հեռաւորութիւն։

## Ասարիոն. Յուն Ἀσσάριον.

### Կշիռ և Դրամ։

ԱՍՍԱՐԻՈՆ կամ ԱՍԱՐԻՈՆ. Լատ. assarium. Է անուն դրամոյ, որ է Դանգ. և է կշիռ երկուց Դարեհատաց։

Ունիմք զայս բառ ՚ի կարգս Կշռոց Շիրակացւոյն։ Ա. Բ. և Գ. օրինակք նորա ունին այսպէս. * Կշիռ Բ Դարեհատաց կոչի Ասարիոն. իսկ ըստ Հելլենականին Դեպտոն կոչի. բայց ըստ Եբրայեցւոցն՝ Եուազութիւն, որ է անօսր. և ըստ Հայոցս կոչի Դանգ‖։ Իսկ Դ. և Ե. օրինակք դնեն այսպէս. * Մնաթն ինն հազար Ասարիոն է, որ է անօսր, որ է Դանգ. զոր Քս̃ հինգ ձագի վաճառ ասաց. և ըստ Եբրայեցւոցն Ասարիոնն Եուազութիւն կոչի. ըստ ժամանակին Դահեկանն վաթսուն Ասարիոն էր, և Դահեկանն էր արծաթի‖։

Յիշատակէ և Եպիփան զԱսարիոն ՚ի բառն Տաղանդ, և ունի այսպէս. * Վեց Դեպտոն Տաղանդի է եօթն Ասարիոն. և եօթն Դեպտոն Ասարիոնաց

է հարիւր Դենար։ Արծաթի տպաւորեցաւ Դահեկան 'ի սկզբանէ. և տպաւորեցաւ նա յԱսսարիոնաց‖։ Այլ այս բանք Եպիփանու անիմանալի են՝ ոչ միայն մեզ, այլև Պետաւիոսի Յոնեան՝ ծանօթարարի նորա։

Ասսարիոն իբրև նոյն ընդ Դանգի՝ հասարակօրէն է անուն պղնձի Դրամոյ. բայց նշանակէ և զարծաթի Դահեկան. Նուաղ լինէր նա երբեմն և փոխանակ խեցեղէն, կաշեղէն և փայտեղէն Նումայից. վասն որոյ ասէ Եւսեբի 'ի Քրոնիկոն կանոնի իւրում վասն Նումայ Պոմպիղեայ թագաւորի Հռովմայեցւոց. * Նոյն և զԴոնգիարիոնն (պարգև) եւ Ասսարիա (Յոյն ἀσσάρια, զԱսսարիոն. որ է յոգնակի հայցականն բառիս ἀσσάριον) փայտեղէն և խեցեղէն Նումայս‖։ Իսկ բառս Նումայս դնի 'ի Թարգմանչէ անտի իբրև բացատրութիւն յունական ձայնիս Ասսարիա։ Այլ յԱծաշունչ գիրս նախնիք մեր Թարգմանեն զԱսսարիոն՝ Դանգ։

### Աստիճան։

Չափ երկայնութեան։

ԱՍՏԻՃԱՆ կամ ԱՇՏԻՃԱՆ. Յոյն μοῖρα. Լատ. gradus. Է մասն բոլորակի յերկինս, և հողագնտոյս։ Ըստ Աստեղաբաշխից և Երկրաչափից բոլորակն բաժանի 'ի 360 Աստիճան. և իւրաքանչիւր Աստիճան է 60 Մղոն։ Զաստիճանն Խորենացին կոչէ Մասն։

### Արգիւրոն. Յոյն Ἄργυρον.

Դրամ։

ԱՐԳԻՒՐՈՆ. Յոյն Ἄργυρον (արծաթ կամ արծաթի). Լատ. argenteus. Է անուն Արծաթի դրամոյ կամ Սիկեղ Հրէից։ Ունիմք զայս բառ յերիս օրինակս կշռոց Շիրակացւոյն այսպէս. * Արգիւրոնն արծաթի Դահեկանի անուն է. զոր եառ Յուդայ 'ի Քահանայից‖։

*ԶԱՄԵՆԱՅՆ՝ ՉԱՓՈՎ ԵՒ ԹՈՒՈՎ ԵՒ ԿՇՌՈՎ ԿԱՐԳԵՑԵՐ‖։

*Իմաստ. ժա. 21:*

# ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆ

# ԶԱՓՈՒՑ ԵՒ ԿՇՌՈՑ

## ՆԱԽՆԵԱՑ

---

### ԱԳՈՒՌ

*Պարսկերէն թերևս Ախէր կամ Ակէօր:*

*Չափ ցամաքեղինաց և հեղանիւթոց:*

Ագուռ կամ Ագուռն. Ասորայեցերէն խօֆէն. Յունարէն δράξ կամ χείρ. Լատիներէն pugnus կամ pugillus.

Է չափ ձեռին մարդոյ. և է նոյնանիշ ընդ բառիցս Բուռն և Ափ: * Լից զԱգուռս քո կայծակամբք հրոյ‖. Ղևտ. Ժ. 2: Ուր Յոյն բնագիրն յօրինակս ինչ է χείρ, ձեռն, և յայլս δράξ, բուռն:

Ախէր ըստ բառարանին Պարսից՝ նշանակէ շանօթ-սոր. Թուի մեզ, թէ զնորին նմանութիւն բերէ 'ի մեզ բառս Ագուռ:

Իսկ Ակէօր ըստ նոյն բառարանին Պարսից՝ նշանակէ աղիւս թրծեալ. զոր 'ի մեզ դարձեալ կոչեմք Ագուռ. ըստ այնմ. * Աղիւս թրծեալ հրով, Ագուռ՝ կացցէ 'ի տեղի լաւ քան զքար‖. Սարգ. Շնորհ. ԺԷ. Զոր ոմանք անփոփոխ կամ անքակելի թարգմանեն. բայց մեզ թուի լինել նոյնանիշ ընդ բառիցս՝ աղիւս թրծեալ հրով. քանզի և 'ի Լատին թարգմանութեան այսր բանի Շնորհալւոյն դնի միայն աղիւս թրծեալ հրով, և չիք թարգմանութիւն բառիս Ագուռ:

Այլ քանզի երկրորդ նշանակութիւն սորա օտար

է յիմաստից անտի Եզեկիէլի, նմին իրի և մեք յանէրէ անտի Պարսից յաւէտ գուշակեմք զԱգոստն, քան յանէրէ նոցա : Տես Բուռն, և Ափ :

## Աման, Թերևս 'ի բայէս Ամամ :

ԱՄԱՆ. Եբր. քելի. Յուն. ἄγγος կամ ἀγγεῖον. Լատ. vas.

Է հասարակ անուն ամենայն Անօթոց և Ընդունարանաց : * Յաման մի ամանեսցես ‖. Բ. Օրէնք. ԻԳ. 25 : * Առ քեզ ցորեան ... և հաճար. և արկցես զայն յԱման մի խեցեղէն ‖. Եզեկ. Դ. 9 : * Միոյն բարձեալ երիս Ամանս հացի ‖. Ա. Թագ. Ժ. 3 : * Լնուլ զԱմանս նոցա ցորենով ‖. Ծննդ. ԽԲ. 25 : * Առէք 'ի պտղոյ երկրիս յԱմանս ձեր ‖. Անդ. ԽԳ. 11 : * Ամենայն ըմպելի, որ ըմպիցի յամենայն Ամանի ‖. Ղեւտ. ԺԱ. 34 : * Չէր թափեալ յԱման յԱմանոյ ‖. Երեմ. ԽԸ. 11 : * Ժողովեցին զբարի բարին յԱմանս ‖. Մատթ. ԺԳ. 45 : * Առին ձէթ Ամանօք ‖. Անդ. ԻԵ. 4 : * Երկուս Ամանս գինւոյ ‖. Ա. Թագ. ԻԵ. 18 : * Առէք 'ի ձեռս ձեր զարծաթն` որ դարձուցաւ յԱմանս (Յոյն μάρσιππος, տոպրակ) ձեր ‖. Ծննդ. ԽԳ. 12 : * Մի լիցի յԱմանի (Յոյն μάρσιππος. Եբր. քիս, որ է` Քսակ ըստ Հայոցս) քում կշիռ, և կշիռ մեծ և փոքր ‖. Բ. Օրէնք. ԻԵ. 13 : * Քանզի թէ ուղղորդ զԱմանսն գործեցեալ էր կերակրոյն, յախուռնդանացն մինչև յերաստանն` դէպ լինէր դժնդակագոյն ինչ լինել ‖. Փիլոն : * Շնչաբեր երակք` շնչոյն Ամանք, ոչ օդ միայն ունին յինքեանս` անխառն և մաքուր, այլև արիւն ... քանզի երկու են Ամանք` երակք և շնչափողք ‖. Նոյն : * Հասանեն մինչև յԱմանս երիկամանցն ‖. Նոյն : * Զգտեսցի մինչ 'ի մարմին և 'ի զգայական Ամանսն ‖. Նոյն : * Յաման մաշկեղէն արկեալ ‖. Նարեկ. ԽԵ. 3 : * Յայգ 'ի նորա լուսոյն 'ի լուսնի Ամանն լոյս ծագէ ‖. Եզնիկ. ԾԲ : * Մտիք` կաթինն Ամանն են ‖. Նարեկ. Քեն. երգ. Է :

Յաւելաք զայսչափ օրինակս վասն Ամանոյ` առ 'ի

ցուցանել զընդհանուր նշանակութիւն նորա։ Յու-նական բառդ ἄγγος կամ ἀγγεῖον, նախնիք մեր թարգ-մանեն եւս Անօթ. որպէս ունիս տեսանել 'ի նմա։

Ամասարակովթ. Եբր. Համմիզրաքօթ.

Զափ հեղանիւթոց։

ԱՄԱՍԱՐԱԿՈՎԹ. Յոյն μασμαρὼθ. Լատ. pelvis կամ phiala. Էր մի յանօթոց տաճարին. որ է ըստ հա-սարակ կարծեաց Մեկնչաց՝ էր Տաշտ կամ Սկաւառակ և կամ Բաժակ։ * Եառ և զԱպփոյթն, և զԱմասա-րակովթն ||. Երեմ. ծբ. 19։ Տես զայսմանէ 'ի Կաղա-մագեկովթ և 'ի Մասմարովթ։

Անդլիտերիոն. Յոյն Ἀντλητήριον.

Զափ հեղանիւթոց։

ԱՆԴԼԻՏԵՐԻՈՆ. Լատ. vas ad hauriendum, haustrum. Յիշատակէ զայս բառ Շիրակացին 'ի կարգի անդ չա-փուց 'ի բառն Կիւաթոս, այսպէս. * Կիւաթոս չափ է գինւոյ արկանելոյ յապակիս, և կոչի ըստ Ատտի-կեցւոց լեզուի Անդլիտերիոն. գինեհան է երկայնա-գաւատակ որպէս զԲաժակ՝ վասն 'ի խորութենէ կարա-սոյն զգինի հանելոյ ||։

Անօթ։

ԱՆՕԹ. Եբր. Քելի. Յոյն σκεῦος. Լատ. vas. Է հասարակ անուն ամենայն Ամանոց և Ընդունա-րանաց։ * Եւ Անօթ կաւեղէն՝ յորում եփեսցի, փշրե-սցի. և եթէ 'ի պղնձի Անօթի եփեսցի, քերեսցէ զնա, և ջրով ողողեսցէ ||. Ղեւտ. զ. 28։ * Եւ եհան ծառայն Անօթս ոսկւոյ, և Անօթս արծաթոյ ||. Ծննդ. իդ. 53։ * Սպանցեն զմի հաւն յԱնօթ խեցեղէն ||. Ղեւտ. ժդ. 5։ * Սեղանն Անօթ կերակրոց է ||. Փիլոն։ * Եբր

դոյզն Անօթիւ յԱդենականն աղբերց առեալ։ Ը Նորհ. Ներբ. Հրեշ. * Ստինք Անօթ կաթին։ Վարք Հարանց. Ղ. 147։ Գինի սա բազում անգամ և փոխանակ բառիս Աման. բայց երկոքին ևս ոչ են տիրապէս Չափ, այլ ընդհանուր անուն Չափուց։

## Աշխարհագիր.

### Կշիռ և Դրամ։

ԱՇԽԱՐՀԱԳԻՐ. Նշանակէ զհարկն Թագաւորական հանեալ 'ի ձեռն աշխարհագրի։ Յիշատակեն զայս բառ. Ղ. և Ե. օրինակք Ը Իրականցոյն 'ի կարգս Կշռոց, այսպէս. * Աշխարհագիր, ըստ Հռովմայեցւոց Կապետոյն, որ է ըստ գլխոյ. զի Կապա (կապուտ) գլուխ է։ Եւ սովաւ իմանան զԵրկդրամեանն կամ զՍտատերն՝ զոր հարկահանք (ըստ կարծեաց բազմաց՝ Կայսեր Հռովմայեցւոց) պահանջէին 'ի Պետրոսէ։ Վասն որոյ և Ա. Բ. և Ղ. օրինակք 'ի բառն Ստատեր և Դրաքմէ՝ ունին այսպէս. * Կշիռ Սիկղի և Դրամարի՝ կոչի ըստ Եբրայեցւոցն Ստատեր, և ըստ Հելլենականին Սիկղոս, և ըստ Եգիպտացւոց Բաղկոս. վասն զի Աղեքսանդրացիք զարծաթն Բաղկիմա կոչեն։ Եւ ըստ հասարակաց խօսից կոչի Դրաքմէ, որ է Ը մասն Ունկոյ։ Իսկ ըստ Հռովմայեցւոցն Կապետոն կոչի. զի Կապու (կապուտ) գլուխ լսի. քանզի Օգոստոս Կայսր եդ հարկս ըստ գլխոյ Դրաքմէ մի։ Եւ քանզի ըստ Ղուկայ աւետարանագրի Օգոստոս Կայսր արար զաշխարհագիրն, յայն սակս և Ղ. և Ե. օրինակք զհարկն նորա կոչեն Աշխարհագիր։ Իսկ թէ ուստի առեալ իցէ Ը Իրականցին զԿապետոնն, կամ զԱշխարհագիրն, չունիմք ինչ ասել հաւաստի։ Այլ ըստ Յովսեպոսի ոչ միայն Օգոստոս, այլև Պոմպէոս, Յուլիոս, Վեսպասիանոս և Դոմետիանոս՝ եդին հարկս ըստ գլխոյ 'ի վերայ Հրէից։ Յորոց միջի Վեսպասիանոս՝ զկնի աւերման տաճարին Երուսաղեմի, հրաման ետ Հրէից՝ զԵրկդրամեանն կարգեալ 'ի Մովսիսէ (Ելք. Լ. 13.) վասն

տաճարին, հարկել Կապիտոլինի Հռովմայ։

Զաշխարհագիր ըստ որում համար ժողովրդեանն, կոչեն յոյնք ἀπογραφὴ, և լատինք descriptio. Իսկ ըստ որում հարկ, ըստ Յունաց կոչի κὴνσος, և ըստ Լատինացւոց census և capitatio. Զերկոսին միանգամայն յայտ առնեն այս բանք Ղ. Մակաբայեցւոց. * Զամենայն ազգն Հրէից յԱշխարհագիր խառնել'ի կարգս հարկի ծառայութեան ||. Է. 14։

## Ապորեմայ. Յոյն Ἀπόρρυμα.

Չափ հեղանիւթոյ։

ԱՊՈՐԻՄԱՑ կամ ԱՊՈՐՐԻՄԱՑ ։ Ունիմք զայս բառ 'ի Ե. օրինակն Չափուց Եպիփանու. բայց կրճատմամբ կամ աղաւաղմամբ լեալ է Եւեմայ, այսպէս. * Չափ ԺԵ Քսեստի կոչի Եւեմայ ըստ Եբրայեցւոց լեզուի. և է նոյնչափ կէս Մոդոյ ||։ Զայս բան առեալ է Եպիփանէ... որ ունի այսպէս. * Ապորիմայ չափ է միայն առ Եբրայեցիս, և է կէս Սայիտ. իսկ Սայիտն ճշմարիտ՝ է ԻԲ Քսեստ ||։

## Ապփովթ. Յոյն Ἀπφώθ.

Չափ հեղանիւթոյ։

ԱՊՓՈՎԹ. Եբր. հասէփէմ. Լատ. hydria. Էր մի յանօթոց Տաճարին. զոր ոմանք իմանան Սափոր, ոմանք Սկուտաղ կամ Աթոռ, այլք Սան, և կէսք Բուրվառ։ * Լուռ և զԱպփովթն և զԱմասարակովթն ||. Եզեկ. ԾԲ. 19։ Թարգմանիչք մեր պահեալ են զյունական հնչումնդ։

## Ասպարէզ. Պարսկ. Ասփէրէս կամ Ասփէրէզ ։

### Չափ երկայնութեան ։

ԱՍՊԱՐԷԶ կամ ԱՍՊԱՐԷՍ (Ձիընթացք, ըստ Յունաց ἱππόδρομος) Յոյն στάδιον. Լատ. stadium (Ստադ կամ Ստադէոն ըստ Հայումն) ։ Է չափ երկայնութեան. որ է ըստ արդի Ուսումնականաց՝ ութերորդ մասն Մղոնի, այն է 125 Քայլ, կամ 625 Ոտն երկրաչափական ։ Սոյնպէս դնէին և բազումք 'ի նախնեաց. զի ասէ Ստրաբոն. * Որպէս բազումք (համարին) Մղոնն է ութասպարիսեան‖ ։ Իսկ բազումք ևս եօթնասպարիսեան դնէին զՄղոնն, քանզի ասէ Սուիդաս. * Մղոնն է չափ ճանապարհի՝ եօթն Ասպարէզ‖ ։ Իսկ մերս Խորենացի և Շիրակացի կրկնակի առնուն զԱսպարէզն. մի՝ ըստ Ոդաչափութեան, և միւս ևս՝ ըստ Գետնաչափութեան ։ Ո ի ունի Խորենացին. * Ասպարէզն է հեռակացութիւն, այսինքն է՝ Ատաւան մի ։ Եւ է Ասպարէզն ըստ Ոդաչափութեան՝ Քայլ հարիւր ։ Եւ Քայլն վեց Ոտն. և Ոտն վեշտասան Մատն ։ Մղոնն է Ասպարէզ եօթն ։ Իսկ Ասպարիսաց Ասպարէզն հարիւր քառասուն և երեք Քայլ. և Մղոնն է եօթն Ասպարէզ. որպէս զի լինել Գետնաչափութեամբ Մղոնն հազար Քայլ‖ ։

Իսկ 'ի գիրս Աստեղաբաշխութեան՝ որ յանուն Շիրակացւոյն, և յաշխարհագրական բանս ինչ յետնոց դնի այսպիսի ինչ, թէպէտև՝ որպէս կարծեմք, լի վրիպանօք անհմուտ գրչաց ։ * Ասպարէզն ունի Կանգունս չորեքհարիւր և յիսուն ։ Իսկ ըստ առաջնոցն հինգհարիւր 'ի սրտէն ։ Մատն հինգհարիւր Ասպարէզ է, և մի Ասպարէզն հարիւր Մղոն (թերևս Քայլ) է. և մի Մղոն երկու հազար և հինգ հարիւր Նետաձիգ է ։ Ըստ Պարսից մի Մատն (թերևս Մղոնն) հազար Քայլ է‖ ։

Երզնկացին 'ի մեկնութեան բնաբանին * Եթէ ոք տարապարհակ վարիցէ զքեզ Մղոն մի, երթ ընդ նմա

և երկուս|| յիշատակէ և զԱսպարէզն օրինակ զայս · * Մղոնն Փարսանգն է · զոր Ձիընթաց մի ոմանք անուանեն , և այլք Ձայնահաս , և կէսք Քարընկէց , և ոմանք Նետաձիգ մի · բայց ճշմարտապէս Ասպարէզն է , որ է Ստաւան · հազար Քայլ ըստ երկրաչափական արհեստին|| ։ Այլ ոչ նուազ մթութիւն տեսանի և 'ի բանս սորա ։ Մինինսքի գերմանացի ևս 'ի Տաճկական յԱրաբական և 'ի Պարսկական բառարանի իւրում երկոտասան հազար Քայլ կամ Կանգուն ընծայէ փարսախի կամ Փարսանգին Պարսից ։ Բայց այսոքիկ ոչ են տիրապէս չափ Ասպարիսի , այլ լայնաբար ևեթ ընծային նմին ։

Ոսկեբերան 'ի մեկնութեան բնաբանիս * Բեթանիա մերձ էր յԵրուսաղէմ իբրև Ասպարիսօք հնգետասան|| երկու Մղոն ընծայէ հնգետասան Ասպարիսացդ , յասելն · * Իսկ եթէ Ասպարիսօք հնգետասան հեռի էր Բեթանիա , այսինքն՝ Մղոնօք երկու , զիա՞րդ չորեքօրեայ մեռեալ լինէր Ղազարոս|| ։

Իսկ մերս Սամբրէ 'ի ճառն Յարութեան Ղազարու՝ երեք Մղոն ընծայէ այդոցիկ հնգետասան Ասպարիսացդ , քանզի ասէ · * Մերձ էր գեղն յԵրուսաղէմ Մղոնաւ երիւք|| ։

'Ի Սուրբ գիրս հասարակօրէն առեալ լինի Ասպարէզն իբրև ութերորդ կամ եօթներորդ մասն Մղոնի՝ ըստ հաշուի Յունաց և Հռովմայեցւոց · վասն որոյ և գտանի միայն 'ի յունարէն բնագիրս Ստադիոն անուամբ · զոր նախնիք մեր թարգմանեն ևս երբեմն Ստաւան · և առնուն զայն՝ Է՛ զի իբրև նոյնաչափ ընդ Ասպարիսի , և Է՛ զի իբրև կէս նորա · որպէս ունիս տեսանել 'ի բառն Ստաւան ։ Իսկ այսոքիկ են վկայութիւնք Ասպարիսի 'ի Սուրբ գրոց ։ * Որ է մերձ յԵրուսաղէմ իբրև Ասպարիսօք հինգ|| · Բ · Մակ · ԺԱ · 5 ։ * Որ հեռի էր յԵրուսաղեմէ հարիւր և վաթսուն (Յոյն վաթսուն ...) Ասպարիսաւ|| · Ղուկ · ԻԴ · 13 ։ * Վարեալ իբրև Ասպարէզս քսան և հինգ , կամ երեսուն|| ։ Յովհ · Զ · 19 ։ * Երկայնութիւն նորա հազար հարիւր և վեց (Յոյն հազար և վեցհարիւր) Ասպարէզ|| · Յայտ · ԺԴ ·

Ճին Լիտրն ինն ու Ասարիոն (1) ըստ համարոյ։ Իսկ Եբրայեցիք զՏաղանդն Քանքար կոչեն։ Իսկ Մնաս և Մոնաթնոյն է (2)։ Կենդինարն Ճ Լիտր է. և Լիտրն հը Դահեկան. և Դրամով յորժամ կշռես, Ճ Դրամ։ Ունկին Ը Դահեկանի կշռորդ է. և ժԲ Ունկին (3) Լիտր մի։ Ունկին դարձեալ Բ Սատեր է։ Մին Սատերն սակաւ ինչ պակաս է 'ի Ը Դրամէ, որ է կէս Ունկոյ։ Ծ Ունկին բՃ (4) Սիկղ է, որով կշռէին զհերս Աբիսողոմայ (5). որ է Դահեկան գՃ։ Սատերն կէս Ունկոյ (6) է, որ է Դ Դրամի կշռորդ։ Դրաքմէն (7) Բ Դրամակշիռ է։ Դիդրաքմայն Դ Դրամակշիռ է. Դիդրաքմայն և Սատերն մի է (8)։ Սիկղն Բ Դրամ. Սրբութեան Սիկղն Ի Դանգ։ Արգիւրոնն (9) Արծաթի Դահեկանի անուն է, զոր էառ Յուդայ 'ի քահանայիցն։ Դենարն (10) Դահեկանի անուն է. և Դահեկանն իԴ Կերատ. և Կերատն կորիզ եղջրուենոյ (11), որ է չորից Գարւոյ (12) կշռորդ. և իԴ Կերատն լինի ղԴ Գարեհատ։ Դրամն Ը Դանգ է. և Դանգն ժԲ Գարի։ Մոնաթն ինն ու Ասարիոն (13) է. ըստ Հելլենականին Լեփտոն կոչի, որ է անօսր, որ է Դանգ. զոր Քրիստոս հինգ ձագի վաճառ ասաց. և ըստ Եբրայեցւոցն Ասարիոնն նուազութիւն կոչի։ Ըստ ժամանակին Դահեկանն Կ Ասարիոն էր. և Դահեկանն էր Արծաթի։ Աշխարհագիր ըստ Հռովմայեցւոց Կայսե-

(1) Գ. Ասպարիոն, որ է վրիպակ գրչի. զի պարտ է լինել Ասարիոն կամ Ասարիոն։

(2) Զերկոսին ևս հանէ 'ի յունական բառէս μονὰς, μόναδος. բայց ոչ ուղղութեամբ։

(3) Գ. Դուկին. Է. Ունկին։

(4) Է. ըԺ. վրիպակաւ։

(5) Գ. Ունի. Աբիսողոմայ որդւոյն Դաւթի։

(6) Գ. և Է. Ոսկւոյ. որ ոչ է ուղիղ։

(7) Գ. և Է. Դրագմէն. Գ. Դրակմէն։

(8) Ողջոյն հատուածդ Դիդրաքմայի պակասի 'ի Գ։

(9) Գ. և Է. Ագերոն. Գ. Արգիւրոն. երկոքին ևս վրիպակք գրչաց։

(10) Յոյն δηνάριον, Լատին Denarius, փոխեալ կամ փոխոց։ Գ. Դինար։

(11) Գ. Եղջերւրենոյ. Գ. եղջերւոյենոյ։

(12) Գ. և Է. Գարոյ. Գ. Գարւոյ։

(13) Գ. գարձեալ վրիպակաւ Ասպարիոն։

տոյն, որ է ըստ Գլխոյ. զի Կապա գլուխ է (1)։ Մնասն ըստ Իտալացւոցն ԽԵ Ունկեաց կշռորդ է. և ըստ Եբրայեցւոցն (2) Ը Լ տեր և կիսոյ. և ըստ Եբրայեցւոց Արծաթ Թարգմանի։ Սիկղս կես Դահեկանի է։ Տրմէս երրորդ մասն Դահեկանի է։

Քսեստ ըստ ամենայն լեզուաց կոչի. բայց ըստ գաւառի գաւառի այլ և այլ չափ է։ Ըստ Աղեքսանդրացւոցն Ը Լ տերայ կշռորդ է. և ըստ Իտալացւոց և Կաստրացւոց Ի Ունկեայ։ Սայիտն խեցեղէն է չափ ԻԸ Քսեստայ։ Կորոս ըստ Հելլենացւոցն, և Եբրայեցւոցն Քոռ, որ է Լ Մոդ (3)։ Կաբոս, կես Մոդոյ (4)։ Արտաբ, որ ասի Արդու, չորրորդ մասն Մոդոյ. որ է ՀԸ Քսեստ։ Մար՝ ըստ Հելլենացւոցն Սատոն, Ծ Քսեստ. և է չափ Հնձանի։ Գոմոր (5), որ է Արդու ըստ Հելլենացւոցն՝ ԺԵ Մոդոյ չափ։ Գրիւք Գ, որ է մի Մոդ (6). որ է չափ Արքութեան. իսկ Հելլենացւոցն Գ Չափ (7) ասէ։ Շիշ իւղոյն որ յԱւետարանին՝ Ըեսին է, բոլոր ապակեղէն. ունէր կես Լ իտր։ Կափսակ այրւոյն՝ զոր Հայն Սրուակ ասէ, Գ Քսեստայ չափ, որպէս Սափորն մանանային (8)։

(1) Զուղղութիւն վրիպանաց այսց բանից ունիս գտանել 'ի ծանօթութեան անդ Ա. օրինակի Շիրակացւոյն:

(2) Է. Ունի Թեբրայեցւոց՝ սղրբագրութեամբ օտար գրչի:

(3) Գ. Վրիպակաւ ունի Մորք:

(4) Գ. Մոթոյ:

(5) Գ. և Է. Վրիպակաւ ունին Գոմոր, որ պարտ է լինել Գոմոր. զի եբրայականն է Գօմէր կամ Խօմէր, և յունականն γομόρ.

(6) Գ. Մոթ:

(7) Ըստ Յունականին τρία μέτρα 'ի բանն Ծննդոց ԺԸ. 6.

(8) Աստանօր յաւարտ Չափուցս Գ. ունի և յաւելուած ինչ 'ի յետնոց՝ սովին բանիւ: *Քանքարն և Տաղանդն զՃ Դահեկան է ըստ Եբրայեցւոցն: Քայլն Գ Ոտն է. և Մղոնն Ռ Քայլ է: Դարձեալ՝ Քանքար և Տաղանդն ինն Ռ Դահեկան է ըստ Քերթողացն և Բառգրոցն: Դահեկանն Գ Տրմէս է, և Բ Սիկղս է, ԻԴ Կերատ է: Ճ Կանգուն Ձ Բուռն է: Ուսիր գրոց աշակերտ, զի ԱԾ ողորմի ժառանգեմ. և ԱԾ ձեզ ողորմի: Դանթարն Շամայ Ջ Լիտր է Արծիշու Լիտրով. իսկ Հռոմոց Դանթարն ԻԸ Լիտր է մերովս ||:

Յաւարտ Նախակարգեալ բանիցդ՝ ժամ է մեզ արդ՝ առաջնորդութեամբ նոցին մատչել 'ի քննութիւն Կշռոց, և Չափուց, և Ասպարիսական Չափուց առհասարակ՝ որոց միանգամ գտանին յԱծաշունչ մատեանի, և 'ի գիրս Նախնեաց մերոց:

*ԶԱՄԵՆԱՅՆ՝ ՉԱՓՈՎ ԵՒ ԹՈՒՈՎ ԵՒ
ԿՇՌՈՎ ԿԱՐԳԵՑԵՐ||։

*Իմաստ. ժա. 21։*

# ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆ

# ՁԱՓՈՒՑ ԵՒ ԿՇՌՈՑ

## ՆԱԽՆԵԱՑ

---

### ԱԳՈՒՌ

*Պարսկերէն Թերեւս Ախէր կամ Ախտուր։*

*Ձափ չամաքեղինաց եւ հեղանիւթոց։*

ԱԳՈՒՌ *կամ* ԱԳՈՒՌՆ. *Եբրայեցերէն* խօֆէն. *Յունարէն* δράξ *կամ* χείρ. *Լատիներէն* pugnus *կամ* pugillus.

*Է չափ ձեռին մարդոյ. եւ է նոյնանիշ ընդ բառիցս* Բուռն *եւ* Ափ։ **Լից զԱգուռս քո կայծակամբք հրոյ‖.* Եզեկ. Ժ. 2։ *Իսկ Յոյն բնագիրն յօրինակս ինչ է* χείρ, ձեռն, *եւ յայլս* δράξ, բուռն։

Ախէր *ըստ բառարանին Պարսից՝ նշանակէ* ղանօթ խոր. *թուի մեզ, թէ զնորին նմանութիւն բերէ 'ի մեզ բառս* Ագուռ։

*Իսկ* Ախտուր *ըստ նոյն բառարանին Պարսից՝ նշանակէ* ղուլխա թրծեալ. *զոր 'ի մեզ դարձեալ կոչեմք* Ագուռ. *ըստ այնմ. *Աղիւս թրծեալ հրով, Ագուռ՝ կացցէ 'ի ջրի լաւ քան զքար‖.* Վարք Հարանց. ժդ։ *Զոր ոմանք* հասարակ *կամ* անփորձ *թարգմանեն. բայց մեզ թուի լինել նոյնանիշ ընդ բառիցս՝* աղիւս թրծեալ հրով. *քանզի եւ 'ի Լատին թարգմանութեան այսր բանի Հարանցս դնի միայն* աղիւս թրծեալ հրով, *եւ չիք թարգմանութիւն բառիս* Ագուռ։

*Այլ քանզի երկրորդ նշանակութիւն սորա օտար*

է յիմաստից անտի Եզեկիելի, նմին իրի և մեք յոխնէրէ անտի Պարսից յաւէտ գուշակեմք զԱգոստոն, քան յանէրէ նոցա: Տես Ռուան, և Ափ:

Աման, Թերևս 'ի բայէս Ամամ:

ԱՄԱՆ. Եբր. քէլի. Յոյն. ἄγγος կամ ἀγγεῖον. Լատ. vas.

Ի հասարակ անուն ամենայն Անօթոց և Ընդունարանաց: * Յաման մի ամանեսցես ‖. Բ. Օրէնք. իդ. 25: * Ա՛ռ քեզ ցորեան ... և հաճար. և արկցես զայն յԱման մի խեցեղէն ‖. Եզեկ. դ. 9: * Միոյն բարձեալ երիս Ամանս հացի ‖. Ա. Թագ. Ժ. 3: * Լնուլ զԱմանս նոցա ցորենով ‖. Ծնն. խբ. 25: * Առէք 'ի պտղոյ երկրիս յԱմանս ձեր ‖. Անդ. խգ. 11: * Ամենայն ըմպելի, որ ըմպիցի յամենայն Ամանի ‖. Ղևտ. Ժա. 34: * Զէր թափեալ յԱման յԱմանոյ ‖. Երեմ. խը. 11: * Խորտակեցին զգարի բարին յԱմանս ‖. Մարկ. Ժդ. 45: * Առին ձէթ Ամանօք ‖. Անդ. ԻԵ. 4: * Երկուս Ամանս գինւոյ ‖. Ա. Թագ. ԻԵ. 18: * Առէք 'ի ձեռս ձեր զարծաթն՝ որ դարձուցաւ յԱմանս (Յոյն μάρσιππος, տոպրակ) ձեր ‖. Ծնն. խգ. 12: * Մի լիցի յԱմանի (Յոյն μάρσιππος. Եբր. քիս, որ է՝ Քսակ ըստ Հայում) քում կշիռ, և կշիռ մեծ և փոքր ‖. Բ. Օրէնք. իե. 13: * Քանզի թէ ուղղորդ զԱմանսն գործեցեալ էր կերակրոյն, յախոնդանացն մինչև յերաստանն՝ դէպ լինէր դժնդակագոյն ինչ լինել ‖. Փիլոն: * Ոնչաբեր երակք՝ շնչոյն Ամանք, ոչ օդ միայն ունին յինքեանս՝ անխառն և մաքուր, այլև արիւն ... քանզի երկու են Ամանք՝ երակք և շնչափողք ‖. Նոյն: * Հասանեն մինչև յԱմանս երիկամանցն ‖. Նոյն: * Զգտեսցի մինչ 'ի մարմին և 'ի զգայական Ամանսն ‖. Նոյն: * Յաման մաշկեղէն արկեալ ‖. Նարեկ. խե. 3: * Յայգ 'ի նորա լուսոյն 'ի լուսնի Ամանն լոյս ծագէ ‖. Եզնիկ. ծը: * Մտինք՝ կաւթինն Աման են ‖. Նարեկ. Քնն. երգ. Է:

Յաւելաք զայսչափ օրինակս վասն Ամանոյ՝ առ 'ի

ցուցանել զընդհանուր նշանակութիւն նորա։ Յու-նական բառդ ἄγγος կամ ἀγγεῖον, նախնիք մեր թարգ-մանեն եւ Անօթ. որպէս ունիս տեսանել 'ի նմա։

Ամասարակովթն. Եբր. Համզմերօթ.

Չափ հեղանիւթոց։

ԱՄԱՍԱՐԱԿՈՎԹ. Յոյն μασμαρώθ. Լատ. pelvis կամ phiala. Էր մի յանօթոց տաճարին. որ եւ ըստ հասարակ կարծեաց Մեկնչաց՝ էր Տաշտ կամ Սկաւառակ եւ կամ Դաշտակ։ * Լուաւ եւ զԱպփոլթն, եւ զԱմասարակովթն॥. Երեմ. ԾԲ. 19։ Տես զայսմանէ 'ի Կաղա-մադեկովթ եւ 'ի Մասմարովթ։

Անդլխտերիոն. Յոյն Ἀντλητήριον.

Չափ հեղանիւթոց։

ԱՆԴՂԻՏԵՐԻՈՆ. Լատ. vas ad hauriendum, haustrum. Յիշատակէ զայս բառ Շիրակացին 'ի կարգի անդ չա-փուց 'ի բառն Կիւաթոս, այսպէս. * Կիւաթոս չափ է գինւոյ արկանելոյ յապակիս, եւ կոչի ըստ Ատտի-կեցւոց լեզուի Անդլիտերիոն. գինեհան է երկայնա-դաստակ որպէս զԴաշակ՝ վասն 'ի խորութենէ կարա-սոյն զգինի հանելոյ॥։

Անօթ։

ԱՆՕԹ. Եբր. Քէլի. Յոյն σκεῦος. Լատ. vas. Է հասարակ անուն ամենայն Ամանոց եւ Ընդունա-րանաց։ * Եւ Անօթ կաւեղէն՝ յորում եփեսցի, փշրե-սցի. եւ եթէ 'ի պղնձի Անօթի եփեսցի, քերեսցէ զնա, եւ ջրով ողողեսցէ॥. Ղևտ. Զ. 28։ * Եւ եհան ծառայն Անօթս ոսկւոյ, եւ Անօթս արծաթոյ॥. Ծննդ. ԻԴ. 53։ * Սպանցեն զմի հաւն յԱնօթ խեցեղէն॥. Ղևտ. ԺԴ. 5։ * Սեղանն Անօթ կերակրոց է॥. Փիլոն։ * Եբր

դոյզն Անօթիւ յԱդենականն աղբերց առեալ||. Ը Նորհ. Ներբ. հրեղ: * Մտինք Անօթ կաթին||. Մար. Հարանց. Է. 147: Գնի սա բազում անգամ և փոխանակ բառիս Աման. բայց երկոքին ևս ոչ են տիրապէս Չափ, այլ ընդհանուր անուն Չափուց:

## Աշխարհագիր.

### Կշիռ և Դրամ:

ԱՇԽԱՐՀԱԳԻՐ. Նշանակէ զհարկն Թագաւորական հանեալ 'ի ձեռն աշխարհագրի: Յիշատակեն զայս բառ Դ. և Ե. օրինակք Ը Իրակացւոյն 'ի կարգս Կշռոց, այսպէս. * Աշխարհագիր, ըստ Հռովմայեցւոց Կապիտոյն, որ է ըստ գլխոյ. զի Կապա (կապուտ) գլուխ է||: Իսկ սովաւ իմանան զԵրկդրամեանն կամ զՄատերն՝ զոր Հարկահանք (ըստ կարծեաց բազմաց՝ Կայսեր Հռովմայեցւոց) պահանջէին 'ի Պետրոսէ: Վասն որոյ և Ա. Բ. և Դ. օրինակք 'ի բառն Մատեր և Դրաքմէ՝ ունին այսպէս. * Կշիռ Միմեսի և Դրամարի՝ կոչի ըստ Եբրայեցւոցն Մատեր, և ըստ Հելլենականին Օբղոս, և ըստ Եգիպտացւոց Քաղկոս. վասն զի Աղեքսանդրացիք զարծաթն Քաղկիմա կոչեն: Իսկ ըստ հասարակաց խօսից կոչի Դրաքմէ, որ է Ը մասն Ունկոյ: Իսկ ըստ Հռովմայեցւոցն Կապիտան կոչի. զի Կապա (կապուտ) գլուխ լսի. քանզի Աւգոստոս Կայսր եդ հարկս ըստ գլխոյ Դրաքմէ մի||: Իսկ քանզի ըստ Ղուկայ աւետարանագրի Աւգոստոս Կայսր արար զաշխարհագիրն, յայն սակս և Դ. և Ե. օրինակք զհարկն նորա կոչեն Աշխարհագիր: Իսկ թէ ուստի առեալ իցէ Ը Իրակացին զԿապիտոնն, կամ զԱշխարհագիրն, չունիմք ինչ ասել հաւաստի: Այլ ըստ Յովսեպոսի ոչ միայն Աւգոստոս, այլև Պոմպէոս, Յուլիոս, Վեսպասիանոս և Դոմետիանոս՝ եդին հարկս ըստ գլխոյ 'ի վերայ Հրէից: Յորոց միջի Վեսպասիանոս՝ զկնի աւերման տաճարին Երուսաղեմի, հրաման ետ Հրէից՝ զԵրկդրամեանն կարգեալ 'ի Մովսիսէ (Ելք. Լ. 13.) վասն

տաճարին, հարկել Կապետոլիոնի Հռովմայ։

Զաշխարհագիր ըստ որում Հռոմայ ժողովրդեանն, կոչեն Յոյնք ἀπογραφὴ, և Լատինք descriptio. Իսկ ըստ որում հարկ, ըստ Յունաց կոչի κῆνσος, և ըստ Լատինացւոց census և capitatio. Զերկոսին միանգամայն յայտ առնեն այս բանք Գ. Մակաբայեցւոց. * Զամենայն ազգն Հրէից յԱշխարհագիր խառնել 'ի կարգս հարկի ծառայութեան ‖. Բ. 14։

## Ապորրումայ. Յոյն Ἀπόρρυμα.

Զափ հեղանիւթոյ։

ԱՊՈՐԻՒՄԱՅ կամ ԱՊՈՐՐԻՒՄԱՅ։ Ունիմք զայս բառ 'ի ա̅. օրինակն Զափուց Շիրակացւոյն. բայց կրճատմամբ կամ աղաւաղմամբ լեալ է [illegible], այսպէս. * Զափ ժա̅ Քսեստի կոչի Խիմայ ըստ Թեբայեցւոց լեզուի. և է նոյնչափ կէս Մոդոյ ‖։ Զայս բան առեալ է Շիրակացին յԵպիփանէ՝ որ ունի այսպէս. * Ապորիւմայ չափ է միայն առ Թեբայեցիս, և է կէս Սայիտ. իսկ Սայիտն ճշմարիտ՝ է իբ̅ Քսեստ ‖։

## Ապփովթ. Յոյն Ἀπφώθ.

Զափ հեղանիւթոյ։

ԱՊՓՈՎԹ. Եբր. հաւէփէն. Լատ. hydria. Էր մի յանօթոց Տաճարին. զոր ոմանք իմանան Սափոր, ոմանք Սկաւառակ կամ Ամէն, այլք Սան, և կէսք Բաժակարան։ * Առ և զԱպփովթն և զԱմասարակովթն ‖. Երեմ. ծբ̅. 19։ Թարգմանիչք մեր պահեալ են զյունական հնչումն։

## Ասպարէզ. Պարսկ. Ասփէրէս կամ Իսփէրէզ:

*Չափ երկայնութեան:*

ԱՍՊԱՐԷԶ կամ ԱՍՊԱՐԷՍ (Ձիընթաց, ըստ Յունաց ἱππόδρομος) Յոյն στάδιον. Լատ. stadium (Ստադ կամ Ստադիոն ըստ Հայոցս) : Է չափ երկայնութեան. որ է ըստ արդի Աստուածականաց՝ ութերորդ մասն Մղոնի, այն է 125 Քայլ, կամ 625 Ոտն երկրաչափական : Այնպէս դնէին և բազումք 'ի նախնեաց. զի ասէ Ստրաբոն. * Որպէս բազումք (համարին) Մղոնն է ութասպարիսեան ‖ : Իսկ բազումք և եօթնասպարիսեան դնէին զՄղոնն, քանզի ասէ Սուփտաս. * Մղոնն է չափ ձիանապարհի՝ եօթն Ասպարէզ ‖ : Իսկ մերս Խորենացի և Շիրակացի կրկնակի առնուն զԱսպարէզն. մի՝ ըստ Ոտնաչափութեան, և միւս ևս՝ ըստ Գետնաչափութեան : Որ ունի Խորենացին. * Ասպարէզն է հեռաւորութիւն, այսինքն է՝ Ստաւան մի : Նա է Ասպարէզն ըստ Ոտնաչափութեան՝ Քայլ հարիւր : Նա Քայլն վեց Ոտն. և Ոտն վեշտասան Մատն : Մղոնն է Ասպարէզ եօթն : Իսկ Ասպարիսաց Ասպարէզն հարիւր քառասուն և երեք Քայլ. և Մղոնն է եօթն Ասպարէզ. որպէս զի լինել Գետնաչափութեամբ Մղոնն հազար Քայլ ‖ :

Իսկ 'ի գիրս Աստեղաբաշխութեան՝ որ յանուն Շիրակացւոյն, և յաշխարհագրական բանս ինչ յետնոց դնի այսպիսի ինչ, թէպէտև՝ որպէս կարծեմք, լի վրիպանօք անհմուտ գրչաց : * Ասպարէզն ունի Կանգուն չորեքհարիւր և յիսուն : Իսկ ըստ առաջնոցն հինգհարիւր 'ի սրտէն : Մասն հինգհարիւր Ասպարէզ է, և մի Ասպարէզն հարիւր Մղոն (թերևս Քայլ) է. և մի Մղոն երկու հազար և հինգ հարիւր Կետաձիգ է : Ըստ Պարսից մի Մասն (թերևս Մղոնն) հազար Քայլ է ‖ :

Երզնկացին 'ի մեկնութեան քնաբանին * Եթէ ոք տարապարհակ վարիցէ զքեզ Մղոն մի, երթ ընդ նմա

և երկուս» յիշատակէ և զԱսպարէզն օրինակ զայս. * Միղոնն փարսանգն է. զոր Ձիընթաց մի ոմանք անուանեն, և այլք Ձայնահաս, և կէսք Որընկէց, և ոմանք Նետաձիգ մի. բայց ճշմարտապէս Ասպարէզն է, որ է Ստաւան. հազար Քայլ ըստ երկրաչափական արհեստին»: Այլ ոչ նուազ մթութիւն տեսանի և 'ի բանս սորա: Մինինսքի գերմանացի եւ 'ի Տաճկական յԱրաբական և 'ի Պարսկական բառարանի իւրում երկոտասան հազար Քայլ կամ Կանգուն ընծայէ փարսախի կամ Փարսանգին Պարսից: Բայց այսոքիկ ոչ են տիրապէս չափ Ասպարիսի, այլ լայնաբար եւեթ ընծային նմին:

Ոսկեբերան 'ի մեկնութեան բնաբանիս * Բեթանիա մերձ էր յԵրուսաղէմ իբրև Ասպարիսօք հնգետասան» երկու Միղոն ընծայէ հնգետասան Ասպարիսացդ, յասելն. * Իսկ եթէ Ասպարիսօք հնգետասան հեռի էր Բեթանիա, այսինքն՝ Միղոնօք երկու, զհա՞րդ չորեքօրեայ մեռեալ լինէր Ղազարոս»:

Իսկ մեր Սամբրէ 'ի ճառն Յարութեան Ղազարու՝ երեք Միղոն ընծայէ այդոցիկ հնգետասան Ասպարիսացդ, քանզի ասէ. * Մերձ էր գեղն յԵրուսաղէմ Միղոնաւ երիւք»:

'Ի Սուրբ գիրս համարակօրէն առեալ լինի Ասպարէզն իբրև ութերորդ կամ եօթներորդ մասն Միղոնի՝ ըստ հաշուի Յունաց և Հռովմայեցւոց. վասն որոյ և գտանի միայն 'ի յունարէն բնագիրս Ստադիոն անուամբ. զոր նախնիք մեր թարգմանեն եւ երբեմն Ստաւան. և առնուն զայն՝ է՛ զի իբրև նոյնաչափ ընդ Ասպարիսի, և է՛ զի իբրև կէս նորա. որպէս ունիս տեսանել 'ի բառն Ստաւան: Նաև այսոքիկ են վկայութիւնք Ասպարիսի 'ի Սուրբ գրոց: * Որ է մերձ յԵրուսաղէմ իբրև Ասպարիսօք հինգ». Բ. Մակ. ժա. 5: * Որ հեռի էր յԵրուսաղեմէ հարիւր և վաթսուն (Յոյն վաթսուն) Ասպարիսաւ». Ղուկ. իդ. 13: * Վարեալ իբրև Ասպարէզս քսան և հինգ, կամ երեսուն». Յովհ. զ. 19: * Երկայնութիւն նորա հազար հարիւր և վեց (Յոյն հազար և վեցհարիւր) Ասպարէզ». Յայտ. ժդ.

20։ * Զափ երկայնութեան նորա երկոտասան հազար Ասպարէզ»։ Յայտ. իա. 16։

Այլ Ասպարէզն երբեմն առեալ լինի լայնաբար եթէ 'ի Սուրբ գիրս, և եթէ առ արտաքինս, փոխանակ ո՛ր և իցէ երկարաձիգ հեռաւորութեան. որպիսի է յայն բան Աւետարանին. * Եւ նաւն մեկնեալ էր 'ի ցամաքէն բազում Ասպարիսօք՝ ծփեալ յալեացն». Մատթ. ժդ. 24։ Ուր Յունական բնագիրն ունի այսպէս. * Եւ նաւն էր արդէն 'ի խորս ծովուն՝ ծփեալ յալեացն»։ Վասն որոյ անհնար է մեզ որոշել զչափ Ասպարիսի ըստ ամենայն մատենագրաց։ Միայն մնայ մեզ ասել, թէ Ասպարէզն հասարակօրէն առեալ լինի իբրև ութերորդ, կամ եօթներորդ մասն Մղոնի. իսկ երբեմն լայնաբար նշանակէ զո՛ր և իցէ հեռաւորութիւն։

## Ասսարիոն. Յոյն 'Ασσάριον.

### Կշիռ և Դրամ։

ԱՍՍԱՐԻՈՆ կամ ԱՍԱՐԻՈՆ. Լատ. assarium. Է անուն դրամոյ, որ է Դանգ. և է կշիռ երկուց Գարեհատաց։

Ունիմք զայս բառ 'ի կարգս Կշռոց Շիրակացւոյն։ ա. բ. և գ. օրինակք նորա ունին այսպէս. * Կշիռ բ Գարեհատաց կոչի Ասարիոն. իսկ ըստ Հելլենականին Լեպտոն կոչի. բայց ըստ Եբրայեցւոցն՝ Նուազութիւն, որ է անօսր. և ըստ Հայումս կոչի Դանգ»։ Իսկ դ. և ե. օրինակք դնեն այսպէս. * Մնաթն ինն հազար Ասարիոն է, որ է անօսր, որ է Դանգ. զոր Ք.ս հինգ ձագի վաճառ ասաց. և ըստ Եբրայեցւոցն Ասարիոնն Նուազութիւն կոչի. ըստ ժամանակին Դահեկանն վաթսուն Ասարիոն էր, և Դահեկանն էր արծաթի»։

Յիշատակէ և Եպիփան զԱսսարիոն 'ի բանն Տաղանդ, և ունի այսպէս. * Վեց Լեպտոն Տաղանդի է եօթն Ասսարիոն. և եօթն Լեպտոն Ասսարիոնաց

է հարիւր Դենար։ Արծաթի տպաւորեցաւ Դահեկան 'ի սկզբանէ. և տպաւորեցաւ նա յԱսսարիոնաց։ Այլ այս բանք Եպիփանու անիմանալի են՝ ոչ միայն մեզ, այլև Պետաւիոսի Յոնեան՝ ծանօթարարի նորա։

Ասսարիոն իբրև նոյն ընդ Դանգի՝ հասարակօրէն է անուն պղնձի Դրամոյ. բայց նշանակէ և զարծաթի Դահեկան։ Առեալ լինէր նա երբեմն և փոխանակ խեցեղէն, կաշեղէն և փայտեղէն Հռոմայից. վասն որոյ ասէ Եւսեբի 'ի Քրոնիկոն կանոնի իւրում վասն Նումայ Պոմպիղեայ Թագաւորի Հռովմայեցւոց. * Նոյն և զԿոնգիարիոնն (պարգև) ետ Ասսարիա (Յոյն ἀσσάρια, զԱսսարիոն. որ է յոգնակի հայցականն բառիս ἀσσάριον) փայտեղէն և խեցեղէն Հռոմայս։ Այս բառս Հռոմայս դնի 'ի Թարգմանչէ անտի իբրև բացատրութիւն յունական ձայնիս Ասսարիս։ Այլ յԱծաշունչ գիրս նախնիք մեր Թարգմանեն զԱսսարիոն՝ Դանգ։

## Աստիճան։

### Չափ երկայնութեան։

ԱՍՏԻՃԱՆ կամ ԱՇՏԻՃԱՆ. Յոյն μοῖρα. Լատ. gradus. Է մասն բոլորակի յերկինս, և հողագնտոյս։ Իսկ Աստեղաբաշխից և Երկրաչափից բոլորակն բաժանի 'ի 360 Աստիճան. և իւրաքանչիւր Աստիճան է 60 Մղոն։ Զաստիճանն Խորենացին կոչէ Մասն։

## Արգիւրոն. Յոյն Ἄργυρον.

### Դրամ։

ԱՐԳԻՒՐՈՆ. Յոյն Ἄργυρον (արծաթ կամ արծաթի). Լատ. argenteus. Է անուն Արծաթի դրամոյ կամ Սիկեղ Հրէից։ Ունիմք զայս բառ յերկիս օրինակս կշռոց Իրակացւոյն այսպէս. * Արգիւրոնն արծաթի Դահեկանի անուն է. զոր եառ Յուդայ 'ի Քահանայից։

*ԶԱՄԵՆԱՅՆ՝ ՉԱՓՈՎ ԵՒ ԹՈՒՈՎ ԵՒ
ԿՇՌՈՎ ԿԱՐԳԵՑԵՐ||։

*Իմաստ. ժա. 21։*

# ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆ

# ԶԱՓՈՑ ԵՒ ԿՇՌՈՑ

## ՆԱԽՆԵԱՑ

---

### ԱԳՈՒՌ

**Պարսկերէն թերեւս Ախէր կամ Ակէօր։**

*Զափ ցամաքեղինաց և հեղանիւթոց։*

Ագուռ կամ Ագուռն․ Եբրայեցերէն խօֆէն․ Յունարէն δράξ կամ χείρ․ Լատիներէն pugnus կամ pugillus.

Է չափ ձեռին մարդոյ․ և է նոյնանիշ ընդ բառիցս Բուռն և Ափ։ *Լից զԱգուռս քո կայծակամբք հրոյ‖․ Եզեկ․ Ժ․ 2։ Ուր Յոյն բնագիրն յօրինակս ինչ է χείρ, ձեռն, և յայլս δράξ, բուռն։

Ախէր ըստ բառարանին Պարսից՝ նշանակէ ղանօթ խոր․ թուի մեզ, թէ զնորին նմանութիւն բերէ ՚ի մեզ բառս Ագուռ։

Իսկ Ակէօր ըստ նոյն բառարանին Պարսից՝ նշանակէ աղիւս թրծեալ․ զոր ՚ի մեզ դարձեալ կոչեմք Ագուռ․ ըստ այնմ․ *Աղիւս թրծեալ հրով, Ագուռ՝ կացցէ ՚ի ջրի լաւ քան զքար‖․ Վարք Հարանց․ Ժ՟։ Զոր ոմանք [illegible] կամ անփորձելի թարգմանեն․ բայց մեզ թուի լինել նոյնանիշ ընդ բառիցս՝ աղիւս թրծեալ հրով․ քանզի և ՚ի Լատին թարգմանութեան այսր բանի Հարանցս դնի միայն աղիւս թրծեալ հրով, և չիք թարգմանութիւն բառիս Ագուռ։

Այլ քանզի երկրորդ նշանակութիւն սորա օտար

ցուցանել զընդհանուր նշանակութիւն նորա ։ Յունական բառդ ἄγγος կամ ἀγγεῖον, նախնիք մեր թարգմանեն եւ Անօթ. որպէս ունիս տեսանել 'ի նմա ։

Ամասարակութ. Եբր. Համձիզրակոթ.

Չափ հեղանիւթոց ։

ԱՄԱՍԱՐԱԿՈՒԹ. Յոյն μασμαρώθ. Լատ. pelvis կամ phiala. Էր մի յանօթոց տաճարին. որ եւ ըստ հասարակ կարծեաց Մեկնչաց՝ էր Տաշտ կամ Սկաւառակ եւ կամ Բաժակ ։ * Նաեւ զԱպփոյթն, եւ զԱմասարակոյթն॥. Երեմ. ծբ. 19 ։ Տես զայսմանէ 'ի Կաղամանդեկոյթ եւ 'ի Մասմարոյթ ։

Անդլիտերիոն. Յոյն Ἀντλητήριον.

Չափ հեղանիւթոց ։

ԱՆԴԼԻՏԵՐԻՈՆ. Լատ. vas ad hauriendum, haustrum. Յիշատակէ զայս բառ Ե հրահանգէն 'ի կարգի անդ չափուց 'ի բառն Կիւաթոս, այսպէս. * Կիւաթոս չափ է գինւոյ արկանելոյ յաղակիս, եւ կոչի ըստ Ատտիկեցւոց լեզուի Անդլիտերիոն. գինեհան է երկայնադաստակ որպէս զԲաժակ՝ վասն 'ի խորութենէ կարասոյն զգինի հանելոյ॥ ։

Անօթ ։

ԱՆՕԹ. Եբր. Քելի. Յոյն σκεῦος. Լատ. vas. Է հասարակ անուն ամենայն Ամանոց եւ Ընդունարանաց ։ * Եւ Անօթ կաւեղէն՝ յորում եփեսցի, փշրեսցի. եւ եթէ 'ի պղնձի Անօթի եփեսցի, քերեսցէ զնա, եւ ջրով ողողեսցէ॥. Ղեւ. զ. 28 ։ * Եւ եհան ծառայն Անօթս ոսկւոյ, եւ Անօթս արծաթոյ॥. Ծննդ. իդ. 53 ։ * Սպանցեն զմի հաւն յԱնօթ խեցեղէն॥. Ղեւ. ժդ. 5 ։ * Սեղանն Անօթ կերակրոց է॥. Փիլոն ։ * Ներ

դոյզն Անօթիւ յԱդենականն աղբերց առեալ։ Շնորհ. Ներբ. հրեշ. * Սոինք Անօթ կաթին։ Սար. Հայրանց. Դ. 147։ Գնի սա բազում անգամ և փոխանակ բառիս Աման. բայց երկոքին ևս ոչ են տիրապէս Չափ, այլ ընդհանուր անուն Չափուց։

## Աշխարհագիր։

### Կշիռ և Դրամ։

ԱՇԽԱՐՀԱԳԻՐ. Նշանակէ զհարկն Թագաւորական հանեալ 'ի ձեռն աշխարհագրի։ Յիշատակեն զայս բառ Դ. և Ե. օրինակք Շիրակացւոյն 'ի կարգս Կշռոց, այսպէս. * Աշխարհագիր, ըստ Հռովմայեցւոց Կապիտոյն, որ է ըստ գլխոյ. զի Կապա (կապուտ) գլուխ է։ Նաև սովաւ իմանան զԵրկդրամեանն կամ զՍատերն՝ զոր հարկահանք (ըստ կարծեաց բազմաց՝ Կայսեր Հռովմայեցւոց) պահանջէին 'ի Պետրոսէ։ Վասն որոյ և Ա. Բ. և Դ. օրինակք 'ի բառն Սատեր և Դրաքմէ՝ ունին այսպէս. * Կշիռ Սիկեղի և Դրամարի՝ կոչի ըստ Եբրայեցւոցն Սատեր, և ըստ Հելլենականին Ոբղոս, և ըստ Եգիպտացւոց Քաղկոս. վասն զի Աղեքսանդրացիք զարծաթն Քաղկիմա կոչեն։ Նաև ըստ հասարակաց խօսից կոչի Դրաքմէ, որ է Ը մասն Ունկոյ։ Իսկ ըստ Հռովմայեցւոցն Կապետան կոչի. զի Կապու (կապուտ) գլուխ լսի. քանզի Աւգոստոս Կայսր եդ հարկս ըստ գլխոյ Դրաքմէ մի։ Նաև քանզի ըստ Ղուկայ աւետարանագրի Աւգոստոս Կայսր արար զաշխարհագիրն, յայն սակս և Դ. և Ե. օրինակք զհարկն նորա կոչեն Աշխարհագիր։ Իսկ թէ ուստի առեալ իցէ Շիրակացին զԿապետոնն, կամ զԱշխարհագիրն, չունիմք ինչ ասել հաւաստի։ Այլ ըստ Յովսեպոսի ոչ միայն Աւգոստոս, այլև Պոմպէոս, Յուլիոս, Վեսպասիանոս և Դոմետիանոս՝ եդին հարկս ըստ գլխոյ 'ի վերայ Հրէից։ Յորոց միջի Վեսպասիանոս՝ զկնի աւերման տաճարին Երուսաղէմի, հրաման ետ Հրէից՝ զԵրկդրամեանն կարգեալ 'ի Մովսիսէ (Ելք. Լ. 13.) վասն

տաճարին, հարկել Կապետոլինի Հռովմայ :

Զաշխարհագիր ըստ որում համար ժողովրդեանն, կոչեն յոյնք ἀπογραφὴ, և լատինք descriptio. Իսկ ըստ որում հարկ, ըստ Յունաց կոչի κῆνσος, և ըստ Լատինացւոց census և capitatio. Զերկոսին միանգամայն յայտ առնեն այս բանք գ̅. Մակաբայեցւոց. * Զամենայն ազգն հրէից յԱշխարհագիր խառնել 'ի կարգս հարկի ծառայութեան ||. բ̅. 14 :

## Ապորրումայ. Յոյն Ἀπόρρυμα.

Չափ հեղանիւթոյ :

ԱՊՈՐԻՒՄԱՑ կամ ԱՊՈՐՐԻՒՄԱՑ : Ունիմք զայս բառ 'ի ա̅. օրինակն Չափուց Շիրակացւոյն. բայց կրճատմամբ կամ աղաւաղմամբ լեալ է Եւբմայ, այսպէս. * Չափ ժա̅ Քսեստի կոչի Եւբմայ ըստ Թեբայեցւոց լեզուի. և է նոյնչափ կէս Մոդոյ ||: Զայս բան առեալ է Շիրակացին յԵպիփանէ՝ որ ունի այսպէս. * Ապորիումայ չափ է միայն առ Թեբայեցիս, և է կէս Սայիտ. իսկ Սայիտն ճշմարիտ՝ է իբ̅ Քսեստ ||:

## Ապփովթ. Յոյն Ἀπφώθ.

Չափ հեղանիւթոյ :

ԱՊՓՈՎԹ. Եբր. հաւփփեմ. Լատ. hydria. Էր մի յանօթոց Տաճարին. զոր ոմանք իմանան Սափոր, ոմանք Սկաւառակ կամ Ափսէ, այլք Սան, և կէսք Բ[illegible] : * Լուառ և զԱպփովթն և զԱմասարակովթն ||. Երեմ. ծբ̅. 19 : Թարգմանիչք մեր պահեալ են զյունական հնչումն :

## Ասպարէզ. Պարսկ. Ասփէրէյս կամ Ասփէրէզ:

Չափ երկայնութեան:

ԱՍՊԱՐԷԶ կամ ԱՍՊԱՐԷՍ (Ձիընթաց, ըստ Յունաց ἱππόδρομος) Յոյն στάδιον. Լատ. stadium (Ստադ կամ Ստադիոն ըստ Հայոցս): Է չափ երկայնութեան. որ է ըստ արդի Ռուսմանկանաց՝ ութերորդ մասն Մղոնի, այն է 125 Քայլ, կամ 625 Ոտն երկրաչափական: Այնպէս դնէին և բազումք ՚ի նախնեաց. զի ասէ Ստրաբոն. * Որպէս բազումք (համարին) Մղոնն է ութասպարիսեան‖: Իսկ բազումք ևս եօթնասպարիսեան դնէին զՄղոնն, քանզի ասէ Սուիդաս. * Մղոնն է չափ ճանապարհի՝ եօթն Ասպարէզ‖: Իսկ մերս Խորենացի և Շիրակացի կրկնակի առնուն զԱսպարէզն. մի՝ ըստ Օդաչափութեան, և միւս ևս՝ ըստ Գետնաչափութեան: Զի ունի Խորենացին. * Ասպարէզն է հեռաւորութիւն, այսինքն է՝ Ստաւան մի: Նա է Ասպարէզն ըստ Օդաչափութեան՝ Քայլ հարիւր: Նա Քայլն վեց Ոտն. և Ոտն վեշտասան Մատն: Մղոնն է Ասպարէզ եօթն: Իսկ Ասպարիսաց Ասպարէզն հարիւր քառասուն և երեք Քայլ. և Մղոնն է եօթն Ասպարէզ. որպէս զի լինել Գետնաչափութեամբ Մղոնն հազար Քայլ‖:

Իսկ ՚ի դիրս Աստեղաբաշխութեան՝ որ յանուն Շիրակացւոյն, և յաշխարհագրական բանս ինչ յետնոց դնի այսպիսի ինչ, թէպէտև՝ որպէս կարծեմք, լի վրիպանօք անհմուտ գրչաց: * Ասպարէզն ունի Կանգունս չորեքհարիւր և յիսուն: Իսկ ըստ առաջնոցն հինգհարիւր ՚ի սրտէն: Մատն հինգհարիւր Ասպարէզ է, և մի Ասպարէզն հարիւր Մղոն (թերևս Քայլ) է. և մի Մղոն երկու հազար և հինգ հարիւր Վետաձիգ է: Ըստ Պարսից մի Մատն (թերևս Մղոնն) հազար Քայլ է‖:

Երզնկացին ՚ի մեկնութեան բնաբանին * Եթէ ոք տարապարհակ վարեսցէ զքեզ Մղոն մի, երթ ընդ նմա

և երկուս‖ յիշատակէ և զԱսպարէզն օրինակ զայս. * Մղոնն Փարսանգն է. զոր Ձիընթաց մի ոմանք անուանեն, և այլք Ձայնահաս, և կէսք Քարընկէց, և ոմանք Նետաձիգ մի. բայց ճշմարտապէս Ասպարէզն է, որ է Ստաւան. հազար Քայլ ըստ երկրաչափական արհեստին‖: Այլ ոչ նուազ մթութիւն տեսանի և 'ի բանս սորա: Մինինքի գերմանացի ևս 'ի Տաճկական յԱրաբական և 'ի Պարսկական բառարանի իւրում երկոտասան հազար Քայլ կամ Կանգուն ընծայէ Փարսախի կամ Փարսանգին Պարսից: Բայց այսոքիկ ոչ են տիրապէս չափ Ասպարիսի, այլ լայնաբար ևեթ ընծային նմին:

Ոսկեբերան 'ի մեկնութեան բնաբանիս * Բեթանիա մերձ էր յԵրուսաղէմ իբրև Ասպարիսօք հնգետասան‖ երկու Մղոն ընծայէ հնգետասան Ասպարիսացդ, յասելն. * Իսկ եթէ Ասպարիսօք հնգետասան հեռի էր Բեթանիա, այսինքն՝ Մղոնօք երկու, զիա՞րդ չորեքօրեայ մեռեալ լինէր Ղազարոս‖:

Իսկ մերս Մամբրէ 'ի ճառն Յարութեան Ղազարու՝ երեք Մղոն ընծայէ այդոցիկ հնգետասան Ասպարիսացդ, քանզի ասէ. * Մերձ էր գեղն յԵրուսաղէմ Մղոնաւ երիւք‖:

'Ի Սուրբ գիրս հասարակօրէն առեալ լինի Ասպարէզն իբրև ութերորդ կամ եօթներորդ մասն Մղոնի՝ ըստ հաշուի Յունաց և Հռովմայեցւոց. վասն որոյ և գտանի միայն 'ի յունարէն բնագիրս Ստադիոն անուամբ. զոր նախնիք մեր Թարգմանեն ևս երբեմն Ստաւան. և առնուն զայն՝ է՛ զի իբրև նոյնաչափ ընդ Ասպարիսի, և է՛ զի իբրև կէս նորա. որպէս ունիս տեսանել 'ի բառն Ստաւան: Եւ այսոքիկ են վկայութիւնք Ասպարիսի 'ի Սուրբ գրոց: * Որ է մերձ յԵրուսաղէմ իբրև Ասպարիսօք հինգ‖. Բ. Մակ. ժա. 5: * Որ հեռի էր յԵրուսաղեմէ հարիւր և վաթսուն (Յոյն [illegible]) Ասպարիսաւ‖. Ղուկ. իդ. 13: * Վարեալ իբրև Ասպարէզս քսան և հինգ, կամ երեսուն‖: Յովհ. զ. 19: * Երկայնութիւն նորա հազար հարիւր և վեց (Յոյն [illegible]) Ասպարէզ‖. Յայտ. ժդ.

20: * Չափ երկայնութեան նորա երկոտասան հազար Ասպարէզ‖. Յայտ. իա̄. 16:

Այլ Ասպարէզն երբեմն առեալ լինի լայնաբար եթէ 'ի Սուրբ գիրս, և եթէ առ արտաքինս, փոխանակ ո՛ր և իցէ երկարաձիգ հեռաւորութեան. որպիսի է յայն բան Աւետարանին. * Եւ նաւն մեկնեալ էր 'ի ցամաքէն բազում Ասպարիսօք՝ ծփեալ յալեացն‖. Մատթ. ժդ̄. 24: Իսկ Յունական բնագիրն ունի այսպէս. * Եւ նաւն էր արդէն 'ի խորս ծովուն՝ ծփեալ յալեացն‖: Վասն որոյ անհնար է մեզ որոշել զչափ Ասպարիսի ըստ ամենայն մատենագրաց: Միայն մնայ մեզ ասել, թէ Ասպարէզն հասարակօրէն առեալ լինի իբրև ութերորդ, կամ եօթներորդ մասն Մղոնի. իսկ երբեմն լայնաբար նշանակէ զո՛ր և իցէ հեռաւորութիւն:

## Ասսարիոն. Յոյն 'Ασσάριον.

### Կշիռ և Դրամ:

ԱՍՍԱՐԻՈՆ կամ ԱՍԱՐԻՈՆ. Լատ. assarium. Է անուն դրամոյ, որ է Դանգ. և է կշիռ երկուց Գարեհատաց:

Ունիմք զայս բառ 'ի կարգս Կշռոց Շիրակացւոյն: ա̄. բ̄. և դ̄. օրինակք նորա ունին այսպէս. * Կշիռ բ̄ Գարեհատաց կոչի Ասարիոն. իսկ ըստ Հելլենականին Կերատոն կոչի. բայց ըստ Եբրայեցւոցն՝ Եուսաղութիւն, որ է անօսր. և ըստ Հայոցս կոչի Դանգ‖: Իսկ դ̄. և ե̄. օրինակք դնեն այսպէս. * Մնաթն ինն հազար Ասարիոն է, որ է անօսր, որ է Դանգ. զոր Տ̄ր հինգ ձագի վաճառ ասաց. և ըստ Եբրայեցւոցն Ասարիոնն Եուսաղութիւն կոչի. ըստ ժամանակին Դահեկանն վաթսուն Ասարիոն էր, և Դահեկանն էր արծաթի‖:

Յիշատակէ և Եպիփան զԱսսարիոն 'ի բանն Տաղանդ, և ունի այսպէս. * Վեց Կերատոն Տաղանդի է եօթն Ասսարիոն. և եօթն Կերատոն Ասսարիոնաց

է հարիւր Դինար ։ Արծաթի տպաւորեցաւ Դահեկան 'ի սկզբանէ . և տպաւորեցաւ նա յԱսսարիոնաց ‖ ։ Այլ այս բանք Եպիփանու անիմանալի են՝ ոչ միայն մեզ, այլև Պետաւիոսի Յունեան՝ ծանօթարարի նորա ։

Ասսարիոն իբրև նոյն ընդ Դանգի՝ հասարակօրէն է անուն պղնձի Դրամոյ . բայց նշանակէ և զարծաթի Դահեկան ։ Առեալ լինէր նա երբեմն և փոխանակ խեցեղէն, կաշեղէն և փայտեղէն Հռոմայից . վասն որոյ ասէ Եւսեբի 'ի Քրոնիկոն կանոնի իւրում վասն Նումայ Պոմպիլեայ թագաւորի Հռովմայեցւոց . * Նոյն և զԴոնգիարիոնն (պարգև) ետ Ասսարիա (Յոյն ἀσσάρια, զԱսսարիոնս . որ է յոգնակի հայցականն բառիս ἀσσάριον) փայտեղէն և խեցեղէն Հռոմայս ‖ ։ Իւր բառս Հռոմայս դնի 'ի Թարգմանչէ անտի իբրև բացատրութիւն յունական ձայնիս Ասսարիա ։ Այլ յԱծաշունչ գիրս նախնիք մեր Թարգմանեն զԱսսարիոն՝ Դանգ ։

## Աստիճան ։

### Չափ երկայնութեան ։

ԱՍՏԻՃԱՆ կամ ԱՇՏԻՃԱՆ . Յոյն μοῖρα . Լատ . gradus. Մասն բոլորակի յերկինս, և հողագնտոյս ։ Ըստ Աստեղաբաշխից և Երկրաչափից բոլորակն բաժանի 'ի 360 Աստիճան . և իւրաքանչիւր Աստիճան է 60 Մղոն ։ Զաստիճանն Խորենացին կոչէ Մասն ։

## Արգիւրոն . Յոյն Ἄργυρον .

### Դրամ ։

ԱՐԳԻՒՐՈՆ . Յոյն Ἄργυρον (արծաթ կամ արծաթի) . Լատ . argenteus . Է անուն Արծաթի դրամոյ կամ Սիկղ Հրէից ։ Ունիմք զայս բառ յերրիս օրինակս կշռոց Շիրակացւոյն այսպէս . * Արգիւրոնն արծաթի Դահեկանի անուն է . զոր եառ Յուդայ 'ի Քահանայից ‖ ։

## Արգոբ · Եբր · Արգազ:

Չափ ցամաքեղինաց:

ԱՐԳՈԲ. Յոյն Θέμα կամ Θέμα βερσεχθάν, և կամ βοεργάζ. Լատ. capsa կամ capsella. Գտանեմք զայս բառ 'ի գիրս Բ Թագաւորութեանց, այսպէս. * Եւ դիջիք (զանօթսն ոսկիս) 'ի քուրձ Արգոբ||. Գլ. Զ. 8: Բուն եբրայական բնագիրն է Արգազ. զոր ոմանք թարգմանեն Արկղ, և ոմանք Քուրձ կամ Պարկ. և ոմանք Կողով. և Ակիւղաս թարգմանէ Խորգ կամ Քուրձ: Յօրինակս ինչ Եօթանասնից դնի աստանօր սոսկ Θέμα (որ է Անօթ նուիրաց, կամ Գանձանակ) և յայլս Θέμα βερσεχθάν. և ըստ Թէոդորետեայ՝ Եօթանասունք կոչեն զսա βοεργάζ (որ է ներգոյական հոլով եբրայական բառիս Արգազ՝ կոչեցեալ ըստ Եբրայեցւոց Պա-արգազ:

Մանկունք մեր թարգմանեալ են զսա Քուրձ, և ըստ մերում կարծեաց՝ առ նմին պահեալ զԵբրայական հնչումն՝ սակաւուք ինչ այլայլութեամբ: 'Ի կիր արկանէ զայս բառ և Գրիգոր Մագիստրոս՝ յասելն. * Ընթադրեցից վճռական Արգոբ||: Դարձեալ. * Անխորոզ Արգոբ կարծեալ||: Բայց նշանակութիւն նորա յայսոսիկ բանս Մագիստրոսի՝ անծանօթ է մեզ:

## Արդաբ · Պարսկ · Իրդէպ կամ Իարդէպ:

Չափ ցամաքեղինաց:

ԱՐԴԱԲ. Յոյն Ἀρτάβη. Լատ. artaba. Է չափ ցամաքեղինաց՝ 72 Քսեստ:

Ա. Օրինակ Շիրակացւոյն 'ի կարգս Չափուց յաղագս Արդուի ունի այսպէս. * Չափ հԲ Քսեստաց լինի Արդու մի. և ըստ Հելլենականին Արտաբոս կոչի. բայց եգաւ յԵգիպտացւոյն Որմոց, որ է բարե-

ժողով. և Եբրայեցիք վարին նովին չափով յԵգիպ-
տացւոց առեալ‖։ Իսկ Եպիփան այսպէս ունի վասն Արդուի կամ Արտաբէի. * Արտաբէ է չափ առ Եգիպտացիս, և է եօթանասուն և երկու Սեքստ։ Բազում ճշդութեամբ և սա այսպէս ունի։ Եօթանասուն և երկու արք յայնժամ զաշտարակն շինեցին, յորժամ յեօթանասուն և երկու լեզուս 'ի միոյ անտի բաժանեցան. յորմէ և Մերոպէս (μέροπες) կոչեցան՝ վասն բաժանման բարբառոյն։ Սոյն այս չափ և Մետրետէս կոչի՝ ըստ չափուն Սրբութեան‖։

Դ. և Ե. Օրինակք չափուց Շիրակացւոյն ունին համառօտիւ այսպէս. * Արտափ՝ որ ասի Արդու, չորրորդ մասն Մոդոյ. որ է ՀԲ Սեքստ։ Այլ յայս բան այսոցիկ օրինակաց թուի մեզ լինել վրիպակ գրչաց. քանզի Մոդ ըստ Եպիփանու, և ըստ Շիրակացւոյն է 22 Սեքստ, իսկ արդ՝ զիա՞րդ կարէ Արդու՝ որ է 72 Սեքստ, լինել չորրորդ մասն նորա։ Ապա եթէ ուղիղ իցեն բանքդ, ունիմք ասել՝ թէ աստանօր բառս Մոդ դնի ըստ նշանակութեան Մեդիմնոսի Յունաց, որ է ըստ ոմանց 96 Սեքստ. և է սա չորս Մոդ ըստ այլոց՝ որք զՄոդն համարին 24 Սեքստ։ Եւ ըստ այսմ հաշուի՝ Արդու Շիրակացւոյն կամ 72 Սեքստն, լինի՝ ոչ չորրորդ մասն Մեդիմնոսի, այլ երեք մասն 'ի չորից մասանց նորա. զի երիցս 24 է 72. յոր յաւելեալ միւս ևս 24, ելանէ թիւդ 96։ Ապա ունիմք ընթեռնուլ զբանս Դ. և Ե. օրինակացդ այսպէս. * Արտաբ՝ որ է Արդու, է երեք մասն Մեդիմնոսի կամ Արդուի Պարսից. որ է ՀԲ Սեքստ‖։

Սոյն այս Դ. և Ե. օրինակք յիշատակեն զԱրդու և 'ի բառն Գոմոր՝ այսպէս. * Գոմոր՝ որ է Արդու, ըստ Հելլենացւոյն ԺԵ Մոդոյ չափ‖։ Նոյնպէս դնէ և Եպիփան զԳոմորն մեծ, զոր կոչէ Գէթէկ։ Յորմէ յայտ է, թէ Արդու ոչ միշտ զնոյն չափ նշանակէ։ Արտաբէ ըստ բառարանին Յունաց է զուգաչափ ընդ Մեդիմնոսի Ատտիկեցւոց, որ է 96 Սեքստ։ Իսկ Իրտէպպ ըստ բառարանին Մինինսքեայ՝ է չափ մեծ առ Եգիպտացիս և առ Ասորիս՝ 96 Մոդ (ըստ այլոց

Քսեստ)։ Կալմէթ 'ի բառարանի Սուրբ գրոց դնէ զԱրդու 72 Քսեստ ըստ Եպիփանու և ըստ Իսիդորոսի. և նոյն ընդ Մեդիմնոսի Յունաց՝ ըստ Ադրիկողայ Գէորգեայ, և սակաւ մի աւելի՝ ըստ Հերոդոտեայ։ Բայց արժան է լսել զյետագայ կարևոր ծանօթութիւնս Մարիանայ Յոհեան վասն Արտաբէի կամ Արդուի. * Արդու ոչ էր չափ Յունաց, այլ՝ բարբարոսաց. ոմանք նոյնաչափ դնեն զայն ընդ Մետրետեսի, զոր յիշատակէն Սուրբ գիրք ... Փեղանդր 'ի համառօտութեան Ադրիկողայ Գէորգեայ ... դնէ զերրակի Արդուս։ Առաջինն՝ որ էր մեծագոյն, էր Մեդիմնոս մի, և երեք Կապիճ. և էր սա չափ Պարսից։ Երկրորդն էր Մարաց՝ Մեդիմնոս մի։ Երրորդն՝ որ էր փոքրագոյն, էր չափ Եգիպտացւոց։ Յայսմանէ են բանք մեր, զի բազումք յիշատակեն զսա ... Փաննիոս ընծայէ նմա $3\frac{1}{3}$ Մոդ ... որ և ըստ հաշուի նորա էր $53\frac{1}{3}$ Քսեստ ըստ Հռովմայեցւոց ... Այլք ընծայեն նմա 5 Մոդ, այսինքն՝ 80 Քսեստ ... Եօթանասունն և երկու Թարգմանիչք յԵսայի գլ. Է. 10. փոխան Քոռի, այսինքն 30 Մոդոյ, եդին Արդու 6, իմանելու մէն մի Արդուի 5 Մոդ կամ 80 Քսեստ ... Այլ չէ հնար մեզ այլազգ միաբանել զկարծիս հեղինակացդ, բայց միայն հայելով 'ի տարբերութիւնն Քսեստաց (այլևայլ ազգաց). իբր զի բանք Փաննիոսի են վասն Քսեստի ըստ Հռովմայեցւոց, Եպիփանու՝ ըստ Ատտիկեցւոց, և Եօթանասնից՝ ըստ Եբրայեցւոց։ Քանզի եթէ 'ի թիւդ $53\frac{1}{3}$ յաւելցես զերրորդմասն նորա, այսինքն $17\frac{7}{9}$, լինի $71\frac{1}{9}$ Քսեստ. իսկ եթէ յաւելցես 'ի նոյն թիւ զկէս նորա, այսինքն $26\frac{2}{3}$, լինի 80 Քսեստ, և ոչ աւելի‖։

Նախնիք մեր 'ի Թարգմանութեան Ա̃ծաշունչ գրոց դնեն զԱրդու հանդէպ երից Յունական բառից։ Առաջինն է ἀρτάβη. որ և գտանի յայսոսիկ կրկին տեղիս. * Որ սերմանիցէ Արդուս (Եբր. խօմէր) ժողովեսցէ Գրիւս երիս‖. Եսայ. Է. 10։ * Եւ եղանէր նմա ռոճիկ աւուր միոջ նաշիհ երկոտասան Արդու, և քառասուն ոչխար, և գինի վեց Մար‖. Դան. ԺԴ. 2։ Երկ-

բորդն է οἰφὶ կամ ὑφεί. (Եբր. էֆահ) յայսոսիկ տե-ղիս. * Եւ քաղեաց յանդին մինչև ցերեկոյ, և ծե-ծեաց զոր քաղեացն, և եղև Արդու մի‖. Հռութ. Բ. 17: * Եւ հասոյց ուլ մի յայծեաց, և Արդու մի ալիւր բաղարջ‖. Դատ. Զ. 19: * Արդուաւ նաշհոյ, և Սա-փորով գինւոյ‖. Ա. Թագ. Ա. 24: * Ա՛ռ դու զԱր-դու փոխնդոյս այսորիկ, և զտասն նկանակս զայսոսիկ‖. Ա. Թագ. ԺԷ. 17: * Կշիռ ըստ Գրուին և ըստ Ար-դուին եղիցի ... Զատանիցէք ... զվեցերորդ Արդուի 'ի Քոռէ ցորենոյ‖. Եզեկ. ԽԵ. 11—13: * Հինգ ոչ-խար հասուցեալ, հինգ Արդու (Եբր. սէահ) և Կայթ մի չամիչ‖. Ա. Թագ. ԻԵ. 18: Երրորդն է γομόρ. և այն 'ի միում տեղւոջ և եթ. * Եւ եառ Յեսսէ Արդու մի (Եբր. խամօռ, որ նշանակէ՝ բեռն մի էշոյ) հացի, և Տիկ մի գինւոյ‖. Ա. Թագ. ԺԶ. 20: Արդ՝ նաև 'ի Թարգմանութեանց աստի ևս զհետ գայ, թէ բառս Արդու երբեմն դնի փոխանակ այլևայլ չափուց. թէ-պէտև հասարակօրէն է նա 72 Քսեստ:

## Արե-նաչալ:

### Չափ հեղանիւթոց:

ԱՐԻՒՆԱԿԱԼ. Եբր. էաղաս (դրգալ). Յոյն θυΐσκη. Լատ. thuribulum, ևս՝ mortariolum. Ըստ մեզ նշանա-կէ զամանն՝ յորում դնի արիւն: Էր սա մի յանօթոց Տաճարին. որ և ըստ հասարակաց կարծեաց է Խնկա-նոց, կամ Անկան: * Զխնկաղացս նորա, և զԱրիւ-նակալս, և զՃաշակս նորա, և զՆուիրանոցսն‖. Ելից. ԼԷ. 16: Նախնիք մեր զյունականդ θυΐσκη այ-լուր Թարգմանեն՝ Տուփ, Խնկաղաց, Խնկաման, Խըն-կարան, և Խնբարդեայ. այլ աստանօր եդին Արիւնա-կալ, զի θύω, որ է արմատ Յունականին, նշանակէ՝ ոչ միայն խունկս արկանել, այլև զենուլ:

## Արծաթ. Յոյն. Ἀργύρος կամ Ἀργύριον.

### Դրամ։

ԱՐԾԱԹ. Եբր. ՔԷՍԷՖ. Լատ. argentum. Է ընդհանուր անուն՝ հասարակօրէն Արծաթի դրամոց։ * Կշռեաց Աբրահամ զԱրծաթն Եփրոնի ... չորեքհարիւր Սատեր Արծաթոյ ընտրոյ վաճառականաց։ Ծննդ. իգ. 16։ * Երեսուն կրկին Սատեր Արծաթ տացէ տեառն նոցա։ Ելից. իա. 32։ * Եւ էառ զԱրծաթն հազար երեքհարիւր և վաթսուն և հինգ Սիկղ ըստ սրբութեան Սկեղն։ Թուոց. գ. 50։ * Արծաթ Դիդրաքմայս քառասուն։ Բ. Եզր. Ե. 15։ * Եւ կշռեցին զԱրծաթն 'ի կշիռս։ Եզր. Ը. 10։ Պարտ էր քեզ արկանել զԱրծաթդ իմ 'ի սեղանաւորս։ Մատթ. իե. 27։ * Արծաթ յոյժ ետուն զօրականացն։ Անդ. իը. 12։ * Մի գաւազան, և մի մախաղ, մի հաց, և մի Արծաթ։ Ղուկ. Թ. 3։ * Արծաթ և ոսկի ոչ ունիմ։ Գործ. գ. 6։ * Արծաթ քո ընդ քեզ լիցի 'ի կորուստ։ Անդ. Ը. 20։ Սեռական հոլով սորա գնի և փոխանակ բառիս Արծաթի. * Եղիցին գինք նորա յիսուն Երկդրամեան Արծաթոյ։ Ելից. իէ. 16։ * Եւ ետուն նմա եօթանասուն Արծաթոյ 'ի տանէ Բահաղու։ Դատ. Թ. 4։ * Տացուք քեզ այր իւրաքանչիւր հազար և հարիւր Արծաթոյ։ Դատ. ժզ. 5։ * Եառ մայր նորա զերկերիւր Արծաթոյ։ Անդ. ժէ. 4։ * Եւ տաց քեզ տասն Արծաթոյ աւուրց յաւուրս։ Անդ. ժէ. 10. * Վասն Դանգի միոջ Արծաթոյ։ Ա. Թագ. Բ. 36։ * Ահա գտանի 'ի ձեռին իմում չորրորդ մասն Սկեղ Արծաթոյ։ Ա. Թագ. Թ. 8։ * Ահա ետու հազարս Արծաթոյ եղբօր քում։ Փիլոն։ 'Ի Սուրբ գիրս Արծաթ, կամ Արծաթի ընդհանրապէս առեալ՝ նշանակէ Սիկղ. իսկ արտաքոյ Սուրբ գրոց նշանակէ ևս երբեմն զոր և իցէ Դրամ՝ ևս և ոչ արծաթի։ Այս բառ իբրև Դրամ կամ Դահեկան մտանէ 'ի կարգս Կշռոց, և ոչ իբրև առանձին անուն հանքաց կամ մետաղի։

Շիրակացին զԱրծաթ, և զԱրծաթի կոչէ յունական հնչմամբ Արգիւրոն։

Արծաթէ. Յոյն. Ἀργύρεος, ἀργύριος, ἀργυροῦς.

Դրամ։

ԱՐԾԱԹԻ. Եբր. քէսէֆ (արծաթ). Լատ. argenteus, nummus argenteus. Եւ անուն Արծաթի դրամոյ. որ 'ի Սուրբ գիրս նշանակէ զՍիկղ։ * Եւ կշռեցին զվարձս իմ երեսուն Արծաթի‖. Զաքար. ժա. 13։ * Եւ առի զերեսուն Արծաթին‖. Անդ։ * Եւ նոքա կշռեցին նմա երեսուն Արծաթի‖. Մատթ. իզ. 15։ * Եւ առին զերեսուն Արծաթին՝ զգին վաճառելոյն‖. Անդ. իէ. 9։ * Երեսուն Արծաթի ասէ, կամ թէ Արծաթի էր դահեկան ժամանակին, կամ պատկեր երեսուն Արծաթի. որպէս ոմանք ասեն. զոր բերին Մոգք Տեառն մերոյ. և Մարիամ ետ ընծայ տաճարի՝ յորժամ ընծայեցոյց զնա։ Զոր տեսեալ Յուդայի՝ ցանկացաւ, և խնդրեաց. և փոխանակ զՎարդապետն մատնեաց‖. Երզնկ. 'ի Մտթ. Մատթ. իզ. 15. * Արգիւրոնն Արծաթի դահեկանի անուն էր, զոր էառ Յուդա 'ի Քահանայից ... ըստ ժամանակին դահեկանն վաթսուն Ասարիոն էր, և դահեկանն էր Արծաթի‖. Շիրակ. 'ի գիրս կշռոց։

Սեռական հոլովն բառիս Արծաթ՝ դնի բազում անգամ փոխան ուղղականի սորա։ * Եւ կշռեցի նմա արծաթ եօթն Սիկղ, և տասն Արծաթոյ‖. Երեմ. լբ. 9։ * Զհազար և զվեց հարիւր Արծաթոյն զոր առեր ... դարձոյց անդրէն զհազար և զվեց հարիւր Արծաթոյն առ մայր իւր‖. Դատ. ժէ. 2—3։ Տես և Արծաթ։

Արծաթի ըստ Լատին բառարանին արժէր զառաջինն տասն Դանգ. ապա հատեալ երկուենկի՝ ունէր զօրութիւն վեշտասան Դանգաց. հուսկ յետոյ առ ինքնակալութեամբ Օգոստեայ վերածեալ եղև յերկոտասան Դանգ։

Յիշատակէ և Եպիփան զԱրծաթի կամ զԱրգիւ-

րխոն՝ այսպէս. * Արդխուրխոն տպաւորեցաւ 'ի սկզբանէ դահեկան. և տպաւորեցաւ նա յԱսարխոնաց ։ Աբրահամ ասէն մուծանել զտիպ նորա յերկիրն Քանանայւոց‖։ Եւ այլուր. * Արդխուրխոնաց կամ Արդխուրխոնաց բազում տիպք եղեն յայլևայլ ժամանակս‖։ Բայց որպէս Արծաթ, նոյնպէս և Արծաթի՝ առեալ լինի երբեմն փոխանակ ամենայն տեսակաց դրամոց։

## Արկղ. Լատ. Arca.

Զափ կամ ընդունարան ցամաքեղինաց։

ԱՐԿՂ. Եբր. Արոն. Յոյն γλοσσόκομον և κιβωτός. Լատ. theca ad recondendum, arca. Է տապանակ փայտեղէն, յորում արկեալ լինի կամ մթերի ինչ։ * Եւ առէ արքայ, լիցի Արկղ, և դիցի 'ի դրան տանն Տեառն արտաքոյ‖. Բ. Մնաց. իդ. 8։ * Եւ ետուն (ընծայս) ամենեքեան իշխանքն, և ամենայն ժողովուրդն. և բերէին 'ի ներքս, և արկանէին յԱրկղն՝ մինչև լցաւ‖. Անդ. 10։ * Եւ լինէր իբրև բերէին զԱրկղն առ վերակացուս արքային 'ի ձեռն Ղևտացւոցն. իբրև տեսանէին թէ առաւելոյր արծաթն, գայր դպրապետն առ արքայ, և վերակացու մեծի քահանային, և թափէին զԱրկղն. և կացուցանէին անդրէն 'ի տեղւոջ իւրում‖. Անդ. 11։ * Ոչ զի աղքատաց ինչ փոյթ էր նմա, այլ զի գող էր. և զԱրկղն (Լատին Վուլկադայն ունի loculus, իսկ Յոյնն γλοσσόκομον) ինքն ունէր. և որ ինչ անկանէր, նա կրէր‖. Յովհ. ժբ. 6։ * Յորում կայր բուրվառն ոսկի, և Արկղն (Յոյն κιβωτός) Կտակարանաց պատեալ ներքոյ և արտաքոյ ոսկւով. յորում Սափորն ոսկի լի մանանայիւ, և գաւազանն Ահարոնի՝ որ ծաղկեցաւ, և տախտակք Կտակարանացն‖. Եբր. թ. 4։

ԱՐՏԱԲ կամ ԱՐՏԱՓ և ԱՐՏԱԲՈՍ. տես ԱՐԴՈՒ։

## Աւազան . Պարսկ . Աբզան :

Չափ հեղանիւթոց :

ԱՒԱԶԱՆ . Յոյն λουτρόν և λουτήρ . ποτιστήριον . κολυμβήθρα . λέβης . λεκάνη . Լատ . lavacrum, labrum, locus lavandi . aquarium, acqualiculus . piscina . lebes, olla . pelvis, patina . Է ընդհանուր անուն տեղւոյ կամ ընդունարանի ջրոյ . բայց առանձին իմն դնի փոխանակ Կոնքի , Սանի , և այլն :

* Արա Աւազան (Եբր . Գիոռ կամ Գոռ) պղնձի ... առ 'ի լուանալոյ 'ի նմա ‖ . Ելից . Լ . 18 : * Եւ դիցես զԱւազանն ընդ խորանն վկայութեան և ընդ սեղանն , և արկցես անդ ջուր ‖ . Անդ . Խ . 7 : * Եւ եդ զԱւազանն ընդ խորանն վկայութեանն , և ընդ սեղանն . և եարկ 'ի նա ջուր . զի լուասցեն 'ի նմանէ Մովսէս և Ահարոն , և որդիքն նորա զձեռս և զոտս իւրեանց ‖ . Անդ . Խ . 28—29 : * Եւ արար Աւազանս տասն . և եդ զհինգն յաջմէ , և զհինգն 'ի ձախմէ , լուանալ 'ի նոսա զգործ ողջակիզացն , և ողողել 'ի նոսա ‖ . Բ . Մնաց . Դ . 6 : * Եւ փութացաւ թափեաց զՍափորն յԱւազանն (Եբր . շոգէթ) ‖ . Ծննդ . ԻԴ . 20 : * Եւ դնէր զգաւազանսն՝ զոր քերծոյր , յԱւազանս ջրարբից ջրոյն . զի իբրև գայցեն խաշինքն ըմպել ջուր , հանդէպ գաւազանացն զկծիցին՝ յորժամ գայցեն ըմպել ջուր ‖ . Ծննդ . Լ . 38 :

* Եւ կացին 'ի վերայ ջրմղին վերնոյ Աւազանին (Եբր . Պերեքահ) ‖ . Դ . Թագ . ԺԸ . 17 : * Արարի ինձ Աւազանս ջրոյ՝ առնել 'ի նոցանէ զանտառս զուարձացեալ ծառոց ‖ . Ժողով . Բ . 6 : * Եւ ջուրք Նինուէի իբրև զջուրս Աւազանի ‖ . Նաւում . Բ . 8 : * Եւ էր յԵրուսաղէմ 'ի Պրոբատիկէ Աւազանին , որ կոչէր եբրայեցերէն Բեթհեզդա , հինգ սրահ : Յորս անկեալ դնէր բազմութիւն յոյժ հիւանդաց՝ կուրաց , կաղաց , գօսացելոց , որ ակն ունէին ջրոյն յուզելոյ : Եւ հրեշտակ Տեառն իջանէր ըստ ժամանակի յԱւազանն , և

յուզէր զջուրսն. և որ նախ ՚ի շարժումն ջուրցն իջանէր, բժշկէր՝ ոչ ունելով նշան հիւանդութեան: Յովհ. Ե. 2-4: * Երթ լուա յԱւազանին Սելովմայ՝ որ թարգմանի Առաքեալ: Յովհ. Թ. 7:

* Մովաբ Աւազան (Եբր. սիր) յուսոյ իմոյ: Սաղմ. ԾԹ. 10. և ՃԷ. 10:

* Զոր մաքրեցեր՝ յԱւազանին, մաքուր ձեռօք՝ զատըս նոցին: Շարակ: * Ողողեցին և Աւազան ... և զգիշերն ամենայն մկրտեցին: Եղիշ. պատմ. Ե. 113:

Այս բառ՝ ըստ որում Կոնք կամ Աման, մտանէ ՚ի կարգս Չափուց:

### Ափ. Թուի լինել արմատ բառիս ադրակ. Պարսկ. էֆտէխ կամ աֆտախ:

Չափ ցամաքեղինաց և հեղանիւթոց.

Ափ. Եբր. խօֆէն. Յոյն δράξ կամ χείρ. Լատ. pugillus, vola manus. Է չափ ձեռին մարդոյ, նոյնանիշ ընդ բառիցս՝ Ագուռ, Բուռն, և Ձեռն: * Առեալ քահանային ՚ի նմանէ լի Ափով: Ղևտ. Ե. 12: * Ամս Ափոյ միոյ գարւոյ: Եզեկ. ԺԳ. 19: * Ո՞ չափեաց Ափով զջուրս: Եսայ. Խ. 12: Զափ կամ զԲուռն յիշատակէ և Եպիփան ՚ի կարգս Չափուց.

### Ափէ. Յոյն ἀψίς.

Չափ հեղանիւթոց և ցամաքեղինաց.

ԱՓՍԷ և ԱՓՍԵԱՅ. Յոյն τρυβλίον, φιάλη. Լատ. catinus, patina և phiala. Է Սկաւառակ կամ անօթ կերակրոց: * Եւ զԱփսէն և զՏուփս: Թուոց. Դ. 7: * Եւ զբուրվառսն, և զԱփսեայսն արծաթիս: Դ. Թագ. ԻԵ. 15:

## Բաժակ:

### Չափ հեղանիւթոց:

ԲԱԺԱԿ. Եբր. գօս, կաւխաղ. Յոյն ποτήριον, κόνδυ. Լատ. poculum, calix.

Նշանակէ զըմպանակ գինւոյ, ջրոյ, և այլ հեղանիւթոց: Իսկ ըստ Մարգանայ * Բաժակ գինոյ բաժանիչ ասի||. 'ի Մեկն. Սաղմ: * Եւ բաժակն Փարաւոնի 'ի ձեռին իմում. առնուի զխաղողն, և ճմլէի 'ի Բաժակն Փարաւոնի. և տայի զԲաժակն 'ի ձեռս Փարաւոնի||. Ծննդ. Խ. 11: * Եւ շուրթն նորա իբրև զշուրթն Բաժակի՝ քանդակեալ բոյս շուշանի||. Բ. Մնաց. Դ. 5: * Բաժակ քո որպէս անապակ արբեցոյց զիս||. Սաղմ. ԻԲ. 5. * Բաժակ 'ի ձեռին Տեառն գինի լի անապակ արկեալ||. Սաղմ. ՀԴ. 9: * Ապա եթէ 'ի Տաշտս և 'ի Բաժակս արձակեսցես զաչս քո||. Առակ. ԻԳ. 31: * Եդի առաջի որդւոցն Ռեքաբիմաց Ամանս լի գինւով, և Բաժակս||. Երեմ. ԼԵ. 5: * Բաժակ ոսկի Բաբելոն 'ի ձեռին Տեառն||. Երեմ. ԾԱ. 7: * Զբաժակն քեռ քո արբցես՝ զխորն և զլայն||. Եզեկ. ԻԳ. 32: * Որ արբուցէ միում 'ի փոքրկանցս յայսցանէ Բաժակ մի ջուր ցուրտ||. Մատթ. Ժ. 42: * Սրբէք զարտաքին զԲաժակին և զՍկաւառակին||. Մատթ. ԻԳ. 25: * Մկրտութիւնս Բաժակաց և Սափորաց||. Մարկ. Է. 4: * Զբաժակն՝ որով խառնեցաւ, խառնեցէք նմա կրկին||. Յայտ. ԺԸ. 6: * Բաժակաց և ըմպելեաց բազմութիւն||. Փիլոն:

## Բակեղէն:

### Անօթ ցամաքեղինաց:

ԲԱԿԵՂԷԹ. Եբր. ցիգլոն. Յոյն πήρα. Լատ. pera. Նշանակէ զՊարկ կամ զՄախաղ: * Եբեր առնն Այ նկանակս յառաջնոց արմտեաց նկանակս գարեղէնս, և պաղատիտս Բակեղեթաւ||. Դ. Թագ. Դ. 42:

## Բեսին. Յոյն Bικίον.

### Չափ հեղանկութոյ:

ԲԵՍԻՆ. Յոյն βικίον. Լատ. urceolus. Առնումք զայս բառ յերիս օրինակս չափուց Շիրակացւոյն: ա. օրինակն ունի այսպէս: * Բեսին՝ բոլորակ ապակեղէն, ունի կէս Լիտր. և կոչի ըստ Հայոց Շիշ||: Իսկ բ. և գ. ունեն այսպէս. * Շիշ իւղոյն՝ որ յԱւետարանին, Բեսին է, բոլոր ապակեղէն. ունէր կէս Լիտր||: Բայց Եպիփան՚ի բառն ἀλάβαστρον ունի այսպէս. * Աղաբաստր իւղոյ՝ է Բեկիոն ապակեղէն, որ տանի Լիտր մի. և է չափ կէս Քսեստի: Եւ կոչեցաւ Աղաբաստր վասն դիւրաբեկութեանն||: Ի բանից սատի Եպիփանու թուի մեզ նախ՝ թէ Բեսինն Շիրակացւոյն պարտ է լինել Բեկիոն կամ Բեկին. երկրորդ՝ չափ նորա պարտ է լինել կէս Քսեստի, և ոչ Լտեր. քանզի և ըստ պատմութեան Աւետարանին՝ շիշն Մարեմայ ունէր Լիտր մի իւղոյ, որ է կէս Քսեստ. զի ոչ միայն Եպիփան, այլ և նա ինքն Շիրակացին զՔսեստն դնէ չափ երկուց Լտերաց:

## Բնիոն.

### Դրամ:

ԲՆԻՈՆ. Յոյն λεπτὸν. Լատ. minutum. Է փոքրիկ դրամ պղնձի՝ իբրև զԼումայ: * Ամէն ասեմ քեզ. ոչ ելանիցես անտի, մինչև հատուցանիցես զյետին Բնիոնն||. Ղուկ. ԺԲ. 58: Այլ բառս յետին ակնարկէ զկարի փոքրագոյնն՚ի դրամս: Բնիոն, Լումայ, Պղինձ, Դանգ, և Խերևէշ՝ դնին փոխանակ միմեանց, և նոյնանիշ են ընդ Յունական բառից Ասարիոն և Լեպտոն. նմին իրի և կշիռ նոցա լինի երկու Դարեհատ ըստ Շիրակացւոյն: Բայց Երեմիա՚ի մեկնութեան բառից Ածաշունչ գրոց ասէ յանդէպս. * Նաքարակիտն

և Բնիոնն վերջին մասն է՝ փող, կամ Պարեհատ‖։ Որ ըստ սրբոյն Մարկոսի Նաքարակիոնն է կրկին Լումայ կամ Բնիոն, վասն որոյ Նաքարակիոն ոչ կարէ լինել նոյն ընդ Բնիոնի։ Օբնիոն չգտաք այլուր արտաքոյ Ճաշունչ գրոց, նմին իրի և ստուգաբանութիւն նորա ծածկեալ է 'ի մէնջ։

## Բոյթ։

### Չափ երկայնութեան։

ԲՈՅԹ *կամ* ԲՈՒԹԱՄԱՏՆ. Յոյն ἀντίχειρ. Լատ. pollex. Լ. *առաջին մասն ձեռին մարդոյ՝ լայն և կարճ։ Յերկայնաչափութեան անդ Մատն կամ Մատնաչափ ասելով՝ իմանամք զսա ընդ Ուսումնականաց։*

## Բուռն։

### Չափ ցամաքեղինաց և հեղանիւթոյ։

ԲՈՒՌՆ. Եբր. ԳՈՄԷՑ. Յոյն δράξ. Լատ. pugillus. Լ. *չափ ձեռին մարդոյ. և է նոյնանիշ ընդ բառիցս՝ Ագուռ, Ափ և Ձեռն։ * Կենդանի է Տէր Ած քո, եթէ գուցէ իմ նկանակ, բայց եթէ որչափ Բուռմն մի ալեւր 'ի Սափորի‖. Գ. Թագ. ԺԷ. 12։ * Բարի է լաւութիւն Բուռն միոյ հանգստեամբ, քան զլաւութիւն երկուց Բուռանց՝ ջանիւ և յօժարութեամբ ոգւոյ‖. Ժող. Դ. 6։ Եպիփան զՅունականդ* δράξ *դնէ 'ի կարգս Չափուց։*

## Բուրվառ. Յոյն πυρεῖον.

### Անօթ ցամաքեղինաց։

ԲՈՒՐՎԱՌ. Եբր. ՄԱԽԹԷՀ, և ՄԻՔՏԷՐԷԹ. Յոյն πυρεῖον և θυμιατήριον. Լատ. thuribulum, acerra և suffimentum. Լ. *կրակարան կամ անօթ հրոյ, յորում արկանեն*

զխունկ առ 'ի ծխել ։ * Արար զամենայն կահս սեղանոյն՝ զխարիսխն, և զըլշակն, և զՏաշտսն, և զմսահակսն, և զԲուրուառսն. զամենայն կահ նորա արար պղնձի ։ Սա արար զգահաւորակն սեղանոյն՝ գործ վանդակագործ պղնձի 'ի Բուրուառացն 'ի ներքուստ մինչև ցմէջս ‖. Ելից. ԼԸ. 3-4 ։ * Եւ առեալ երկուց որդւոցն Ահարոնի Նաբադայ և Աբիուդայ զիւրաքանչիւր Բուրուառ՝ եդին 'ի նոսա հուր, և արկին խունկս. և մատուցին առաջի Տեառն հուր օտար, զոր ոչ հրամայեաց նոցա Տէր ‖. Ղեւ. Ժ. 1 ։ * Եւ առցէ լի Բուրուառաւ կայծակունս հրոյ 'ի սեղանոյ անտի՝ որ առաջի Տեառն. և լցցէ զձեռս իւր խնկով հանդերձանացն մանր աղացելով. և տարցի 'ի ներքս քան զվարագոյրն ։ Եւ դիցէ զխունկն 'ի վերայ հրոյն առաջի Տեառն. և ծածկեսցէ ծուխ խնկոյն զքաւութիւնն ‖. Ղեւ. ԺԶ. 12-13 ։ * Բարձէք զԲուրուառսդ պղնձիս 'ի միջոյ այրեցելոցդ. և զհուրդ օտար ցրուեսցես 'ի բաց ‖. Թուոց. ԺԶ. 37 ։ * Եւ Տաշտքն և Խնկամանքն և Բուրուառքն 'ի մաքուր ոսկւոյ ‖. Բ. Մնաց. Դ. 22 ։

* Եւ 'ի ձեռին իւրում Բուրուառն ծխել զխունկս տաճարին ‖. Բ. Մնաց. ԻԶ. 19 ։ * Եւ իւրաքանչիւր Բուրուառ 'ի ձեռին իւրում. և ծուխ խնկոյ ելանէր դիզանայր իբրև զամպ ‖. Եզեկ. Ը. 11 ։ * Բուրուառքն խնկոյն Ամանք ‖. Փիլոն ։

* Ունէին իւրաքանչիւր քնար, և Բուրուառ ոսկի լի խնկով, որ է աղօթք Սրբոցն ‖. Յայտ. Ե. 8 ։ Ուր Յունականն է φιάλη, և նշանակէ յաւէտ զԽնկամանն, քան թէ զԿրակարան ։

## Գարի. Յոյն κριθή.

### Կշիռ. և Չափ երկայնութեան ։

ԳԱՐԻ, ԳԱՐԵՀԱՏ կամ ԳԱՐԷՀԱՏ. Յոյն κόκκος. Լատ. granum.

Ըստ Ակռաբանից է կշիռ ծանրութեան, և ըստ

Երկրաչափից՝ չափ երկայնութեան ըստ չափու հատոյ Գաղղիոյ կամ Յորենոյ։

Շիրակացին սովաւ որոշէ զչափ ծանրութեան ամենայն Կշռոց և Դրամոց, սկսեալ 'ի Դանգէ՝ մինչև ցՔանքար. և է ըստ հաշուի նորա Դանգն կշիռ երկուց Գարեհատոց. իսկ Քանքար՝ 953856 Գարեհատ։

Զգարի կամ զԳարեհատ իբրև կշիռ դրամոյ՝ յիշատակէ և Երեմիա 'ի մեկնութեան բառից Ա՟ծաշունչ գրոց, այսպէս. * Կաքարակիտն և Ռնիոնն վերջին մասն է, փող կամ Գարեհատ‖։ Նոյնպէս և Վուկաս Վանանդեցի 'ի գանձն չափուց և կշռոց՝ ընդ մանր դրամս կարգէ զԳարեհատն, գոգցես 'ի սմանէ առեալ. քանզի ասէ. * Լումայ, Ռնիոն, Կաքարակիտ, Պղինձ, և Գարեհատ՝ մի և նոյն ինչ է. և է յետին մասն կշռոյ‖։ Այլ բանք սոցա լայնաբար և եթ ունին զտեղի։

Իսկ ըստ որում չափ երկայնութեան՝ զչորս Գարեհատս ընծայեն Երկրաչափք միոյ Մատնաչափի. ըստ այնմ՝ * Չորք Գարեհատք՝ են 'ի Մատին, և Մատնաչափք՝ չորք 'ի յՈւղկին‖։ Եւ սովաւ չափեն զամենայն երկայնաձիգ տարածութիւն։ * Զի նա (երկրաչափութիւնն) ունի սկիզբն . . . զԳարեհատն, զԹիզն, և զՈտն. այսինքն՝ 'ի կարճէն յերկարն ժամանէ, և չափէ զերկիր‖. 'ի Մեկն. հին կտակ։

Գանձանակ. Աշխր. Կանոն։

Անօթ ցամաքեղինաց։

ԳԱՆՁԱՆԱԿ. Յոյն γαζοφυλάκιον. Լատ. gazophylacium, aerarium.

Ի Արկղ կամ տապանակ դրամոց։ * Կայր Յ՟ս ընդդէմ Գանձանակին, տեսանէր՝ թէ զիարդ ժողովուրդն արկանէր Պղինձ 'ի Գանձանակն. և բազում մեծատունք արկին բազում ինչ։ Եկն այրի մի, և էարկ երկուս Լումայս՝ որ է Կաքարակիտ մի։ Եւ կոչեալ առ ինքն զաշակերտսն՝ ասէ ցնոսա. ամէն ասեմ

ձեզ, զի այրին այն տառապեալ՝ շատ էարկ քան զամենեսեան 'ի Գանձանակն‖. Մարկ. ԺԲ. 41-43։ * Եւ հայեցեալ ետես զմեծատունսն՝ որք արկանէին զտուրս իւրեանց 'ի Գանձանակն‖. Ղուկ. ԻԱ. 1։

Գանձանակ նշանակէ եւս զԳանձատունն, կամ զշտեմարան գանձու. Եբր. լըշգահ. * Եւ այրեցին զձիսն՝ զորս ետ արքայ Յուդայ Արեգական, 'ի մուտս տանն Տեառն 'ի Գանձանակի Նաթանայ ներքինւոյ արքայի‖. Դ. Թագ. ԻԳ. 11։ * Եւ զառաջաւորս ցորենոյ, եւ զպտուղս ծառոց՝ գինւոյ եւ ձիթոյ, բերցուք առ քահանայսն 'ի տուն Գանձանակին ԱԾ‖. Բ. Եզր. Ժ. 37։ * Եւ կացուցին յաւուր յայնմիկ 'ի վերայ Գանձանակի գանձուցն‖. Անդ. ԺԲ. 44։ * Յառաջ քան զայս Եղիասիբ քահանայ էր 'ի Գանձանակի տանն ԱԾ մերոյ‖. Անդ. ԺԳ. 4։ Այլ այս բառ ըստ առաջին նշանակութեանն եւեթ մտանէ 'ի կարգս Զափուց կամ Անօթոց։

## Գզրոց։

### Զափ ցամաքեղինաց։

ԳԶՐՈՑ. Յոյն θήκη եւ κιβωτὸς. Լատ. theca, arca, եւ capsa.

Նշանակէ զԱրկղ կամ զՏապանակ։ * Զպատուական գլուխն արտաքոյ 'ի Գզրոցի եդեալ՝ դնէ 'ի գանձարանս‖. Յովհ. կաթ։ * Զնշխարս եդեալ 'ի պատուական Գզրոցի, եւ ծածկեալ մեծագին հանդերձիւ‖. 'Ի Ճառընտիրս։ * Բերեն քեզ Գզրոցս, եւ Տուփս փղոսկրեայս ութսուն‖. Պտղմ. աղեք։ Այլ թերեւս այս բառ ունի լինել Գզրոց եկեալ 'ի Յունականէս κληρωτὶς, որ նշանակէ Հանգանակ կամ Գանձանակ։

## Գիծ։

### Չափ երկայնութեան։

ԳԻԾ կամ ԳԾԱՉԱՓ. Յոյն γραμμή. Լատ. linea. Ըստ Երկրաչափից է տարածութիւն առանց լայնութեան և խորութեան։ Նոյն է սա սկիզբն և կանոն ամենայն չափուց ըստ երկայնութեան։ Վասն որոյ ըստ Երկրաչափից Ոտնաչափն բաժանի 'ի 12 Մատնաչափ. և Մատնաչափն 'ի 12 Գծաչափ կամ Գիծ. զոր ոմանք բաժանեն ևս 'ի 10 Մասնկունս։

Զգիծն երկրաչափական բացատրէ Փիլոն այսպէս. * Ունելով յինքեան (տասնեակ թիւն) զանզատն բնութիւն և զզատականն. քանզի անզատն կարգեալ դասի ըստ Նշանի միայն. իսկ զատականն ըստ երից տեսակաց՝ Գծոյ, և Վեր'ի վերոյ երևման, և Հաստատնոյ։ Քանզի որ երկուք Նշանօք յանգեցեալ է՝ Գիծ է. իսկ որ յերկուսն զատեալ է՝ Վեր'ի վերոյ երևումն, ծաւալեալ 'ի լայնութիւն գծին. իսկ որ յերիս՝ 'ի Հաստատուն, երկայնութեան և լայնութեան խորութիւն առեալ, որովք գոյանայ բնութիւնս (մարմինն երկրաչափական). քանզի աւելի քան զերիս զատութիւնս ոչ ծնաւ։ Նոյն սկզբնատիպք սոցա՝ թիւք են. անզատ Նշանին՝ Մի, և Գծին՝ Երկու, և Վեր'ի վերոյ երևմանն՝ Երեք, և Հաստատնոյն՝ Չորք. որոց շարադրութիւնք՝ Միոյ, և Երկուց, և Երից, և Չորից (1. 2. 3. 4) կատարեն զՏասնեակն (զի 1. 2. 3. և 4. են 10)‖. Փիլոն 'ի Գիրս յաղագս Ժ բանից։ * Զի նա (երկրաչափութիւնն) ունի սկիզբն՝ զԿէտն, զԳիծն, զՄակերևոյթն, զՄարմինն ‖ 'ի Թէոն. կամ Հերոն։

## Գուրկ։

### Չափ երկայնութեան։

ԳՈՒՐԿ. Յոյն ὀργυιά. Լատ. ulna կամ passus. Իտալ. braccio կամ passo. Պարսկ. Բազ կամ Բազու. Տաճկ. Գուլաճ։

Է չափ ըստ երկայնութեան հասակի մարդոյ. կամ՝ է չափ տարածութեան երկոցունց բազկաց մարդոյ՝ սկսեալ 'ի ծայրից միջին մատանց: Այլ է չորս Կանգուն կամ վեց Ոտնաչափ՝ ըստ Յունաստեաց, և ըստ Ճարտարապետաց: * Այլ ընկեցեալ զպունտան՝ գտին Գիրկս քսան. և սակաւ ինչ դադարեալ՝ դարձեալ ընկեցին, և գտին Գիրկս հնգետասան‖. Գործ. իէ. 28:

Գոմոր. Յոյն γομόρ.

Չափ ցամաքեղինաց:

ԳՈՄՈՐ. Եբր. Խօմէր և Գօմէր. Լատ. gomor և chomer.

Ունիմք զայս բառ 'ի Դ. և Ե. օրինակս չափուց Շիրակացւոյն՝ այսպէս. * Գոմոր, որ է Արդու՝ ըստ Հելլենացւոցն ԺԷ Սոդոյ չափ‖: Իսկ Եպիփան 'ի բանն Գեթեկ յաղագս Գոմորի ունի այսպէս. * Իսկ Գեթեկ՝ որպէս 'ի մարգարէն Ովսէէ ասի, թէ վարձեցայ ինձ Գեթեկի գարւոյ. և յօրինակս ինչ՝ Գոմորի գարւոյ, որ է նոյն. քանզի հնգետասան Սոդ նշանակէն այդոքիկ: Այլ Գեթեկ ըստ Եբրայեցւոց բարբառոյ կոչի, որ է բարձումն, վասն կարող լինելոյ երիտասարդի բառնալ զհնգետասան Սոդ, և դնել 'ի վերայ իշոյ: Սոյն սա և Գոմոր կոչի: Այլ Գոմոր կրկին է՝ մեծ, և փոքր: Մեծն հաւասարաչափ է ընդ Գեթեկի, զի հնգետասան Սոդ է և նա. իսկ փոքրն ԺԲ Բաթոս‖: Այլ Պետաւիոս բազում վրիպանս նշմարէ յայդոսիկ բանս Եպիփանու. որ և յաւելու ասել, թէ * Յոյնք հանդէպ եբրայական բառիցս Խօմէր և Գօմէր՝ դնեն Գոմոր. բայց ուղղութեամբ Գոմորն է Գօմէր: Սուրբն Հերոնիմոս զԽօմէր թարգմանէ Կոռ, և զԳօմէր, Գոմոր. որ է տասներորդ մասն Եփիի. և Եփի տասներորդ մասն Խօմէրի կամ Կոռի: Նմին իրի Գոմորն է հարիւրերորդ մասն Խօմէրի‖: Եպիփան յիշատակէ զԳոմոր նաև սակաւ մի զկնի այսպէս. * Այլ այսոքիկ չափք (երեք Գրիւք) մէն մի հաւասար

են Գոմորի։ Իսկ Գոմոր է տասներորդ մասն մեծի չափուն, այսինքն է՝ Արդուի. որ լինի եօթն Քսեստ, և հինգերորդ մասն միոյ Քսեստի‖։ Թուի մեզ, թէ Եպիփան աստանօր բառիւս Գոմոր ակնարկէ զԳրիւն Եբրայեցւոյն։

Թարգմանիչք մեր յԱ̅ծաշունչ գիրս հանդէպ յունականիս Գոմոր՝ դնեն Արդու, Գրիւ, Քոռ, Սափոր, Չափ, և Բեռն. վասն որոյ և մեք չկարեմք որոշել տերապէս զչափ նորա. միայն ընտրեմք ասել, թէ Գոմորն մեծ՝ է Արդու, և Գոմորն փոքր՝ Գրիւ։

## Գրամար. Յոյն γραμμάριον.

### Կշիռ։

ԳՐԱՄԱՐ. Լատ. caratus կամ scrupulum.
Է կշիռ վեց Կերատաց ըստ հաշուի Եբրայեցւոյն. որոյ տ̅. օրինակ ունի այսպէս. *Կշիռ զ̅ Կերատաց լինի Գրամար մի‖։ Իսկ γραμμάριον ըստ Յունաց, և caratus ըստ Լատինացւոց՝ են 24 մասն Ունկոյ. որք են նոյն ընդ Գրամարի Եբրայեցւոյն. քանզի ըստ հաշուի նորա Կերատն է կշիռ չորից Գարեհատոյ, և Ունկին 576 Գարեհատոց. զոր բաժանեալ ՚ի վերայ 24 ի՝ քանորդն լինի 24 Գրամար։ Սակայն caratus Լատինացւոց նշանակէ և զԿերատ՝ որ է վեցերորդ մասն Գրամարի։

## Գրիւ. Պարսկ. Գորէ։

### Չափ ցամաքեղինաց։

ԳՐԻՒ. Յոյն σάτον. Լատ. satum.
Է չափ $7\frac{1}{5}$ Քսեստի։ տ̅. օրինակ չափուց Եբրայեցւոյն յաղագս Գրուի ունի վրիպանօք այսպէս. *Չափ ի̅բ̅ Քսեստաց լինի Գրիւ մի. որ է նոյն չափ Սոդոյ‖։ Սոյնպէս և Երեմիա ՚ի մեկնութեան բառից Ա̅ծաշունչ գրոց՝ ի̅բ̅ Քսեստ դնէ զԳրիւն։ Ա. Թգ. ե̅. և Ե̅. օրինակք ուղղութեամբ ունին այսպէս. *Գրիւք ե̅,

որ է մի Մոդ. որ է չափ Սրբութեան‖: Քանզի և Եպիփան 'ի բառն Երեք Չափք (τρία μέτρα, և ըստ թարգմանչաց մերոց՝ Երեք Գրիւք) ունի այսպէս. * Երեք Չափք նաշհոյ, զորս պատուիրեաց Աբրահամ Սառայի՝ պատրաստել վասն Հրեշտակաց. և հրամայեաց նոյլին չափով նկանակս առնել: Եւ այսոքիկ չափք մէն մի հաւասար են Գոմորի: Իսկ Գոմոր (փոքր) է տասներորդ մասն մեծի Չափուն, այսինքն է՝ Արդուի. որ լինի եօթն Քսեստ, և հինգերորդ մասն միոյ Քսեստի‖: Արդ՝ ըստ Եպիփանու Գոմորն, կամ մէն մի Գրիւ՝ է տասներորդ մասն Արդուի, որ է չափ 72 Քսեստաց. զոր բաժանեալ 'ի վերայ 10 ի՝ քանորդն լինի $7\frac{1}{5}$, այսինքն՝ Գրիւ մի. և երիցս կրկնեալ զ$7\frac{1}{5}$, լինի 22 Քսեստ. որ է մի Մոդ, եթէ ըստ Եպիփանու, և եթէ ըստ ա̃. օրինակի Շիրակացւոյն:

Յոյն և Լատին բառքդ σάτον և satum են չափ հեղանիւթոյ, և ցամաքեղինաց. ըստ առաջնոյն են 50 Քսեստ. զոր Շիրակացին Սատոն կոչէ. և ըստ երկրորդին՝ $7\frac{1}{5}$ Քսեստ, զուգաչափ մերումս Գրուի: Քանզի 'ի Նոր Կտակարանս՝ ուր դնի 'ի մեզ Երեք Գրիւ, Յոյն և Լատինն ունին Երեք Սատոն. նաև յայն բան Ծննդոց * Թրեա՛ Գրիւս երիս՝ ալեր նաշհոյ‖. ժը̃. 6. ուր ըստ Եօթանասնից, և ըստ Եպիփանու է Երեք Չափ, Ակիւղաս և Սիւմաքոս դնեն Երեք Սատոն:

Արդ զՍատոն՝ ըստ որում չափ ցամաքեղինաց, այսպէս առաջի առնէ Եպիփան. * Սատոն կոչի 'ի նոյն Եբրայական լեզուէ առեալ. և է իգական առ նոսա. իսկ 'ի Հելլենականն չէզոք. քանզի Սատոն ասի, և ոչ Սատոս: Եւ է Մոդ գերազեղուն. զի լնու զՄոդ, և աւաւելու քան զնա քառորդիւ: Իսկ Սատա ըստ նոյն Եբրայական բարբառոյ՝ նշանակէ առնումն կամ Բարձումն. իբր զի որ չափէն՝ սովոր է առնուլ կամ բառնալ զչափ ինչ‖: Ուր 'ի ծանօթութեան նորա ասէ Պետաւիոս. * Սատոն ըստ Եբրայեցւոց Սէահ կոչի. և է Մոդ և կէս առ Իտալացիս՝ ըստ Յովսեպոսի, և ըստ Հերոնիմոսի. որ և է 24 Քսեստ‖: Նոյնպէս և

Սուիդաս, և Յոյն և Լատին բառարանք Սատ և կէս, կամ 24 Քսեստ դնեն զՍատոնն։ Այլ որպէս ցուցաք մեք 'ի վեր անդր 'ի բանից Եպիփանու, Չափ կամ Սատոն իբրև նոյնանիշ ընդ Գրուի Գ. և Է. օրինակաց Շիրակացւոյն՝ է 7 $\frac{1}{5}$ Քսեստ։ Վասն որոյ՝ ոչ մի Սատոն, այլ՝ երեք Սատոնք լինին 22 կամ 24 Քսեստ. որ և է Սատ մի ըստ Եպիփանու, և ըստ Շիրակացւոյն։ Նմին իբր՝ եթէ չկայցէ շփոթութիւն 'ի բանս հեղինակացդ, պարտիմք ասել, թէ Սատոնն, կամ Գրիւ՝ ոչ միայն է չափ 7 $\frac{1}{5}$ Քսեստաց, այլև երբեմն դնի փոխանակ 22 կամ 24 Քսեստաց. որ է ըստ ոմանց մի Սատ, և ըստ այլոց Սատ և կէս։ Նախնիք մեր 'ի թարգմանութեան Ածաշունչ գրոց դնեն զԳրիւ համդէպ այլև այլ յունական բառից։ Նախ՝ համդէպ բառիս σάτον. * Նման է արքայութիւն երկնից խմորոյ. զոր առեալ կնոջ՝ թաքոյց 'ի Գրիւս երիս ալեր, մինչև ամենայն խմորեցաւ‖. Մատթ. ԺԳ. 33։ * Ո՞ւմ նմանեցուցից զարքայութիւնն Այ. նման է խմորոյ. զոր առեալ կնոջ՝ թաքոյց յալեր երից Գրուաց, մինչև խմորեցաւ ամենայն‖. Ղուկ. ԺԳ. 21։ Երկրորդ՝ բառիս μέτρον. * Եւ որ սերմանեսցէ Արդուս վեց, ժողովեսցէ Գրիւս (Եբր. էֆահ) երիս‖. Եսայ. Ե. 10։ * Եւ Չափն էր տասներորդ երից Գրուաց (յայլ օրինակս Յունաց οἰφὶ)‖. Ելից. ԺԶ. 36։ * Եւ թրեալ Գրիւս (Եբր. սէահ. Սիմաքոս և Ակիւղաս σάτον) երիս ալեր նաշհոյ‖. Ծննդ. ԺԸ. 6։ * Գրիւ մի նաշհոյ՝ Սկեղ միոյ‖. Գ. Թագ. Է. 1։ Երրորդ՝ μετρητής. * Եւ արար ծով, որ տանէր երկուց Գրուաց (Եբր. սէահ) սերմն շուրջ զսեղանովն‖. Գ. Թագ. ԺԸ. 32։ Չորրորդ՝ γομὸρ. * Եւ Կապիճ նոյն լիցի տալոյ և առնլոյ. տասներորդ Գրուի (Եբր. խօմէր) եղիցի Կապիճ. և տասներորդն Գրուի Կապիճ։ Կշիռ ըստ Գրուին, և ըստ Արդուին եղիցի‖ Եզեկ. ԽԵ. 11։ Հինգերորդ՝ ὕφὶ կամ οἰφὶ. * Մատուցէ վասն նորա քահանայն պատարագ զտասանորդ Գրուի (Եբր. էֆահ) ալեր գարեղէն‖. Թուոց. Ե. 15։ * Բերցէ զպատարագն իւր ... զտասանորդ Գրուի նաշհի‖. Ղևտ. Ե. 11։ * Զտա-

սանորդ Գրուի միոյ նաշհոյ զոհ հանապազորդ||. Ղեւ. Զ. 20 : * Եւ արասցես զտասանորդ Գրուի նաշհին||. Թուոց. ԻԸ. 5 : Վեցերորդ՝ κόρος. * Եւ այս պտուղ իցէ՝ զոր զատանիցէք. զվեցերորդ Չափուն ՚ի Գրուէ (Եբր. խօմեր) ցորենոյ, և զվեցերորդ Արդուի ՚ի Կորուէ գարւոյ||. Եզեկ. ԽԵ. 13 :

Արդ՝ յայտ է ՚ի Թարգմանութեանցս, թէ Գրիւ ոչ միշտ զնոյն չափ նշանակէ, այլ դնի ըստ տեղւոյն փոխանակ այլևայլ չափուց, մանաւանդ՝ Արդուի, և Գոմորոյ :

### Գրուան :

Անօթ և Չափ ցամաքեղինաց :

ԳՐՈՒԱՆ. Յոյն μόδιος կամ μόδιον. Լատ. modius կամ modium.

Այս բառ եղանէ ՚ի բառէս Գրիւ, և նշանակէ յԱւետարանի զանօթն կամ զընդունարանն ըստ չափու նոյն Գրուի : * Ոչ լուցանեն զճրագ, և դնեն ընդ Գրուանաւ, այլ ՚ի վերայ աշտանակի. և լոյս տայ ամենեցուն՝ որ ՚ի տանն իցեն||. Մատթ. Ե. 15 : * Միթէ գա՞յ ճրագ, զի ընդ Գրուանաւ դնիցի, կամ ընդ մահճօք. ո՞չ ապաքէն ՚ի վերայ աշտանակի դնիցի||. Մարկ. Դ. 21 : * Ոչ ուրուք լուցեալ զճրագ՝ դնէ ՚ի թագստեան, և ոչ ընդ Գրուանաւ, այլ ՚ի վերայ աշտանակի. զի որք մտանենն՝ զլոյս տեսանիցեն||. Ղուկ. ԺԱ. 33 : Այլ այս բառ ըստ որում չափ՝ է ըստ Եպիփանու, և ըստ Ա. օրինակի չափուց Հիրակացւոյն 22 Քսեստ. իսկ ըստ Դ. և Ե. օրինակաց նորա՝ 18 կամ 24 Քսեստ : Տես վասն այսր ՚ի Մոդ, և ՚ի Գրիւ :

### Գահադրամ. Պարսկ. Տէհ Տիրէմ :

Դրամ և Կշիռ :

ԳԱՀԱԴՐԱՄ. Անուն Գահեկանի՝ որոյ կշիռն է

տասն Դրամ ըստ Պարսից ։ Գտանեմք զայս բառ յԱշխարհագրութեան Մովսիսի Խորենացւոյ ընդ այլ Պարսկական բառից՝ այսպէս ․ * Պարմուշիա՝ Ճաւդադրամ, Ճաշտադրամ, Դահադրամ ։ Իւր բառս Պարմուշիա թուի լինել անուն Դահեկանի, իսկ այլքն՝ Եօթնդրամեան, Ութդրամեան, և Տասնդրամեան ։ Այլ կասկածիմք ընդ Անգղիացի Թարգմանչաց Խորենացւոյն, թէ այս բառք 'ի յետնոց մուծեալ իցեն 'ի բանս նորա ։

Դահեկան ․ Պարսկ ․ Տէհէէր ։

Կշիռ և Դրամ ։

ԴԱՀԵԿԱՆ ․ Յոյն δηνάριον ․ Լատ ․ denarius ․ Է անուն դրամոյ՝ որ կոչի Դենար ․ որոյ կշիռն է 24 Կերատ ։

Ըստ Շիրակացւոյն * Կշիռ իդ Կերատաց լինի Դահեկան մի ։ Իսկ մանր բաժանեալ զԴահեկանն՝ լինի Սիմէս բ, Տրմէս գ, Դրամար դ, Սինգ զ, Կերատ իդ, Փշիտ լբ, Գանգ խը, և Գարեհատ ղզ ։ դ․ և ե․ օրինակք նորա ունին այսպէս ․ * Դենարն Դահեկանի անուն է ․ և Դահեկանն իդ Կերատ ․ և Կերատն կորիզ եղջերուենոյ, որ է չորից Գարոց կշռորդ ․ և իդ Կերատն լինի ղզ Գարեհատ ։

Յաւելուած բ․ օրինակի Շիրակացւոյն զԴահեկանն կոչէ Աթխալ, քանզի ասէ ․ * Աթխալ, որ է Դահեկան մի ։ և յաւելու ասել, * Աթխալն իդ Կուտ է ։ Այսպէս ունի և բառարանն Պարսից 'ի բառն Միսգալ ․ զի ասէ ․ * Միսգալ է բառ Արաբացւոց, և նշանակէ՝ Դրամ և կէս ․ քանզի 16 կորիզն եղջեր՝ մի Տրամ է, և 24 կորիզն՝ մի Միսգալ է ։ Արդ՝ քաջայայտ է 'ի բանից սոցա, թէ Դահեկան և Դենար և Աթխալ են նոյն ․ և են կշիռ 24 Կերատաց կամ 96 Գարեհատաց ։

Դահեկան՝ իբրև առանձին անուն դրամոյ, նշանակէ ընդհանրապէս զոսկի կամ զարծաթի դրամ կնքեալ ․

Սման որոյ՝ և Դ․ և Ե․ օրինակք Ռ իրակացւոյն ունին այսպէս․ *Ըստ ժամանակին Դահեկանն վաթսուն Ասարիոն էր, և Դահեկանն էր արծաթի։ Իսկ Եպի-փան ասէ․ *Արգիւրոն (Արծաթի) տպաւորեցաւ Դա-հեկան ՚ի սկզբանէ, և տպաւորեցաւ նա յԱսարիոնաց։ զԱբրահամ ասեն մուծանել զտիպ նորա յերկիրն Քա-նանացւոց։ Դարձեալ ասէ նա ՚ի բառն Օբողոս․ *Կայր և այլ Օբողոս յարծաթոյ տպաւորեալ՝ Դահեկան (νό-μισμα) փոքրիկ, ութսներորդ մասն Ոնկոյ։

Յաւելուած Բ․ օրինակի Ռ իրակացւոյն ունի այսպի-սի ինչ․ *Դահեկանն մի ոսկի է․ որոյ կշիռն յամե-նայն ազինս մի և նոյն է․ և թէ ուրեք գտանիցի պա-կաս, արտաքոյ քանակի ոսկւոյն է․ զոր և գաղտ ան-ուղղայք արարեալ են։ Նոյնպէս և Տէհէլեանի ըստ բառարանին Պարսից է *տեսակ ինչ ոսկւոյ։

Ըստ Կալմեթի Դենար կամ Դահեկան յիշատակեալ ՚ի նորումն Կտակի՝ *առեալ լինի միշտ փոխանակ ար-ծաթի դրամոյ։ Նա ինքն յաւելու ասել․ *բայց թէ զինչ գին էր նորա, ոչ է յայտնի։ Եւ դարձեալ ասէ․ *Բազում անգամ դնի Դահեկանն փոխանակ Սկեղ Եբրայեցւոց․ որ է հարկն ըստ Գելլոյ՝ զոր եդին Հռովմայեցիք ՚ի վերայ Հրէից։

Նախնիք մեր ՚ի թարգմանութեան Ա̃ծաշունչ գրոց դնեն զԴահեկան հանդէպ այսոցիկ յունական բառից․ Նախ՝ δηνάριον․ *Որ պարտէր նմա հարիւր Դահե-կան։ Մատթ․ ԺԸ․ 28։ *Եւ արկ վարձս մշակացն աւուրն Դահեկան։ Մատթ․ Ի․ 2։ *Եւ նոքա մա-տուցին նմա Դահեկան մի։ Անդ․ ԻԲ․ 19։ *Երթի-ցուք դնեսցուք երկերիւր Դահեկանի հաց։ Մարկ․ Զ․ 37։ *Բերէք ինձ Դահեկան մի, զի տեսից։ Անդ․ ԺԲ․ 15։ *Մարթ էր զայդ իւղ վաճառել աւելի քան երեքհարիւր Դահեկանի։ Անդ․ ԺԴ․ 5։ *Երկու պար-տապանք էին ուրումն փոխատուի․ մինն պարտէր հինգ-հարիւր Դահեկան, և միւսն յիսուն։ Ղուկ․ Է․ 41։ *Հանեալ ետ ցպանդոկապետն երկուս Դահեկանս։ Անդ․ Ժ․ 35։ *Ցուցէք ինձ զԴահեկանն։ Անդ․ Ի․ 24։ *Երկերիւր Դահեկանի հաց չէ՛ դոցա բաւական։

Յովէ. Է. 7: Երկրորդ՝ νόμισμα. * Յուցէք ինձ զԴահեկան հարկին: Մատթ. ԻԲ. 19: * Իշխան լիցիս հատանել առանձինն Դահեկան յաշխարհի քում: Ա. Մակ. ԺԵ. 6: Երրորդ՝ χρύσεος կամ χρυσοῦς (ոսկի) Եբր. զահաբ. * Ի տասն Դահեկանէ ձոյլ նոցա: Ծննդ. ԻԴ. 22: * Ամենայն ոսկի տփոցն՝ հարիւր և քսան Դահեկան: Թուոց. Է. 86: * Արար արքայ Սողոմոն երեքհարիւր նիզակ ոսկի կռածոյ. և երեքհարիւր Դահեկան 'ի վերայ միոյ նիզակի: Գ. Թագ. Ժ. 16: * Տուփ մի ոսկի 'ի տասն Դահեկանէ: Թուոց. Է. 86: * Արար արքայ Սողոմոն երեքհարիւր վահան ոսկի կռածոյ. վեցհարիւր Դահեկան մաքուր ոսկի 'ի մի վահան: Բ. Մնաց. Թ. 16: * Վաճառեցին զՅովսէփ քսան Դահեկանի (Եբր. կէսէֆ, արծաթ): Ծննդ. ԼԷ. 28: * Ետ Բենիամինի երեքհարիւր Դահեկան (Եբր. և աստ կէսէֆ): Ծնդ. ԽԵ. 22: Չորրորդ՝ δραχμή. * Ետուն 'ի գործ տանն Տեառն ոսկի Տաղանդս հինգ հազար, և բիւր Դահեկան (Եբր. դառքէմոն): Ա. Մնաց. ԻԹ. 7: * Ետ այլ ժողովուրդն Դահեկանս երկուս բիւրս: Բ. Եզր. Է. 72: * Ետ էառ այրն գինդս ոսկիս մի մի ըստ Դահեկանի (յայլ օրինակս ըստ Յունաց διδραχμή. Եբր. պեգաղ) ձուլոյ: Ծննդ. ԻԴ. 22: Օսա Թարգմանեն և՝ Դրամ, Դիդրաքմայ, Սատեր, և կէս Սատեր:

Արդ՝ յայտ է 'ի Թարգմանութեանց աստի, թէ Դահեկանն ոչ միայն նշանակէ զարծաթի կամ զոսկի Դրամ, այլև զկշիռ դրամոյ: Իբրև արծաթի դրամ՝ նոյն է ընդ Դենարի: Իսկ իբրև կշիռ՝ ոչ միայն Երկդրամեան է, կամ Դիդրաքմայ, և կամ կէս Սատեր՝ որք են նոյն, այլև երբեմն նշանակէ զկշիռ միոյ Դրամի կամ Դրաքմէի. և երբեմն ևս զՉորեքդրամեան կամ զՍատեր:

Իսկ առ արտաքինս Դահեկանն երբեմն նշանակէ ընդհանրապէս զամենայն ազգ դրամոց. վասն որոյ և չկարեմք որոշել զնշանակութիւն նոցա, և զգին: Միայն դիցուք վկայութիւնս ինչ և յարտաքնոց: * Օրէն այնոցիկ որ զԴահեկանն (Յոյն νόμισμα, Լատ.

nummus) հատանեն տարագործեալ ‖. Փիլոն: * Իբրեւ զընտիր եւ զփորձ Դահեկան (Յոյն νόμισμα, Լատ. moneta) ‖. Նոյն: * Որանզի սովորութիւն իսկ էր Թագաւորացն մերոց փեսայութեամբ 'ի դուռն տաճարին հասանել, Դահեկանս ճապաղել՝ իբրեւ զՀիւպատեանն Հռովմայեցւոյ ‖. Խորէն. Բ. 47: * Յայնժամ սովորութիւն էր Թագաւորացն՝ զիւրեանց պատկեր դրոշմել, եւ զանունն գրել 'ի Դահեկանսն. վասն զի յՕգոստոսէ սկսեալ՝ հարկս տային ըստ գլխոյ. որ գրեաց զնոսա յաշխարհագիրն. զոր տեսեալ ասաց. Ո՞յր է պատկերս այս եւ գիր ‖. Եղիշեայ 'ի Մեկն. Մատթ. ԻԲ. 21: * Բաշխեաց զամենայն ինչս իւր աղքատաց. բայց միայն եթող 'ի պէտս իւր Դահեկանս հարիւր ... Մնացոյց անտի Դահեկանս տասն ... Ունի՞ս այլ եւս Ոսկի. գնացեալ ցրուեսցես զնա եւս ... Եւ նա գնացեալ ցրուեաց զտասն զայդ Դինար ‖. Վարք Հարանց. Է. 160: Ուր զմի եւ զնոյն դրամ կոչէ՝ Դահեկան, Ոսկի, եւ Դենար:

## Դենար. Պարսկ. Տենառ:

### Դրամ եւ Կշիռ:

ԴԵՆԱՐ կամ ԴԻՆԱՐ. Յոյն. δηνάριον. Լատ. denarius.

Ի անուն արծաթի Դրամոյ. որոյ կշիռ ըստ Եւրոպացւոյն է 24 Կերատ, եւ է սա նոյն ընդ Դահեկանի ըստ առաջին նշանակութեան նորա: * Ընդէ՞ր ոչ իւղդ այդ վաճառեցաւ երեքհարիւր Դենարի, եւ տուաւ աղքատաց ‖. Յովհ. ԺԲ. 5: * Կապիճ մի ցորեան Դենարի միոջ, եւ երեք Կապիճ գարի՝ Դենարի միոջ ‖. Յայտ. Զ. 6: * Մնացոյց անտի Դահեկանս տասն ... եւ գնացեալ ցրուեաց զտասն զայն Դինար ‖. Վարք Հարանց. Է. 160: Ուր զնոյն Դրամ կոչէ Դահեկան եւ Դինար, քանզի եւ նախնիք մեր յԱստուածաշունչ գիրս զյունականդ δηνάριον նոյնպէս թարգմանեն: Տե՛ս Դահեկան:

## Դաշխուրան։

### Զափ հեղանիւթոց։

ԴԱՇԽՈՒՐԱՆ կամ ԴԱՇԽՈՐԱՆ. Եբր. սէֆէլ. Յոյն λεκάνη. Լատ. phiala.

Է Բաժակ մեծ տաշտաձեւ իբրեւ զկոնք։ * Ջուր խնդրեաց, եւ ետ կաթն. Դաշխուրանաւ զօրաւորաց մատոյց զկոգի ||. Դատ. Ե. 25։ Երեմիա 'ի մեկնութեան բառից Ս. Ծաշունչ գրոց դնէ համդէպ Դաշխուրանի՝ Բաժակ։ Բայց թարգմանիչք մեր զյունականդ λεκάνη 'ի նոյն գիրս Դատաւորաց. Գլ. Զ. 38. յեղուն եւս Կոնք. յորմէ յայտ է, թէ եւ Դաշխուրանն ունի մերձենալ 'ի նշանակութիւն կոնքաձեւ անօթոյ։

## Դանգ. Պարսկ. Տանք։

### Դրամ եւ կշիռ։

ԴԱՆԳ կամ ԴԱՆԿ. Յոյն Ἀσσάριον եւ ὀβολός. Լատ. as եւ obolus.

Է անուն մանր դրամոյ, եւ կշիռ 2 Դարեհատի։ Ա. Բ. եւ Գ. օրինակք կշռոց Շիրակացւոյն յաղագս Դանգի ունին այսպէս. * Կշիռ Բ Դարեհատաց կոչի Ասարիոն, իսկ ըստ Հելլենականին Լեպտոն կոչի. բայց ըստ Եբրայեցւոցն Կուադրութիւն, որ է անօսր. եւ ըստ Հայունս կոչի Դանգ ||։ Դ. եւ Ե. օրինակք նորա ունին այսպէս. * Դրամն Զ Դանգ է. եւ Դանգն (իմա՛ վեց Դանգն) ԺԲ Դարի։ Մոնաթն ինն Ռ Ասարիոն է. ըստ Հելլենականին Լեփտոն կոչի, որ է անօսր, որ է Դանգ. զոր Տ՛Ռ հինգ ճագի վաճառասաց. եւ ըստ Եբրայեցւոց Ասարիոնն Կուադրութիւն կոչի ||։ Ըստ սոյա Դանգն լինի վեցերորդ մասն միոյ Դրամի կամ Դրաքմէի, եւ ինն հազարերորդ մասն միոյ Մոնաթի կամ Տաղանդոյ։ Իսկ ըստ առաջին օրինակացդ լինի 432000 մասն Տաղանդի. որ եւ է ըստ Ճշդագոյն հաշուի Շիրակացւոյն։ Յաւելուած Գ. օրինակին

ուղղութեամբ ունի այսպէս. * Սիկղն և Երկդրամեանն և Դիդրաքմայն Բ Դրամ են. և Բ Դրամն Ի Դանկն է. և Դանկն Բ Դարեհատ ||:

Թարգմանիչքն մեր 'ի Նորումն Կտակի դնեն զԴանգ հանդէպ Յունականիս ἀσσάριον. իսկ 'ի Հինն հանդէպ բառիս ὀβολός. * Ոչ ապաքէն երկու ճնճղուկք Դանգի միոջ վաճառին ||. Մատթ. Ժ. 29: * Ոչ ապաքէն հինգ ձագ երկուց Դանգաց վաճառի ||. Ղուկ. ԺԲ. 6: * Եկեսցէ երկիրպագանել նմա վասն Դանգի (Եբր. ակորահ) միոջ արծաթոյ ||. Ա. Թագ. Բ. 36: * Եւ այս ինչ է, զոր տայցեն՝ որք անցանիցեն 'ի հանդիսի անդ. զկէս Երկդրամենին՝ որ իցէ ըստ սրբութեան Երկդրամենին: Քսան Դանգ է Երկդրամեանն. և կէս Երկդրամենին եղիցի հաս Տեառն ||. Ելից. Լ. 13: Եբրայականն աստանօր, որպէս և 'ի յետագայսդ՝ է գերահ: * Եւ ամենայն գինք եղիցին ըստ Սրբութեան կշռոցն. քսան Դանգ լիցի Երկդրամեանն ||. Ղևտ. ԻԷ. 25: * Առցես հինգ Սիկղ ըստ գլխոյ՝ ըստ սրբութեան Երկդրամենին. առցես քսան Դանգ առ Սիկղ ||. Թուոց. Գ. 47: * Եւ գին նորա հինգ Սիկղ ըստ սրբութեան Սիկեղն, որ է քսան Դանգ ||. Անդ. ԺԸ. 16: * Եւ քսան կշիռն Դանգ ||. Եզեկ. ԽԵ. 12: * Հաւատացելոյն ամենայն աշխարհ ընչիւք լի է. անհաւատին և ոչ Դանգ մի. || Առակ. ԺԷ. 4: Յայժմու օրինակս Յունաց չիք Դանգ յայս բան Առակաց. բայց բերէ Կիւրեղ Երուսաղեմացին 'ի Կոչումն ընծայութեան, և է ὀβολός. զոր Թարգմանն Ոսկեբերանին 'ի Մեկն. Յովհ. հատ. Բ. ճառ. ԼԳ. յեղու Խեբևէշ: Վասն որոյ՝ Դանգ, Խեբևէշ, Ասսարիոն, Լեպտոն, Ոբողոս, Պղինձ, և Լումայ՝ լինին 'ի մեզ նոյնանիշ: Տանք ըստ բառարանին Պարսից * Նշանակէ զքառորդն միոյ Տիրհէմի, և ըզվեցերորդն միոյ Միսգալի ||: * Դանկս երկուս առնում յաւուր մի 'ի ձեռագործէ. և ծախեմ 'ի պէտս իմ երկու փողս, և զայլն տամ սէր ||. Վարք Հարանց. ԺԱ. 233: Յայս բան 'ի Լատին Թարգմանութեան փոխանակ բառիս Դանկ՝ դնի siliqua, այսինքն՝ Կորիզ եղ-

ջեր կամ Կերատ. որ է ըստ Շիրակացւոյն չորից Դարեհատաց կշիռ։ * Նոքեր առ ծերն զՄախաղ իւր, և ետ ցծերն. յորում կայր չամիչ և նուռն ինչ և թուզ, և երիս Դանկս ոսկի. և եհան 'ի քերանոյն այլևս երիս Դանկս ոսկւոյ, և ետ զայն ևս ցծերն ॥. Ընդ. ժդ. 274։ * Նու վաստակեր նա աւուր միոյ իւրոյն արուեստիւ դրամս Դանկոյ միոյ ... և տայր նմա ՔՍ 'ի վաստակոյ իւրոյ աւուրն Դանկ մի ոսկւոյ համապազ ॥. Ընդ. 275-276։

Այլ մեք 'ի վկայութեանց աստի, և 'ի բանից հեղինակաց՝ երկու ինչ իմաստասիրեմք. առաջին՝ թէ Դանգն իբրև Կշիռ, թէպէտև ըստ Շիրակացւոյն նոյն է ընդ Ասարիոնի և Լեպտոնի, և է 2 Դարեհատ, բայց ըստ այլոց է վեցերորդ մասն Դենարի, և է 12 Դարեհատ. և ըստ ոմանց իբրև նոյն ընդ Սատերի կամ Դրաքմէի, է 72 Դարեհատ։ Երկրորդ՝ իբրև Դահեկան նշանակէ ընդհանրապէս զպղնձի, զարծաթի և զոսկի դրամս. բայց առանձին իմն զմանր պղնձի դրամս։

## Դիդրաքմայ. Յոյն διδραχμή.

### Կշիռ և Դրամ։

ԴԻԴՐԱՔՄԱՅ. Յոյն διδραχμή կամ δίδραχμον. Լատ. didrachma կամ didrachmum. Եբր. շեքէլ։

Է կշիռ, և դրամ երկդրամեան։ Զ. և Է. օրինակք կշռոց Շիրակացւոյն վասն Դիդրաքմայի ունին այսպէս. * Դիդրաքմայն Զ̃ դրամակշիռ է. Դիդրաքմայն և Սատերն մի է ॥։ Իսկ յաւելուած Զ̃. օրինակին ունի այսպէս. * Սիկղն և Երկդրամեան և Դիդրաքմայն՝ Բ̃ Դրամ են ॥։

Արդ՝ որպէս յայտ է 'ի յունական նշանակութենէ բառիս, Դիդրաքմայն է Երկդրամեան, այսինքն՝ երկու Դրամակշիռ, կամ երկու Դրաքմէ. որ ըստ Եբրայեցւոց կոչի Սիկղ։ Իսկ Սատերն կրկին Սիկղ է, որ և լինի կրկին Դիդրաքմայ, կամ Չորեքդրամեան

մի ։ Բայց թէ ընդէ՞ր ոմանք զԴիդրաքմայն կամ զԵրկդրամեանն, և զՍիկղ համարին նոյն ընդ Սատերի կամ ընդ Չորեքդրամենի, այս է պատճառն ըստ Պետաւիոսի ։ Վասնզի մի Դրամ կամ Դրաքմէ ըստ Աղեքսանդրացւոց՝ է կրկին ըստ Ատտիկեցւոց. որով Երկդրամեան կամ Դիդրաքմայ առաջնոցն լինի մի դրամակշիռ յետնոցս ։ Յայն սակս և Դիդրաքմայն կամ Երկդրամեանն Աղեքսանդրացւոց՝ լինի Սատեր մի կամ Չորեքդրամեան ըստ Ատտիկեցւոց ։ Եւ այս է պատճառն ասելոյ ոմանց զԴիդրաքմայն Երկդրամեան, և այլոց Չորեքդրամեան ։ Սոյն որոյ և Թարգմանիչք մեր յԱճաշունչ գիրս դնեն զԴիդրաքմայն երբեմն հանդէպ յունական բառիս δραχμή, որ է Դրամ կամ Դրաքմէ, և երբեմն բառիս διδραχμή, որ է Երկդրամեան. զորս և Թարգմանեն ևս երբեմն Սատեր, կամ կրկին Սատեր ։ * Ոսկի Դիդրաքմայս ( Յոյն δραχμή . Եբր . դարգէմծ ) վեց բիւր և հազար ‖ . Բ . Եզր . Բ . 69 ։ * Տացուք զողորմութիւնս երրորդ Դիդրաքմայն ( Յոյն διδραχμή . Եբր . շէգէլ , Սիկղ ) ամ ըստ ամէ 'ի հարկ տանն Ա.Ճ ‖ . Բ . Եզր . Ժ . 32 ։ * Արծաթ Դիդրաքմայս քառասուն ‖ . Անդ . Ե . 15 ։ * Վարդապետն ձեր ո՞չ հարկիցէ զԴիդրաքմայն ( զԵրկդրամեանն ) ‖ . Երզնէ . 'ի մէն . Մատթ . ԺԷ . 23 ։ Տես Երկդրամեան, Դրաքմէ, և Դրամ ։

## Դոյլ . Պարսկ . Տուլ ։

Չափ կամ Անօթ հեղանիւթոց .

ԴՈՅԼ . Եբր . դէլի . Յոյն ἄντλημα և κάδος . Լատ . haustorium, situla և cadus.

Ի անօթ 'ի պէտս հանելոյ զջուր 'ի ջրհորոյ ։ * Վասնզի և Դոյլ ոչ ունիս, և ջրհորս խոր է ‖ . Յովհ . Դ . 21 ։ * Որպէս զկաթիլ մի 'ի Դուլէ են ‖ . Եսայ . Խ . 15 ։

## Դորակ · Պարսկ · Տէրուգ ·

Չափ հեղանիւթոց :

ԴՈՐԱԿ · Եբր · Հին · Յոյն ἵν, εἶν, և ὗν. Լատ · hin. Ի չափ հեղանիւթոց՝ 9 կամ 12 Քսեստ : * Չորրորդ մասն Դորակի գինւոյ ‖ · Ղեւտ · ԻԳ · 13 : * Օ տասներորդ Դրուին զանգեալ իւղով չորրորդաւ Դորակին ‖ · Թւոց · ԺԵ · 4 : * Չորրորդ Դորակի գինւոյ ‖ · Ելք · ԻԹ · 40 : * Չորրորդաւ Դորակի (իւղոյ) ‖ · Թւոց · ԻԸ · 5 : * Եւ նուէր նոցա կէս Դորակի գինւոյ լիցի առ զուարակ մի, և երրորդ Դորակին լիցի առ խոյ մի, և չորրորդ Դորակին լիցի առ գառն մի ‖ · Նոյն · 14 : * Եւ ջուր չափով արբջիր · և զվեցերորդ մասն Դորակի միոյ ժամէ 'ի ժամ արբջիր ‖ · Եզեկ · Դ · 10 : * Եւ հրամայէր վեց առն երկու քաշկենս ժամէ 'ի ժամ · և Դորակ և կէս ջուր ‖ · Եղիշէ · պատմ · Ը · 144 : Ըստ Եպիփանու Հին կամ Հիմէն է կրկին՝ մեծ, և փոքր · մեծն է ԺԸ Քսեստ (ըստ Պետաւիոսի 12) · և փոքրն կամ Սրբութեանն՝ Թ Քսեստ : Նախնիք մեր զյունականդ 'ի թարգմանեն եւ Հիմէն, և Քսեստ :

## Դրամ · Պարսկ · Տիրէմ :

Դահեկան և Կշիռ :

ԴՐԱՄ · Եբր · դառգէմօն · Յոյն δραχμή · Լատ · drachma . ռամկօրէն Տրամ, և ըստ Քերականացւոյն Դրաքմէ :

Է անուն Կշռոյ, և Դահեկանի : Ըստ որում կշիռ՝ է ութերորդ մասն Ունկոյ, և հոլովի հասարակօրէն՝ Դրամ, դրամի, դրամոյ : Իսկ ըստ որում Դահեկան՝ ընդհանրապէս նշանակէ զամենայն ազգ դրամոց, բայց առանձին իմն զԴահեկանն · և հոլովի հասարակօրէն՝ Դրամ, դրամոյ, դրամոյ : Տես Դրաքմէ, և Դահեկան : Սակայն ըստ օրինակաց Քերականաց.

ւոյն , և ըստ բառարանին Պարսից՝ Դրամն է իբր չոր-րորդ մասն Սատերի , և ութսներորդ մասն Լտեր , կամ վեշտասան Կերատ ։ Որով և սակաւ մի տարբերի 'ի Դրաքմէ . զի է նա 96 մասն Լտեր , և 18 Կերատ ։

Նախնիք մեր յՆ. ծաշունչ գիրս դնեն զԴրամ միայն համդէպ յունականին դ. δραχμή . * Դրամ մի ( Նոր. վէգաղ ) առ գլուխ կէս Սկեղ՝ ըստ սրբութեան Սկեղն ‖ . Ելից . ԼԸ . 25 ։ * Որոյ իցեն Դրամք տասն . . . կորուսանիցէ զԴրամ մի . . . գտի զԴրամն իմ , զոր կորուսի ‖ . Ղուկ . ԺԵ . 8-9 ։ * Նա զինքն անդրի 'ի մէջ (քաղաքին) հաստատեաց , մի Դրամ 'ի ձեռին ու-նելով . որ նշանակէ այսպիսի ինչ , թէ 'ի շինել քաղա-քիս՝ ամենայն գանձքս ծախեցան , և այս միայն մնաց ‖ . Խորէն . պատմ . Բ . 33 ։ * Նա Դրամ առանձին զիւր պատկերն հարկանէր ‖ . Նոյն . Բ . 10 ։ * Սատակէր նա աւուր միոյ իւրոյն արուեստիւ Դրամս դանկոյ միոյ ‖ . Մաշտ Հարանց . ԺԴ . 275 ։ * Ննջոյր զմախաղ իւր ոսկւով և արծաթով և Դրամիւք ‖ . Անդ . 285 ։ * Տայր Դրամակէս և երկու Դրամս . . . քանզի Դրա-մակէսս և Տրմէսս , այսինքն՝ Դրամք երկու ՚զգողանայի , և տայի կարօտելոց ‖ . Անդ . 290 ։

Դրամակէս ։

Դրամ և Կշիռ ։

ԴՐԱՄԱԿԷՍ . Յոյն ἥμισυ (կէս) . Լատ . semis . ըստ Շիրակացւոյն Սէմս ։

Ի կէս Դրամի կամ Դահեկանի ։ * Տայր Դրամակէս , և երկու Դրամս . . . քանզի Դրամակէսս , և Տրմէսս , այսինքն՝ Դրամք երկու , գողանայի , և տայի կարօ-տելոց ‖ ։ Մաշտ Հարանց . ԺԴ . 290 ։ Նոյն զայսմանէ տես 'ի Տրմէս ։

## Դրամանկշիռ։

### Կշիռ։

ԴՐԱՄԱՆԿՇԻՌ. Յոյն. δραχμή. Լատ. drachma. Է կշիռ միոյ Դրամի կամ Դրաքմէի։ * Սատերն Բ Դրամանկշիռ է‖. Շէրաֆ։ * Հազար Սատեր, որ լինի ԴՌ Դրամանկշիռ, և Թիւ‖. Նոյնն։ * Ունծայն (Ունկին) ԺԲ Միթխալ է. որ է ԺԸ Դրամանկշիռ‖. Մարտ. Հա-րանց. ԺԴ. 306։ Նոյն Ունկի ըստ Ճիշդ հաշուի Շի-րակացւոյն՝ է 8 Դրաքմէ, և 18 Տրմէս։

## Դրաքմէ. Յոյն δραχμή.

### Կշիռ և Դրամ։

ԴՐԱՔՄԷ կամ ԴՐԱՔՄԱՑ. Եբր. դարգէմօն. Լատ. drachma.

Նշանակէ զանուն դրամոյ, և և՝ զդրամանկշիռ. որ և է ութերորդ մասն Ունկոյ։ Ա. Բ. և Գ. օրինակք կշռոց Շիրակացւոյն՝ բաց 'ի բառիցս Դահեկան և Դրամ, խօսին առանձինն և վասն Դրաքմէի՝ նոյնա-ցուցեալ զայն ընդ Սատերի, որ է ըստ հասարակաց կար-ծեաց չորս Դրամ կամ Դրաքմէ. և ունին այսպէս. * Կշիռ Սիմեսի և Դրամարի կոչի ըստ Եբրայեցւոցն Սատեր. և ըստ Հելլենականին Ոբղոս. և ըստ Եգիպ-տացւոցն Քաղկոս. վասն զի Աղեքսանդրացիք զԱր-ծաթն Քաղկիմայ կոչեն։ Եւ ըստ հասարակաց խօ-սից կոչի Դրաքմէ. որ է Ը մասն Ունկոյ։ Իսկ ըստ Հռովմայեցւոյն Կապէտոն կոչի, վասն զի Կապոտ (Կա-պոտք) գլուխ լսի. քանզի Օգոստոս կայսր եդ հարկս ըստ Գլխոյ Դրաքմէ մի‖։ Յայսոսիկ բանս՝ ոչ միայն Դրաքմէ կամ Դրամ, Երկդրամեան կամ Դիդրաք-մոյ, և Սատեր կամ Չորեքդրամեան, այլև Ոբղոս, և Քաղկոս, դոգցես իբր նոյնանիշ դնին, և նոյնակշիռ. որք են անուանք այլևայլ կշռոց։ Բայց ոչինչ ընդհատ են 'ի սոցանէ և բանք Եպիփանու՝ որ ասէ. * Ունկի

է երկու Ստատեր. և Ստատեր՝ որ է կէս Ունկայ, է Դիդրաքմայ մի... Սիկղ՝ որ և կոչի Կոդրանտ, է չորրորդ մասն Ունկայ, և կէս Ստատերի, և երկու Դրաքմէ... Օբողոս... ունէր զչափ Ունկայ... կայր և այլ Օբողոս... ութսներորդ մասն Ունկայ. քանզի ասի 'ի Ղևտականն. Դիդրաքմայն Ի Օբողոս. վասն զի Դիդրաքմայն չորրորդ մասն է Ունկայ... Աղեքսանդրացիք զԱրծաթիս կոչեն Խաղկոսս: Նա է կշիռ Խաղկոսին ութերորդ մասն Ունկայ, որպէս և Դրաքմէի‖: Իսկ Դ. և Ե. օրինակք Շիրակացւոյն ունին այսպէս. * Ունկին դարձեալ Բ Ստատեր է. մին Ստատերն սակաւ ինչ պակաս է 'ի Դ Դրամէ. որ է կէս Ունկայ... Ստատերն կէս Ունկայ է. որ է Դ Դրամի կշռորդ: Դրաքմէն Բ դրամակշիռ է. Դիդրաքմայն Դ դրամակշիռ է: Դիդրաքմայն և Ստատերն մի է‖: 'Ի միաբանութիւն, և 'ի բացատրութիւն այսոցիկ բանից՝ ունիմք ասել, թէ Դրաքմէն կամ Դրամն է ութերորդ մասն Ունկայ, և է Դրամակշիռ մի: Դիդրաքմայն կամ Երկդրամեանն նոյն է ընդ Սկեղ, և է չորրորդ մասն Ունկայ. վասն որոյ և է երկու Դրաքմէ կամ երկու Դրամակշիռ: Իսկ Ստատերն կամ Չորեքդրամեանն՝ է կէս Ունկայ. նմին իրի և է չորս Դրաքմէ, կամ չորս Դրամակշիռ: Նա պատճառ շփոթութեան սոցա ընդ միմեանս, է ըստ Պետաւիոսի տարբերութիւնն ընդ մէջ Դրաքմէի Աղեքսանդրացւոյ, և Ատտիկեցւոյ. զի որ ըստ Աղեքսանդրացւոց է դրամակշիռ մի, ըստ Ատտիկեցւոց է կրկին դրամակշիռ, կամ Երկդրամեան: Նոյնպէս Երկդրամեանն ըստ Աղեքսանդրացւոց՝ է Չորեքդրամեան ըստ Ատտիկեցւոց: Նմին իրի և նախնիք մեր յԱծաշունչ գիրս յունականսդ δραχμὴ և διδραχμὴ անխտիր թարգմանեն՝ Դրամ, Դահեկան, Դիդրաքմայ, Երկդրամեան, Ստատեր, և կրկին Ստատեր: Միայն թէ զբառդ Դրաքմէ ոչ երբէք 'ի կիր արկանեն Յունական հնչմամբ, այլ փոխան նորա դնեն զԴրամ կամ զԴահեկան՝ Պարսկական հնչմամբ:

ԵՂՋԻՒՐ կամ ԵՂՋԵՐՈՒԵՆԻ. տես ԿԵՐԱՏ.

## Եղէգն.

Չափ երկայնութեան.

ԵՂԵԳՆ. Յոյն κάλαμος. Լատ. calamus, arundo. Է ձող կամ գաւազան Ճարտարապետաց՝ որով առնուն զչափ շինուածոց։ * Եւ տուաւ ինձ Եղէգն նման գաւազանի. և կայր Հրեշտակն, և ասէր ցիս. արի և չափեա՛ զտաճարն Ա՟Յ ‖. Յայտ. ժա. 1։ * Ունէր Եղէգն ոսկի՝ 'ի ձեռին իւրում, զի չափեսցէ զքաղաքն ‖. Ն՟ն. իա. 15։

## Երեքդանգեան.

Կշիռ և Դրամ.

ԵՐԵՔԴԱՆԳԵԱՆ կամ ԵՐԵՔԴԱՆԿԵԱՆ. Է դրամ և կշիռ երից Դանգաց. * Իբրև զայր մի երեքդանգեան՝ 'ի մէջ արկեալ կտտէին ‖. Ճառընտ.

## Երկդրամեան.

Կշիռ և Դրամ.

ԵՐԿԴՐԱՄԵԱՆ կամ ԵՐԿԴՐԱՄ. Եբրայ. շէքէլ (Սիկղ). Յոյն δίδραχμή կամ δίδραχμον. Լատ. didrachma կամ didrachmum (Դիդրաքմայ).

Է անուն Դահեկանի, որ է կրկին դրամակշիռ, կամ չորրորդ մասն Սիկղոյ։ * Զկէս Երկդրամենին (տացէ), որ իցէ ըստ սրբութեան Երկդրամենին. Քսան Դանգ է Երկդրամեանն. և կէս Երկդրամենին եղիցի հաս Տեառն ‖. Ելք. լ. 13. * Յիսուն Երկդրամեան արծաթոյ ‖. Դ Թագ. իէ. 5. * Յիսուն Երկդրամեան էր ձոյլ նորա ‖. Յեսու. է. 21. * Իբրև եկին նոքա 'ի Կափառնաում, մատեան որք զԵրկդրամեանն պահանջէին՝ առ Պետրոս, և ասեն. վարդապետն ձեր ոչ տայ զԵրկդրամեանն. և ասէ՝ այո ‖.

Մատթ. ԺԷ. 25 ։ Յորոյ 'ի մեկնութեան ասէ Երզընկացին. * Հրամայեաց (Մովսէս) տալ յամի Ղևտացւոց Սիկղ մի արծաթոյ՝ որ է երկու Դրամ (Երկդրամեան), ամենայն անդրանկացն Իսրայէլացւոյն. և զի Ք͞ս անդրանիկ էր՝ գիտէին, եկին պահանջել 'ի նմանէ. ոչ յայլում տեղւոջ, այլ յորժամ 'ի Կափառնայում եկն. քանզի ըստ քաղաքի քաղաքի առանձինն պահանջէին՝ որպէս զԱշխարհագիրն ‖։ Այս սա և Դիդրաքմայ կոչէ անդանօր զԵրկդրամեանն՝ յասելն. * Վարդապետն ձեր ո՞չ հարկեցի զԴիդրաքմայն ‖։ Բայց Շիրակացին զԵրկդրամեանն բաց յԱշխարհագրէն՝ կոչէ ևս Դրաքմէ և Սատեր ։ Զբացատրութիւն բանից նորա տես 'ի բառն Դրաքմէ ։ Ըստ Կալմեթի Երկդրամեանն կամ Դիդրաքմայն է կէս Սիկղ ըստ Եբրայեցւոցն. և Սատեր կամ Չորեքդրամեան՝ Սիկղ մի ։ Քանզի ասէ. * Օրէնքն հրամայէին Եբրայեցւոց տալ հարկս տաճարին ամ ըստ ամէ կէս Սիկղ ըստ գլխոյ. զայս խնդրեցին հարկապահանջքն 'ի Ք͞սէ. և նա առաքեաց անդէն զՊետրոս 'ի ծովակն. և ձուկնն՝ զոր ըմբռնեաց նա, ունէր զՉորեքդրամեան 'ի բերանի. զհարկն ասեմ զՔ͞սի և զՊետրոսին ‖։ Բայց կրկին էր Սիկղ առ Եբրայեցիս. որպէս ունիս տեսանել 'ի Սիկղ ։

## Զամբիւղ. Պարսկ. Զէնպիլ.

Չափ ցամաքեղինաց ։

ԶԱՄԲԻՒՂ կամ ԶԱՄԲԻՂ. Յոյն σπυρίς (սփըրիդ). Լատ. sporta.

Է անօթ հիւսեալ 'ի տերևոյ բուսոց, յաւէտ յարմաւոյ ։ * Եւ բարձին զնշխարս կոտորոցն եօթն Զամբիւղ լի ‖. Մատթ. ԺԵ. 37 ։ * Քանի՞ Զամբիւղս բարձիք ‖. Նոյն. ԺԶ. 10 ։ * Եւ բարձին զնշխարս կոտորոցն եօթն Զամբիղ ‖. Մարկ. Ը. 8 ։ * Քանի՞ Զամբիղ լի բարձիք զկոտորոցն ‖. Նոյն. 20 ։ * Բարձին զնշխարս կոտորոցն եօթն Զամբիւղ լի ... անդ-

՚ի հինգ հազարացն երկոտասան Սակառի յաւելաւ , և աստ ՚ի չորից հազարացն եօթն Զամբիւղ ։ Նմա՛ զայն իցէ ասել , թէ Զամբիւղքն մեծագոյնք էին քան զՍակառին ... և կամ՝ այլագունակ կերպարանօք ( հրաշից ) զարթուցանէ՝ յիշել զնոսա ։ Վասն այսուրիկ անդ ըստ աշակերտացն կշռէ զթիւ Սակառացն , և աստ ըստ նկանակացն զՓիւրիդայսն ( ՚ի լուսանցս դնի՝ զՍփիւրիդացն )։ Նոյնի. ՚ի մեկն. Մատթ. ԺԵ. 37 ։ * Առեալ Զամբիղ իւր՝ գնաց առ երկրագործ ոմն , և ասէ ցնա . տո՛ւր ինձ ցորեան ։ Վարք Հարանց. Ե. 14 ։ Զյունականդ Սպիրիդ թարգմանեն և ս նախնիք մեր Սանդուկ , վասն վանդակաձև հիւսուածոյ Զամբիւղոյն . * Իսկ առեալ զնա աշակերտացն ՚ի գիշերի՝ ընդ պարիսպն կախեալ իջուցին Սանդակաւ ։ Գործ. Թ. 25 ։

## Զոյգ. Յոյն Ζυγός.

ԶՈՅԳ. Նոր. Տօղանէշ. Յոյն ζυγός. Լատ. statera, bilanx.

Է անուն երկթաթ Կշռոյ ։ * Մի՛ առնիցէք անիրաւութիւն ՚ի դատաստանի , ՚ի Չափս , և ՚ի Կշիռս , և ՚ի Զոյգս ։ Եւ Զոյգք արդարք , և Կշիռք արդարք , և Չափք արդարք , և Կապիճ արդար լինիցի ձեր ։ Ղեւ. ԺԹ. 35-36 ։ Նախնիք մեր զյունականդ ζυγός, թարգմանեն և ս՝ Լուծ , Լուծ կշռոյ , Կշիռ , և Կշռորդ ։

## Ըմպանակ ։

### Չափ հեղանիւթոյ ։

ԸՄՊԱՆԱԿ , ԸՄՊԱՆՈՑ , ԸՄՊԵԼԻՔ , և ԸՄՊԻԿ. Յոյն ποτήριον. Լատ. poculum.

Են ընդհանուր անուանք բաժակի կամ անօթոյ ըմպելոյ ։ * Ըմպանակք երկու՝ յերկոսին ձեռին , մինն արեամբ , և միւսն կաթամբ ։ Նարեկ. Է. 2 ։ * Նուակ

ուղղութեամբ ունի այսպէս. * Սիկղն և Երկդրամեանն և Դիդրաքմայն բ̅ Դրամ են. և բ̅ Դրամն զ̅ Դանկն է. և Դանկն բ̅ Դարեհատ ||:

Թարգմանիչք մեր 'ի Նորումն Կտակի դնեն զԴանգ հանդէպ Յունականին ἀσσάριον. իսկ 'ի Հինն հանդէպ բառին ὀβολός. * Ո՞չ ապաքէն երկու ճնճղուկք Դանգի միոջ վաճառին ||. Մատթ. Ժ. 29: * Ո՞չ ապաքէն հինգ ձագ երկուց Դանգաց վաճառի ||. Ղուկ. ժբ. 6: * Եկեսցէ երկիրպագանել նմա վասն Դանգի (Եբր. ակօռաթ) միոջ արծաթոյ ||. Ա. Թագ. բ. 36: * Եւ այս ինչ է, զոր տայցեն՝ որք անցանիցեն 'ի հանդիսի անդ. զկէս Երկդրամենին՝ որ իցէ ըստ սրբութեան Երկդրամենին: Քսան Դանգ է Երկդրամեանն. և կէս Երկդրամենին եղիցի հաս Տեառն ||. Ելից. Լ. 13: Երբայականն աստանօր, որպէս և 'ի յետագայսդ՝ է կէռահ: * Եւ ամենայն գինք եղիցին ըստ Սրբութեան կշռոցն. քսան Դանգ լիցի Երկդրամեանն ||. Ղևտ. իէ. 25: * Առցես հինգ Սիկղ ըստ գլխոյ՝ ըստ սրբութեան Երկդրամենին. առցես քսան Դանգ առ Սիկղ ||. Թուոց. գ. 47: * Եւ գին նորա հինգ Սիկղ ըստ սրբութեան Սիկեղն, որ է քսան Դանգ ||. Անդ. ժը. 16: * Եւ քսան կշիռն Դանգ ||. Եզեկ. խե. 12: * Հաւատացելոյն ամենայն աշխարհ ընչիւք լի է. անհաւատին և ոչ Դանգ մի. || Առակ. ժէ. 4: Յայժմու օրինակս Յունաց չիք Դանգ յայս բան Առակաց. բայց բերէ Կիւրեղ Երուսաղեմացին 'ի Կոչումն ընծայութեան, և է ὀβολός. զոր թարգմանն Ոսկեբերանին 'ի Դզն. Յովհ. հատ. բ. ճառ. լգ. յեղու Խերէւէշ: Սան որոյ՝ Դանգ, Խերեւէշ, Ասարիոն, Կեպտոն, Ոբղոս, Պղինձ, և Լումայ՝ լինին 'ի մեզ նոյնանիշ: Տանի ըստ բառարանին Պարսից * նշանակէ զքառորդն միոյ Տիրհէմի, և զվեցերորդն միոյ Միսգալի ||: * Դանկս երկուս առնում յաւուր մի 'ի ձեռագործէ. և ծախեմ 'ի պէտս իմ երկու փողս, և զայլն տամ սէր ||. Վարք հարանց. ժա. 233: Յայս բան 'ի Լատին թարգմանութեան փոխանակ բառիս Դանկ՝ դնի siliqua, այսինքն՝ Կորիզ եղ-

Ջեր կամ Կերատ. որ է ըստ Շիրակացւոյն չորից Դարեհատաց կշիռ ։ * Եթէր առ ծերն զՄախաղ իւր, և ետ ցծերն. յորում կայր չամիչ և նուռն ինչ և թուզ, և երիս Դանկս ոսկի. և եհան ՚ի քերանոյն այլևս երիս Դանկս ոսկւոյ, և ետ զայն ևս ցծերն ‖. Ճնտ. ժբ. 274 ։ * Եւ վաստակէր նա աւուր միոյ իւրոյն արուեստիւ դրամս Դանկոյ միոյ . . . և տայր նմա Ճն ՚ի վաստակոյ իւրոյ աւուրն Դանկ մի ոսկւոյ համապազ ‖. Ճնտ. 275-276 ։

Այլ մեք ՚ի վկայութեանց աստի, և ՚ի բանից հեղինակաց՝ երկու ինչ իմաստասիրեմք . առաջինն՝ թէ Դանգն իբրև Կշիռ, թէպէտև ըստ Շիրակացւոյն նոյն է ընդ Ասսարիոնի և Լեպտոնի, և է 2 Դարեհատ, բայց ըստ այլոց է վեցերորդ մասն Դենարի, և է 12 Դարեհատ. և ըստ ոմանց իբրև նոյն ընդ Սատերի կամ Դրաքմէի, է 72 Դարեհատ ։ Երկրորդ՝ իբրև Դահեկան նշանակէ ընդհանրապէս զպղնձի, զարծաթի և զոսկի դրամս . բայց առանձինն իմն զմանր պղնձի դրամս ։

Դիդրաքմայ . Յոյն διδραχμή .

Կշիռ և Դրամ ։

ԴԻԴՐԱՔՄԱՅ . Յոյն διδραχμή կամ δίδραχμον . Լատ. didrachma կամ didrachmum. Եբր. շէգէլ ։

Է կշիռ, և դրամ երկդրամեան ։ Բ. և Ե. օրինակք կշռոց Շիրակացւոյն վասն Դիդրաքմայի ունին այսպէս. * Դիդրաքմայն Բ դրամակշիռ է. Դիդրաքմայն և Սատերն մի է ‖ ։ Իսկ յաւելուած Բ. օրինակին ունի այսպէս . * Սիկղն և Երկդրամեան և Դիդրաքմայն՝ Բ Դրամ են ‖ ։

Արդ՝ որպէս յայտ է ՚ի յունական նշանակութենէ բառիս, Դիդրաքմայն է Երկդրամեան, այսինքն՝ երկու Դրամակշիռ, կամ երկու Դրաքմէ. որ ըստ Եբրայեցւոց կոչի Սիկղ ։ Իսկ Սատերն կրկին Սիկղ է, որ և լինի կրկին Դիդրաքմայ, կամ Չորեքդրամեան

ւոյն , և ըստ բառարանին Պարսից՝ Դրամն է իբր չորրորդ մասն Սատերի , և ութսներորդ մասն Լտեր , կամ վեշտասան Կերատ ։ Նոյն և սակաւ մի տարբերի 'ի Դրաքմէ . զի է նա 96 մասն Լտեր , և 18 Կերատ ։

Նախնիք մեր յԱ․ծաշունչ գիրս դնեն զԴրամ միայն համդէպ յունականին δραχμή . * Դրամ մի ( Նորվէգաղ ) առ գլուխ կէս Սկեղ՝ ըստ սրբութեան Սկեղն ‖ . Ելից . ԼԸ . 25 ։ * Որոյ իցեն Դրամք տասն ... կորուսանիցէ զԴրամ մի . . . գտի զԴրամն իմ , զոր կորուսի ‖ . Ղուկ . ԺԵ . 8-9 ։ * Նա զինքն անդրի 'ի մէջ (քաղաքին) հաստատեաց , մի Դրամ 'ի ձեռին ունելով . որ նշանակէ այսպիսի ինչ , թէ 'ի շինել քաղաքիս՝ ամենայն գանձքս ծախեցան , և այս միայն մնաց ‖ . Խորէն . պատմ . Բ . 33 ։ * Նա Դրամ առանձին զիւր պատկերն հարկանէր ‖ . Նոյնն . Բ . 10 ։ * Սատակէր նա աւուր միոյ իւրում արուեստիւ Դրամս դանկոյ միոյ ‖ . Վարք հարանց . ԺԴ . 275 ։ * Լնոյր զմախաղ իւր ոսկւով և արծաթով և Դրամիւք ‖ . Նոյն . 285 ։ * Տայր Դրամակէս և երկու Դրամս . . . քանզի Դրամակէսս և Տրմէսս , այսինքն՝ Դրամք երկու , գողանայի , և տայի կարօտելոց ‖ . Նոյն . 290 ։

## Դրամակէս ։

### Դրամ և Կշիռ ։

ԴՐԱՄԱԿԷՍ . Յոյն ἥμισυ (կէս) . Լատ . semis . ըստ Եփրակացւոյն Սէմիս ։

Է կէս Դրամի կամ Դահեկանի ։ * Տայր Դրամակէս , և երկու Դրամս . . . քանզի Դրամակէսս , և Տրմէսս , այսինքն՝ Դրամք երկու , գողանայի , և տայի կարօտելոց ‖ ։ Վարք հարանց . ԺԴ . 290 ։ Նաև զայսմանէ տես 'ի Տրմէս ։

### Դրամակշիռ ։

#### Կշիռ ։

ԴՐԱՄԱԿՇԻՌ. Յոյն. δραχμή. Լատ. drachma. Է կշիռ միոյ Դրամի կամ Դրաքմէի ։ * Սատերն դ̅ Դրամակշիռ է ‖. Ելք ։ * Հազար Սատեր, որ լինի դռ̅ Դրամակշիռ, և Թիւ ‖. Լուծմն ։ * Ունծայն (Ունկին) ժբ̅ Սիթխալ է. որ է ժբ̅ Դրամակշիռ ‖. Վարք Հա- րանց. ժդ̅. 306 ։ Եւ Ունկի ըստ ճիշդ հաշուի Շի- րակացւոյն՝ է 8 Դրաքմէ, և 18 Տրմէս ։

### Դրաքմէ. Յոյն δραχμή.

#### Կշիռ և Դրամ։

ԴՐԱՔՄԷ կամ ԴՐԱՔՄԱՅ. Եբր. դարքէմոն. Լատ. drachma.

Նշանակէ զանուն դրամոյ, ևս և՝ զդրամակշիռ. որ և է ութերորդ մասն Ունկոյ ։ ա̅. բ̅. և գ̅. օրինակք կշռոց Շիրակացւոյն՝ բաց 'ի բառիցս Դահեկան և Դրամ, խօսին առանձինն և վասն Դրաքմէի՝ նոյնա- ցուցեալ զայն ընդ Սատերի, որ է ըստ հասարակաց կար- ծեաց չորս Դրամ կամ Դրաքմէ. և ունին այսպէս. * Կշիռ Սիմեսի և Դրամարի կոչի ըստ Եբրայեցւոց Սատեր. և ըստ Հելլենականին Ոբղոս. և ըստ Եգիպ- տացւոց Բաղկոս. վասն զի Աղեքսանդրացիք զԱր- ծաթն Բաղկիմայ կոչեն ։ Եւ ըստ հասարակաց խօ- սից կոչի Դրաքմէ. որ է ը̅ մասն Ունկոյ ։ Իսկ ըստ Հռովմայեցւոց Կապետոն կոչի, վասն զի կապոն ( կա- պոտ) գլուխ լսի. քանզի Օգոստոս կայսր եդ հարկս ըստ Գլխոյ Դրաքմէ մի ‖ ։ Յայսոսիկ բանս՝ ոչ միայն Դրաքմէ կամ Դրամ, Երկդրամեան կամ Դիդրաք- մայ, և Սատեր կամ Չորեքդրամեան, այլև Ոբղոս, և Բաղկոս, գոգցես իբր նոյնանիշ դնին, և նոյնակշիռ. որք են անուանք այլևայլ կշռոց ։ Բայց ոչինչ ընդհատ են 'ի սոցանէ և բանք Եպիփանու՝ որ ասէ. * Ունկի

է երկու Սատեր . և Սատեր՝ որ է կէս Ունկոյ, է Դի-
դրաքմայ մի . . . Սիկղ՝ որ և կոչի Կոդրանտ, է չորրորդ
մասն Ունկոյ, և կէս Սատերի, և երկու Դրաքմէ . . .
Ոբղոս . . . ունէր զչափ Ունկոյ . . . կայր և այլ Ոբղոս . . .
ութսներորդ մասն Ունկոյ . քանզի ասի 'ի Ղևտականն.
Դիդրաքմայն Ը Ոբղոս . վասն զի Դիդրաքմայն չորրորդ
մասն է Ունկոյ . . . Աղեքսանդրացիք զԱրծաթիս կո-
չեն Քաղկոսս : Եւ է կշիռ Քաղկոսին ութերորդ
մասն Ունկոյ, որպէս և Դրաքմէի ‖ : Իսկ Դ . և Ե .
օրինակք Շիրակացւոյն ունին այսպէս . * Ունկին
դարձեալ Բ Սատեր է . մին Սատերն սակաւ ինչ պա-
կաս է 'ի Դ Դրամէ . որ է կէս Ունկոյ . . . Սատերն կէս
Ունկոյ է . որ է Դ Դրամի կշռորդ : Դրաքմէն Բ դրա-
մակշիռ է . Դիդրաքմայն Դ դրամակշիռ է : Դիդրաք-
մայն և Սատերն մի է ‖ : 'Ի միաբանութիւն, և 'ի բա-
ցատրութիւն այսոցիկ բանից՝ ունիմք ասել, թէ Դրաք-
մէն կամ Դրամն է ութերորդ մասն Ունկոյ, և է Դրա-
մակշիռ մի : Դիդրաքմայն կամ Երկդրամեանն նոյն է
ընդ Սիկղ, և է չորրորդ մասն Ունկոյ . վասն որոյ և
է երկու Դրաքմէ կամ երկու Դրամակշիռ : Իսկ Սա-
տերն կամ Չորեքդրամեանն՝ է կէս Ունկոյ . նմին իրի
և է չորս Դրաքմէ, կամ չորս Դրամակշիռ : Եւ պատ-
ճառ չփոթութեան սոցա ընդ միմեանս, է ըստ Պե-
տաւիոսի տարբերութիւնն ընդ մէջ Դրաքմէի Աղեք-
սանդրացւոց, և Ատտիկեցւոց . զի որ ըստ Աղեքսան-
դրացւոց է դրամակշիռ մի, ըստ Ատտիկեցւոց է կրկին
դրամակշիռ, կամ Երկդրամեան : Նոյնպէս Երկդրա-
մեանն ըստ Աղեքսանդրացւոց՝ է Չորեքդրամեան ըստ
Ատտիկեցւոց : Նմին իրի և նախնիք մեր յԱծաշունչ
գիրս յունականսդ δραχμή և διδραχμή անխտիր թարգ-
մանեն՝ Դրամ, Դահեկան, Դիդրաքմայ, Երկդրա-
մեան, Սատեր, և կրկին Սատեր : Միայն թէ զբառդ
Դրաքմէ ոչ երբէք 'ի կիր արկանեն Յունական հնչ-
մամբ, այլ փոխան նորա դնեն զԴրամ կամ զԴահե-
կան՝ Պարսկական հնչմամբ :

ԵՂՋԻՒՐ կամ ԵՂՋԵՐՈՒԵՆԻ . տե՛ս ԿԵՐԱՏ .

## Եղէգն։

### Չափ երկայնութեան։

ԵՂԵԳՆ. Յոյն κάλαμος. Լատ. calamus, arundo. Է ձող կամ գաւազան Ճարտարապետաց՝ որով առնուն զչափ շինուածոց։ * Եւ տուաւ ինձ Եղէգն նման գաւազանի. և կայր Հրեշտակն, և ասէր ցիս. արի և չափեա զտաճարն Ա՟Յ ||. Յայտ. ժա. 1։ * Ունէր Եղէգն ոսկի՝ 'ի ձեռին իւրում, զի չափեսցէ զքաղաքն ||. Անդ. իա. 15։

## Երեքդանգեան։

### Կշիռ և Դրամ։

ԵՐԵՔԴԱՆԳԵԱՆ կամ ԵՐԵՔԴԱՆԿԵԱՆ։ Է դրամ և կշիռ երից Դանգաց։ * Իբրև զայր մի Երեքդանգեան 'ի մէջ արկեալ կոտէին ||. Ճառընտ։

## Երկդրամեան։

### Կշիռ և Դրամ։

ԵՐԿԴՐԱՄԵԱՆ կամ ԵՐԿԴՐԱՄ. Եբրայ. չէգէլ (Սիկղ). Յոյն δίδραχμή կամ δίδραχμον. Լատ. didrachma կամ didrachmum (Դիդրաքմայ)։

Է անուն Դահեկանի, որ է կրկին դրամակշիռ, կամ չորրորդ մասն Սիկղայ։ * Զկէս Երկդրամենին (տացէ), որ իցէ ըստ սրբութեան Երկդրամենին. Քսան Դանգ է Երկդրամեանն. և կէս Երկդրամենին եղիցի հաս Տեառն ||. Ելից. Լ. 13։ * Յիսուն Երկդրամեան արծաթոյ ||. Դ Թագ. ԻԵ. 5։ * Յիսուն Երկդրամեան էր ձոյլ նորա ||. Յեսու. Է. 21։ * Իբրև եկին նոքա 'ի Կափառնաում, մատեան որք զԵրկդրամեանն պահանջէին՝ առ Պետրոս, և ասեն. վարդապետն ձեր ոչ տայ զԵրկդրամեանն. և ասէ՝ այո ||.

Մատթ. ԺԷ. 25 ։ Յորոց 'ի մեկնութեան ասէ Երզընկացին. * Հրամայեաց (Մովսէս) տալ յամի Գ Ղեւտացւոցն Սիկղ մի արծաթոյ՝ որ է երկու Դրամ (Երկդրամեան), ամենայն անդրանկացն Իսրայէլացւոցն. եւ զի Քս անդրանիկ էր՝ գիտէին, եկին պահանջել 'ի նմանէ. ոչ յայլում տեղւոջ, այլ յորժամ 'ի Կափառնայում եկն. քանզի ըստ քաղաքի քաղաքի առանձինն պահանջէին՝ որպէս զԱշխարհագիրն ։ Այս սա եւ Դիդրաքմայ կոչէ անդանօր զԵրկդրամեանն՝ յասելն. * Վարդապետն ձեր ո՞չ հարկիցէ զԴիդրաքմայն ։ Այլ Հ լրակացին զԵրկդրամեանն բաց յԱշխարհագրէն՝ կոչէ եւս Դրաքմէ եւ Ստատեր ։ Զբացատրութիւն բանից նորա տես 'ի բառն Դրաքմէ ։ Իսկ Կալմեթի Երկդրամեանն կամ Դիդրաքմայն է կէս Սիկղ ըստ Եբրայեցւոցն. եւ Ստատեր կամ Չորեքդրամեան՝ Սիկղ մի ։ Քանզի ասէ. * Օրէնքն հրամայէին Եբրայեցւոց տալ հարկս տաճարին ամ ըստ ամէ կէս Սիկղ ըստ գլխոյ. զայս խնդրեցին հարկապահանջքն 'ի Քսէ. եւ նա առաքեաց անդէն զՊետրոս 'ի ծովակն. եւ ձուկնն՝ զոր ըմբռնեաց նա, ունէր զՉորեքդրամեան 'ի բերանի. զհարկն ասեմ զՔսի եւ զՊետրոսին ։ Այլ կրկին էր Սիկղ առ Եբրայեցիս. որպէս ունիս տեսանել 'ի Սիկղ ։

## Զամբիւղ. Պարսկ. Զէնպիլ.

### Չափ ցամաքեղինաց ։

ԶԱՄԲԻՒՂ կամ ԶԱՄԲԻՂ. Յուն σπυρίς ( սփրիդ ). Լատ. sporta .

Է անօթ հիւսեալ 'ի տերեւոյ բուսոց, յաւէտ՝ յարմաւոյ ։ * Եւ բարձին զնշխարս կոտորոցն եօթն Զամբիւղ լի ։ Մատթ. ԺԵ. 37 ։ * Քանի՞ Զամբիւղս բարձիք ։ Անդ. ԺԶ. 10 ։ * Եւ բարձին զնշխարս կոտորոցն եօթն Զամբիղ ։ Մարկ. Ը. 8 ։ * Քանի՞ Զամբիղ լի բարձիք զկոտորոցն ։ Անդ. 20 ։ * Բարձին զնշխարս կոտորոցն եօթն Զամբիւղ լի ... անդ.

'ի հինգ հազարացն երկոտասան Սակաւի յաւելաւ, և աստ 'ի չորից հազարացն եօթն Զամբիւղ։ Կա՛մ զայն իցէ ասել, թէ Զամբիւղքն մեծագոյնք էին քան զՍակաւիսն ... և կամ՝ այլազգունակ կերպարանօք ( հրաշիցն ) զարթուցանէ՝ յիշել զնոսա։ Նման այսու-րիկ անդ ըստ աշակերտացն կշռէ զԹիւ Սակաւացն, և աստ ըստ նկանակացն զՓիւրիգայսն ( 'ի լուսանցս դնի՝ զՍփրիդացն )||. Նշնէ. 'ի ձեռ. Մատթ. ԺԵ. 37։ * Առեալ Զամբիղ իւր՝ գնաց առ երկրագործ ոմն, և ասէ ցնա. տուր ինձ ցորեան||. Վարք Հարանց. Ը. 14։ Զյունականդ Սփրիդ թարգմանեն ևս նախնիք մեր Սանդալ, վասն վանդակաձև հիւսուածոյ Զամ-բիւղոյն. * Իսկ առեալ զնա աշակերտացն 'ի գիշերի՝ ընդ պարիսպն կախեալ իջուցին Սանդակաւ||. Գործ. Թ. 25։

## Զոյգ. Յոյն Ζυγός.

ԶՈՅԳ. Եբր. Մօզանէյմ. Յոյն ζυγός. Լատ. statera, bilanx.

Է անուն երկթաթ Կշռոյ։ * Մի՛ առնիցէք անի-րաւութիւն 'ի դատաստանի, 'ի Չափս, և 'ի Կշիռս, և 'ի Զոյգս։ Այլ Զոյգք արդարք, և Կշիռք ար-դարք, և Չափք արդարք, և Կապիճ արդար լինիցի ձեր||. Ղեւ. ԺԹ. 35-36։ Նախնիք մեր զյունականդ ζυγός, թարգմանեն ևս՝ Լուծ, Լուծ կշռոյ, Կշիռ, և Կշռորդ։

## Ըմպանակ։

### Չափ հեղանիւթոյ։

ԸՄՊԱՆԱԿ, ԸՄՊԱՆՈՑ, ԸՄՊԵԼԻՔ, և ԸՄՊԻԿ. Յոյն ποτήριον. Լատ. poculum.

Են ընդհանուր անուանք բաժակի կամ անօթոյ ըմ-պելոյ։ * Ըմպանակք երկու՝ յերկոսին ձեռին, մինն արեամբ, և միւսն կաթամբ||. Եզրէէ. Հ. 2։ * Առեալ

Ըմպանոցսն, և բազմակ (բազմապատիկ) Ըմպանոց։ Փիլոն. * Ուր կային Թակոյկք և Ըմպելիք Թագաւորին՝ ոսկեղէնք և արծաթեղէնք։ Եսթեր. ա. 7: * Տաշտակաց և Ըմպելեաց բազմութիւն։ Փիլոն: * Յաւար էառ զորս սուրբ սպասս պաշտամանն ... և ես որդւոց իւրոց և հարճից՝ անմաքուր խրախճանութեանցն Ըմպելիս։ Լամբ. Իրէն: * Ափսէք, և Տաշտք, և Ըմպիկք, և Պատճանակք ... և Նաւակք, և Ճախարակեայք։ Փիլոն: Յայս բան Փիլոնի յունականն բառիս Ըմպելի՝ է κύλιξ. Լատ. calix, որ այնինքն է Սկէհ:

### Թակոյկ. Պարսկ. Թէկկէօսք:

#### Ջափ հեղանիւթոց:

ԹԱԿՈՅԿ. Եբր. գապ. Յոյն ὑδρία. Լատ. hydria. Նշանակէ զՄափոր. ևս և զԸմպանակ կամ զըմպանակ ջրոյ։ * Անդ էին Թակոյկք կճեայք վեց՝ ըստ սրբութեան Հրէից. տանէին մի մի 'ի նոցանէ Մարս երկուս, կամ երիս։ Յովհ. բ. 6: * Ուր կային Թակոյկք և Ըմպելիք Թագաւորին՝ ոսկեղէնք և արծաթեղէնք։ Եսթեր. ա. 7: * Պորտ քո Թակոյկ (Յոյն κρατήρ) ոչ նուազեալ 'ի գինւոյ խառնելոյ։ Երգ. է. 2: * Յոտան (աշտանակին) երեք էն Թակոյկք (Յոյն κρατήρ) տպաւորեալք ընկուզազարդ և գնդաձև շուշան։ Փիլոն: 'Ի բառարանն Պարսից հանդէպ բառիս Թէկկէօսք կամ Թէուկէօսք՝ դնի Սկթղայ:

### Թաղար. Պարսկ. Թէղար:

#### Անօթ:

ԹԱՂԱՐ. Յոյն ὑδρία կամ κεράμιον. Լատ. hydria, vas fictile.

Է կոնքաձև անօթ ջրոյ։ * Միանգամ յամին փոխէր զջուր Թաղարին՝ ուր Թրջէր զարմաւենին, և հիւսէր։ Վարք Հարանց. Ե. 114: Ըստ այս բառ նշանա

կէ եւ զամենայն անօթ խեցեղէն՝ խոր և լայն, իբրև զՏակառ ։

## Թիզ. Պարսկ. Տէօբ ։

### Չափ երկայնութեան ։

Թիզ. Եբր. Զէրէթ. Յոյն σπιθαμή. Լատ. spithama կամ palmus. Տաճկ. Գարիշ ։

Է չափ տարածութեան մատանց 'ի բթէ մինչև ցճկոյթն ։ * Եւ արասցես զնա (զտախտակն լանջաց) չորքանկիւնի՝ թզաւ յերկայնութիւն, և թզաւ 'ի լայնութիւն ‖. Ելից. իը. 16 ։ * Բարձրութիւն նորա (Գողիաթու) վեց կանգուն, և թզաւ ‖. ա. Թագ. ժէ. 4 ։ * Ո՞ չափեաց ափով իւրով զջուրս, և զերկինս թզաւ ‖. Եսայ. խ. 12 ։ * Եւ պսակ շուրջ զծնօտիւքն նորա (սեղանոյն) թզաւ մի ‖. Եզեկ. խգ. 13 ։ * Սուր երկսայրի թզաւ (Եբր. ստամնօր կօմէթ, կանգուն) ‖. Դատ. գ. 16 ։

Տէօբ ըստ բառարանին Պարսից ոչ միայն նշանակէ զԹիզ, այլ և զՔիլ՝ որ է տարածութիւնն 'ի մէջ բթոյ և ցուցամատին ։ Այլ Թարգմանիչք մեր յԱծաշունչ գիրս դնեն զՔիլ համդէպ յունականին δράξ, իսկ զԹիզ նաև համդէպ յունական բառին παλαιστής. Լատ. palmus. Եբր. Թէփախ կամ Թօֆախ. այսինքն է՝ Աղաւ կամ Աղեան. որ է չափ լայնութեան չորից մատանց կցելոց ընդ միմեանս ։ * Եւ թանձրութիւն նորա (ծովուն պղնձի) թզաւ ‖. գ. Թագ. է. 26 ։ և բ. Մնաց. դ. 5 ։ * Զող չափու 'ի վեց կանգնոյ՝ և թզաւ ‖. Եզեկ. խ. 5 ։

Թարգմանիչ Փիլոնի նոյնանիշ համարի զԹիզ և զՔիլ. զի 'ի մեկնութեան Ելից. իը. 16. դնէ այսպէս. * Թզաւ երկայնութիւնն, և թզաւ լայնութիւնն վասն այսորիկ, զի Քիլ (պարտ է լինել Թիզ) վեցերորդ մասն է կանգնի (կամ կանգնոյ). քանզի կանգունն վեցաքլեան է. զի իցէ վեցերորդն մի՝ երկայնութեամբ և լայնութեամբ ‖ ։ Նոյնպէս նոյնաչափ

համարի և Եզնիկ յասելն. * Ի զուր է ճամարտակելն նոցա՝ զի այնչափ մեծութիւն երկնից տան քան երկրի. զի Աստուածատուր գիրք զերկինս Թզաւ ասեն, և զերկիր Քլաւ: Եւ ոչ ուսելի զԹիզն քան զՔիլն գտանեմք ‖: Պու. ծը. 195: Բայց՝ որպէս եդաք 'ի վերոյ, հասարակօրէն Թիզն է չափ տարածութեանն ձգելոյ 'ի բութամատէ ցճկոյթն. իսկ Քիլն է տարածութիւնն ձգեալ 'ի ծայրէ բութամատին ցծայրն ցուցամատին: Որպէս և Ուղուկ է չափ տարածութեան չորից մատանց կցելոց ընդ միմեանս՝ սկսեալ 'ի ցուցամատէ մինչև ցճկոյթն: Ունիմք զԹիզ նաև 'ի մեկնութեան հին Քերականութեան այսպէս. * Զի նա (երկրաչափութիւնն) ունի սկիզբն . . . զՊարեհատն, զԹիզն, և զՈտն. այսինքն՝ 'ի կարճէն յերկարն ժամանէ, և չափէ զերկիր ‖: Բայց թէ յինչ միտս առնու զԹիզ, ոչ կարեմք որոշել:

### Լական. Յոյն λεκάνη.

Անօթ հեղանիւթոց:

ԼԱԿԱՆ կամ ԼԵԿԱՆ. Լատ. pelvis, catinus, patina. Տաճկ. Լէկէն:

Ի Կոնք կամ Աւազան ջրոյ: * Հրաման տայ ոսկի Լականաւ ջուր պատրաստել առ 'ի լուանալ ‖. Լաս. տէվէրք. Է: * Զլեկանն 'ի մէջ բերեալ եդ. և դարձեալ կառուցեալ զակնն 'ի Լականին ‖. Պատմ. Աղէք: Նախնիք մեր յԱստուածաշունչ գիրս զλεκάνη Յունաց թարգմանեն՝ Կոնք և Պաշխուրան:

ԼԱՂԱՐԻԿՈՆ. տես ԼԻՏՐ:

### Լար. (թերևս Յոյն λύρα).

Չափ երկայնութեան:

ԼԱՐ. Յոյն σπαρτίον և σχοινίον. Լատ. filum, funiculus, funis.

Է աւասան կամ չուան Ճարտարապետաց և Երկրաչափից, առ 'ի առնուլ զչափ շինուածոց, և զվայրաց: * Եւ 'ի ձեռին նորա էր Լար շինողաց, և Ձող չափու‖. Եզեկ. Խ. 3: * Ո՞ եդ զչափ դորա, եթէ գիտիցես. կամ ո՞վ էարկ 'ի վերայ դորա զԼար‖. Յոբ. ԼԸ. 5: * 'Ի ձեռին իւրում ունէր Լար երկրաչափ‖. Զաքար. Բ. 1: Յայսմանէ ելանէ և բառս Լարաբաժին, զոր դնեն նախնիք մեր նովին նշանակութեամբ համեդէպ երկոցունց Յունական բառիցդ՝ զորս եդաք 'ի վերոյ: * Ընկցի 'ի նմա Լարաբաժին աւերակի‖. Եսայ. ԼԴ. 11: * Երկիրդ քո Լարաբաժին բաժանեսցի‖. Ամովս. Է. 17: * Որ արկանիցէ Լարաբաժին վիճակ յեկեղեցւոջ Տեառն‖. Միք. Բ. 5: * Լարաբաժին առնել (Յոյն κατακληροδοτῆσαι, վիճակաւ բաժանել) զամենայն երկիր նոցա‖. Ա. Մակ. Գ. 36: Արդ Լարիւ ոչ միայն առնումք զչափ շինուածոց և զվայրաց, այլև առհասարակ զամենայն երկայնութեան, լայնութեան, ևս և խորութեան. վասն որոյ ասէ Փիլոն. * Եւ առեալ Լար՝ 'ի գլխոյն մինչև 'ի յոտսն ձգեսցէ զնա. գտցէ զԼարն 'ի վեցպատիկ ըստ լանջացն լայնութեան, և տասնկին ըստ կողիցն խորութեան, և զլայնութիւն խորութեան մակերկման‖:

Դարձեալ՝ Լար նշանակէ զչափ երկայնութեան ճանապարհի. * Անցաք գնացաք Լարս երկոտասան‖. Պտմ. Աղեք: * 'Ի մտանելն մերում Լարօք հնգետասան‖. Թովմ. Արծր. Ա. ԺԳ. 3: Թերևս ըստ այսմ նշանակութեան՝ իցէ նա Գրկաչափ կամ ὄργυιά Յունաց:

## Լիտր. Յոյն λίτρα.

Կշիռ:

Լիտր կամ Գիտր. Լատ. և Իտալ. libra. Տաճկ. րէթէլ կամ ռէթէլ:

Է կշիռ ծանրութեան երկոտասան Ունկոյ: Ա. Բ. և Գ. Օրինակք կշռոյ Շիրակացւոյն յա-

ղագս Լտեր ունին այսպէս. *Կշիռ ժը Ունկոյ կոչի Լիտր. և Թարգմանի ըստ Հռովմայեցւոց լեզուի Հարթութիւն. բայց անուանի յամենայն լեզուաց Լիտր (սակաւ ինչ տարբերութեամբ)։ Իսկ մանր բաժանեալ զԼիտրն՝ լինի Ունկի ժը, Սիկղ ինը, Դահեկան հը, Սատեր ղդ, Սիմքս ձիդ, Տրմքս մժգ, Դրամար մձը, Սինգ նլը, Կերատ ուչիը, Փշիտ սճդ, Դանգ ջխծզ, և Դարեհատ ցջժը։

դ. ե. և զ. օրինակք ունին այսպէս. *Լիտր. հը Դահեկան (է). և Դրամով յորժամ կշռես, ձ Դրամ։ Ունկին զ Դահեկանի կշռորդ է. և ժը Ունկին Լիտր մի։ Յաւելուած ը. օրինակին ունի այսպէս. *Լիտրայ՝ որ է Լաղարիկոն, հը Մթխալ։ Ոչինչ ընդհատ 'ի սոցանէ գնէ և Երեմիա 'ի մեկնութեան բառից Ածաշունչ գրոց, յասելն. *ա Լիտրն ժը Նուկի է. մէկ Նուկին զ Դահեկան է. մէկ Լիտր հը Փլորի։ Եւ դարձեալ ասէ. *Մէկ Լիտր ժը Նուկի է. մէկ Նուկին զ Ոսկի է. մէկ Լիտրն հը Կարմիր է։ Ուր Դահեկան, Ոսկի, Կարմիր, և Փլորի նոյնանիշ դնին ընդ միմեանս։ Եպիփան հանգոյն Շիրակացւոյն ունի այսպէս. *Ձիե մասն Տաղանդի է Լիտր մի։ իսկ Լիտր է երկոտասան Ունկի։ Ըստ Կալմեթի՝ Լիտրն է կշիռ ծանրութեան 12 Ունկեաց առ Հռովմայեցիս, և 16 Ունկեաց առ Գաղղիացիս։ *Եբրայեցիք (ասէ) գէթ 'ի հին Կտակարանս, և յառաջքան զինքնակալութիւնն Յունաց 'ի վերայ Արևելեայց՝ չառնուին 'ի կիր զկշիռ Լտերն. զոր և գտանեմք յիշատակեալ միայն 'ի Նորումն Կտակի։ Առ նախնի Հրէայս չափ հասարակ կշռոց էր Սիկղ, և մեծամեծաց՝ Քանքար։ Սիկղ էր կէս Ունկի, կամ չորս Դրաքմէ. և Քանքար 3000 Սիկղ, կամ 1500 Ունկի ըստ Հռովմայեցւոց։ Արդ՝ որպէս յայտ է 'ի բանից մատենագրաց, ըստ այլևայլ գաւառաց և ազգաց՝ այլևայլ են Լտերք. բայց հասարակօրէն իմանան զՀռովմայեցւոյն կամ զՅունաց, որ և է 12 Ունկոյ կշիռ. և այս իսկ է ծանուցեալն յազգի մերում յաւանդութենէ Շիրակացւոյն։ *Իսկ Մարեմայ առեալ Լիտր մի իւղոյ նարդեան ազնուի

ռածագնոյ՝ օծ զոտսն Յոբի, և հերով խեցով մաքրէր զոտս նորա. և տունն լի եղև 'ի հոտոյ խեղոյն ։ Յովհ. ժբ. 3: * Եկն և Նիկոդեմոս ... և եբեր զմուռս խառն ընդ հալուեաւ՝ իբրև Լիտերս հարիւր։ Առին զմարմինն Յիսի, և պատեցին կտաւովք խնկովք համ-դերձ, որպէս օրէն էր Հրէից պատել ։ Անդ. ԺԹ. 39-40: * Ոչ եթէ զայս Լիտրս ասէ, զոր մեք գի-տեմք, զի կարի շատ է. այլ Լիտրն կշռոյ անուն է, զոր Հրէայք Սիկղ ասեն, որ է Դ դրամակշիռ ։ Բար-սեղ 'ի Յեն. Մարկ. ԺԵ. 44: * Զափից եօթն հազա-րաց Լիտերց՝ եռանկեան Ակորացն ձմլի հնձան ։ Մագիստ. ԿԸ: * Գնեսցես հացս տասն, և միս Լիտերս տասն, և տասն չափ գինի ... 'ի ժամու ճաշոյն կե-րիցես մի հաց, և Լիտր մի միս, և Սար մի գինի մըրբ ։ Վարք Հարանց. ԺԱ. 248: * Առ յինէն զայս երկերիւր Լիտր դահեկանս ոսկւոյ ։ Անդ. ԺԲ. 264: * Ես հանեալ ոսկի Լիտերս երեսուն՝ ետ աղքատաց ։ Անդ. ԺԴ. 282: * Արասցես գիրս՝ ոսկւոյ Լիտերց յիսնից ... ետ ցնա գիր յիսուն Լիտեր ոսկւոյ ։ Անդ. 288: * Ուտէր Լիտր մի հաց յամիսս է, և Քսեստ մի ձիթոյ ։ 'Ի Վարս Նոտագրի: * Պսակեմք զքեզ ... ոսկի պսակաւ իբրև Լիտերց հարիւր ։ Պարզ. Աճխ:

ԼԻՏՐԱՑ. տես ԼԻՏՐ ։

Լծակ կամ Լուծ ։

Կշիռ ։

ԼԾԱԿ կամ ԼՈՒԾ կշռոյ. Յոյն ζύγος. Լատ. statera.

Լծող կամ բռնալիք կշռոյն, զորմէ կախեալ կան Թաթք նորա. վասն որոյ և երբեմն դնին փոխանակ ողջոյն կշռոյն ։ * 'Ի Լծակս կշռոց եդեալ զերկուսս տագնապ տարակուսանաց ։ Յովհ. կաթ: * Դիցէ զգործս իմ 'ի մէջ, և զձեր գործոց 'ի միւս մէջ. և ինքն ստուգութիւնն բարձցէ զԼծակն ։ Մանկան 'ի

Ճէն. Յովհաս. Թ: * Անձայնոյ (կենդանակերպք) Լուծ, կարիճ, աղեղնաւոր ‖. Փիլոն: * Եթէ կշռելով ոք կշռէր զբարկութիւնս իմ. և զցաւս իմ բառնայր 'ի Լուծ կշռոց ‖. Յովբ. Զ. 2: * Նա զի՝ թէ զմայրս Լիբանանու 'ի մի Լուծ կշռոց զօդեսցիս, և կամ զլեառն Արարատեան 'ի մի կէտ ամբարձման նժարի միոյ արդարութեան միջնորդ կացուցցես, ոչ հաւասարէ այնր հարթութեամբ համազուգակցել ‖. Նարեկ. Թ. 1: * Դնեն 'ի միւս կողման Լծոյ արդարակորով կշռոցն ‖. Շնորհ. Ներբող. հրեշ:

Լոգարան. Յոյն λεκάνη.

Անօթ հեղանիւթոց:

ԼՈԳԱՐԱՆ. Յոյն λουτρόφορον. Լատ. lavacrum, seria. Է անօթ ջրոյ, կամ Կոնք 'ի պէտս լուանալոյ. զոր և կոչեմք Աւազան, և Լուացարան: * Բաղնիք և փայտք ... 'ի քարահատաց և 'ի փայտահարաց յիւրեանց արմատոյն 'ի բաց կորեալ ... Լոգարանք եղեն, և Ոտնալուացք ‖. Փիլոն:

Լոգարան նշանակէ եւս զգետնափոր տեղի ջրոյ, կամ զԱւազան անշարժ:

Լուացարան:

Անօթ ջրոյ:

ԼՈՒԱՑԱՐԱՆ. Յոյն λουτήρ, λούτρον. Լատ. pelvis, labrum, lavacrum.

Է անօթ ջրոյ խոր և լայն՝ 'ի պէտս լուանալոյ՝ յաւէտ զոտս. և է նոյնանիշ ընդ բառիս՝ Կոնք, Լոգարան, և Աւազան: * Դնէին Լուացարան, և առնէին աղօթս 'ի վերայ ախտացելոյն. և լուանային զձեռս ամենայն եղբարքն 'ի Լուացարանն, և արկանէին զջուր Լուացարանին 'ի վերայ նորա ‖. Վարք Հարանց. ԺԸ. 370: * Նա առեալ սպասաւորին 'ի Լուացարանէն ջուր՝ եբեր նմա ‖. Անդ. ԻԶ. 450:

## Լումայ. (Թերևս 'ի Յոյն λείμμα, նշխարք, կտորք):

### Կշիռ և Դրամ:

ԼՈՒՄԱՅ կամ ԼՈՄԱՅ. Յոյն λεπτὸν, ἀσσάριον. Լատ. minutum, assarium.

Է՛ անուն մանր դրամոյ իբրև զԴենիոն. և թուի լինել ութերորդ մասն միոյ Դանգի: * Եկն այրի մի, և արկ երկուս Լումայս՝ որ է Նաքարակիտ մի‖. Մարկ. ժբ. 42: Արդ եթէ երկուս Լումայս առցուք Նաքարակիտ մի, Լումայն լինի ութերորդ մասն Դանգի. իսկ եթէ առցուք զԼումայն նոյն ընդ Նաքարակտի, լինի նա չորրորդ մասն միոյ Դանգի՝ իբրև զՆաքարակիտ: * Ետես և զկին ոմն այրի աղքատ, որ արկ անդր երկուս Լումայս‖. Ղուկ. իա. 2: Յերկոսին վկայութիւնսդ ևս Յունականն է Լեպտոն. զոր 'ի Ղուկ. ժբ. 59. Թարգմանեն ևս Նախնիք մեր՝ Դենիոն: * Լումաս Կոմպիդիոս ... և զԴոնգիարիոնն ետ, Ասսարիա փայտեղէն և խեցեղէն՝ Լումայս‖. Ասուեբ. 'ի քրոնիկ. կանոնի: Արդ առ Ասոր Թարգմանն պահեալ զյունական հնչումն Ասսարիա, Թարգմանէ ևս զայն Լումայս 'ի յոգնական հոլով ըստ Յունականին: Այլ Նախնիք մեր յԱծաշունչ գիրս զԱսսարիոնն Թարգմանեն Դանգ: Յայտ է 'ի բանից Եւսեբեայ, թէ Լումայ կամ Ասսարիոն ոչ միայն երպղնձի, այլև փայտեղէն, կաշեղէն և խեցեղէն. զորս հանգոյն դրամոց տային 'ի պարգև ժողովրդեանն: Բարսեղ 'ի Քնն. Մարկ. ժբ. 42. ունի այսպէս. * Նա էարկ երկուս Լումայս, որ է Նաքարակիտ մի. այսինքն՝ ոսպ մի 'ի դրամէն. որ օրինակէ զ('ի) չորրորդ բաժնէն զմինն‖: Արդ ոսպ ասելով զփոքրկութիւն Լումայի ցուցանէ. իսկ չորրորդ ասելով իմանայ զայն չորրորդ մասն Դանգի, կամ Դրամի: 'Ի լուսանցս գրոց Փիլոնի հանդէպ բառիս Փշիտ՝ որ է մի 'ի մանր դրամոց, դնի Լումայ իբրև նոյնանիշ ընդ Փշտի: Տես Փշիտ: Նախնիք մեր Լումայ և Պղինձ Թարգմանեն և զκέρμα Յունաց, որ է Կերմոս:

Արդ՝ յայտ 'ի Թարգմանութեանցս, թէ ընդհանրապէս նոյնանիշ են բառքս՝ Դանգ, Նաքարակիտ, Լեպտոն, Ասարիոն, Ընկոն, Լումայ, Խերեւէշ, Փող, Փշիտ, Կերմոս, և Պղինձ։ Որոց և կշիռ ըստ Եիրակացւոյն լինի ը̄. Գարեհատ։ Բայց առանձինն իմն և տիրապէս առեալ՝ Լումայ նոյն է ընդ Ընկոնի. և է կէս Նաքարակիտ, կամ ութերորդ մասն Դանգի. և կամ է չորրորդ մասն Դանգի, իբրև նոյնանիշ ընդ Նաքարակտի։ Որ և է հասարակօրէն պղինձ դրամ. բայց երբեմն նշանակէ զխերեւէշս, զմանրեալ կտորս, կամ զփոքրիկ հատս. վասն որոյ և Լումայափոխք կոչին եւս Հատավաճառք։

Խան. Յոյն κανοῦν.

Անօթ ցամաքեղինաց։

ԽԱՆ. Եբր. սալ. Լատ. canistrum.
Նշանակէ զԱկուտեղ մեծ հիւսուածոյ, եւս և ձուլածոյ կամ կռեալ յայլևայլ նիւթոց։ * Երիս Խանս նաշհոյ ունէի 'ի գլուխ իմ. և 'ի վերնում Խանին յամենայնէ զոր ուտէր արքայ փարաւոն՝ գործ մատակարարաց, և թռչունք ուտէին զնա 'ի Խանէ անտի‖. Ծննդ. խ. 16-17։ * Եւ պանս բաղարջս, և շօթս բաղարջս զանգեալ իւղով, և քաքարս բաղարջս օծեալ իւղով, նաշիհ ցորենոյ արասցես զայն. և դիցես 'ի վերայ Խանի միոյ. և մատուսցես զայն Խանիւն‖. Ելք. իթ. 2-3։ * Հասոյց ուլ մի յայծեաց, և Արդու մի ալիւր բաղարջ, և զմիսն եդ 'ի վերայ Խանի, և զարգանակն եարկ 'ի պոյտն, և եհան առնա‖. Դատ. Զ. 19։ Յիշատակէ և Եպիփան զայս բառ 'ի կարգս Չափուց այսպէս. * Երեք Խանք նաշհոյ, յորս սովորութիւն էր երբեմն դնել զնկանակս, ու էր տեսակ ինչ երկքաժին հացի‖։

## Խառնարան. Յոյն χρατήρ.

### Զափ հեղանիւթոց։

ԽԱՌՆԱՐԱՆ, ԽԱՌՆԵԼԻՔ, և ԽԱՌՆՈՑ. Եբր. աջան և չաւիաղ. Լատ. crater.

Են սկահ կամ թակոյկ, և կամ բաժակ մեծ, ուր խառնէին, և արկանէին հեղանիւթս։ *Եզեն զզենլիս իւր, և խառնեաց 'ի Խառնարանս զգինի իւր։ Առակ. Թ. 2։ *Մերձ դնեմ սեղան բանական, և Խառնարան հոգևոր մշտաբուղխ։ Նար. ոբս. ժբ։

*Եւ առեալ Մովսէսի զկէս արեանն՝ եարկ 'ի Խառնելիս, և զկէս արեանն եհեղ առաջի սեղանոյն։ Ել. իդ. 6։ *Առաքեաց զծառայս իւր կոչել բարձր քարոզութեամբ 'ի Խառնելիս իւր։ Առակ. Թ. 2։ *Եդ զմարմին իւր 'ի զենլի, զգինի արեանն 'ի Խառնելի։ Շարակնոց։ *Խառնելիքն նշանակ են խառնելոյ և ընդ միմեանս հարելոյ բնութեանն։ Փիլոն։

*Զկէս արեանն 'ի ներքս 'ի Խառնոցսն հեղոյր։ Փիլոն։ *Զայն որ 'ի Խառնոցն՝ առեալ ցանէր արիւն։ Այլն։ Նախնիք մեր յԱծաշունչ գիրս զյունականդ χρατήρ թարգմանեն ևս՝ Սկահ, Սկահակ, և Թակոյկ։

## Խճարդեայ։

### Անօթ ցամաքեղինաց և հեղանիւթոց։

ԽԲԱՐԴԵԱՑ կամ ԽՄԲԱՐԴԵԱՑ. Եբր. գօգ. Յոյն Θυΐσκη. Լատ. mortariolum.

Որ մի յանօթոց անտի տաճարին, և նշանակէ զՏուփ կամ զԱնօթ խնկոց, և արեան։ *Եւ այս էր թիւ սպասու կահուն Տեառն. սպաս ոսկեղէն հազար, սպաս արծաթի էր հազար. Խբարդեայք ('ի մի օրինակ Խմբարդեայք) արծաթիք քսան և ինն. և Ափսայք ոսկիք երեսուն, և արծաթիք երկու հազար չորեքհա-

րիւր և քսան։ ա. Եզր. Է. 13։ Երեմիա 'ի մեկնութեան բառից Ածաշունչ գրոց ունի աստանօր Խմբարդեայք, և մեկնէ զայն Զոհարանք կամ Զարդարանք։ Նախնիք մեր զյունականն Θυΐσκη այլուր համարակօրէն Թարգմանեն Տուփ, և երբեմն և՝ Խնկաղաց, Խնկաման, և Խնկարան. և միանգամ և՝ Արիւնակալ։

### Խերեւէշ։

#### Դրամ։

ԽԵՐԵՒԷՇ. Յոյն λεπτὸν և ὀβολός. Լատ. minutum, obolus.

Անուն մանր դրամոյ. և է նոյն ընդ բառիցս Լումայ և Ռնիոն։ Որ և է չորրորդ մասն միոյ Դանգի՝ նոյն համարեալ զԼումայ և զԽերեւէշ ընդ Նաքարակտի. իսկ իբրև կէս Նաքարակիտ՝ է ութերորդ մասն Դանգի։ *Արկ 'ի գանձանակն զերկու Խերեւէշն։ Լամբ. 'ի Մեկն. պատարագի։ *Իբրև զԽերեւէշս այրւոյն։ Գործք. Մխիթ. 'ի Ներբ. Լամբ։ *Եթէ և Խերեւէշ մի տացես, կամ հաց մի, կամ բաժակ մի ջուրց, յոյժ բազում ծանիցէ զշնորհակալութիւնն։ Ոսկեբ. 'ի Մեկն. Յոհ. եր. 859։

### Խնկաղաց։

#### Անօթ։

ԽՆԿԱՂԱՑ. Եբր. քէղաւաւ. Յոյն τρυβλίον. Θυΐσκη. Լատ. catinus, patina. thuribulum, mortariolum.

Անօթ աղալոյ զխունկս։ *Եւ արասցես զԽնկաղացս, և զտուփս նորա, և զճաշակս, և զնուիրանոցս նորա։ Ելք. ԻԵ. 29։ Այլ աստանօր որպէս Եբրայականն, նոյնպէս և Յունական բնագիրն ունի Ակաւառակ. զի τρυβλίον և ըստ Թարգմանչաց մերոց-է Ակաւառակ, Ափսէ, և Կոնք։ *Եւ էառ նա զսեղանն

ոսկի, և զաշտանակն լուսոյ, և զամենայն կահ գան-ձին. զսեղանն պատարագաց, զսկիհսն, և զտաշտսն, և զԽնկաղացսն ‖. Ա. Մակ. Ա. 23: Ուր Յունականն է θυίσκη, զոր այլուր Թարգմանեն նախնիք մեր՝ Տուփ, Խնկարան, Խնկաման, Խբարդեայ, և Սրիւնակալ:

Խնկաման:

Անօթ:

ԽՆԿԱՄԱՆ, ԽՆԿԱՐԱՆ, և ԽՆԿԱՆՈՑ. Եբր. գաֆ. Յոյն θυίσκη. Լատ. thuribulum, mortariolum.

Անօթ՝ ուր դնի, և կամ ազացեալ լինի խունկ: * Եւ Տաշտքն, և Խնկամանքն, և Սուրուառքն ‖. Բ. Մնաց. Դ. 22: * Եւ Խնկարանս ոսկեղէնս և արծա-թեղէնս ‖. Բ. Մնաց. ԻԴ. 14: * Առնել զեղջիւրն օծութեան, և զԽնկանոց խնկոյն ‖. Ագաթ. եր. ձձբ: * Եւ ունէր Խնկանոց ոսկի ... ելից Հրեշտակն զԽնկա-նոցն ‖. Յայտ. Ը. 3-5: Այլ յայս բան Յայտնու-թեան յունական բնագիրն է λιβανωτός.

Խորգ:

Աման ցամաքեղինաց.

ԽՈՐԳ. Եբր. սաք. Յոյն σάκκος. Լատ. saccus. Է պարկ կամ մախաղ իբրև զՍուրձ: * Եւ տուր նո-ցա ... հաց Խորգով մի, և աղ ‖. Վարք Հարանց. ԻԱ. 416:

ԽՐԱՍԱՆ և ԽՐԱՍՆ. տես ՓԱՐՍԱՆ:

ԿԱԲՈՍ. տես ԿԱՊԻՃ:

## Կադամադեկովթ :

Չափ հեղանիւթոց :

ԿԱԴԱՄԱԴԵԿՈՎԹ : Ունիմք զայս բառ 'ի ա. սխալագիր օրինակն չափուց Շիրակացւոյն ընդ Սամարովթայ՝ այսպէս . * Յաղագս Կադամադեկովթի և Սամարովթայ : Կադամադեկովթ և Սամարովթ 'ի գրոց եբրայականաց ոչ է թարգմանեալ . արդ՝ ո՞ւր գտանիցես զայս անուանս : Պատասխանի, եթէ Կադամադեկովթն Ըմպելի ասի, և Սամարովթն Բաշակ՝ որով զգինին հանեն || : Թուի մեզ, թէ այս բառ պարտ է լինել Մէթէկովթ ըստ Եպիփանու ( Եբր . Մէնաքիյօթ ) . և նշանակէ զԲաշակ իբրև զՍամարովթ ( Եբր . Միզրաքօթ ) . որոյ հանդէպ յԵրեմ . ծբ . 19 . դնի 'ի Հայումն Ամասարակովթ : Այլ 'ի ստուգութիւն բանիցս պէտք են ընտիր օրինակի Չափուց Շիրակացւոյն :

## Կաթսայ :

Չափ հեղանիւթոց :

ԿԱԹՍԱՅ կամ ԿԱՏՍԱՅ . Եբր . սիր . Յոյն λέβης, χαλκεῖον, ἰαμήν. Լատ . lebes, olla, ahenum .

Է անօթ պղնձի, եւ և կաւեղէն՝ խոր և լայն . յորում ջեռուցանեն զջուր, և եփեն զկերակուրս : * Մինչև նստէաք առ Կաթսայս մսոյն, և ուտէաք զհաց յագ || . Ելից . ժզ . 3 : Կա՛ռ զԿաթսայ, կա՛ռ, և արկցես 'ի դա զջուր ... Կաթսայ լի՛ ժանգով || . Եզեկ . իդ . 3-6 : * Հրաման ետ ջեռուցանել տապակս և Կաթսայս և անիւս || . բ . Մակ . է . 3 : Զ յունականդ λέβης թարգմանեն եւս նախնիք մեր՝ Սան, և Աւազան : * Եռացուցանէ զանդունդս իբրև զԿաթսայ || . Յովբ . խա . 21 :

* Եւ բարձին ... զսանսն և զԿաթսայսն, և զտաշտսըն, և զտուփսն, և զամենայն անօթս պղնձիս՝ որովք

պաշտէին, առին ։ Գ. Թագ. ԻԵ. 14 ։ * Հրամայեր իշխանին արկանել զոմանս յեռացեալ կաթսայս ։ Շնոր. 265 ։ * Երիս ժամս 'ի պղնձն եփել զայն (զկանջարն) ոչ կարէր. այլ կայր անդէն 'ի կաթսայի նոյնպէս հում թրջեալ. զի թէպէտև բիւր ինչ ջանայրն, ջուրն ոչ եռայր ։ Շնոր. Ի. 414 ։ Տե՛ս Սան, և Շուաղան ։

Կահոյք ։

Անօթ հեղանիւթոց ։

ԿԱԿՀՈՑՐ. Յոյն ὑδρία. Լատ. hydria.
Ի անօթ ջրոյ, հասարակօրէն պղնձի ։ * Ետուր բերել անօթի հող 'ի սահմանացն Հայոց իբրև զբեռինս երկուս, և Կահոյր մի ջուր ։ Բուզանդ. դպր. Գ. ծԳ. 252 ։

Կամփսակ. Յոյն καμψάκης.

Զափ հեղանիւթոց ։

ԿԱՄՓՍԱԿ, ԿԱՓՍԱԿ, և ԿԱԳՍԱԿ. Եբր. չափքակար. Յոյն καμψάκης և καψάκης. Լատ. campsaces, vas olearium.

Ի անօթ իւղոյ, զոր կոչեմք Սրուակ ։ * Սակաւ մի իւղ 'ի Կամփսակի ... և Կամփսակ իւղոյն մի նուազեսցի ... Կամփսակ իւղոյն ոչ նուազեցաւ ։ Գ. Թագ. ԺԷ. 12-14-16 ։ Համդէպ յունականին καμψάκης դնեն ևս նախնիք մեր, Սրուակ, և Կուժ ։ Օ կամփսակ յիշատակէ և Ո իրակացին 'ի կարգս չափուց. որոյ Ա. օրինակն ունի այսպէս. * Յաղագս Կապսակի ։ Զափ չորից Քսեստաց կոչի Կապսակ, զոր Հայն Սրուակ ասէ ։ Իսկ Բ. և Է. օրինակք դնեն այսպէս. * Կապսակ այրւոյն՝ զոր Հայն Սրուակ ասէ, Դ Քսեստաց չափ՝ որպէս Սափորն մանանային ։ Թուի թէ յԵպիփանէ առեալ են այս բանք. զի ասէ նա. * Կամփսակ ջրոյ է չափ ԺԲ Քսեստաց ջրոյ ։ Իսկ Կամփսակն պատրաստեալ վասն Եղիայի՝

էր չորս Քսեստ||։ Այլ յունականդ Կամփսակ 'ի մեզ նշանակէ միշտ զանօթ իւղոյ, և ոչ ջրոյ. վասն որոյ և Երեմիա 'ի մեկնութեան բառից Ածաշունչ գրոց դնէ հանդէպ նորա Աման իւղոյ. զոր և կոչէ նա Կափսակ՝ ըստ մերձաւորագոյն ևս հնչմանն ընդ Յունականին.

## Կայթ ։

### Չափ ցամաքեղինաց։

ԿԱՑԹ. Եբր. Քաբ. Յոյն γομόρ. Ունիմք զայս բառ յԱծաշունչ գիրս 'ի ա. Թագ. իե. 18. այսպէս. * Եւ աճապարեաց Աբիգեա, և էառ երկերիւր նկանակ, և երկուս ամանս գինւոյ, և հինգ ոչխար հասուցեալ, հինգ Արդու փոխնդոյ, և Կայթ մի չամիչ, և պաղատիտս երկերիւր, և եդ 'ի վերայ իշոյ||։ Ուր Եբրայական բնագիրն ունի * Հարիւր ողկոյզ չորայեալ||. Քաղդեացին * Հարիւր ողկոյզ չամչոյ||. Լատին թարգմանութիւնն * Հարիւր կապոց չամչոյ||. Ասորին, և Արաբացին * Հարիւր պանիր||. իսկ Յոյնն * Գոմոր մի չամչոյ||։ Նախնիք մեր զԳոմորն Յունաց այլուր թարգմանեն՝ Գրիւ, Արդու, Քոռ, և Չափ. վասն որոյ և աստանօր թուի թէ դնեն զԿայթ նշանակութեամբ միոյ 'ի նոցանէ. կամ գէթ իմանան սովաւ զնոյն չափ Գոմորոյ՝ զորմէ խօսեցաք 'ի տեղւոջ իւրում։ Ոմանք աստանօր բառիւս Կայթ իմանան զԿողով կամ Զամբիւղ. բայց հայելով յԵբրայական բնագիրդ, և յայլ թարգմանութիւնս՝ յայտ ունիմք ասել, թէ նշանակէ նա զշար ողկուզաց չորացեալ խաղողոյ կամ չամչոյ։ Թերևս զՇար նշանակէ նաև յայս բան Մխիթարայ Գոշի ծզ. * Զխստոր Գալիանոս Թիւրակէ կոչէր շինականաց, և լուեալ մշակի միոյ՝ առեալ եկեր Կայթիւ, և խելագարեալ կուրացաւ||։

## Կանգուն. Թերևս 'ի Յոյն ἀγκών, Արմուկն։

### Չափ երկայնութեան։

ԿԱՆԳՈՒՆ. Եբր. ամմահ. Յոյն πῆχυς. Լատ. cubitus. Է անուն չափու ըստ երկայնութեան. որ և հասարակօրէն եթէ 'ի Սուրբ գիրս, և եթէ առ արտաքինս նշանակէ զմիջոցն ձգեալ յարմկանէ ցծայրն միջնամատին. որ և է չորրորդ մասն հասակի բարեչափ մարդոյ, կամ որ նոյն է՝ է քառորդ միոյ Գրկաչափի։ * Եւ այսպէս արասցես զտապանն. յերեքհարիւր կանգնոյ զերկայնութիւն տապանին, և 'ի յիսուն կանգնոյ զլայնութիւնն, և յերեսուն կանգնոյ զբարձրութիւնն. քաղելով գործեսցես զտապանն, և 'ի մի կանգուն կատարեսցես զնա 'ի վերուստ ‖. Ծննդ. Զ. 15-16։

* Արասցես տապանակ վկայութեան յանփուտ փայտից. յերկուց կանգնոց և 'ի կիսոյ զերկայնութիւն նորա, և 'ի կանգնոյ և 'ի կիսոյ զլայնութիւն նորա, և 'ի կանգնոյ և 'ի կիսոյ զբարձրութիւն նորա ‖. Ելք. ԻԵ. 10։ * Եւ տունն զոր շինեաց արքայ Սողոմոն Տեառն՝ վաթսուն կանգուն երկայնութիւն նորա, և քսան կանգուն լայնութիւն նորա, և քսան կանգուն բարձրութիւն նորա ‖. Գ. Թագ. Զ. 2։ * Եւ 'ի ձեռին առնն Չող չափու՝ 'ի վեց կանգնոյ և թզաւ ‖. Եզեկ. Խ. 5։ * Բարձրութիւն նորա (Գողիադու) վեց կանգուն և թզաւ ‖. Ա. Թագ. ԺԷ. 4։ * Հրամա՛ն տուր հատանել քեզ փայտ մի յիսուն կանգուն ‖. Եսթեր. Ե. 15։ * Հնգետասան կանգուն բարձրացաւ ջուրն 'ի վեր ‖. Ծննդ. Է. 20։ * Բայց հեռագոյն լինիցի ընդ ձեզ և ընդ նոսա, որչափ կանգունք երկուց հազարաց ‖. Յես. Գ. 4։ * Գերանդի թռուցեալ տեսանեմ ես, քսան կանգուն յերկայնութիւն, և տասն կանգուն 'ի լայնութիւն ‖. Զաքար. Ե. 2։ * Ո՞ 'ի ձէնջ առ հոգալ իւրում՝ յաւելուլ կարիցէ 'ի հասակ իւր կանգուն մի ‖. Մատթ. Զ. 27։

Կալմէթ մեկնիչ Սուրբ գրոց՝ յաղագս կանգնոյ ունի

այսպէս. * Կանգունն ըստ առաջնոյ է չափ երկայնու-
թեան՝ որ ձգի 'ի ծայրէ միջնամատին ցկօրութիւնն
բազկի (իմա՛ ցարմուկն). և է չորրորդ մասն ողջոյն
հասակի վայելչաձև մարդոյ. բայց հասարակօրէն է նա
չափ 18 մատանց ... Կանգունն Եբրայեցւոց՝ ըստ
Թալմուտեանց առաւելու քան զհռովմայեցւոյն միով
քառորդիւ ... Նոյնք ընծայեն նմին 17 Մատնաչափ։
Ըստ Մոգփնեայ կանգունն չափու Նոյեան տապանի
է՝ զուգաչափ վեց կանգնոյ հասարակաց. ընդ որ այն-
չափ հաւան գտաւ Սուրբն Օգոստինոս, մինչև ծաղու
արժանի համարել զորս ունին զայլ կարծիս։ Նուդովի-
կոս Կապեղոս, և այլք ոչ սակաւք պնդեն, թէ կրկին
էր կանգունն առ Եբրայեցիս, սրբազան և արտաքին
(կամ հասարակաց). սրբազանն էր երեք Մատնաչափ,
և հասարակացն Մատնաչափ և կէս ... Վիլալբանտ, և
այլք՝ Մատնաչափ և եթ առաւել դնեն զսրբազան կան-
գունն քան զհասարակաց. (և ասեն, թէ Մովսէս խօ-
սի զհասարակաց կանգնոյ 'ի Ե. Օրէնս. Գ. 11. և
Եզեկիէլ վասն սրբազանին 'ի Գլ. Խ. 1. և ԽԳ. 13.)
... Մեք ոչ հաւանիմք ընդ կարծիս նոցա, այլ համա-
րիմք, թէ յելիցն յԵգիպտոսէ մինչև ցգերութիւնն
Բաբելացւոց՝ մի և եթ չափ էր կանգնոյ առ Եբրայե-
ցիս ... իսկ զկնի գերութեանն սկսանի տարբերու-
թիւնն կանգնոյ 'ի Սուրբ գիրս. քանզի այլ կանգունն
էր Բաբելացւոց՝ զոր սովորեալ էին և Հրեայք 'ի կիր
արկանել, և այլ կանգունն նոցա յառաջագոյն։ Վասն
որոյ և Եզեկիէլ՝ որ զհինն 'ի կիր արկանէր, կամեցաւ
որոշել զայն 'ի նորոյ անտի՝ որ էր օտարաց։ Յայլ տե-
ղիս Սուրբ գրոց չունիմք պէտս զանազանութեան եր-
կակի կանգնոյ॥։ Յայս վայր են բանք Կալմեթի. որ
միայն յԵզեկիէլ ԽԳ. 13. կամի ընդունել զտարբերու-
թիւնն կանգնոյ, և ոչ այլուր։ Բայց մեք յաւէտ
յայն բան Ե. Օրինաց գտանեմք զայն, ուր ասի վասն
անկողնոյ Ովգայ թագաւորին Բասանու. * Եւ գահոյք
նորա գահոյք երկաթիք ... ինն կանգունք երկայնու-
թիւն նորա, և չորք կանգունք լայնութիւն նորա՝ Մկայից
Կանգնով॥. Գ. 11։ Ուր թէպէտև յայլ թարգմանու-

թիւնս՝ բաց յԱսորւոյն և 'ի մերմէս, դնի Ակիւղայ կամ Թէոդոտի, սակայն և այնպէս 'ի մէջ բերէ զտարբերութիւն իմն երևելի։ Զայն սակս և Թարգմանիչք մեր եդին Ասորւոց նշանով։

Իսկ 'ի բանն Եզեկիէլի թէպէտև ըստ մերում թարգմանութեան չգտանեմք տիրապէս զտարբերութիւնն՝ զոր գտանեն Մեկնիչք հայելով յայլևայլ թարգմանութիւնս, և համարին զԿանգունն Եզեկիէլի Ուղկաւ մեծ քան զհասարակացն, սակայն դիցուք աստանօր զայն բան Եզեկիէլի ըստ ամենայն թարգմանութեանց։ Մերս ունի. * Եւ այս չափք սեղանոյն. կանգուն մի 'ի կանգնոց. և կանգուն մի և ուղուկ գոգած խորութեան նորա. և կանգուն մի լայնութիւն. և պսակ շուրջ զծնօտիւքն նորա շուրջանակի թզաւ մի. և այս բարձրութիւն սեղանոյն ‖. Եզեկ. խը. 13։ Յոյնն. * Եւ այսոքիկ չափք սեղանոյն 'ի կանգուն կանգնոյ, և ուղուկ. գոգած խորութեանն 'ի կանգուն, և կանգուն լայնութիւնն. և պսակ 'ի վերայ շրթանց նորա շուրջանակի՝ ուղկեան, և այս բարձրութիւն սեղանոյն ‖։ Եբրայականն. * Եւ այսոքիկ չափք սեղանոյն 'ի կանգունս. կանգուն կանգուն, և ուղուկ. և ծոցն կանգնոյ, և կանգնոյ լայնութիւնն. և եզր նորա շուրջ զծնօտիւքն բուռն մի. և այս բարձրութիւն սեղանոյն ‖։ Քաղդէացին. * Եւ այսոքիկ չափք սեղանոյն 'ի կանգունս, 'ի կանգուն՝ որ ունի զկանգուն և զուղուկ. և յատակ նորա կանգուն մի, և կանգնոյ լայնութիւնն. և եզր նորա շուրջանակի շուրջ զշրթամբք նորա ուղուկ մի. և այս էր շարադրութիւն սեղանոյն ‖։ Լատինն. * Եւ այսոքիկ չափք սեղանոյն 'ի կանգուն ճշմարիտ՝ որ ունէր զկանգուն և զուղուկ. 'ի ծոց նորա էր կանգուն, և կանգուն 'ի լայնութեան. և եզր նորա մինչև 'ի շրթունս նորա, և շուրջանակի ուղուկ (կամ թիզ) մի. և այս ևս էր խորութիւն սեղանոյն ‖։ Արաբն. * Եւ այսոքիկ չափք սեղանոյն 'ի ձեռն կանգնոց (առեալ զկանգունն) կանգուն մի և ուղուկ. ծոց նորա կանգնաւոր էր՝ կանգուն մի. և պսակ ունէր շուրթն նորա ուղկեան շուրջանակի. նովին չափով 'ի կողմանէ

նորա։ Արաբացին. * Եւ այսոքիկ են չափք սեղանոյն ՚ի ձեռն կանգնոց, ՚ի կանգնոյ և յուղկոյ (բաղկացեալ). խորութիւն ծոցոյ նորա կանգուն էր ՚ի վերայ կանգնոյ. և ընդարձակութիւնն էր կանգնաւոր. և եզր ուղկեան զշրթունս նորա պատէր շուրջանակի։

Ունիմք զչափ Կանգնոյ և ՚ի գիրս Փիլոնի՝ օրինակ զայս. * Թզաւ երկայնութիւնն, և թզաւ լայնութիւնն (տախտակի կրծոցն Ահարոնի) վասն այսորիկ, զի քիւ (իմա՛ թիզ) վեցերորդ մասն է Կանգնի. քանզի Կանգունն վեցաքլեան է. զի իսկ վեցերորդն մի՝ երկայնութեամբ և լայնութեամբ։ Յայս բան բաւս Թիզ՝ թուի մեզ, թէ դնի նշանակութեամբ Ուղկի. որով և Կանգունն լինի վեց Ուղկեան. որ է Ոտնաչափ և կէս ըստ Հեսիւքիոսի և ըստ Սուիտասայ. որով և Կանգունն Փիլոնի նոյնաչափ լինի ընդ Կանգնոյն՝ զոր եդաք ՚ի վերոյ, իմա՛ ընդ տարածութեանն՝ որ ձգի յարմկանէ ցծայրն միջնամատին։ Զնոյն չափ Կանգնոյ ցուցանէ Փիլոն և այլուր՝ յասելն. * ՚Ի մէջ տանն որմն ՚ի յատակէն յերիս և ՚ի չորս Կանգունս ՚ի վեր կոյս գեղեցիկ շինեալ՝ լանջաբերձ. զի որմն լանջաբերձ երեք կանգնեան՝ պա՛րտ է ունել զչափ երից մասանց հասակի մարդոյ, կամ միոյ Դորկաչափի. որով և Կանգունն Փիլոնի լինի նոյնաչափ ընդ մերումս։ Ասէ նա դարձեալ. * Բաշխեաց ետ և քաղաքս նոցա (Ղևտացւոցն) ութ առ քառասնիւք. և ըստ իւրաքանչիւր քաղաքի գեօղս և ապարանս ՚ի հազար Կանգուն շուրջ զքաղաքաւն յարօտ պաճարի։ Զայս բան առնու Փիլոն ՚ի գրոցն Թուոց լե. 4. 5, և այլն. ուր ՚ի մեզ, և յօրինակս ինչ Յունաց դնի այսպէս. * Եւ արուարձանք քաղաքացն՝ զորս տայցէք Ղևտացւոցն՝ ՚ի պարսպէ քաղաքին, և արտաքոյ պարսպին՝ երկուս հազարս կանգունս շուրջանակի։ Եւ չափեսջիք արտաքոյ քաղաքին՝ յարևելից կողմանէ երկուս հազարս կանգունս, և ընդ ծովակողմն երկուս հազարս կանգունս, և ընդ կողմն հիւսիսոյ երկուս հազարս կանգունս, և ընդ կողմն հարաւոյ երկուս հազարս կանգունս ... ընդ ամենայն քաղաքս՝ քառասուն և ութ քաղաք տայցէք Ղևտացւոցն։

Իսկ 'ի բնագիրն Եբրայական, և յայլ ամենայն Թարգմանութիւնս 'ի չորրորդ համարն դնի Հազար Կանգուն. միայն Լատին Թարգմանութիւնն ունի Հազար Քայլ: Եւ վասն այսորիկ՝ որպէս տեսաք 'ի վերոյ 'ի բանին Կալմեթի, ոմանք համարին կրկին լինել Կանգնոյ առ Եբրայեցիս. զառաջինն կամ զհասարակացն ասեն յիշատակեալ 'ի համարն չորրորդ, և զերկրորդն կամ զսրբազանն՝ 'ի հինգերորդ և 'ի յետագայ համարսդ. զոր չառնու յանձն նա ինքն Կալմէթ. այլ զառաջինն ասէ լինել 1000 ըստ երկայնութեան, և զերկրորդն 2000 ըստ լայնութեան, կամ ըստ շրջապատի: Բայց 'ի Թարգմանութեան մերում չիք տեղի այդոցիկ կարծեաց:

Զչափ Կանգնոյ ոչինչ ընդհատ 'ի Փիլոնէ ունիմք և 'ի յաւելուածն Է. օրինակի կշռոց և չափուց Շիրակացւոյն՝ այսպէս. * Կանգուն մի՝ եօթն Բուռն՝ է||. Ուր բառիւս Բուռն իմանայ զՄեղուկ. որով և չափ Կանգնոյ նորա սակաւուք տարբերի 'ի Կանգնոյ Փիլոնին, և 'ի մերմէս: Զնոյն չափ Կանգնոյ գտանեմք անշուշտ և յայն բան Խորենացւոյն 'ի Է. 8. * Մ՛չ որպէս Մակեդոնացին Աղէքսանդր, որ միայն երից Կանգնոց ունելով չափ հասակի՝ և ոչ զհօգւոյն խափանէր աշխոյժս||: Մեր երեքկանգնեան ասելով զչափ հասակի մարմնոյն Աղէքսանդրի, միով Կանգնով պակաս դնէ զայն քան զսովորական հասակ բարեչափ մարդոյ. որով և Կանգունն Խորենացւոյն լինի չորրորդ մասն հասակի մարդոյ, կամ միոյ Գրկաչափի. ըստ որում առեալ լինի նա 'ի Սուրբ գիրս: Զնոյն չափ Կանգնոյ գտանեմք և յայսոսիկ բանս. * Սահմանեաց բնութիւնն զկատարումն հասակի՝ զչափ ունել զչորեքկանգնեան, և ոչ աւելի 'ի մեծագոյնսն ետ անցանել. և դարձեալ զփոքրագոյնն հասակ որոշեաց երկուկանգնեան, և 'ի նուազագոյնսն ոչ ետ անցանել. իսկ զմիջինսն անորոշ եթող||. Գրուածն անյայտ 'ի լուծումն հինգ ձայնից Պորփիւրի: * Մ՛ի խաբեսցէ զքեզ սակաւ տեսիլ նորա (արեգական) որ քան զչափ Կանգնոյ միոյ երևի. և կարծիցես, թէ այնչափ իցէ||. Անանիա Շիրակունի

յԱշխարհագրութեան Խորենայ: * Հասաք յերկիրն Թըլ-կաց, որ երկայնութիւն մարդոյն Կանգուն մի էր մի-այն ||. Մար. Հորանց. իզ. 466: * Շինեաց սիւն բարձ-րագոյն յերկրէ Գիրկս չորս . . . յետ այսորիկ բարձրա-ցուցին զսիւնն քառասուն Կանգուն ||. Անդ. 492: Սուր նախ 'ի Գիրկ, և ապա 'ի Կանգուն չափէ զբարձ-րութիւն սեան Սիմէոնի Սիւնակեցւոյն. յայտ արա-րեալ՝ թէ զԿանգունն դնէ, հայելով 'ի չափն Գրկաց, որ է չորս Կանգուն. որով և չորս Գրկաչափք իւր լինին վեշտասան Կանգուն. և այս էր զառաջինն չափ սեան Սիմէոնի: Միով բանիւ՝ հասարակօրէն զայս չափ Կանգ-նոյ իմանամք և յայլ բանս մերոց նախնեաց:

Ըստ Լատին բառարանին՝ Կանգունն * է անուն չա-փու՝ յարմկանէ ցծայրն միջնամատին. զոր ոմանք Ոտ-նաչափ և կէս, և այլք կրկին Ոտնաչափ ասեն լինել. բայց են և այլ տեսակք Կանգնոյ՝ Թագաւորական, հա-սարակ, երկրաչափական, և այլն ||:

Յայս վայր յաղագս Կանգնոյ ըստ հեղինակաց: Իսկ 'ի համառօտութիւն բանիցս մնայ մեզ ասել նախ՝ թէ Կանգունն ըստ նախնեաց ընդհանրապէս առեալ՝ է Ոտ-նաչափ և կէս, և կամ երկու Ոտնաչափ. և այս էր չափ Նոյեան տապանին, խորանին վկայութեան, տաճարին Սողոմոնի, և այլն. որպէս ունիս տեսանել առ Մեկ-նիչս. որք և քաջիկ լուծանեն զամենայն տարակու-սանս: Երկրորդ առանձինն առեալ՝ այլևայլ են չափք Կանգնոյ յամենայն ազինս, ըստ տարբերութեան չափու Ոտնաչափի իւրեանց: Երրորդ՝ Կանգունն այժմ ըստ գործածութեան ռամկաց՝ է չափ երկայնութեան յան-րակէ ուսոցն ցծայրն միջնամատին. զոր մեք ընդ Պար-սից կոչեմք Բազուկ, կամ ըստ Թուրքաց արշըն. որ և է 17 Մատնաչափ: Արդ՝ ըստ այսմ հաշուի՝ Գրկաչափ կամ Մարդաչափ մի է 44 Մատնաչափ. Կանգունն մեծ (արշըն ըստ Թուրքաց) 17 Մատնաչափ. Կան-գունն միջին (էնտազէ ըստ Թուրքաց) 16 Մատնա-չափ. իսկ Կանգունն փոքր (որ և է Կանգնաչափ նախ-նեաց) 11 Մատնաչափ:

Կանթեղ. Պարսկ. Գանտէյլ։

Անօթ ձիթոյ։

ԿԱՆԹԵՂ. Եբր. [illegible]. Յոյն λαμπάς. Լատ. lampas. Ի. Ճրագարան, կամ անօթ իւղոյ՝ յորում լուցանեն զպատրոյգ ՚ի լուսաւորութիւն։ * Առեալ ընկոյզ յոլով... ձգէր մի մի ՚ի վերայ Կանթեղացն, և շիջուցանէր զլոյսն, և հեղոյր զձէթն ‖. Վարք Հարանց. Իզ. 528։ * Եկեղեցին՝ բարձր էր և լայն, անսիւն շինած՝ էր ւանգերան. Կանթեղքն ՚ի կախ՝ կան անչուան, ջահերն անձէթ՝ ըզլոյսըն տան ‖. Շնորհ. յառաջին երգոյ։ Նա ինքն Շնորհալին զԿանթեղն այսպէս առակաբանէ. * Սպիտակ ձի՝ գաւեղ ու գէր, աչուեր սպիտակ՝ փայլուն ունէր. Ճորտն ըզպահուտ՝ ըն կու քաշէր, խըլխըլնջալով ՚ի վեր վազէր ‖։ Օսս կոչեմք և Լապտեր. Յոյն λαμπτήρ. Լատ. lucerna. Տաճկ. Ֆէնէր։ * Յայնժամ նմանեսցի արքայութիւն երկնից տասն կուսանաց, որոց առեալ զԼապտերս իւրեանց՝ ելին ընդ առաջ փեսայի և հարսին։ Հինգն ՚ի նոցանէ յիմարք էին, և հինգն իմաստունք։ Յիմարքն առին ըզԼապտերսն, և ձէթ ընդ իւրեանս ոչ բարձին։ Իսկ իմաստունքն առին ձէթ ամանովք ընդ Լապտերս իւրեանց ‖. Մատթ. ԻԵ. 1-4։ Դարձեալ՝ ըստ Թարգմանչաց մերոց կոչի և Ղունդ. * ՚Ի նմին ժամու ելին մատունք ձեռին մարդոյ, և գրէին հանդէպ Ղնդին (Յոյն λαμπάς) ՚ի վերայ բռելոյ որմոյ տաճարի թագաւորին ‖. Դան. Ե. 5։

Կանոն. Յոյն κανών.

ԿԱՆՈՆ, ԿԱՆՈՆ, ՔԱՆՈՆ, և ՔԱՆՈՒՆ. Լատ. canon, regula. Տաճկ. գանուն, ճետվէլ։
Ի. անուն ճարտարապետական և երկրաչափական գործեաց, որպիսի են՝ Լար, Ջող, Կանգուն, և այլն. որովք առնուն զչափ և զուղղութիւն շինուածոյ, և զվայրաց։ * Ո՛չ մեք ոչ եթէ յանչափս ինչ պարծեա-

ցուք, այլ ըստ չափոյ Կանոնին՝ զոր բաժանեաց մեզ Ած չափով, հասանել մինչեւ առ ձեզ։ Բ. Կորնթ. Ժ. 13։ * Անիցի կարգ յարմարման ըստ ուղիղ օրինակացն եւ Կանոնչին։ Փիլոն։ * Մատեաւ առ Կանոնն գահոյիցն՝ որ էր ընդ սնարսն Հողոփեռնեայ։ Յուդիթ. ԺԳ. 8։

ԿԱՊԵՏՈՆ, ԿԱՊԻՏՈՆ Եւ ԿԱՊԻՏՈՑՆ. տես ԱՇԽԱՐՀԱԳԻՐ Եւ ՄԱՏԵՐ։

Կապէճ. Յուն κάβος.

*Չափ ցամաքեղինաց եւ հեղանիւթոց։*

ԿԱՊԻՃ. Եբր. քաբ կամ քապ. Լատ. cabus. ըստ Շիրակացւոյն կաբոս։

Է անուն չափու ցամաքեղինաց եւ հեղանիւթոց։ Իբրեւ զչափ ցամաքեղինաց ունիմք զսա 'ի կարգս չափուց Շիրակացւոյն յունական հնչմամբս Կաբոս. որոյ առաջին օրինակն ունի այսպէս. * Յաղագս Կաբոսի։ Չափ ժա Քսեստի կոչի Կաբոս, որ է կէս Մոդոյ։ Իսկ Դ. եւ Ե. օրինակք համառօտիւ դնեն. * Կաբոս, կէս Մոդոյ։ Խօսի եւ Եպիփան յաղագս Կաբոսի, բայց զայլ չափ ընծայէ նմին, քանզի ասէ. * Կամոս (պարտ է լինել Կաբոս) ելանէ 'ի նոյն եբրայական բարբառոյ, եւ է չափ հաւասար չորրորդ մասին Մոդոյ։ Այլ մեք ընտրելագոյն դատիմք զհաշիւ Շիրակացւոյն։ * Եւ եղեւ սով մեծ 'ի Սամարիա, եւ նստէին զնովաւ. մինչեւ եղեւ խաղամ մի իշոյ յիսուն (յայլ թարգմանութիւնս բաց 'ի Յունաց՝ ութսուն) Սիկեղ արծաթոյ. եւ չորրորդ Կապճի աղբոյ աղաւնեաց յիսուն եւ հինգ (ըստ յամենայն թարգմանութիւնս, եւս եւ 'ի Յոյն դնի հինգ միայն. որ եւ է ուղիղ) արծաթոյ։ Դ. Թագ. Զ. 25։

Թարգմանիչք մեր դնեն զԿապիճ եւ հանդէպ յունականիս χοῖνιξ. Լատ. chenix. Եբր. քաբ. որ եւ է նոյնպէս չափ ցամաքեղինաց. եւ է տասներորդ մասն Գրուի։ * Կշիռ արդար, եւ չափ արդար, եւ Կապիճ ար-

դար եղիցի չափու ձերոյ։ Եւ Կապիճ նոյն լիցի տալոյ և առնլոյ. տասներորդ Գորուի եղիցի Կապիճ. և տասներորդն Գորուի Կապիճ. կշիռ ըստ Գորուին և ըստ Արդուին եղիցի॥. Եզեկ. ԽԵ. 10-11։ * Կապիճ մի ցորեան՝ դենարի միոջ, և երեք Կապիճ գարի՝ դենարի միոջ॥. Յայտ. Զ. 6։ Ապլիփան 'ի բառն χοῖνιξ ունի այսպէս. * Քինիկս, և Իւփէ նոյն է, և երկակի անուամբ կոչի. և է կրկին Քսեստ, և սակաւ մի ևս աւելի॥։

Դարձեալ՝ Թարգմանիչք մեր դնեն զԿապիճ և համդէպ Յունականին χοῦς. Լատ. congius, sextarius. Եբր. հին. որ է չափ հեղանիւթոց. և է վեց Քսեստ։ * Մի առնիցէք անիրաւութիւն 'ի դատաստանի՝ 'ի չափս, և 'ի կշիռս, և 'ի զոյգս։ Եւ զոյգք արդարք, և կշիռք արդարք, և չափք արդարք, և Կապիճ արդար լինիցի ձեր॥. Ղեւ. ԺԹ. 36։ Ապլիփան 'ի բառն χοῦς ունի այսպէս. * Քուս՝ է Ը Քսեստ. իսկ որ կոչին Արքութեան՝ է Զ Քսեստ. որ է երկոտասաներորդ մասն Մետրետեսի॥։ Շիրակացին 'ի կարգս չափուց պահեալ զյունական հնչումն՝ կոչէ զսա Քուզայ. և ունի այսպէս 'ի ա̃. օրինակն միայն. * Յաղագս Քուզայի։ Չափ Զ Քսեստի ըստ Եբրայեցւոցն կոչի Քուզայ, որ է ԺԲ մասն Արդուի॥։ Այլ հայելով յեբրայականդ հին, բառս Կապիճ կամ Քուզայ՝ դնի 'ի բանս անդ Պետացւոց նշանակութեամբ բառիցս Հիմէն և Գորակ։

Երեմիա 'ի մեկնութեան բառից Ածաշունչ գրոց՝ դնէ համդէպ Կապճի Մարզան, և Սոմար։ Այլ զԿապիճ իբրև չափ ցամաքեղինաց և հեղանիւթոց՝ 'ի կիր առնուն և այլք արտաքոյ Ածաշունչ գրոց։ * Կապիճ մի մոխիր॥. Պաղար Ճարպ. 386։ * Կապիճ մի գինի॥. Անյաղթ. Հերլուեծ. պորփ։ Կապիճ նշանակէ ևս 'ի մեզ զծակ կամ զխոռոչ. այլ ըստ այսմ նշանակութեան ոչ մտանէ նա 'ի կարգս Չափուց։

## Կարաս. Յոյն κέραμος.

*Անօթ հեղանիւթոց և ցամաքեղինաց ։*

ԿԱՐԱՍ. Եբր. շուխահ. Յոյն πίθος. Լատ. dolium. Է *սափոր մեծ, կամ Թակոյկ խեցեղէն, հասարակօրէն անօթ հեղանիւթոց, իսկ երբեմն ցամաքեղինաց։ * Կարաս ծակ է տուն օտար ‖. Առակ. իգ. 27։ * Ըզկաւ բրուտի ձևացուցեալ 'ի Կարաս՝ առանց հրոյ ոչ ընդունի զջուր, կամ զգինի ‖. Եղիշէ. 'ի մեկն. Մարկ. Թ. 17։ * Փոքր մի ափսնթին դառնացուցանէ զմեղր կարաս ‖. Մարտ. Հարանց. Ղ. 152։ * Գտաւ 'ի ներքոյ քարանցն Կարաս մեծ լի գանձիւ ‖. Ոսկ. Ժ Ղ. 276։ Զսա Պարսկական հնչմամբ կոչեն ևս Տակառ ։*

## Կեղթ ։

*Չափ ցամաքեղինաց ։*

ԿԵՂԹ. Յոյն *μέδιμνος*. Լատ. medimnus *կամ* modius. Է *չափ ցամաքեղինաց ։ * Կեղթն զցորեանսն, և Սափորն զգինին (պարունակէ). քանզի զգինին ունի սափորն, և Կեղթն զցորեանսն ‖. Անյաղթ. ստոր. Արիստ. յղ. Ոսկեբ ։ * Ասա (ասդ) լինէր թէ այս ոմանք՝ այս որակ երկվարօք յայս նիշնիւս Կեղթում 'ի մէջ բդեդի (կամ բգեդի) պահարանեալ նամակ տանին ‖. Խոսմ. Արծր. Գ. 1. 171։ Յայս բան Խոսվմայի Արծրունւոյ՝ որ է բազմօք սխալագիր, եթէ ընթերցցուք զյայս նիշնիւս, յայս նիշ հնւս, Կեղթն լինի անօթ հիւսկէն ։ Իսկ չափ նորա՝ իբրև նոյն ընդ Մեդիմնոսի կամ Մոդոյ, ըստ Եպիփանու և ըստ Շիրակացւոյն լինի 132 Քսեստ։*

## Կենդինար. Լատ. centinarium.

*Կշիռ և Դրամ ։*

ԿԵՆԴԻՆԱՐ *կամ* ԿԵՆԴԱՐ. Յոյն *κεντηνάριον*. Պարսկ. *քէնտար կամ քէնտար ։*

Ըստ Շիրակացւոյն՝ է կշիռ հարիւր Լիտերաց, և է 7200 Դահեկան ։ ա. բ. և գ. օրինակք կշռոց Շիրակացւոյն յաղագս Կենդինարի ունին այսպէս. * Կենդինարն Ճ Լիտր է. և անուանեցաւ ըստ Հռովմայեցւոց լեզուին. զի Կենդու (պարտ է լինել Կենդում) հարիւր լսի. և Կենդինարն ԷՄ Դահեկան ։ Իսկ մանր բաժանելով զկենդինարն լինի Ունկի ՌՄ, Միկղ ՏՊ, Սատեր Ջօ, Միմջս ԺԴՌՂԱ, Տրմէս ԻՌՌ, Դրամոր ԻԲՌՇ, Մինգ ԽԴՌՄ, Կերատ ՃՀԲՌՇ, Փշիտ ՄՌՆ, Դանգ ՅԻՌՌ, և Դարեհատ ՈՂԱՌՄ ։ Իսկ Դ. Ե. և Զ. օրինակք՝ այսչափ միայն ունին համառօտիւ. * Կենդինարն Ճ. Լիտր է ։ Յեպիփանէ չիք յիշատակութիւն վասն Կենդինարի ։ Ըստ Սուիդասայ՝ է նա * քանակութիւն ինչ դրամոց ։ Ը.յլ Թուլի մեզ, թէ հասարակօրէն նշանակէ նա զգումար հարիւր Դահեկանի կամ ոսկւոյ ։ * Են ոմանք՝ որք թողուն զբազում Տաղանդս ոսկւոյ, և սակս միոյ ասղանն բարկանան, և 'ի սիրոյ ասղանն այն շփոթին յոյժ. և ընու զտեղի Տաղանդին և զԿենդինարին՝ ասեղն այն ։ Վարք Հարանց. Բ. 40. * Էած առաջի Եպիսկոպոսին ոսկի՝ երիս Կենդինարս ։ Ընտ. ԺԴ. 287 ։

Կերատ. Յոյն κεράτιον.

Կշիռ ։

ԿԵՐԱՏ. Պարսկ. Գեյրատ. Տաճկ. Գըրատ կամ Ղըրատ. Լատ. siliqua, caratus.

Է կշիռ 4 Դարեհատաց ։ Դնէ զսա 'ի կարգս կշռոց Շիրակացին. որոյ ա. բ. և գ. օրինակք յաղագս Կերատի ունին այսպէս. * Կշիռ Դ Դարեհատաց՝ լինի միոյ կերատի կշիռ ։ Իսկ Դ. Ե. և Զ. օրինակք դնեն այսպէս. * Կերատն կորիզ եղջրուենոյ, որ է չորից Դարոց կշռոյդ ։ Ըստ Լատին բառարանին siliqua կամ κεράτιον է կշիռ ծանրութեան կորիզի եղջեր. և վեց Սիղիգ կամ Կերատ առնէ Դրամոր մի (scrupulum). և ութևտասն Կերատ՝ Դրաքմէ մի ։ Այնպէս դնէ և

մերս Շիրակացի. տես յԱ. զիւսակն կշռոց նորա: Նախնիք մեր յԱ. ծաշունչ գիրս զյունականդ κεράτιον թարգմանեն Եղջիւր: Թուի թէ և յայն քան 'ի Վարս Հարանց Ե. 17. * Որ ոք յԵղջերուէ իւղոյն ոչ առնիցէ ողորմութիւն, նաև ոչ 'ի բիւրուց Տաղանդաց առնիցէ ‖ բառս Եղջիւր դնի փոխանակ Կերատի, առ'ի նշանակել զդուզնաքեայ կշիռ իւղոյն՝ համեմատեալ ընդ Տաղանդոյ. Թէպէտև Եղջիւր դնի ևս երբեմն 'ի մեզ փոխանակ անօթոյ իւղոյ. Եբր. Քէրէն. Յոյն κέρας. Լատ. cornu. * Եւ էառ Սամուէլ զԵղջիւրն իւղոյ, և եօծ զնա 'ի մէջ եղբարց իւրոց ‖. Ա. Թագ. ԺԶ. 13:

Կերմա. Յոյն κέρμα.

Դրամ:

ԿԵՐՄՈՍ. Լատ. frustum monetae minutulum, nummulus. pecunia.

Է խերևէշ դրամոց, կամ մանր դրամ պղնձի. և է նոյնանիշ ընդ բառիցս՝ Լումայ, Անիոն, Դանգ., Փող, և Պղինձ: * Ժողովեցից սակաւ ինչ Կերմոսս ... և սկսեալ ժողովեաց, և ելից աման ինչ լի փողովք ... և ծախեաց զայն ամենայն Կերմոսս առ բժիշկս ... Ուր իցեն փողքն՝ զոր ժողովեցեր ‖. Վարք Հարանց. Է. 161: * Տարցես զկէս դրամոցն ... բաժանեաց զփողսն յերկուս մասունս ... ես էի՝ որ գողանայի զԿերմոսս քո ‖. Անտ. ԺԷ. 360-361: Ուր զնոյն դրամ կոչէ Կերմոս և Փող: Նախնիք մեր յԱ. ծաշունչ գիրս զԿերմոս կամ զԿերմա թարգմանեն Պղինձ. * Եւ զՊղինձս հատավաճառացն ցրուեաց ‖. Յովհ. Բ. 15: Իսկ զյունականդ κερματιστὶς թարգմանեն Լումափոխ կամ Լումայափոխ. Յովհ. Բ. 14: Զոր այլուր կոչեն Հատավաճառ:

## Կէտ. Թերեւս Պարսկ. Խէտդ:

### Չափ երկայնութեան, և կշիռ:

ԿԷՏ (յերկայնաչափութեան). Յոյն στιγμεῖον. Լատ. punctum.

Է նշան անբաժանելի քանակութեան, կամ՝ և՛ս փոքրագոյն մասն Գծի, անմասն յերկայնութենէ, 'ի լայնութենէ և 'ի խորութենէ, ըստ այնմ. * Կէտ իր է, որ ոչ ունի մասն||. 'ի Գիրս Եւկղիդեայ: 'Ի գիրս Փիլոնի կոչի սա Նշան. * Ընգատն (անբաժանելի մարմինն) կարգեալ դասի ըստ Նշանի միայն. իսկ զտատականն (բաժանելին) ըստ երից տեսակաց՝ Գծոյ, և Մէջ'ի մէջերոյ երևման (Մակերևութի) և Հաստատնոյ||: * Կէտ է անյայտ Ծիր՝ պատճառ Գծի, ոչ ունելով երկայնութիւն, լայնութիւն և բարձրութիւն||. 'ի Մեկն. Հին. Կտրակ: * Օրինա (երկրաչափութիւնն) ունի սկիզբն զԿէտն, զԳիծն, զմակերևոյթն, զմարմինն||. Ընդ:

Կէտ ('ի կշիռս). Յոյն ῥοπή. Լատ. punctum, momentum. Պարսկ. Ջհէդ: Նշանակէ զմէտն, կամ զև՛ս փոքրագոյն կշռորդն 'ի նժարս կշռոց: * Նա զի՝ թէ ըղձայրս Լիբանանու 'ի մի լուծ կշռոց զօդեսցիս, և կամ զլեառն Արարատեան 'ի Կէտ ամբարձման նժարի միոյ արդարութեան միջնորդ կացուցիս՝ ոչ հաւասարէ այնր հարթութեանն համազուգակցել||. Նար. Թ. 1:

## Կթոյ:

### Անօթ հեղանիւթոց և ցամաքեղինաց:

ԿԹՈՑ: Նշանակէ զտաշտ և զկողով, յորս կթեն զկաթն, և զպտուղս ծառոց: * Յուցանէ ... Կթոցն զընդունելութիւն (զընդունարան) պտղոյն, կամ կաթին||. Հին. Կտրակ: * Որպէս 'ի Կթոցէ թափէին սեաւքն զմեղս կնոջն 'ի տումարէն||. Մաշտ. Հարանց.

դ. 113 ։ Ուր այս բառ 'ի տպագրութեան անդ վրի-պակաւ դնի Քթոց ։

ԿԻՆՍՈՆ. տես ԱՇԽԱՐՀԱԳԻՐ ։

Կիւաթոս. Յոյն κύαθος.

Չափ հեղանիւթոց ։

ԿԻՒԱԹՈՍ. Եբր. Քնաքայօն. Լատ. cyathus, scyphus. Ունիմք զայս բառ 'ի կարգս չափուց Հերակացւոյն. ուր ... սխալագիր օրինակն ունի այսպէս. * Կիւաթոս չափ է գինւոյ արկանելոյ յապակիս. և կոչի ըստ Ատ-տիկեցւոց լեզուի Անգլիտերիոն. գինեհան է երկայ-նադաստակ՝ որպէս զՃաշակ, վասն 'ի խորութենէ կարասոյն զգինի հանելոյ ‖ ։ Եպիփան վեց Քսեստ ընծայէ Կիւաթոսի. և կոչէ զնա Մէթէկոմթ և Մա-մարոմթ ըստ Սուրբ գրոց ։ Նախնիք մեր յԱծաշունչ գիրս Թարգմանեն Ճաշակ զԿիւաթոս Յունաց ։

Կճէճ ։

Անօթ հեղանիւթոց ։

ԿՃԻՃ. Յոյն χύτρα. Լատ. olla. Է փոքրիկ պղնձան կամ անօթ խեցեղէն ։ * Կապեցին 'ի պարանոցի խմուռ աղբով լի Կճիճս, և ունկունս կժոց ‖. Վարք Հարանց. ժզ. 358 ։

Կշիռ ։

ԿՇԻՌ ։ Է ընդհանուր անուն Կշռոց, Մետից, և ծանրութեանց ։ Սմա որոյ և նշանակէ նախ՝ զԿշիռ երկթաթ, կամ զՕրդ. Յոյն ζυγός. Լատ. libra, bilanx. Տաճկ. Թէրազի, Գէշմէ, Քէռան. Եբր. Մօզանիմ ։ * Կշռեցաւ 'ի Կշիռս, և գտաւ պակասեալ ‖. Դան. Ե. 29 ։ * Եբրև զմէտ մի 'ի Կշռոց համարեցան ‖. Եսայ.

Խ. 15: * Եւ ասէ Տէր. բերէք Կշիռք. և բերին. և որպէս 'ի կթոցէ թափէին սեաւքն զմեղս կնոջն 'ի տուամարէն. և լցին զմի կողմն Կշռոց նոցա. նոյնպէս և լուսաւորքն եդին զշիշն 'ի միւս այլ կողման Կշռոցն, և ծանրացաւ‖. Վարք Հարանց. Գ. 115:

Զսա կոչեմք և Կշռորդ, և Կշռոց: * Ո՞ կշռեաց զլերինս կշռով, և զդաշտս Կշռորդօք‖. Եսայ. Խ. 12: * Են ոմանք՝ որք աքացանօքն մօտ գան, բայց լանջօք և վզաւն և գլխովք հակառակեն, ընդվզեալք յետս կոյս զօրէն Կշռոցաց հակառակելով. և կիսով մարմնոյն աքացանօքն յառաջ կոյս մատչին‖. Փիլոն: Տես և Զոյգ:

Երկրորդ՝ նշանակէ զԿշիռ անթաթ. Յոյն σταθμὸς և στάθμιον. Լատ. statera. Տաճկ. գանթար: * Ո՞ կշռեաց զլերինս Կշռով, և զդաշտս կշռորդօք‖. Եսայ. Խ. 12: * Զոյգք արդարք, և Կշիռք արդարք‖. Ղևտ. ԺԹ. 36: Այլ Յունականն բառքդ σταθμὸς և στάθμιον նշանակեն ևս զերկթաթ կշիռ: Ընդ երկթաթ կամ անթաթ Կշռով անկանի և միաթաթն:

Երրորդ՝ նշանակէ զՄետս (կամ զծանրոցս) կշռոց. Յոյն στάθμιον. Լատ. pondus. Եբր. Մըշգալ: * Իցէ՞ թէ արդարացի Կաշառօք (Յոյն Կշռօք) անօրէնն, և պայուսակաւ Կշռոց նենգութեանն‖. Միք. Զ. 11: * Առնել զչափ փոքր, և մեծացուցանել զԿշիռս (στάθμιον) և առնել Կշիռս (ζυγὸς) ստութեան‖. Ամովս. Ը. 5:

Չորրորդ՝ նշանակէ զծանրութիւն կամ զչափ կըշռոյն. Յոյն σταθμὸς, ὁλκὴ. Լատ. pondus. Եբր. Մըգալ. * Զարծաթն այսրէն Կշռով դարձուցաք‖. Ծննդ. ԽԳ. 21: * Եւ Կշիռ զրահից նորա հինգ հազար Սիկղ պղնձոյ երկաթոյ‖. Ա. Թագ. ԺԷ. 5: * Եւ էր Կշիռ ոսկւոյն եկելոյ Սողոմոնի 'ի միում տարւոջ՝ վեցհարիւր վաթսուն և վեց Տաղանդ ոսկւոյ‖. Գ. Թագ. Ժ. 14: * Կերիցեն զհաց Կշռով ... և զջուր չափով արբցեն‖. Եզեկ. Դ. 16: Յայսոսիկ վկայութիւնս Յունականն է σταθμὸς. զոր և թարգմանեն նախնիք մեր՝ Չափ, Մետ, Կշռութիւն, և այլն. * Եւ ոչ գոյր չափ պղնձոյն‖. Երեմ. ԾԲ. 20: * Եւ զՄետս կշռոցն նոցա՝ զոսկւոյ և զարծաթոյ‖. Ա. Մնաց. ԻԸ. 14: * Եւ զսե-

ղանոց խնկոցն 'ի մաքուր ոսկւոյ զԿշռութիւնն եցոյց նոցա ||. Ծնդ. 18: Իսկ 'ի յետադայսդ դնի ὁλκὴ. * Մեց հարիւր Սիկղ ոսկւոյ Կշռով ||. ա. Մնաց. իա. 25: * Եկ պակասեցաւ Կշիռ պղնձոյն ||. բ. Մնաց. դ. 18: Օ ὁλκὴ Թարգմանեն եւս՝ Կշիռ համարոյ, Կշռորդ, Կշռու-թիւն, և Զոյլ: * Եւ գրեցաք զԿշիռ համարոյն յաւուր յայնմիկ ||. ա. Եզր. ը. 65: * Կոնք մի արծաթի 'ի հարիւր և երեսուն Կշռորդէ ||. Թուոց. է. 13: * Եւ Կշիռ բեռուացն միոյ միոյ Կշռութիւն յիսուն Սիկղ ոսկ-ւոյ ||. բ. Մնաց. գ. 9: * Յիսուն երկդրամեան էր Զոյլ նորա ||. Յեսու. է. 21:

Հինգերորդ՝ նշանակէ զքանակութիւն մեծ, կամ զՏաղանդ: * Եւ ահա կշիռ մի (Յոյն τάλαντον. Եբր. քիքար) կապարեայ ամբարձեալ ||. Զաքար. Ե. 7: * Կար-կուտ մեծ իբրև Կշիռ Տաղանդոյ միոյ իջանէր յերկ-նից ||. Յայտ. ժզ. 21: Թող և զայլ նշանակութիւնս բառիս Կշիռ, որք արտաքոյ են մերումս սահմանի:

## Կողով. Եբր. Կէլուբ:

Անօթ ցամաքեղինաց:

ԿՈՂՈՎ կամ ԿՈՂՈՓ. Եբր. սալ, տէնէ. Յոյն κάρταλλος, κάλαθος. Լատ. canistrum, cophinus.

Է անօթ պտղոց հիւսեալ յոստոց, և այլն: * Եւ եդին զգլուխս նոցա 'ի Կողովս ||. դ. Թագ. Ժ. 7: * Եցոյց ինձ Տէր երկուս Կողովս Թզոյ ||. Երեմ. իդ. 1-2: * Եւ 'ի միգոց Կողովով ||. Փիլոն: * Առցես զա-ռաջինս 'ի պտղոց ... և արկցես 'ի Կողովի ||. բ. Օրէնք. իզ. 2: * Եւ առցէ քահանայն զԿողովն 'ի ձեռաց քոց, և դիցէ զնա առաջի սեղանոյ Տեառն Այ քո ||. 4: Ըստ Թարգմանչաց մերոց նոյն է սա ընդ բառիս Սձ:

## Կոնք. Թերևս 'ի Յոյն κόγχη.

ԿՈՆՔ: Է տաշտաձև անօթ խոր՝ յօրինեալ 'ի հրա-հալելեաց, և 'ի փայտէ՝ 'ի պէտս լուանալոյ զոտս և

զձեռս. Յոյն νιπτήρ և λεκάνη. Եբր. սէֆէլ. Լատ. pelvis. * Առեալ զջուր՝ եարկ 'ի Կոնք, և սկսաւ լուանալ զոտս աշակերտացն. Յովհ. ժգ. 5։ * Եւ եզ ցող 'ի գզաթէ անտի լի Կոնքիւ ջրոյ. Դատ. զ. 38։ Զ λεκάνη թարգմանեն և ս նախնիք մեր Դաշխուրան։ * Կոնք կոչէ (զկամար դրանն) 'ի ձևոյն՝ որ իբրև զՏաշտ էր խոր. Եսայի. Մեկն. Եզեկ. Է. 48։

Դարձեալ՝ Կոնք նշանակէ զՍկաւառակ. Եբր. քէարահ. Յոյն τρυβλίον. Լատ. catinus, patina. * Մատոյց զընծայսն իւր Կոնք մի արծաթի 'ի հարիւր և յերեսուն կշռորդէ. Թուոց. է. 13. և այլն։ Զ τρυβλίον թարգմանեն և ս նախնիք մեր՝ Տուփ, Խնկաղաց, Ափսէ և Սկաւառակ։ Շիրակացին առեալ զայն յԵպիփանէ՝ դնէ 'ի կարգս Չափուց. և կոչէ Յունական հնչմամբ Տրիվղոն. որ և ըստ նմ. օրինակի նորա * Սկաւառակ է բոլորակ և խոր. նոյն և Պարոպսիդոս կոչի. և ունի կէս Քսեստի։

Կոտիւղ. Յոյն κοτύλη.

*Չափ հեղանիւթոց և ցամաքեղինաց։*

ԿՈՏԻՒՂ. Լատ. cotyla, sextarius. Եբր. լոգ, լօգ։ Ունիմք զայս բառ 'ի կարգս Չափուց Շիրակացւոյն յառաջին օրինակն միայն. որ և ունի այսպէս։ * Յաղագս Կոտիւղի։ Կոտիւղ կոչի Քսեստին կէսն։ Նոյնպէս դնէ և Եպիփան համդերձ ստուգաբանութեամբ նորին։ * Կոտիւղ է չափ, և է կէս Քսեստ. և կոչեցաւ Կոտիւղ՝ վասն ընդ երկուս զՔսեստն բաժանելոյ։ Այլ նախնիք մեր յԱծաշունչ գիրս թարգմանեն զԿոտիւղ Յունաց՝ Քսեստ, Սափոր, և Ճաշակ։ Իսկ Լատին բառարանին է նա չափ հեղանիւթոց և ցամաքեղինաց։

ԿՈՐԻՋ. տես ԿԵՐԱՍ։

ԿՈՐՈՍ. տես ՔՈՌ.

Կուժ. Պարսկ. Կուզէ:

Անօթ հեղանիւթոց:

ԿՈՒԺ. Եբր. Քատքատ, ճէլօխէթ և յաքախաթ. Յոյն βίκος, ὑδρία, φάκος, և καμψάκης. Լատ. urna, urceus. hydria, vas aquarium, campsaces.

Է սափոր կամ Թակոյկ ջրոյ՝ խեցեղէն: * Առաքեր քեզ Կուժ մի ստեղծեալ 'ի կաւոյ‖. Երեմ. ԺԹ. 1: * Ա՛ռ զգեղարդն և զԿուժ ջրոյն 'ի սնարից նորա‖. Ա. Թագ. ԻԶ. 11. և այլն: * Եւ ահա՛ 'ի սնարից նորա նկանակ հաճարոյ, և Կուժ ջրոյ‖. Գ. Թագ. ԺԹ. 6: * Մտին 'ի խուցն, և գտին Կուժ մի ջրով, և պըտուղ և ափսէ‖. Վարք Հարանց. ԺԵ. 326: * Ունէր 'ի ձեռին Կուժ մի ջուր‖. Ընտ. ԻԶ. 461: Յունական ὑδρία հասարակօրէն Թարգմանեն նախնիք մեր՝ Սափոր, և ես և՝ Թակոյկ. իսկ զκαμψάκης, իբրև անօթ իւղոյ՝ Կամփսակ, և Սրուակ: Կուժ փոքր է հասարակօրէն քան զՍափոր և զԹակոյկ:

Կուր. Պարսկ. Կէօր:

Անօթ:

ԿՈՒՐ. Յոյն σκάφη. Լատ. scapha, alveus. Տաճկ. Քէրմէ: Է Տաշտ նաւակաձև: * Ափեաց Թան, և բրդեաց զհաց 'ի Կուր‖. Դան. ԺԴ. 32: Յունականդ σκάφη կամ σκαφὴς այլուր Թարգմանեն նախնիք մեր՝ Մակոյկ և Կուր նաւու:

Հադաղակ:

Անօթ հեղանիւթոց.

ՀԱԴԱՂԱԿ. Յոյն ἀσκοπυτίνη. Լատ. uter. Պարսկ. Պէդարէ:

Է անօթ գինւոյ կաշեղէն: * Եւ ետ ցաղախինն

զմախաղ իւր ... զՀաղաղակն գինւոյ, և զՍրուակն իւղոյ‖. Յուդիթ. Ժ. 5: Զսա կոչեմք ևս Տիկ:

Հաշտադրամ. Պարսկ. Հէշտ-տիրէմ:

Դրամ և Կշիռ:

ՀԱՇՏԱԴՐԱՄ: Ի դահեկան և կշիռ ութդրամեան: * Պարմուշիա՝ հաւդադրամ, Հաշտադրամ, դահադրամ‖. Խորէն. յԱշխարհագր: Տես Դահադրամ:

Հաւդադրամ. Պարսկ. Հէֆթ-տիրէմ:

Դրամ և Կշիռ:

ՀԱՒԴԱԴՐԱՄ: Ի դահեկան, և կշիռ եօթդրամեան: * Պարմուշիա՝ Հաւդադրամ, հաշտադրամ, դահադրամ‖. Խորէն. յԱշխարհագր: Տես Դահադրամ:

Հին. Յոյն Ἴν.

Չափ հեղանիւթոց:

ՀԻՄԷՆ. Եբր. հին. Յոյն εἶν, ἶν, և ὗν. Լատ. hin. Ի անօթ հեղանիւթոց, որոյ չափ է կէս Քսեստ: * Եւ իւղ՝ի ձիթենեաց Հիմենաւ միով‖. Եզեկ. Ը. 24:
Հին ըստ Եբրայեցւոց՝ է չափ ինչ խոր ըստ Կալմեթի. և է կէս Քսեստ կամ կէս Սէահ, և կամ վեցերորդ մասն Պաթի: Եպիփան 'ի բառն Հին կամ Հիմէն ունի այսպէս. * Հինն մեծ՝ է ԺԲ Քսեստ, իսկ Հինն Սրբութեան՝ Թ Քսեստ‖:
Զայս զՀիմէն Յոյնք կոչեն ևս ἡμίνα, և Լատինք hemina. Որ և ըստ Լատին բառարանին է չափ ոչ միայն հեղանիւթոց, այլև ցամաքեղինաց. և է կէս Քսեստ կամ Կոտիւղ: Նախնիք մեր զյունականդ Ἴν հասարակօրէն թարգմանեն Դորակ, ևս և՝ Քսեստ: Վասն որոյ ըստ մերումս կարծեաց կրկին է Հիմէնն՝

մեծ և փոքր. մեծն է նոյն ընդ Գորակի, և է չափ 12 Ասեստայ. իսկ փոքրն ընդ Կոտիւղի, և ունի զչափ կէս Ասեստի։

## ՀՐԱՍԱԽ. տես ՓԱՐՍԱԽ.

### Զայնահաս։

Չափ երկայնութեան։

ԶԱՅՆԱՀԱՍ։ Այս չափ երկայնութեան ճանապարհի՝ ցոր վայր մարթ է ժամանել ձայնի մարդոյ։ * Աղոմն Փարսանգն է. զոր ձիրնթաց մի ոմանք անուանեն, և այլք Զայնահաս, և կէսք քարընկէց, և ոմանք նետաձիգ մի. բայց ճշմարտապէս Ասպարէզն է‖. Ներշն. 'ի Մեկն. Մատթ. Է. 41։

### Ձեռն. Յոյն χείρ.

Չափ ցամաքեղինաց և հեղանիւթոց։

ՁԵՌՆ. Եբր. Գօտէյ և Խօֆէն. Յոյն χείρ, δράξ. Լատ. manus, pugillus, pugnus.
Նշանակէ զչափ ձեռին մարդոյ. և է նոյնանիշ ընդ բառիցս՝ Ագուռ, Ափ, և Բուռն։ * Լցեալ զՁեռն իւր 'ի նաշհոյ‖. Ղևտ. Բ. 2։ * Առէք դուք լի Ձեռօք ձերովք զմոխիր հնոցի‖. Ելք. Թ. 8։ * Լցցէ զՁեռս իւր խնկով համդերձանացն մանր աղացելով‖. Ղևտ. ԺԶ. 12։

## ՁԻՐՆԹԱՑ կամ ՁԻՐՆԹԱՑՔ. տես ԱՍՊԱՐԷԶ։

### Ձող։

Չափ երկայնութեան։

ՁՈՂ. Եբր. Գանէհ. Յոյն κάλαμος. Լատ. calamus. Ըստ նախնեաց մերոց նշանակէ զԵղէգն՝ որ է չափ

Ճարտարապետաց և Երկրաչափից ։ * Եւ 'ի ձեռին նորա էր լար շինողաց, և Ձող չափու ‖. Եզեկ. խ. 3։ * Եւ 'ի ձեռին առնն Ձող չափու 'ի վեց կանգնոյ և թզաւ. և չափեաց զլայնութիւն պարսպացն հաւասար Ձողոյն, և զբարձրութիւն նորա հաւասար Ձողոյն ‖. Անդ. խ. 5. և այլն ։ * Եւ չափեաց հինգ հարիւր չափով Ձողոյն ‖. Անդ. խբ. 16 ։ * Առ 'ի զլոյսն տալոյ անջրպետութեան Ձողոյն ‖. Անդ. խբ. 12 ։

Իսկ ըստ Արդեայ նշանակէ զգաւազանն Երկրաչափից՝ որոյ երկայնութիւնն է վեց Ոտնաչափ. Լատ. pertica, և Յոյն κάμαξ.

ՂԱՆԹԱՐ. տես ՔԱՆՔԱՐ և ԿՇԻՌ։

ՂԻՏՐ. տես ԼԻՏՐ։

ՂԵՊՏՈՆ կամ ՂԵՓՏՈՆ. տես ԱՍՍԱՐԻՈՆ, ԴԱՆԳ և ԼՈՒՄԱՑ։

## Ճաշակ ։

### Չափ հեղանիւթոյ ։

ՃԱՇԱԿ. Եբր. լօգ. Յոյն κοτύλη. Լատ. cotyla, sextarius.

Է սափոր կամ անօթ իւղոյ. որոյ չափն է կէս Քսեստ, կամ Քսեստ մի ։ * Երիս տասանորդս նաշհոյ 'ի զոհ իւղով շաղախեալ, և Ճաշակ մի իւղոյ ‖. Ղեւտ. ժդ. 10 ։ * Եւ առցէ քահանայն զմի գառն, և մատուսցէ զնա վասն յանցանաց, և զՃաշակն իւղոյ ‖. Անդ. 12 ։ * Եւ առեալ քահանային 'ի Ճաշակէ անտի իւղոյն՝ արկցէ 'ի ձախոյ ձեռն քահանային ‖. Անդ. 15. և այլն ։ Զսա Շիրակացին յունական բառիւ կոչէ Կոտիւղ. զոր Նախնիք մեր Թարգմանեն եւ՝ Սափոր, և Քսեստ ։

Դարձեալ՝ Ճաշակ. Եբր. քնաքիյօթ. Յոյն κύαθος. Լատ. cyathus, scyphus. և ըստ Շիրակացւոյն՝ Կիւաթոս. որ և է ըստ Եպիփանու վեցերորդ մասն, իսկ

ըստ այլոյ՝ երկոտասաներորդ մասն Քսեստի: * Եւ արասցես զխնկաղացս, և զտուփս նորա, և զՃաշակս, և զնուիրանոցս նորա‖. Ել. իե. 29: * Զխնկաղացս նորա, և զարիւնակալս նորա, և զՃաշակս նորա, և զնուիրանոցսն‖. Ընդ. իէ. 16: * Եւ զափսէսն, և զտուփս, և զՃաշակս, և զնուիրանոցսն‖. Թւոց. դ. 7: * Նաւ և զապփոյթն, և զամասարակոյթն, և ըզ-պարզուտսն, և զաշտանակսն, և զՃաշակսն, և ըզ-տուփսն՝ որ ոսկի ոսկի, և որ արծաթի արծաթի‖. Երեմ. ծբ. 19: * Ընդէ՞ր 'ի վերայ սեղանոյն սկաւառակք, և բուրուառք, և նուիրակք, և Ճաշակք: Սկաւառակքն՝ խորտկացն նշանակք էին. և Ճաշակքն խրախճանութեան՝ որովք անապակն չափի. և բուրուառքն՝ խնկոցն ամանք. և նուիրակքն գինւոյն՝ որ նուիրի‖. Փիլն: Եպիփան 'ի բառն Կիւաթոս ունի այսպէս. * Կիւաթոս՝ է վեցերորդ մասն Քսեստի: Սէթէկոյթ կոչէ զԿիւաթոսս գիրն, և Սամարոյթ՝ զԳիւղիստերս. զորս և Իթմոսս կոչեմք. և երկոքին ես վարին նովին անուամբ. քանզի և զնոյն ունին զօրութիւն‖: Իսկ Շիրակացին յաղագս Կիւաթոսի աւանձինն ունի այսպէս. * Կիւաթոս՝ չափ է գինւոյ արկանելոյ յապակիս. և կոչի ըստ Ատտիկեցւոց լեզուի Ընդլիտերիոն. գինեհան է երկայնադաստակ՝ որպէս զՃաշակ, վասն 'ի խորութենէ կարասոյն զգինի հանելոյ‖: Եւ ապա յաւելու և վասն Կադամադեկոյթի, և Սամարոյթայ՝ այսպէս. * Կադամադեկոյթ և Սամարոյթ 'ի գրոց եբրայականաց ոչ է թարգմանեալ. արդ՝ ո՞ւր գտանիցես զայս անուանս: Գիտասջիր, եթէ Կադամադեկոյթն Ըմպելի ասի, և Սամարոյթն Ճաշակ՝ որով զգինի հանեն‖: Այլ յայսոսիկ բանս աղաւաղութիւն տեսանի գրչաց:

Նախնիք մեր դնեն զՃաշակ նաև հանդէպ Յունական բառիցս ἐπαρυστήρ և ἐπαρυστρείς. Լատ. vasculum ad hauriendum, haustrum և suffusorium. Եբր. մուձաքօթ: * Որք 'ի ձեռս երկուց ծրագաբերանացն ոսկեաց արկանելեաց, և 'ի վերայ հանելեաց զՃաշակսն ոսկիս‖. Զաքար. դ. 12: Զորս այլուր թարգմանեն՝

Բաղմակակալ, Բաղմակալ, Յարդարիչ, և Բներան (Ճրագի)։

## Մախաղ։

### Աման ցամաքեղինաց։

ՄԱԽԱՂ. Եբր. ילקוט, כלי. Յոյն πήρα, κάδιον. Լատ. pera, sacculus.
Է պարկ քրձեղէն, կամ կաշեղէն։ * Եւ ետ ցաղախինն զՄախաղ իւր, և ելից զնա փոխնդով, և պաղատակօք, և հացիւք սրբովք ‖. Յուդիթ. Ժ. 5։ * Եւ ընկեց 'ի Մախաղ կերակրոյն իւրոյ (զգլուխն Հողոփեռնեայ ‖. Նոյն. ԺԳ. 12։ * Մի բառնայք զքսակ, և մի զՄախաղ ‖. Ղուկ. Ժ. 4։ Օրինականդ πήρα թարգմանեն ևս Նախնիք մեր՝ Պարկ, և Բակեղէթ։ * Ընտրեաց իւր հինգ քարինս ողորկս 'ի հեղեղատէն, և եդ զնոսա 'ի հովուական Մախաղն (κάδιον) յոր սովոր էր զքարն ժողովել ‖. Ա. Թագ. ԺԷ. 40։ * Ի բաց թող զգործ Մախաղին, և արասցես զսփրոց ‖. Վարք Հարանց. Է. 121։ * Եբեր առ ծերն զՄախաղ իւր ... յորում կայր չամիչ, և նուռն ինչ, և թուզ, և երիս դանկս ոսկի ‖. Նոյն. ԺԳ. 274։ * Տեսեալ զՄախաղն կրօնաւորական՝ որ էր 'ի մնարսն, բացին և տեսին զԱւետարանն ոսկետուփ՝ ոսկեգիր գրով, և զթուղթն՝ որ առ ծնօղսն, և առ ուխտն ‖. Նոյն. ԻԳ. 537։ Յայսոսիկ վկայութիւնս թերևս մարթ է իմանալ և զանօթ պրտուեղէն։ Գնի սա երբեմն և փոխանակ Հադաղակի, կամ կաշեղէն անօթոյ։ * Նառ յինէն ծերն զՄախաղն (Յոյն μηλωτή), և մեկնեցաւ յինէն քարընկեց մի. արարեալ աղօթս՝ եբեր զնա լի ջրով առ իս ‖. Նոյն. ԺԳ. 270։

## Մաղզմայ ։

### Անօթ ։

ՄԱՂԶՄԱՑ․ Յոյն λοπάς․ Լատ․ patina, patella. Նշանակէ զՄկաւառակ, կամ զԱփսէ ։ * Հրամայեաց թագաւորն ոսկեղէն Մաղզմայս բերել, և անոյշ գինւով զնշխարսն լուանալ ‖․ Ճառընտ ։ Ըստանձին իմն Մաղզմայ կոչի Սկուտեղն՝ յորում ՚ի սուրբ պատարագի դնի Մարմինն Տէրունական․ Յոյն δίσκος․ Լատ․ patina.

## Ման․ Պարսկ․ Մէնն ։

### Կշիռ ։

ՄԱՆ․ Եբր․ մանէհ․ Յոյն μνᾶ․ Լատ․ mina. Նոյն է ընդ բառիս Մնաս․ և է ըստ Շիրակացւոյն՝ կշիռ 44 Ունկեաց ։ * Եւ արար արքայ Սողոմոն երեքհարիւր նիզակ ոսկի կռածոյ, և երեքհարիւր Դահեկան ՚ի վերայ միոյ նիզակի, և երեքհարիւր զէն ոսկի կուռ, և երեք Մանք ոսկիք ՚ի մի զէն ‖․ Գ․ Թագ․ Ժ․ 16-17 ։ Տես Մնաս և Քանքար ։

## Մասմարովթ․ Յոյն μασμαρὼθ․

### Չափ հեղանիւթոյ ։

ՄԱՍՄԱՐՈՎԹ․ Եբր․ համձրղրաօթ․ Լատ․ masmaroth (pelvis). Ունիմք զայս բառ ՚ի ու̄․ օրինակն չափուց Շիրակացւոյն՝ ընդ Կադամադեկովթի այսպէս․ * Կադամադեկովթ և Մասմարովթ ՚ի գրոց եբրայականաց ոչ է թարգմանեալ․ արդ՝ ո՞ւր գտանիցես զայս անուանս ։ Գիտասջի՛ր, եթէ Կադամադեկովթն Ըմպելի ասի, և Մասմարովթն Ճաշակ՝ որով զգինի հանեն ‖ ։ Յիշատակէ զնոյն և Եպիփան ՚ի կարգս չափուց․ և տայ նմին ընդ Կիւաթոսի՝ զչափ վեցերորդ

մասին Քրոնոսի ։ Նախնիք մեր յԱծաշունչ գիրս Երեմ. ժթ. 19. յունական կամ եբրայական հնչմամբ կոչեն զսա Ամասարակովթ. զոր ընդ Շիրակացւոյն համարիմք լինել Ճաշակ ։ Միայն թէ բանք Շիրակացւոյն աղաւաղեալ են 'ի գրչաց ։

## Մասն ։

### Չափ երկայնութեան ։

ՄԱՍՆ. Յոյն μοῖρα. Լատ. gradus ։
Ըստ Նախնեաց իմանամք սովաւ զԱստիճանն բոլորակի՝ զոր Ուսումնականք բաժանեն 'ի 360 Մասունս կամ Աստիճանս ։ Խորենացին յԱշխարհագրութեան իւրում զսա դնէ գլուխ Ասպարիսական չափուց. և ունի այսպէս. * Նա է սահմանն քան կարճառօտ՝ յայտնիչ բնութեան ստորակայ իրողութեան. որ զիւրն 'ի ներքս փակէ, և զայլոցն 'ի բաց որոշէ. և չափէ զՄասնն ։ Նա է Մասն հինգհարիւր Ասպարէզ ‖ ։ Նա դարձեալ յաւելու ասել. * Բայց օդաչափութեամբ երկրաչափութեան՝ է Մասն հինգ հարիւր Ասպարէզ՝ 'ի լայնն, և նոյնչափ յերկայնն՝ չորեքկուսի, որպէս զի լինել Մասինն եօթանասուն և մի Մղոն (իմա՛ զՄղոնն առեալ՝ 7 Ասպարէզ. զի բաժանեալ զ500 Ասպարէզս 'ի վերայ եօթանց, կամ միոյ Մղոնի՝ քանորդն լինի 71 $\frac{1}{3}$ Մղոն. և բարձեալ 'ի միջոյ զկոտորակդ՝ միայն բոլորական թիւդ 71.) չորս եօթն, և քսան և ութ. ( կամի ասել, Մղոնն քառակողմեան՝ է 28 Ասպարէզ. զի ըստ Խորենացւոյն Մղոնն է եօթն Ասպարէզ. և չորիցս եօթն է քսան և ութ )‖ ։ Բայց Ուսումնականք համարակօրէն բաժանեն զՄասնն կամ զԱստիճանն 'ի 60 Մղոն. վասն զի և զՄղոնն բաժանեն 'ի ութ Ասպարէզ ։

Յիշատակէ զՄասնն և Շիրակացին յԱստեղաբաշխութեան իւրում, զորոյ զբանս տես 'ի բառն Ասպարէզ ։ Փիլոն 60 Մղոն ընծայէ Մասին ըստ Ուսումնականաց, յասելն. * Նա Քանքար միակի ( ըստ Շի-

բակայելոյն Մոնաթի նմանեցաւ ) . . . վասն զի և Մասունքն երկնի ըստ այնց որք յուսմունւածսն (յՈւսումնականութեան) պարապեալ են , ասեն Կաթսուն չափեալ՝ Քանքար կարգեալ դասեաց զկերպարան նորա . քանզի վաթսուն Մնէ (Մնաս) է Քանքար ։ :

## Մատն :

### Չափ երկայնութեան :

ՄԱՏՆ կամ ՄԱՏՆԱՉԱՓ . Եբր . էցպաղ . Յոյն . δάκτυλος . Լատ . digitus .

Ըստ Ուսումնականաց է չափ լայնութեան չորից գարեհատից . վասն որոյ և ըստ աւանդի նոցա * Չորք գարեհատք՝ են 'ի Մատին , և Մատնաչափք՝ չորք 'ի յՈւղկին : Քառեակք Ուղուկք՝ յՈտնաչափին , հինգ Ոտնաչափք՝ 'ի Քայլ դընին ։ : Խորենացին յԱշխարհագրութեան իւրում զՔայլն դնէ վեց Ոտն , և զՈտն վեշտասան Մատն . այլ այս տարբերութիւն ծագի 'ի Մղոնէ նորա . զի զոր նա եօթն Ասպարէզ դնէ , այլք ութ դնեն : Այն զի և ըստ Լատին բառարանին՝ Մատն մաթէմաթիգական է վեշտասաներորդմասն Ոտնաչափի : * Եւ շուրջ զնովաւ չափ՝ չորեքտասան Կանգուն շուրջանակի թանձրութիւն սեան . և 'ի չորից Մատանց մասնեքն ( Յոյն κοιλώματα, խորութիւնն ) ։ . Գ . Թագ . Է . 15 : * Եւ թանձրութիւն նորա շուրջ առ չորս Մատունս ։ . Երեմ . ԾԲ . 21 : * Մատնաչափ են բանքս քանակութեամբ , այլ զողջոյն տիեզերաց . . . ուսմունս 'ի ներքս ունին ։ . Դաւրընփ :

Յերկայնաչափութեան Ուսումնականք Մատն կամ Մատնաչափ ասելով իմանան զԲոյթն կամ զԲութամատն . Յոյն ἀντίχειρ . Լատ . pollex .

## Մար. Յոյն μάρις.

### Անօթ ցամաքեղինաց։

**ՄԱՐ.** Եբր. պռթ. Յոյն. μετρητής, σάτον. Լատ. metreta, bathus.
Է չափ հեղանիւթոց, և է հասարակօրէն 50 Քսեստ։ Ա. օրինակ չափուց Կիրակացւոյն յաղագս Մարի ունի այսպէս. * Չափ ծ Քսեստի լինի Մար մի. և ըստ Հելլենականին Սատոն կոչի. զոր կոչեն չափ հնձանի։ Իսկ Դ. և Ե. օրինակք ունեն այսպէս. * Մար՝ ըստ Հելլենացւոցն Սատոն, ծ Քսեստ. և է չափ հնձանի։ Երեմիա ՚ի մեկնութեան բառից Ածաշունչ գրոց ունի այսպէս. * Մար ծ Քսեստ է. մէկ Քսեստն Ը Լիտր է։ Եպիփան ՚ի բառսն Պեթեկ և Գոմոր ունի այսպէս. * Երկին է Գոմոր՝ մեծ և փոքր։ Մեծն հաւասարաչափ է ընդ Պեթեկի՝ զի հնգետասան Մոդ է և Նա. իսկ փոքրն Երկոտասան Բաթոս։ Եւ այս ևս առեալ է յԵբրայական լեզուէ. և է համանուն ընդ Իւղահանին՝ որ կոչի Բէթ (Եբր. պռթ. կամ բռթ). քանզի Բաթոս թարգմանի Իւղահան (ըստ Կիրակացւոյն՝ Չափ հնձանի). և է յիսուն Քսեստ. որ և է չափ իւղահան գործարանաց։ Իսկ զՍատոն դնէ Եպիփան ոչ միայն չափ հեղանիւթոց, այլև ցամաքեղինաց։ Ըստ որում չափ ցամաքեղինաց՝ ընծայէ նմին Մոդ մի և քառորդ։ Իսկ ըստ որում չափ հեղանիւթոց՝ տայ նմին 56 Քսեստ։ Բայց Պետաւիոս ոչ հաւանի ընդ այդ թիւ. վասն որոյ թուի մեզ, թէ պարտ է լինել 50 ըստ Կիրակացւոյն. որով և Սատոն նորա նոյն լինի ընդ Բաթոսի։ Նախնիք մեր յԱծաշունչ գիրս դնեն զՄար նախ՝ հանդէպ յունականին μετρητής. Լատ. metreta, amphora Attica. որ է ըստ Հռովմայեցւոց 48 Քսեստ, կամ 80 Լիտր, և 12 Ունկի։ * Եւ մուծանէք ՚ի հնձանս ձեր հանել յիսուն Մար, և լինէր քսան։ Անգ. Բ. 17։ * Եւ էր կուռք մի Բաբելացւոց՝ անուն Բէլ. և ելանէր

նմա ռոճիկ աւուր միոջ նաշիհ երկոտասան Արդու, և քառասուն ոչխար, և գինի վեց Մար‖. Դան. ժդ. 2: * Անդ էին Թակոյկք կճեայք վեց՝ ըստ սրբութեան Հրէից. տանէին մի մի 'ի նոցանէ Մարս երկուս կամ երիս‖. Յովհ. բ. 6:

Երկրորդ՝ համդէպ բառիս νέβελ ( Եբր. Նէպէլ ). որ է ըստ Եպիփանու չափ 150 Քսեստաց: * Եւ ահա Սիբա պատանի Մեմփիբոսթեայ ընդ առաջ նորա. և զոյգք իշոց բեռնաւորաց. և 'ի նոսա երկերիւր նկանակ, և հարիւր չամիչեայ, և հարիւր արմաւ, և Մար մի գինւոյ‖. Բ. Թագ. ժզ. 1: * Եւ վարձեցայ ես ինձ հնդետասան արծաթոյ, և Քոռի միոջ գարւոյ, և Մարու միոջ գինւոյ ‖. Ովսէ. գ. 2:

Երրորդ՝ համդէպ բառիս βάτος. Լատ. cadus. որ է ըստ Եպիփանու Բաթոս. որոյ չափ ըստ հաշուի նորա է 50 Քսեստ. և ըստ այլոց 62: * Ասէ ցառաջինն. քանի՞ ինչ պարտիս տեառն իմում. և նա ասէ. հարիւր Մար ձիթոյ‖. Ղուկ. ժզ. 6:

Չորրորդ՝ համդէպ բառին χοεὺς. Լատ. congius. որ է չափ վեց Քսեստաց: * Եւ տանէր ( ծովն ձուլածոյ ) իբրև երկուս հազարս Մարս‖. գ. Թագ. է. 26:

Արդ՝ յայտ է 'ի Թարգմանութեանց աստի, թէ Մար 'ի մեզ ոչ միշտ նշանակէ զնոյն չափ, թէպէտև հասարակօրէն է նա 50 Քսեստ: Եպիփան դնէ 'ի կարգս չափուց և զյունականդ μάρης, ասելով. * Մարիս չափ է առ Պոնտացիս՝ երկու Հիդրիա ( կամ Սափոր ). իսկ Հիդրիա է Ժ Քսեստ առ նոսա. մինչև լինել Մարիսի քսան Քսեստ ըստ Աղեքսանդրացւոց‖: Թերևս 'ի սմանէ իցէ մերս Մար: 'Ի վարս Հարանց. ժա. 248. նոյն դնի Մար ընդ բառիս Չափ. և որպէս կարծեմք, նշանակութեամբ Դորակի, կամ փոքր ինչ քանակութեան: * Դնեսցես հացս տասն, և միս Լիտրս տասն, և տասն Չափ գինի ... և 'ի ժամու ճաշոյն կերիցես մի հաց, և Լիտր մի միս, և Մար մի գինի արբ‖:

## Մարդաչափ։

### Չափ երկայնութեան։

ՄԱՐԴԱՉԱՓ. Յուն. ὀργυιά. Լատ. ulna, passus.
Է չափ երկայնութեան ըստ հասակի բարեչափ մարդոյ, կամ չորից կանգնոց. զոր և կոչեմք Գիրկ կամ Գրկաչափ։ * Եղև խորն Մարդաչափ մի Ն. Վարք Հարանց. իզ. 469։ * Լուեն ոմանք, թէ գերեզման Տեառն մերոյ էր տուն բոլոր՝ հատեալ ներքոյ վիմի՝ բարձր Մարդաչափ մի Ն. Ներսէս 'ի Մկն. Մարկ. ժը։ Զսա կոչեմք և Լուն չափ։ * Երեցին զտեղին իբրև Լուն չափ, և երկայնութիւն նոյնչափ Ն. Վարք Հարանց. իզ. 488։

## Մեղիարիս. Յուն. μιλιαρίσιον.

### Կշիռ։

ՄԵՂԻԱՐԻՍ. Լատ. miliarisium.
Ունիմք զայս բառ 'ի ա. բ. և գ. օրինակս կշռոց Շիրակացւոյն 'ի բառն Միկղ, և Մէտ, այսպէս. * Կշիռ Դահեկանի և Միմեսի կոչի ըստ Եբրայեցւոցն Միկղ, և ըստ Հելլենականին Մէտ, և ըստ Հռովմայեցւոցն Մեղիարիս, և ըստ Հայոց Փողչէ։ Որ է գ. մասն Ունկոյ. և ունի լզ Կերատաց կշիռ Ն։ Յիշատակէ և Եպիփան զՄեղիարիս այսպէս. * Արգիւրոն այն է՝ զոր Հռովմայեցիք Մեղիարիսիոն կոչեցին. որ թարգմանի՝ Զինուորաց պարգև Ն։ Պետաւիոս ոչ հաւանի ընդ ստուգաբանութիւն նորա. և մեզ անծանօթ է նշանակութիւն հայկական բառիս Փողչէ։

## Մէտ. Պարսկ. Մէհէր կամ Մէհր.

Կշիռ.

ՄԷՏ. Յոյն ῥοπὴ. Լատ. momentum և punctum. Ըստ Երեմիայի 'ի մեկնութեան բառից Ածաշունչ գրոց՝ նշանակէ զկշռորդն կամ զգրամն փոքրիկ՝ * որ առկաւ հակէ զթաթ կշռոց 'ի մի կողմն ‖. և կոչի ևս Կէտ ըստ նախնեաց մերոց : * Մէտ կշռոց է արդարութիւն 'ի Տեառնէ ‖. Առակ. ժզ. 11 : * Իբրև ըզՄէտ մի (Եբր. շախագ) 'ի կշռոց համարեցան ‖. Եսայ. խ. 15 : * Զի որպէս Մէտ մի 'ի նժարից կշռոց է ամենայն աշխարհս առաջի քո ‖. Իմաստ. ժա. 23 :

Դարձեալ՝ Մէտ նշանակէ զկշիռ կամ զչափ ծանրութեան. Յոյն σταθμὸς, Լատ. pondus. * Եւ (ետ) զՄէտս կշռոցն նոցա զոսկւոյ և զարծաթոյ ‖. ա. Մնաց. իը. 14 :

Նշանակէ ևս զթաթս կշռոցն : * Դիցէ զգործս իմ 'ի Մէտն, և զձեր գործսդ 'ի միւս Մէտն. և ինքն ստուգութիւնն բարձցէ զԾակսն ‖. Սանահնա. Քէն. Յոբէ. Թ :

Շիրակացին 'ի կարգի անդ կշռոց նոյնանիշ համարեալ զՄիկղ և զՄէտ՝ խօսի զերկոցունց միանգամայն, ունելով բանին ըստ ա. բ. և գ. օրինակաց այսպէս. * Յաղագս Միկեղ, և Մետրի : Կշիռ Դահեկանի և Միմեսի՝ կոչի ըստ Եբրայեցւոցն Միկղ. և ըստ Հելլենականին Մէտ (թերևս 'ի բառէս μέτρον, չափ) և ըստ Հռովմայեցւոցն Մեզիարիս. և ըստ Հայոց փորչէ : Որ է գ մասն Ունկոյ. և ունի լգ Կերատաց Կշիռ ‖ : Այլ զայսմանէ տես առանձին իմն 'ի Միկղ՝

## Մղոն. Յոյն μίλιον.

Չափ երկայնութեան :

ՄՂՈՆ. Լատ. milliare, milliarium, mille passus. Պարսկ. միլ:

Ըստ Ուսումնականաց է չափ տարածութեան, կամ հեռաւորութեան տեղւոյ՝ հազար Քայլ երկրաչափական. որ առնէ ութ Ասպարէզ: Վասն որոյ և առած է առ նոսա. * Քայլ քսան և հինգ՝ ընդ հարիւրին, Ասպարիսին՝ չափու չափին: Այլ Ասպարէզ՝ ըք ութեքին, Մղոնաչափ՝ յերկարաձգին ‖: Առ նախնեօք Յոյնք հասարակօրէն համարէին զՄղոնն եօթն Ասպարէզ, և Հռովմայեցիք՝ ութ: Վասն որոյ ասէ Հեսիւքիոս 'ի բառարանի իւրում. * Մղոնն է չափ ճանապարհի՝ եօթն Ասպարէզ ‖: Եւ Պլուտարքոս. * Մղոնն սակաւ ինչ պակաս է քան զութ Ասպարէզ ‖: Եւ Պողիւբիոս. * Խնամով կարգեալ սահմանեցին Հռովմայեցիք ութ Ասպարէզ (զՄղոնն) ‖: Եւ Ստրաբոն. * Որպէս բազումք համարին, Մղոնն է ութ Ասպարէզ ‖: Եւ Իսիդորոս Հիսպաղացի. * Ասպարէզն է ութերորդ մասն Մղոնի. և է ՃԻԵ Քայլ ‖: Պատճառ տարբերութեանս ըստ Պետլարիոսի աշխարհագրի էր մեծութիւնն Ոտնաչափի Յունաց քան զՀռովմայեցւոցն: Վասն որոյ թէպէտև 'ի թիւ Ասպարիսին տարբերէին 'ի միմեանց, այլ զՄղոնն հազար Քայլ դնէին երկոքին ազգքն առհասարակ:

Մերս Մովսէս Խորենացի, և Անանիա Շիրակացի՝ որպէս զՄղոնն դնեն հազար Քայլ, նոյնպէս եօթն Ասպարէզ թուեն զնա ըստ Յունաց, և ըստ Պարսից: Տես զողջոյն զբան Խորենացւոյն յաղագս Ասպարիսական չափու՝ 'ի նախադրութեանս գործոյս:

* Եւ որ տարապարհակ վարիցէ զքեզ Մղոն մի, երթ ընդ նմա և երկուս ‖. Մատթ. Ե. 41: Յորոյ 'ի մեկնութեան ասէ Երզնկացին. * Իսկ Մղոնն Փարսանգն է. զոր Չինթաց մի ոմանք անուանեն, և այլք

Զայնահաս, և կէսք Քորընկէց, և ոմանք Ետաձիգմի. բայց Ճշմարտապէս Ասպարէզն է ... հազար Քայլ ըստ երկրաչափական արհեստին ‖: Բայց չփոխութիւն բառից տեսանի, և ոչ ճշդութիւն 'ի բանս սորա: Միայն արժան է գիտել, զի Թէպէտև ըստ Երկրաչափից Միղոնն է հասարակօրէն հազար Քայլ, բայց երբեմն ոմանք առնուն զայն լայնաբար փոխանակ այլևայլ չափուց, և երկայնաձիգ տարածութեան: Թող զի և այլևայլ ազգաց՝ այլևայլ են չափք Միղոնի:

* Հեռի էր սենեակ նորա լ̃ը Միղոն ‖. Վարք Հարանց. Գ. 72: * Իսկ մոլորեալ ուղին էր իբր երկոտասան Միլոն (այն է՝ Միղոն) ‖. Նոյն. Ե. 122: * Ճանապարհս արքունի գնացէք, և մի՛ Թուիցէք զՄիղոնսն, և ոչ ձանձրանայք ‖. Նոյն. Ը. 167: * Էր այր նորա հեռի յեկեղեցւոյն իբրև Միղոն քառասուն. և 'ի ջրոյ և 'ի մայրեաց էր հեռի Միղոնս երկոտասան. այսպիսի աշխատութեամբ բերէր զպէտս իւր յայրն ‖. Նոյն. 183: * Նստէր յանապատ հեռի՝ 'ի ջրոյն Միղոնս քսան. և 'ի բերել ջրոյն աշխատեալ բազում անգամ՝ ձանձրացաւ ‖. Նոյն. 184:

## Մնաս. Յոյն μνᾶ կամ μνᾶς.

Կշիռ:

ՄՆԱՍ. Եբր. Մանէհ. Լատ. mina. Պարսկ. մըն և մընա:

Է կշիռ 100 Դրամոց, և ս և անուն գումարի Դրամոց: Շիրակացին 'ի կարգս կշռոց ըստ ա̃. բ̃. և գ̃. օրինակաց ունի այսպէս յաղագս Մնասի. * Մնասն ըստ Իտալացւոցն խ̃դ Ունկեաց կշիռ է. որ լինի գ̃ Լիտր և կէս. և ըստ Եբրայեցւոց Մնասն արծաթի Թարգմանի ‖: Գ. և Ե. օրինակք նախ դնեն այսպէս. * Եբրայեցիք զՏաղանդն Քանքար կոչեն: Եւ Մնաս և Մանաթ նոյն է ‖. և ապա յաւելուն առանձինն. * Մնասն ըստ Իտալացւոցն խ̃դ Ունկեաց կշռորդ է. ըստ Եբրայեցւոցն բ̃ Լտեր և կիսոյ. և ըստ Եբ-

քայեցւոց Արծաթ Թարգմանի ॥ : Է. օրինակն այսչափ միայն ունի. * Եբրայեցիք Քանքար կոչեն (զտաղանդն). և Մնասն նոյն է ॥ : Իսկ Ը. օրինակն այսպէս. * Մնասն Ճ Լիտր է ॥ : Երեմիա 'ի մեկնութեան բանից Աստուածաշունչ գրոց ունի այսպէս. * Քանքար, Տաղանդ, Մնաս՝ եբրայեցերէն, դաղմատերէն, յունարէն՝ մի և նոյն է : Մնաս ՃԻԵ Լիտր է. Ա Լիտրն ԺԲ Ունկի է. Մէկ Ունկին Է Դահեկան է. Մէկ Լիտրն ՀԲ Փլորի է. Մէկ Մնասն ինն Ռ Ոսկի է, և Կարմիր է ॥ : Արդ՝ 'ի միաբանութիւն այս ոցիկ բանից՝ ունիմք ասել նախ՝ թէ ըստ եօթանեցունց օրինակաց Ո իրակացոյն Մնաս իբրև առանձին անուն կշռոյ՝ է ըստ Իտալացւոց 44 Ունկեաց կշռորդ. որ և առնէ ըստ Եբրայեցւոց 3 Լիտր, և 8 Ունկի. և նշանակէ ըստ նոցա զգումար արծաթի դրամոց :

՝ Երկրորդ՝ Մնասն իբրև գումար մեծ դրամոց, նոյնանիշ է ընդ բառիցս Տաղանդ, Քանքար, և Մոնադ. թէպէտև ըստ ճիշդ հաշուի Ո իրակացոյն այլևայլ կշիռք են նոքա : Մոնաթ կամ Մոնադ ելանէ 'ի յունական բառէս μόνας, և նշանակէ ևս զՏաղանդ կամ զՔանքար. թերևս ոմանք 'ի սմանէ հանեալ զՄնաս՝ նոյնանիշ դնեն զնա ընդ Քանքարոյ : Սակայն որպէս եդաք մեք 'ի վերոյ՝ Մնաս ելանէ 'ի Յունականէս μνᾶ, և ոչ μόνας. թէպէտ և Նախնիք մեր զμνᾶ Թարգմանեն ևս Քանքար՝ լայնաբար առեալ զերկոսին ևս փոխանակ մեծ ինչ կշռոյ կամ գումարի : Երրորդ՝ Մնասն ըստ Եբրայեցւոց է 60 Սիկղ, և ըստ Յունաց 100 Դրամ կամ Դրաքմէ :

Նախնիք մեր յԱծաշունչ գիրս զյունականդ μνᾶ հասարակօրէն Թարգմանեն Մնաս : * Եւ քսան կշիռն Դանկ, և քսան Սիկղ, և քսան և հինգ Սիկղ. և 'իքսան և հինգ Սկեղէ եղիցի ձեզ Մնաս մի ॥. Եզեկ. ԽԵ. 12 : * Արկանէին 'ի գանձանակ տաճարին 'ի նպաստաւորութիւն գործոյն՝ ոսկի հազար Մնաս, և արծաթ Մնաս հինգ հազար ॥. Ա. Եզր. Բ. 45 : * Ետուն 'ի գանձս գործոյն ոսկի երկու բիւրս, և արծաթ բիւր Մնաս, և երկու հազար և երկերիւր ॥. Գ. Եզր. Է.

71 ։ * Ետ նոցա տասն Մնաս‖ . Ղուկ . ԺԹ . 13 . և այլն ։ Նոյն է ընդ սմա և բանս Մանի , զոր դնեն նախնիք մեր Պարսկական հնչմամբ ։ * Երեքհարիւր զէն ոսկի կուռ , և երեք Մանք ոսկիք 'ի մի զէն‖ . Գ̃ . Թագ . Ժ̃ . 17 ։ Նոյն որպէս ասացաք 'ի վերոյ , երբեմն թարգմանեն ևս զμνᾶ Դանքար ։

Մնաս կամ Մնէ ըստ Փիլոնի՝ է վաթսներորդ մասն Դանքարի . զի ասէ . * Ասեն կ̃ չափեալ ( զՄասունս կամ զԱստիճանս երկնից ) . Դանքար կարգեալ դասեաց զկերպարան նորա . քանզի կ̃ Մնէ՝ է Դանքար‖ ։ Իսկ Եպիփան ունի այսպէս . * Մնաս՝ որ կոչի Եբրայեցերէն Մնիմ ։ Իսկ Մնասն ըստ Իտալացւոց է քառասուն Սատեր , այն է՝ քսան Ունկի . որ է Լիտր մի , և ութ Ունկի‖ ։ Սորա հաշիւ բազմօք տարբերի յօրինակաց անտի Կիրակացւոյն ։ Պետաւիոս 'ի ծանօթութեան նորա՝ 160 Դրաքմէ դնէ զՄնասն Իտալական ։ Ըստ Կալմեթի՝ Մնա կամ Մին եբրայեցերէն թարգմանի հատ կամ թանգան . և է 60 Սիկղ ըստ Եզեկիելի ։ Իսկ զՄնաս Յունաց յիշատակեալ 'ի Սուրբ գիրս՝ ասէ լինել 100 Դրամ կամ Դրաքմէ ։

'Ի վախճանի՝ արժան է գիտել , զի պատճառն միացուցանելոյ ոմանց զՄնասն ընդ Դանքարի՝ ծագի 'ի պատմութենէ Աւետարանչաց . զի զոր Մատթէոս Դանքար ասէ , Ղուկաս Մնաս կոչէ ։ Բայց թէ և նոյն լինէին պատմութիւնք երկոցունցն , տակաւին լայնաքար դնին 'ի նոսա Մնաս և Դանքար ։ Իսկ տարբերութիւնն Մնասի առ Եբրայեցիս՝ ծագի 'ի պէսպիսութենէ թարգմանութեանց բանից Եզեկիելի խէ̃ . 12 ։ Վասն որոյ դիցուք աստանօր զայլևայլ թարգմանութիւնս ։ Մերս . * Եւ քսան կշիռն Դանկ . և քսան Սիկղ . և քսան և հինգ Սիկղ . և 'ի քսան և հինգ Սկեղէ եղիցի ձեզ Մնաս մի‖ ։ Յոյն . * Կշիռք քսան Դանգի . հինգ ( ըստ այլ օրինակաց՝ քսան ) Սկեղք , հնգետասան ( ըստ այլ օրինակաց՝ քսան և հինգ ) Սկեղք , և յիսուն ( ըստ այլ օրինակաց՝ հնգետասան ) Սկեղք լիցի ձեզ Մնասն‖ ։ Եբր . * Եւ Սիկղ քսան Դանգաց . քսան և հինգ Սկեղք , և քսան

Սկեղք, հնգետասան Սիկղ եղիցի ձեզ Մնաս ։ Քաղդ. * Սու Սիկղ քսան Դանգս ունի. երրորդ մասն Մնասի՝ քսան Սկեղս ունի. Մնաս արծաթի՝ քսան և հինգ Սկեղս. չորրորդ մասն Մնասի՝ հնգետասան Սկեղս ունի. ամենեքին վաթսուն՝ են Մնաս. և Մնասն մեծ՝ սուրբ եղիցի ձեզ ։ Լատին. * Իսկ Սիկղ քսան Դանգ ունի. արդ՝ քսան Սկեղք, և քսան և հինգ Սկեղք, և հնգետասան Սկեղք՝ առնեն Մնաս (մի) ։ Յոյն. * Կշիռք են քսան. իսկ կշիռ (իւրաքանչիւր) 'ի սոցանէ՝ քսան և հինգ Դանգաց լիցի, և կշիռ հնգետասան (Դանգաց) լիցի ձեզ Մնաս ։ Եբրէ. * Կշիռք քսան Դանգաց. հինգ Սկեղք, հինգ. և տասն Սկեղք, տասն. և յիսուն Սկեղաց լիցի Մնաս առ ձեզ ։

## Մոդ. Յոյն μόδιος կամ μόδιον.

### Չափ ցամաքեղինաց ։

ՄՈԴ կամ ՄՈԹ. Լատ. modius, modium.
Է չափ ցամաքեղինաց. ըստ ոմանց իբ Քսեստ, և ըստ այլոց ժզ ։

Ունիմք զայս բառ 'ի կարգս չափուց Ա Շիրակացւոյն. որոյ ա. օրինակն յաղագս Մոդոյ ունի այսպէս. * Չափ իբ Քսեստայ լինի Մոդ մի. որ կոչի Խոստովանութիւն ըստ իբ Գլխաւորաց (Նահապետաց), և ըստ իբ գրոց Կտակարանաց. և ըստ իբ գրոց Եյթուբենից Եբրայեցւոց. զոր կոչեն չափ Արքութեան ։ Յաւելու զկնի նոյն օրինակ և յաղագս Գրուի այսպէս. * Չափ իբ Քսեստայ լինի Գրիւ մի. որ է նոյն չափ Մոդոյ ։ Իսկ դ. և ե. օրինակք զերկոսին միանգամայն դնեն այսպէս. * Գրիւք գ, որ է մի Մոդ, որ է չափ Արքութեան ։ Սոքա զերիս Գրիւս համարին մի Մոդ, այսինքն 22 Քսեստ. իսկ ըստ ա. օրինակի Ա Շիրակացւոյն, և ըստ Երեմիայի 'ի մեկնութեան բառից Ածաշունչ գրոց՝ 22 Քսեստ է Գրիւ մի կամ Մոդ մի։ Եպիփան յաղագս Մոդոյ յարենման ունի ա.

օրինակի Շիրակացւոյն. և ասէ այսպէս. * Իսկ անունս Մոդ՝ բազում ճշդութեամբ յԵբրայեցւոց անտի գտանի չափ քսանևերկու Քսեստայ. ոչ վայրապար կամ անխորհուրդ, այլ բազում ճշդութեամբ: Քանզի Մոդ արդար՝ որպէս սովորութիւն է Օրինացն ասել, ըստ Արքութեանն չափու չափեալ լինէր. իսկ Արքութեանն չափ ոչ այլ ինչ է, բայց իբր գործքն՝ զոր արար Ած 'ի վեցեակ աւուրս շաբաթուն. ( և աստ սկսանի կարգել զնոսա միըստմիոջէ. և յաւելու 'ի նոյն զանուանս իբր գլխաւոր Նահապետաց, զԹիւ իբր գրոց Կտակարանաց և Այբուբենից Եբրայեցւոց, և ապա 'ի վերայ բերէ ). Այս Թիւ քսան և երկու՝ ամենայն ուրեք գտեալ, և 'ի պէսպէս յեղանակս Թուեալ, 'ի քսանևերկու գործս՝ զոր արար Ած 'ի վեցեակ աւուրս աշխարհարարութեան, 'ի քսան և երկու ազգս՝ յԱդամայ մինչև ցԻսրայէլ, 'ի քսան և երկու տառս գրոց՝ յԱլէֆէ մինչև ցԹաւ, և 'ի քսան և երկու դիրս՝ 'ի Ծննդոց մինչև ցԵսթեր, եղև մեզ չափ իբր Քսեստայ. զոր կոչեն Եբրայեցիք Մոդէ, և Հելլէնք առ դիւրութեան արտասանութեան՝ Մոդիա. զնոյն անուն ընծայեն նմին և Եգիպտացիք. որպէս և Ասորիք և Արաբացիք Մոդիա յորջորջեն զնա. որ Թարգմանի Խոստովանութիւն. քանզի Մոդ՝ յորժամ ընուս զնա, խոստովան լինի՝ Թէ լցեալ եմ‖ և այլն: Ըստ Լատին բառարանին՝ Մոդ է չափ ոչ միայն ցամաքեղինաց, այլև հեղանիւթոց. և է 16 Քսեստ. վեցերորդ մասն Մեդիմնոսի Ատտիկեցւոց, և երրորդ մասն Ամփորայի Հռովմայեցւոց. և է բազմօք փոքր քան զՄոդն Իտալացւոց: Նախնիք մեր յԱծաշունչ դիրս զյունականդ μόδιος Թարգմանեն Գրուան:

Մոնադ. Յոյն. μονὰς կամ μόναδος.

Կշիռ:

ՄՈՆԱԴ կամ ՄԱՆԱԹ. Լատ. unitas. Ըստ Թարգմանութեան Փիլոնի՝ Մէակ կամ Մէայնակ:

Ունիմք զայս բառ 'ի հնգեսին օրինակս կշռոց Շի-
րակացւոյն։ ա. բ. և գ. դնեն այսպէս. * Տաղանդն ճիթ Լիտր է. զսա Թուողք Մնաս. կոչեն‖։ Իսկ դ. և ե. օրինակք ունին այսպէս. * Տաղանդն կշռոյ անուն է. որ է ճիթ Լիտր. և ճիթ Լիտրն իննսուն Ասարիոն ըստ հա-
մարոյ։ Եւ Եբրայեցիք զՏաղանդն Քանքար կոչեն։ Եւ Մնաս և Մնաթ նոյն է ... Մնաթն իննսուն Ասսարիոն է‖։ Յորոց յայտ է, թէ զՄնաս կամ զՄիութիւնն առնու Շիրակացին ընդ այլ կշռաքանից փոխանակ մե-
ծագունին 'ի կարգս կշռոց, այսինքն՝ Տաղանդի, Քան-
քարոյ, և Մնասի։ Օ նոյն է տեսանել և յայսոսիկ բանս Փիլոնի. * Քանքար Միակի (կամ Մնադի) նմանե-
ցաւ։ Երկին մի գոլ, և ոչ ունեք այլոց նման ըստ ձևոյ և զօրութեանց ... և Մասունքն երկրի ... ասեն վաթսուն չափեալ... Քանքար կարգեալ դասեաց զկեր-
պարան նորա. քանզի վաթսուն Մնէ (կամ Մնաս) է Քանքար‖։ * Քանզի դասեալ և կարգեալ է Ած ըստ Միում, և ըստ Միայնակին (Յոյն μονὰς) տինա առա-
ւել Միայնակն ըստ Միումն Այ. քանզի ամենայն թիւ կրսերագոյն է քան զաշխարհ, որպէս և ժամա-
նակ. իսկ Ած երիցագոյն է քան զաշխարհ, և արա-
րիչ‖. Նոյն։

Նաւակ։

Անօթ։

ՆԱՒԱԿ. Յոյն Θηρίκλειος. Լատ. thericlejus.
Է բաժակ կամ Սկահ 'ի ձև նաւակի. զոր Յոյնք կո-
չեն Թերիկլեան՝ յանուանէ ճարտարապետին։ Յիշա-
տակէ զսա Փիլոն 'ի կարգս այլոց անօթոց օրինակ զայս. * Բաժակաց և Ըմպելեաց բազմութիւն՝ կար-
գեցելոց և մի ըստ միոջէ եդելոց ըստ իւրաքանչիւր տեսակի։ Ափսէք և Տաշտք և Ըմպիկք և Պատժա-
նակք, և բազմաձև արուեստականագոյն Նաւակք, և ճարտարակերպք, իմաստուն հանճարեղ արանց ճշգրիտ ստուգութեամբ կազմեալ ձեռագործք‖։

## Նաքարակիտ. Յոյն κοδράντης.

Կշիռ և Դրամ։

ՆԱՔԱՐԱԿԻՏ. Լատ. quadrans.
Ըստ հասարակաց կարծեաց՝ է չորրորդ մասն միոյ Դանգի. և է նոյն ընդ բառիցս Լումայ, և Ընիոն։ * Ամէն ասեմ քեզ. ոչ ելանիցես անտի, մինչև հատուցանիցես զյետին Նաքարակիտն‖. Մատթ. Ե. 26։ Հեսիւքիոս զյետին Նաքարակիտն դնէ չորրորդ մասն փողոյ. այլ Դանգ և փող նոյնանիշ են երբեմն։ Այն զի և զՆաքարակիտ նոյն դնէ Նորշնկացին ընդ Դանգի՝ 'ի մեկնութեան անդ բնաբանիս, յասելն. * Մինչև հատուցանիցես զյետին Նաքարակիտն. այսինքն՝ բնաւին աղքատանայցես, մինչև ցյետին Դանգն տուգանս տալով‖։ Այլ այսօրինակ լայնաբար ևեթ ասին։ * Եկն այրի մի, և արկ անդր երկուս Լումայս՝ որ է Նաքարակիտ մի‖. Մարկ. ԺԲ. 42։ Յայս բան՝ եթէ առցուք զերկուս Լումայս իբրև Նաքարակիտ մի Նաքարակիտն լինի չորրորդ մասն Դանգի, և Լումայ՝ ութերորդ մասն. իսկ եթէ առցուք զՆաքարակիտ նոյն ընդ Լումայի, լինի և նա ըստ միում տեսութեան ութերորդ մասն Դանգի, և ըստ այլում՝ չորրորդ։ Եպիփան դնէ զՆաքարակիտ չորրորդ մասն Ունկոյ, և կոչէ զայն Սիկղ. այլ նա բառիւս Նաքարակիտ՝ իմանայ զքառորդ կշռոյ ընդհանրապէս։

## Նետընկէց։

Չափ երկայնութեան։

ՆԵՏԸՆԿԷՑ կամ ՆԵՏԱՁԻԳ. Յոյն τόξου βολή. Լատ. jactus sagittae.
Է չափ երկայնութեան ճանապարհի ըստ հասանելոյ նետի։ * Մերձ 'ի քաղաքն Ա Նետընկէց‖. Մար. Ս––հայեցի 'ի Պարսս։ * Մղոնն Փարսանգն է. զոր Չի-

ընթաց մի ոմանք անուանեն, և այլք Ձայնահաս, և կէս Քարընկէց, և ոմանք Նետաձիգ մի. բայց Ճշմարտապէս Քաղարեզն է||. Նորին. 'ի Թէկն. Մարկ. Ե. 41: Նախնիք մեր գլուխական բառս τόξου βολὴ, որ է ընկէցումն նետի կամ աղեղան, Թարգմանեն Մտաւան. Յոբ. իա. 16. * Նստաւ յանդիման նորա 'ի բացէ իբրև Մտաւանաւ||:

ՆԵՏԱՁԻԳ. տե՛ս ՆԵՏԸՆԿԷՑ:

## Նժար (Թերևս 'ի Պարսկ. Նէշար):

### Կշիռ:

ՆԺԱՐ կամ ՆԺԱՐ ԿՇՌՈՅ. Յոյն πλάστιγξ. Լատ. lanx, statera.

Նշանակութիւն սորա ոչ է մեզ քաջայայտ. բայց հայելով 'ի թարգմանութիւն Յունականին՝ իմանամք սովաւ զԹաթն կշռոյ: * Զի իբրև մէտ մի 'ի Նժարից կշռոյ է ամենայն աշխարհս առաջի քո||. Իմաստ. ժա. 23: * Նա զի՞ թէ զմայրս Երուսաղեմ 'ի մի լուծ կշռոյ զօդեցից, և կամ զլեառն Արարատեան 'ի կէտ ամբարձման Նժարի միոյ արդարութեան միջնորդ կացուցից, ոչ հաւասարէ այնր հարթութեամբ համազուգակցել||. Նարեկ. Թ. 1: Նորեմիս 'ի մեկնութեան բառից Ճռաշունչ գրոց կոչէ զայն Նէժար, որ մերձաւոր ևս է պարսկականին Նէշար. և թարգմանէ զայն՝ Լուծ կշռոյ: Այլ նախնիք մեր 'ի գիրս Ձ. Մակաբ. Թ. 8. ուր 'ի Յունականն ասի. * Նա 'ի նժարս կշռոյ զլերանցն համարէր զբարձրութիւն կշռել||, լայնաբար եղեալ են 'ի մեզ. * Կամէր ... և զվերին լերանցն ներքին առնել, և զներքինն վերին առնել||:

## Նշան. Պարսկ. Նիշան:

ՆՇԱՆ, ՆԻՇ, ՆՇԱՆԱԿ. Յոյն σημεῖον. Լատ. punctum.
Ըստ Ուսումնականաց նշանակէ զԿէտն անբաժանե-

լի, կամ զե՛ս փոքրագոյն մասն Գծի՝ անմասն յերկայնութենէ, 'ի լայնութենէ, և 'ի խորութենէ. որ և յԵրկայնաչափութեան անդ է սկիզբն ամենայն չափելի տարածութեան և երկայնութեան: *Ունելով յինքեան (տասնեակ Թիւն) զանզատն բնութիւն, և զզատականն. քանզի անզատն կարգեալ դասի ըստ Նշանի միայն. իսկ զատականն ըստ երից տեսակաց՝ Գծոյ, և Մեր'ի վերոյ երևման, և Հաստատնոյ: Քանզի որ երկուք Նշանօք յանգեցեալ է, Գիծ է. իսկ որ յերկուսն զատեալ է, Մեր'ի վերոյ երևումն՝ ծորեալ 'ի լայնութիւն Գծին. իսկ որ յերիս, 'ի Հաստատունն՝ երկայնութեան և լայնութեան խորութիւն առեալ. որովք գոյանայ բնութիւնս (մարմինն երկրաչափական). քանզի աւելի քան զերիս զատութիւնս ոչ ծնաւ: Այս սկզբնաւորութիւնք սոցա թիւք են. անզատ Նշանին՝ մի, և Գծին՝ երկուք, և Մեր'ի վերոյ երևմանն՝ երեք, և Հաստատնոյն՝ չորք. որոց շարադրութիւնք՝ միոյ, և երկուց, և երից, և չորից, կատարէ զտասնեակն‖. Փիլոն: *Նշանակն ըստ միակին կարգեալ. իսկ Գիծն ըստ երկակին. և Երևութիւն ըստ եռակին. իսկ Հաստատունն ըստ քառակին‖. Նոյն: Մեք զՆշան կամ զՆիշ այժմ կոչեմք Կէտ. տե՛ս անդանօր:

## Նոմիսմայ. Յոյն νόμισμα.

Դրամ:

ՆՈՄԻՍՄԱՅ. Լատ. numisma.

Նշանակէ զԴահեկան, և զամենայն տեսակս դրամոց ընդհանրապէս: Դնէ զայս բառ 'ի կարգս կշռոց Շիրակացին. որոյ ա. բ. և գ. օրինակք յաղագս Նոմիսմայի ունին այսպէս. *Նոմիսմայ ըստ Հռովմայեցւոցն Դահեկան անուանի. վասն զի Նոմիսմայ անուն էր թագաւորի, և ըստ իւրում անուան Նոմիսմայ անուանեաց‖: Եպիփան յիշատակէ զՆոմիսմայ 'ի բառն Մագիւրիոն. իսկ 'ի բառն Նումիոն ունի գոգցես զնոյն բան ընդ Շիրակացւոյն, քանզի ասէ. *Նումիոն տպա-

ւորեցաւ 'ի Նումայէ ումեմնէ՝ որ էր թագաւոր Հռովմայեցւոց ։ Նոյնպէս և Կեդրենոս պատմէ վասն Նումայ Պոմպիղեայ՝ որ էր երկրորդ թագաւոր Հռովմայեցւոց և յաջորդ Հռոմուլոսի, թէ * Օ̥ ասսարիոնս յարծաթոյ և 'ի պղնձոյ հատեալ՝ ետ զառաջինն պարգև Հռովմայեցւոց . քանզի յառաջն վարէին զկաշեղէն, զփայտեղէն, և զխեցեղէն դրամս . զոր և յիւր անուն Նումիոն կոչեցաւ ։ Ըստ Պետաւիոս 'ի ծանօթութեան Եպիփանու ոչ հաւանի ընդ ծագումն բառիս Նոմիսմայ յանուանէ Նումայի ։ Numisma կամ nummus ըստ Լատին բառարանին ելանէ 'ի յունական բառէս νόμος, օրէնք . և նշանակէ զԴրամ կամ զԴահեկան կնքեալ ։ Սոյն որոյ և նախնիք մեր միշտ թարգմանեն զայն Դահեկան ։ * Ընծայեմ քեզ նպաստ ոչ զՆումիզմատայն (որ է յոգնականն բառիս Նոմիսմայ, և նշանակէ դրամս) Ըրաբացի ։ Դուրէ . Մագիստ ։

Նուէրանոց ։

Անօթ հեղանելութոյ ։

ՆՈՒԻՐԱՆՈՑ կամ ՆՈՒԻՐԱԿ . Եբր . քասահ . Յուն σπονδεῖον . Լատ . libatorium .

Էր մի յանօթոց տաճարին՝ սկահակն, կամ նման բաժակի . որով և նուիրէին զհեղանելութս ։ * Օ̥ ճաշակս, և զՆուիրանոցս նորա՝ որովք նուիրեսցես ։ Ելք . իե . 29 ։ * Եւ զմսահանացն, և զՆուիրանոցացն, և զՏաշտիցն ոսկեղինաց ։ Ա . Մնաց . ի̃ը . 17 ։ * Ընդէ՞ր 'ի վերայ սեղանոյն սկաւառակք, և բուրվառք, և Նուիրակք, և ճաշակք ։ Սկաւառակքն խորտկացն նշանակք էին, և ճաշակքն խրախճանութեան՝ որովք անապակն չափի, և բուրուառքն խնկոցն ամանք, և Նուիրակքն գինւոյն՝ որ նուիրի ։ Փիլոն ։ Նախնիք մեր յԱ̃ճաշունչ գիրս թարգմանեն եւս զսա՝ Սկիհ, և Սպաս ։

ՆՈՒԿՐԻ տես ՈՒՆԿՐԻ ։

# Շիշ. Պարսկ. Շիշէ:

Անօթ հեղանիւթոց:

ՇԻՇ կամ ՇԻՇ ԻՒՂՈՅ. Եբր. հալլախաւն. Յոյն ἀλάβαστρος կամ ἀλάβαστρον. Լատ. alabaster.

Ըստ Ընտրողի 'ի Մէկն. Մարկ. ժդ. 3. * Ալապաստրն է Մարմարիոն սպիտակ, պարզ իբրև զԱպակի. և ունի կայտեր (Թերևս օգուտ) բազում. որ պահէ զիւղն առանց ապականութեան: * Եւ ջնջեցից զԵրուսաղէմ իբրև զՇիշ մի ջնջեալ, որ կործանեսցի 'ի վերայ երեսաց իւրոց. Դ. Թագ. իա. 13: Աստանօր յայլ օրինակս Յունաց դնի πυξίον. զոր Շիրակացին կոչէ Բեսին: * Մատեաւ առ նա կին մի, որ ունէր Շիշ իւղոյ մեծագնի. Մատթ. իզ. 7: * Եկն կին մի՝ որ ունէր Շիշ իւղոյ նարդեան ազնուի մեծագնոյ. և բեկեալ զՇիշն՝ եհեղ 'ի վերայ գլխոյ նորա. Մարկ. ժդ. 3: * Բերեալ Շիշ մի իւղոյ ազնուի. Ղուկ. է. 37: * Մատուցին առաջի նորա Շիշ մի լցեալ արեամբ և արտասուօք. Վարք Հարանց. Դ. 115: Եպիփան դնէ զսա 'ի կարգս չափուց. և ունի այսպէս. * Ալաբաստր իւղոյ, է Բեկիոն (βικίον, Թերևս պարտ է լինել πυξίον) ապակեղէն՝ որ տանի Լիտր մի. և է չափ կէս Բսեստի: Եւ կոչեցաւ Ալաբաստր վասն Դիւրաբեկն լինելոյ: Յիշատակէ զՇիշ և Շիրակացին ընդ Բիսնի 'ի կարգի անդ չափուց, որ և ըստ ա̃. օրինակի նորա է այսպէս. * Բեսին բոլորակ ապակեղէն. ունի կէս Լիտր. և կոչի ըստ Հայոց Շիշ: Իսկ Դ. և Է. օրինակք նորա ունին այսպէս. * Շիշ իւղոյն որ յԱւետարանին՝ Բեսին է, բոլոր ապակեղէն. ունէր կէս Լիտր: Նոյն Պետաւիոս 'ի ծանօթութեան Եպիփանու զԱլաբաստր դնէ քարեղէն կամ մարմարիոն և եթ, իսկ զԲեսին՝ խեցեղէն և ապակեղէն:

ՈԲՂՈՍ. տես ԴԱՆԳ և ՄԱՏԵՐ:

## Ոձ։

Անօթ ցամաքեղինաց։

Ոձ. Եբր. սալսիլոթ. Յոյն κάρταλλος. Լատ. canistrum, cophinus.

Նշանակէ զկողով կթողաց։ * Կթեցէք կթեցէք, ձաւքան արարէք զմնացորդս Իսրայէլի. և անդրէն կրկնեսջիք՝ որպէս կթող յՈձ իւր։ Երեմ. Զ. 9։ Վասն որոյ զյունականն κάρταλλος այլուր թարգմանեն Նախնիք մեր՝ Կողով կամ Կողովի։

## Ոսկէ։

Դրամ։

ՈՍԿԻ. Եբր. զահաւ. Յոյն χρυσὸς, χρύσεος և χρυσοῦς. Լատ. aurum, moneta aurea, aureus.

Ըստ Փիլոնի՝ * Հալումն և տարածումն գոյացութեանն լաւագոյնն և փորձագոյնն և հաճոյագոյնն՝ Ոսկի է։ Նաև 'ի կշռաբանութեան նշանակէ նա զԴրամ, որոյ կշիռ նոյն է ընդ Դահեկանի։ Վասն որոյ և Նախնիք մեր զյունականն χρυσοῦς իբրև Դրամ և Կշիռ՝ թարգմանեն Դահեկան։ Իսկ Դահեկան հասարակօրէն նշանակէ 'ի մեզ զՈսկի դրամ. զոր Երեմիա 'ի մեկնութեան բառից Ածաշունչ գրոց՝ կոչէ Ֆլորի (Լատ. florinus), և Կարմիր։ Կշիռ Ոսկւոյ իբրև նոյն ընդ Դահեկանի՝ է Երկդրամեան, կամ երկու Դրաքմէ։

## Ոտն։

Չափ երկայնութեան։

ՈՏՆ կամ ՈՏՆԱՉԱՓ. Յոյն ποῦς. Լատ. pes.
Ըստ Ուսումնականաց է չափ երկայնութեան՝ վեշտասան Մատն կամ Մատնաչափ. վասն որոյ և առած է

## Սրթ ։

Անօթ յամաքեղինաց ։

**ՍՐԹ.** Եբր. դուդ. Յոյն κόφινος. Լատ. cophinus, corbis.

Իբրեւ անօթ՝ նշանակէ զկողով կամ զսակառի ։ * ՚Ի բաց արար ՚ի բեռանց զթիկունս նորա, և զձեռս նորա յՍրթ և ՚ի Թի ծառայելոյ ‖. Սաղմ. Ձ. 7 ։ * Զորս թափեալ մեծին ՚Երուսէի՝ հրամայէ կրել Սրթովք ՚ի գոմ մի ‖. Խոր. Գ. 27 ։ * Ա՛ռ դու երկուս յեղբարց հանդերձ երկու Սրթովք և փայտատովք ‖. Յէր ընդ եղէարս ։ * Առէք ՚ի ձեռս ձեր բրիչս և Սրթս ‖. Ընդ ։

՚Նախնիք մեր զյունականդ κόφινος թարգմանեն այլուր Սակառի ։ Իսկ Երեմիա ՚ի մեկնութեան բառից Ա՟ծաշունչ գրոց՝ հանդէպ բառիս Սրթ՝ որ ՚ի Սաղմոսն, դնէ՝ ՚Կ՟Լթոց (կամ կլթոց). որով իմանայ զկողով կամ զՍակառի ։

## Սեղուկ ։

Չափ երկայնութեան ։

**ՍԵՂՈՒԿ** կամ **ՍԵՂԿԵԱՆ.** Եբր. տօֆախ. Յոյն παλαιστής. Լատ. palmus minor.

՚Նշանակէ զչափ երկայնութեան չորից խոտորնակի կցեալ մատանց. վասն որոյ և ըստ առածի Սեսումնականաց * Չորք Կարեհասք՝ են ՚ի Ս՟ատին, և Ս՟ատնաչափք՝ չորք ՚ի յՍեղկին ։ ՚Քառեակք Սեղուկք յՍոնաչափին, հինգ Սոնաչափք՝ ՚ի ՚Քայլ դընին ‖ ։ * Կանգուն մի և Սեղուկ գոգած խորութեան նորա ‖. Եզեկ. ԽԳ. 13 ։ * Եւ արասցես նմա պսակ Սեղկեան շուրջանակի ‖. Ելք. ԻԵ. 25 ։ * Եւ արար նմին պսակ Սեղկեան շուրջանակի ‖. Ընդ. ԼԷ. 12 ։ * Եւ ծնօտս Սեղկեանս՝ քանդակագործս ունիցին ՚ի ներքուստ շուրջանակի ‖. Եզեկ. Խ. 43 ։ ՚Նախնիք մեր զյունականդ παλαιστής թարգմանեն եւս Թիզ. զոր դնեն և հանդէպ

յունականին σπιθαμή. Լատ palmus major. Սան որոյ և 'ի մեզ կրկին է Թիզն՝ մեծ, և փոքր. մեծն է չափ տարածութեան՝ որ ձգի 'ի մէջ բութամատին և ճկութի՝ 'ի բանալ անդ զձոսա. զոր և կոչեմք Թիզ բնական. իսկ փոքրն է չափ չորից կցեալ մատանց. որ և առանձին իմն կոչի Ուղուկ։ Տես զայսմանէ և 'ի Թիզ.

ՈՒՆԾԱՅ. տես ՈՒՆԿԻ։

Ունկի. Յոյն οὐγγία.

Կշիռ։

ՈՒՆԿԻ կամ ՆՈՒԿԻ. Լատ. uncia. Է 12 մասն Լտեր. ա̄. բ̄. և դ̄. Օրինակք Շիրակացւոյն 'ի կարգս կշռոց յաղագս Ունկոյ կամ Նուկոյ ունին այսպէս. * Կշիռ զ̄ Դահեկանի լինի Ունկի մի։ Իսկ մանր բաժանելով զՈւնկին՝ լինի Դահեկան զ̄, Սիկղ դ̄, Սատեր ը̄, Սիմէս ժբ̄, Տրիմէս ժը̄, Դրամար իդ̄, Սինգլդ̄, Կերատ ճխդ̄, Դանգ մձը̄, և Դարեհատ շհզ̄։ դ̄. և ե̄. օրինակք, ընդ որս և զ̄. ունին այսպէս. * Ունկին զ̄ Դահեկանի կշռորդ է. և ժբ̄ Ունկին Լիտր մի է։ Ունկին դարձեալ՝ բ̄ Սատեր է. մի Սատերն սակաւ ինչ պակաս է 'ի դ̄ Դրամէ, որ է կէս Ունկոյ։ Յիսուն Ունկին բճ̄ Սիկղ է. որով կշռէին զհերս Աբեսողոմայ որդւոյն Դաւթի. որ է Դահեկան գճ̄։ Սատերն կէս Ունկոյ է, որ է դ̄ Դրամի կշռորդ ... Մնասն ըստ Իտալացւոց խդ̄ Ունկեաց կշռորդ է ... Քսեստ ըստ Իտալացւոց և Կաստրացւոց ի̄ Ունկեաց (կշռորդ է)։ Յաւելուած բ̄. օրինակին ունի այսպէս. * Ունկի, որ է Ունծայ ... Նուկին զ̄ Դահեկան է. Լիտրն ժբ̄ Նուկի է, որ լինի հբ̄ Դահեկան ... Սատերն բ̄ մասն է Նուկոյն ... և Սիկղ չորրորդ մասն է Ունկոյ, որ է Դահեկանի կիսոյ չափով։ Երեմիա 'ի մեկնութեան բառից Ածաշունչ գրոց հանգոյն Շիրակացւոյն ունի այսպէս. * ա̄ Լիտրն ժբ̄ Նուկի է. մէկ

ՙՂուկին ՃԷ Դրահեկան է. մէկ Լիտրն ՀԸ Փլորի (կամ Դրահեկան) է‖։

Եպիփան ունի այսպէս. * Հարիւր քսան և հինգե-րորդ մասն Տաղանդի՝ է Լիտր մի։ Իսկ Լիտր է երկո-տասան Ունկի։ Եւ Ունկի է երկու Սատեր։ Եւ Սա-տեր՝ որ է կէս Ունկոյ, է Դիդրաքմայ մի... Սիկղ՝ որ կոչի և Կոդրանտ, է չորրորդ մասն Ունկոյ, և կէս Սատերի, և երկու Դրաքմէ. քանզի Դրաքմէ ութե-րորդ մասն է Ունկոյ։ Եւ կոչեցաւ կշիռ Դրաքմէ նո-վին կշռով Սկեղ, որով կշռէին ըստ ժամանակին զհերս Աբիսողոմայ՝ յորժամ փոքրէր. և էր կշիռ նորա ՃԻ Սիկղ. որ է Ունկի Սկեղ միոյ. որ առնէ երկու Լիտր և կէս‖։ Բայց այս բանք Եպիփանու՝ ըստ Պետաւիոսի աղաւաղեալ են բազմօք յանհմտութենէ գրչաց։ Սա-կայն շատ է մեզ այն, զի և Եպիփան զԼիտրն դնէ ԺԲ Ունկի, կամ զՈւնկին դնէ ԺԲ մասն Լտեր։

Ըստ Լատին բառարանին՝ Ունկի է բառ Սիկիլիաց-ւոց, և է 12 մասն Լտեր։ Իսկ մասունք Ունկոյ են Դրաքմէ (drachma), Սեքստուղա (sextula), Դուելլա (duella), և Սիկղ (siclus)։ Դրաքմէ է ութերորդ մասն Ունկոյ, Սեքստուղա՝ վեցերորդ, Դուելլա՝ եր-րորդ, և Սիկղ՝ չորրորդ։ Ըստ նոյն բառարանին Ուն-կի նշանակէ ևս ընդհանրապէս զերկոտասաներորդ մասն զինչ և իցէ իրաց։ Որպէս և իբրև չափ երկայ-նութեան՝ նշանակէ զԹոյթ կամ զՄատնաչափ։ Դար-ձեալ ըստ արդեացս կրկին է Ունկին՝ մեծ և փոքր, ըստ չափու մեծ և փոքր Լտերաց. մեծն է երկոտա-սաներորդ մասն մեծի Լտեր, և է 12 Դրամ կամ Դրաքմէ. իսկ փոքրն նոյնպէս երկոտասաներորդ մասն փոքու Լտեր, և է 8 Դրամ կամ Դրաքմէ։ * Բիւր քան-քարոց խնդիր՝ ուես չունիմ կշիռ մի Ունկի‖. ՙՂուբէկ. իԹ. 2։ * Եւ էր կերակուր նորա 'ի շաբաթն միան-գամ երկու Ունկի հաց. որ է երկու Ունծայ ըստ Յու-նաց (οὐγγία) և նոյն չափովն ջուր։ Եւ Ունծայն ԺԲ Մթխալ (Թերևս Դրամ կամ Դրաքմէ) է. որ է ԺԲ Դրամակշիռ. և Ունկին նոյն է ընդ մերս‖. Վարք Հա-րանց. ԺԶ. 306։ Բայց յայս բան շփոթութիւն տեսա-

նի ոչ միայն հաշուի, այլեւ անուան. վասն որոյ՝ որպէս եդաք 'ի վերոյ, Սենկին է կշիռ 12 կամ 8 Դրաքմէի, կամ երկոտասաներորդ մասն Լտերի. Եւ բառքս Սենկի, Եուկի, Սենծայ, և Սենցա՝ են նոյնանիշ. Թէպէտեւ ամենեքին ուղղութեամբ պարտին լինել Սենկի եւեթ.

## Չափ.

ՉԱՓ (իբրեւ քանակութիւն կամ անօթ հեղանիւթոց և ցամաքեղինաց). Յոյն μέτρον. Լատ. mensura. Եբր. էֆահ և պատ.

Հասարակօրէն իմանամք սովաւ 'ի բանս ցամաքեղինաց զԳորիւ, և զԱրդու. իսկ 'ի բանս հեղանիւթոց՝ զՄար, զՍափոր, և զԳորակ. Բայց ընդհանրապէս է անուն ամենայն անօթոց և քանակութեանց. *Զոյգք արդարք, և Կշիռք արդարք, և Չափք արդարք, և Կապիճ արդար լինիցի ձեր. Ղեւտ. ԺԹ. 36. *Մ՛ի լինիցի 'ի տան քում Չափ, և Չափ՝ մեծ կամ փոքր ... Չափ ստոյգ և արդար եղիցի քեզ. Բ. Օրէն. ԻԵ. 14-15. *Կշիռ մեծ և փոքր, և Չափ կրկին՝ պիղծ են առաջի Տեառն երկոքեան. Առակ. Ի. 10. *Զվեցերորդ մասն Չափուն. Անոր. 14. Յորս եբրայականն է էֆահ. *Եւ գինի քսան հազար Չափ, և ձէթ քսան հազար Չափ (Եբր. պատ). Բ. Մնաց. Բ. 10. *Մ՛ի առնիցես անիրաւութիւն 'ի դատաստանի, 'ի Չափս (Եբր. միդդահ), և 'ի Կշիռս, և 'ի Զոյգս. Ղեւտ. ԺԹ. 35. *Տուք, և տացի ձեզ. Չափ բարւոք, թաթաղուն, շարժուն, զեղուն՝ տացեն 'ի գոգս ձեր. նովին Չափով՝ որով չափէք, չափեսցի ձեզ. Ղուկ. Զ. 38. *Փութա՛ և զանգեա՛ երիս Չափս (ըստ Ածաշունչ գրոց՝ Գրիւ) նաշիհ ... փութա՛ և արա՛ երիս Չափս նկանի. Փիլոն. *Գնեսցես հայս տասն, և միս Լտերս տասն, և տասն Չափ գինի... 'ի ժամու ճաշուն կերիցես մի հաց, և Լիտր մի միս, և Մար մի գինի արբ. Վարք Հարանց. ժա. 248. *Եւ տանէր (ծովն պղնձի) երիս հազարս Չափ (Եբր. պատ. Յոյն μετρητής). Բ. Մնաց. Դ. 5.

* Ժողովեցէք 'ի դմանէ ... Չափով ըստ գլխոյ ||. Ելք. ԺԶ. 16 : * Եւ չափեցին Չափովն ||. Անդ. 18 : * Երկուս Չափս առ մի մի ||. Անդ. 22 : * Լցէք լի Չափով զմանանայն յամանս մի ||. Անդ. 32 : * Եւ Չափն էր տասներորդ երից Գրուաց ||. Անդ. 36 : Յայսոսիկ յունականն է γομὸρ. Եբր. ղօմէր. Լատ. gomor կամ chomer.

Չափաբանք 'ի ձեռն Մովսէսի առնուն զչափ ամենայն անօթոց կամ ընդունարանաց. վասն որոյ և ըստ Երանկացւոյն * Չափ առաջնորդ Չափուց Մովսէս ||:

Չափ (իբրև երկայնաչափ). Յոյն μέτρον. Լատ. mensura. Եբր. միդդահ, քաւ և ամմահ :

Ի ընդհանուր անուն ամենայն երկայնաձիգ և չափելի տարածութեան, սկսեալ 'ի Կիտէ, և կամ յերկրաչափական Գծէ՝ մինչև ցՓարսախ, և այլն. որ և ըստ Խորենացւոյն կոչի Մոզարեւական Չափ : Այլ հասարակօրէն, և յատկապէս 'ի Սուրբ գիրս՝ նշանակէ նա զԼար, զՉող, և զԿանգուն ձարտարապետաց : * Եւ Չափ 'ի ձեռին իւրում. և չափեաց հազար՝ Չափովն, և էանց ընդ ջուրն ||. Եզեկ. ԽԷ. 3 : * Եւ 'ի ձեռին նորա էր Լար շինողաց, և Չող Չափու ||. Անդ. Խ. 3 : * Եւ 'ի ձեռին առնն Չող Չափու 'ի վեց կանգնոյ՝ և թըզաւ ||. Անդ. 5 : * Եւ չափեաց հինգհարիւր՝ Չափով Չողոյն ||. Անդ. ԽԲ. 16 : * Ո՞ եդ զՉափ դորա, թէ գիտիցես. կամ ո՞վ էարկ 'ի վերայ դորա զԼար ||. Յոբ. ԼԸ. 5 : * Եւ ձգեցից 'ի վերայ Երուսաղէմի զՉափն Սամարիայ, և զԿշիռ տանն Աքայաբու ||. Դ. Թագ. ԻԱ. 13 : * Ընտրեաց հիւսն զփայտ, Չափով կշռեաց զնա, և գրոշեաց ||. Եսայ. ԽԴ. 13 : * Տունս իմ վերստին շինեսցի՝ ասէ Տէր ամենակալ. և Չափ ձգեսցի միւսանգամ 'ի վերայ Երուսաղէմի ||. Զաքար. Ա. 16 : * Այլ ըստ Չափոյ կանոնին՝ զոր բաժանեաց մեզ Ած Չափով, հասանել մինչև առ ձեզ ||. Բ. Կորնթ. Ժ. 13 : * Եւ չափեաց զպարիսպն նորա հարիւր և քառասուն և չորս Ասպարէզս. Չափ մարդոյ՝ որ է հրեշտակի (կամի ասել՝ հրեշտակն ունէր 'ի ձեռին իւրում զՉափ մարդոյ, և նովաւ չափէր) ||. Յայտ. ԻԱ. 17 : * Այլ

զամենայն Չափով, և Թուով, և Կշռով կարգեցեր ։ Իմաստ. ժա. 21 ։ Յայս բան Իմաստնոյն բառս Չափ բովանդակէ յինքեան ոչ միայն զամենայն տեսակս չափելի անօթոց կամ ընդունարանաց, այլև զհամօրէն չափս երկայնութեան՝ զոր կոչեմք Ասպարիսական ։

Չորեքդրամեան ։

Դրամ և Կշիռ ։

ՉՈՐԵՔԴՐԱՄԵԱՆ. Եբր. ռէկէմ. Յոյն τετραδράχμον կամ τετραδίδραγμον. Լատ. quadridrachma.

Նշանակէ զդահեկան, որոյ կշիռն է չորս Դրամ կամ Դրաքմէ ։ *Նստուն նմա ... Չորեքդրամեան մի ոսկի անգիր (այսինքն՝ ձոյլ ոսկի, և ոչ կնքեալ) ։ Յովբ. խբ. 11 ։ Նոյն է սա ընդ բառիս Ստատեր. զի և նա կրկին Երկդրամեան է, որ է Չորեքդրամեան ։

Պայուսակ ։

Կշիռ ։

ՊԱՅՈՒՍԱԿ ։ Ունիմք զայս բառ 'ի ա. բ. և գ. օրինակս Կշռոց Շիրակացւոյն ընդ Դրամ բառի՝ այսպէս. *Յաղագս Դրամի ։ Դրամ ըստ Պարսկական լեզուի անուանեցաւ, և յարծաթոյ տպաւորեցաւ. որ է Ճ մասն Լտեր ։ Եւ Ստատեր Դ Դրամաց կշիռ ։ Եւ Պայուսակն Ծ Լիտր, որ է Ռ Ստատեր. որ լինի Ռ դրամակշիռ և Թիւ ։ Այլ տիրապէս նշանակութիւն այսր բառի (եթէ չկայցէ 'ի նմա վրիպակ գրչի) անծանօթ է մեզ, քանզի չգտանեմք այլուր ։

Պայուսակ ։

Անօթ ցամաքեղինաց ։

ՊԱՅՈՒՍԱԿ. Եբր. ժէո. Յոյն μάρσιππος. Լատ. marsupium, crumena.

Նշանակէ զաման քրձեղէն կամ կաշեղէն. և է նոյ-նանիշ ընդ բառիցս՝ Պարկ, Մախաղ, և Քուրձ։ *Իցէ՞ թէ արդարացի կաշառօք (Յոյն՝ կշռօք) անօրէնն, և Պայուսակաւ կշռոց նենգութեան‖. Միք. Զ. 11։ Նախնիք մեր զյունականդ μάρσιππος այլուր թարգմանեն Քուրձ, և Աման։ Կասկածիմք, թէ Պայուսակ 'ի վերոյ իցէ նուազականն սորա, և նշանակեացէ զՔսակ 50 Լիտր դրամոց.

Պատժանակ։

Անօթ հեղանիւթոց։

ՊԱՏԺԱՆԱԿ. Յոյն κύλιξ. Լատ. calix. Ունիմք զայս բառ 'ի գիրս Փիլոնի՝ յիշատակեալ ընդ այլ անօթոց այսպէս. *Բաժակաց և ըմպելեաց բազմութիւն՝ կարգեցելոց և մի ըստ միոջէ եդելոց ըստ իւրաքանչիւր տեսակի. Սփիւռք և Տաշտք, և Ըմպիկք և Պատժանակք, և բազմաձև արուեստականագոյն Նաւակք և Ճախարակեայք՝ իմաստուն հանճարեղ արանց ճշգրիտ ստուգութեամբ կազմեալ ձեռագործք‖։ Այլ փոխանակ Ըմպիկ և Պատժանակ բառիցս 'ի Հայումն՝ 'ի յունական բնագրի անդ գտանի միայն բառս κύλικες (Ըմպանակք կամ Սկիհք). միայն թէ ստուգաբանութիւն Պատժանակ բառիս ստանօր՝ ծածկեալ է 'ի մէնջ։

Պարոպսիս. Յոյն παροψὶς.

Անօթ ջամբեղինաց և հեղանիւթոց։

ՊԱՐՈՊՍԻՍ կամ ՊԱՐՈՊՍԻԴՈՍ. Լատ. paropsis, patina. Յիշատակէ զայս բառ Ը̃ Կրակացին 'ի կարգս չափուց, և ունիմք 'ի ա̃. օրինակն միայն ընդ Տրիվղոնի այսպէս. *Տրիվղոն (Յոյն τρυβλίον) Սկաւառակ է բոլորակ և խոր. նոյն և Պարոպսիդոս կոչի. և ունի կէս Քսեստի‖։ Որպէս և 'ի վերնագրի անդ դնի.

# Շիշ. Պարսկ. Շիշէ:

### Անօթ հեղանիւթոց:

ՇԻՇ կամ ՇԻՇ ԻՒՂՈՅ. Եբր. հալլախաթ. Յուն ἀλάβαστρος կամ ἀλάβαστρον. Լատ. alabaster.

Ըստ Բարսղի 'ի Մեկն. Մարկ. ժԴ. 3. * Աղաբաստրն է Մարմարիոն սպիտակ, պարզ իբրև զԱպակի. և ունի կայտեր (Թերևս օղուտ) բազում. որ պահէ զիւղն առանց ապականութեան: * Եւ ջնջեցից զԵրուսաղէմ իբրև զՇիշ մի ջնջեալ, որ կործանեսցի 'ի վերայ երեսաց իւրոց: Դ. Թագ. իա. 13: Աստանօր յայլ օրինակս Յունաց դնի πυξίον. զոր Շիրակացին կոչէ Բնեսին: * Մատեաւ առ նա կին մի, որ ունէր Շիշ իւղոյ մեծագնի: Մատթ. իԶ. 7: * Եկն կին մի՝ որ ունէր Շիշ իւղոյ նարդեան ազնուի մեծագնոյ. և բեկեալ զՇիշն՝ եհեղ 'ի վերայ գլխոյ նորա: Մարկ. ժԴ. 3: * Բերեալ Շիշ մի իւղոյ ազնուի: Ղուկ. Է. 37: * Մատուցին առաջի նորա Շիշ մի լցեալ արեամբ և արտասուօք: Վարք հարանց. Դ. 113: Եպիփան դնէ զսա 'ի կարգս չափուց. և ունի այսպէս. * Աղաբաստր իւղոյ, է Բեկիոն (βικίον, Թերևս պարտ է լինել πυξίον) ապակեղէն՝ որ տանի Լիտր մի. և է չափ կէս Քսեստի: Եւ կոչեցաւ Աղաբաստր վասն Դիւրաբեկն լինելոյ: Յիշատակէ զՇիշ և Շիրակացին ընդ Բիսանի 'ի կարգի անդ չափուց, որ և ըստ Ա. օրինակին նորա է այսպէս. * Բեսին բոլորակ ապակեղէն. ունի կէս Լիտր. և կոչի ըստ Հայոց Շիշ: Իսկ Դ. և Ե. օրինակք նորա ունին այսպէս. * Շիշ իւղոյն որ յԱւետարանին՝ Բեսին է, բոլոր ապակեղէն. ունէր կէս Լիտր: Այլ Պետաւիոս 'ի ծանօթութեան Եպիփանու զԱղաբաստր դնէ քարեղէն կամ մարմարիոն և եթ, իսկ զԲեսին՝ խեցեղէն և ապակեղէն:

ՈԲՂՈՍ. տես ԴԱՆԳ և ՄԱՏԵՐ:

## Ոճ։

Անօթ ցամաքեղինաց։

ՈՃ. Եբր. սալսիլոթ. Յոյն κάρταλλος. Լատ. canistrum, cophinus.

Նշանակէ զկողով կթողաց։ * Կթեցէք կթեցէք, ճռաքաղ արարէք զմնացորդս Իսրայէլի. և անդրէն կրկնեսջիք՝ որպէս կթող յՈճ իւր։ Երեմ. Զ. 9։ Վասն որոյ զյունականդ κάρταλλος այլուր թարգմանեն Նախնիք մեր՝ Կողով կամ Կողովի։

## Ոսկի։

Դրամ։

ՈՍԿԻ. Եբր. զահավ. Յոյն χρυσὸς, χρύσεος և χρυσοῦς. Լատ. aurum, moneta aurea, aureus.

Ըստ Փիլոնի՝ * Հալուն և տարածուն գոյացութեանն լաւագոյնն և փորձագոյնն և հաճոյագոյնն՝ Ոսկի է։ Այլ 'ի կշռաբանութեան նշանակէ նա զԴրամ, որոյ կշիռ նոյն է ընդ Դահեկանի։ Վասն որոյ և Նախնիք մեր զյունականդ χρυσοῦς իբրև Դրամ և Կշիռ՝ թարգմանեն Դահեկան։ Իսկ Դահեկան հասարակօրէն նշանակէ 'ի մեզ զՈսկի դրամ. զոր Երեմիա 'ի մեկնութեան բառից Ածաշունչ գրոց՝ կոչէ Ֆլորի (Լատ. florinus), և Կարմիր։ Կշիռ Ոսկւոյ իբրև նոյն ընդ Դահեկանի՝ է Երկդրամեան, կամ երկու Դրաքմէ։

## Ոտն։

Չափ երկայնութեան։

ՈՏՆ կամ ՈՏՆԱՉԱՓ. Յոյն ποῦς. Լատ. pes.

Ըստ Ուսումնականաց է չափ երկայնութեան՝ վեշտասան Մատն կամ Մատնաչափ. վասն որոյ և առած է

առ Նոսա. * Չորք Գարեհատք՝ են 'ի Մատին, և Մատնաչափք՝ չորք 'ի յՈւղկին: Քառեակ Ուղղուկք՝ յՈտնաչափին, հինգ Ոտնաչափք՝ 'ի Քայլ դընին||: Նոյնպէս վեշտասան Մատնաչափ դնեն զՈտնաչափն և մերս Խորենացի, և Շիրակացին: * Իսկ մեծ քաղաքն՝ որ յԱսորիս է, Անտիոքա. որ է ուԹ Ասպարիսաց, և Ոտից հռ||. Վարդ. Աշխ: * Օր Նա (երկրաչափուԹիւնն) ունի սկիզըն ... զԳարեհատն, զԹիզն, և զՈտն. այսինքն՝ 'ի կարճէն յերկարն ժամանէ, և չափէ զերկիր||. 'ի Ճշն. հնն. փերով: * Շինեաց խորձիլԹ 'ի լայնուԹիւն Ոտնաչափս Ծ, և յերկայնուԹիւն Ոտնաչափս Յ, և բարձրուԹիւն Ոտնաչափս Լ||. Մաշտ. Հարանց. իէ. 493: Ըստ Լատին բառարանին՝ Ոտն է վեշտասան Մատն. և բաժանի յերկոտասան Մասունս, կամ Ունկիս: Այլ ըստ արդեաց Ոտնաչափն է 12 Մատնաչափ, 144 Գծաչափ, և 1440 Մասնկունք: Իսկ վեց Ոտնաչափն է Ձող մի (Լատ. pertica):

Միայն ծանիր զի չափ Ոտին այլևայլ է ըստ ազգաց, և ըստ գաւառաց. Նմին իրի աստի ծագի առ Նոսա և տարբերուԹիւնն Ասպարիսի, Մղոնի, և այլն. այլ մեք ընդ Խորենացւոյն Ոտամբ իմանամք զԵրկրաչափականն, որ է 16 Մատնաչափ:

Ոտնալուաց:

Անօթ հեղանիւթոց:

ՈՏՆԱԼՈՒԱՑ. Յոյն ποδονιπτὴρ. Լատ. pelluvium. Անօթ կոնքաձև 'ի պէտս լուանալոյ զոտս. և է նոյնանիշ ընդ բառիցս՝ Աւազան, Լոգարան, և Լուացարան: * Քարինք և փայտք ... 'ի քարահատից և 'ի փայտահարաց յիւրեանց արմատոյն 'ի բաց կտրեալ ... Լոգարանք եղեն, և Ոտնալուացք||. Փիլոն: Բայց այս նշանակուԹիւն բառիս սակաւ գտանի առ Նախնիս մեր:

## Սրթ ։

Անօթ չափաքեղինաց ։

ՍՐԹ. Եբր. դուդ. Յոյն κόφινος. Լատ. cophinus, corbis.

Իբրեւ անօթ՝ նշանակէ զկողով կամ զսակառի ։ * Ի բաց արար 'ի բեռանց զթիկունս նորա, և զձեռս նորա յՍրթ և 'ի թի ծառայելոյ ॥. Սաղմ. Ձ. 7 ։ * Զորս թափեալ մեծին Ներսեսի՝ հրամայէ կրել Սրթովք 'ի գոմ մի ॥. Խոր. Գ. 27 ։ * Ա՛ռ դու երկուս յեղբարց հանդերձ երկու Սրթովք և փայտատովք ॥. Յէր ընդ եղէառ ։ * Առնէք 'ի ձեռս ձեր բրիչս և Սրթս ॥. Ընդ ։

Նախնիք մեր զյունականդ κόφινος թարգմանեն այլուր Սակառի ։ Իսկ Երեմիա 'ի մեկնութեան բառից Ածաշունչ գրոց՝ հանդէպ բառիս Սրթ՝ որ 'ի Սաղմոսն, դնէ՝ Բլթոց (կամ կլթոց)․ որով իմանայ զԿողով կամ զՍակառի ։

## Սողուկ ։

Չափ երկայնութեան ։

ՍՈՂՈՒԿ կամ ՍՈՂԿԵԱՆ. Եբր. տօֆախ. Յոյն παλαιστής. Լատ. palmus minor.

Նշանակէ զչափ երկայնութեան չորից խոտորնակէ կցեալ մատանց․ վասն որոյ և ըստ աւանդի Ուսումնականաց * Չորք Գարեհատք՝ են 'ի Մատին, և Մատնաչափք՝ չորք 'ի յՍողկին ։ Քառեակք Սողուկք յՈտնաչափին, հինգ Ոտնաչափք՝ 'ի Քայլ դընին ॥ ։ * Կանգուն մի և Սողուկ գոգած խորութեան նորա ॥. Եզեկ. ԽԳ. 13 ։ * Եւ արասցես նմա պսակ Սողկեան շուրջանակի ॥. Ելք. ԻԵ. 25 ։ * Եւ արար նմին պսակ Սողկեան շուրջանակի ॥. Ընդ. ԼԷ. 12 ։ * Եւ ծնօտս Սողկեանս՝ քանդակագործս ունիցին 'ի ներքուստ շուրջանակի ॥. Եզեկ. Խ. 43 ։ Նախնիք մեր զյունականդ παλαιστής թարգմանեն և Թիզ․ զոր դնեն և հանդէպ

յունականիս σπιθαμή. Լատ palmus major. Սա՛ն որոյ և 'ի մեզ կրկին է Թիզն՝ մեծ, և փոքր. մեծն է չափ տարածութեան՝ որ ձգի 'ի մէջ բութամատին և ճկութի՝ 'ի բանալ անդ զձեռս. զոր և կոչեմք Թիզ բնական. իսկ փոքրն է չափ չորից կցեալ մատանց. որ և առանձին իմն կոչի Ութուկ: Տես զայսմանէ և 'ի Թիզ.

ՈՒՆԾԱՅ. տես ՈՒՆԿԻ:

Ունկի. Յոյն οὐγγία.

Կշիռ:

ՈՒՆԿԻ կամ ՆՈՒԿԻ. Լատ. uncia. Ի 12 մասն Լտեր: ա. բ. և գ. Օրինակք Շիրակացւոյն 'ի կարգս կշռոց յաղագս Ունկոյ կամ Նուկոյ ունին այսպէս. * Կշիռ գ Դահեկանի լինի Ունկի մի: Իսկ մանր բաժանելով զՈւնկին՝ լինի Դահեկան գ, Սիկղ դ, Սատեր ը, Սիմէս ժբ, Տրմէս ժը, Դրամար իդ, Սինգ լդ, Կերատ ճխդ, Դանգ մձը, և Դարեհատ շհգ‖: դ. և ե. օրինակք, ընդ որս և գ. ունին այսպէս. * Ունկին գ Դահեկանի կշռորդ է. և ժբ Ունկին Լիտր մի է: Ունկին դարձեալ՝ բ Սատեր է. մի Սատերն սակաւ ինչ պակաս է 'ի դ Դրամէ, որ է կէս Ունկոյ: Յիսուն Ունկին բձ Սիկղ է. որով կշռէին զհերս Աբեսողոմայ որդւոյն Դաւթի. որ է Դահեկան գձ: Սատերն կէս Ունկոյ է, որ է դ Դրամի կշռորդ ... Մնասն ըստ Իտալացւոց խդ Ունկեաց կշռորդ է ... Քսեստ ըստ Իտալացւոց և Կաստրացւոց ի Ունկեաց (կշռորդ է)‖: Յաւելուած բ. օրինակին ունի այսպէս. * Ունկի, որ է Ունծայ ... Նուկին գ Դահեկան է. Լիտրն ժբ Նուկի է, որ լինի հբ Դահեկան ... Սատերն ը մասն է Նուկոյն ... և Սիկղ չորրորդ մասն է Ունկոյ, որ է Դահեկանի կիսոյ չափով‖: Երեմիա 'ի մեկնութեան բառից Ածաշունչ գրոց հանգոյն Շիրակացւոյն ունի այսպէս. * ա Լիտրն ժբ Նուկի է. մէկ

*Եուկլին Է Պռահեկան է. մի՛ Լիտրն ՀԵ Փլորի (կամ Պռահեկան) է‖:

Եպիփան ունի այսպէս. * Հարիւր քսան և հինգե-րորդ մասն Տաղանդի՝ է Լիտր մի: Իսկ Լիտր է երկո-տասան Ունկի: Եւ Ունկի է երկու Սատեր: Եւ Սա-տեր՝ որ է կէս Ունկոյ, է Պոխդրաքմայ մի... Սիկղ՝ որ կոչի և Կոդրանտ, է չորրորդ մասն Ունկոյ, և կէս Սատերի, և երկու Դրաքմէ. քանզի Դրաքմէ ութե-րորդ մասն է Ունկոյ: Եւ կոչեցաւ կշիռ Դրաքմէ նո-վին կշռով Սկեղ, որով կշռէին ըստ ժամանակին զհերս Աբիսողոմայ՝ յորժամ փոքրէր. և եր կշիռ նորա ՄԾ Սիկղ. որ է Ունկի Սկեղ միոյ. որ առնէ երկու Լիտր և կէս‖: Այլ այս բանք Եպիփանու՝ ըստ Պետաւիոսի աղաւաղեալ են բազմօք յանհմտութենէ գրչաց: Սա-կայն շատ է մեզ այն, զի և Եպիփան զԼիտրն դնէ ԺԲ Ունկի, կամ զՈւնկին դնէ ԺԲ մասն Լտեր:

Ըստ Լատին բառարանին՝ Ունկի է բառ Սիկիլիաց-ւոց՝, և է 12 մասն Լտեր: Իսկ մասունք Ունկոյ են Դրաքմէ (drachma), Սեքստուղա (sextula), Դուէլլա (duella), և Սիկղ (siclus): Դրաքմէ է ութերորդ մասն Ունկոյ, Սեքստուղա՝ վեցերորդ, Դուէլլա՝ եր-րորդ, և Սիկղ՝ չորրորդ: Ըստ նոյն բառարանին Ուն-կի նշանակէ ևս ընդհանրապէս զերկոտասաներորդ մասն զինչ և իցէ իրաց: Որպէս և իբրև չափ երկայ-նութեան՝ նշանակէ զԹոյթ կամ զՄատնաչափ: Դար-ձեալ ըստ արդեացս կրկին է Ունկին՝ մեծ և փոքր, ըստ չափու մեծ և փոքր Լտերաց. մեծն է երկոտա-սաներորդ մասն մեծի Լտեր, և է 12 Դրամ կամ Դրաքմէ. իսկ փոքրն նոյնպէս երկոտասաներորդ մասն փոքու Լտեր, և է 8 Դրամ կամ Դրաքմէ: * Բիւր քան-քարոց խնդիր՝ ևս չունիմ կշիռ մի Ունկի‖. Եզեկ. ԻԶ. 2: * Եւ եր կերակուր նորա 'ի շաբաթն միան-գամ երկու Ունկի հաց. որ է երկու Ունծայ ըստ Յու-նաց (οὐγγία) և նոյն չափով ջուր: Եւ Ունծայն ԺԲ Սթխալ (Թերևս Դրամ կամ Դրաքմէ) է. որ է ԺԲ Դրամանկշիռ. և Ունկին նոյն է ընդ մերս‖. Վարք հա-րանց. ԺԴ. 306: Այլ յայս բան շփոթութիւն տեսա-

նի ոչ միայն Հաշուի, այլև անուան. վասն որոյ՝ որպէս եդաք 'ի վերոյ, Սիկղն է կշիռ 12 կամ 8 Դրաքմէի, կամ երկոտասաներորդ մասն Լտեր: Եւ բառքս Սիկղ, Սուկղ, Սինձայ, և Սինցա՝ են նոյնանիշ. Թէպէտև ամենեքին ուղղութեամբ պարտին լինել Սիկղ ևեթ:

## Չափ:

ՉԱՓ (իբրև քանակութիւն կամ անօթ հեղանիւթոց և ցամաքեղինաց). Յոյն μέτρον. Լատ. mensura. Եբր. էֆահ և պաթ:

Հասարակօրէն իմանամք սովաւ 'ի քանս ցամաքեղինաց զԳրիւ, և զԱրդու. իսկ 'ի քանս հեղանիւթոց՝ զՄար, զՍափոր, և զԳորակ: Բայց ընդհանրապէս է անուն ամենայն անօթոց և քանակութեանց: *Զոյգք արդարք, և Կշիռք արդարք, և Չափք արդարք, և Կապիճ արդար լինիցի ձեր. Ղևտ. ԺԹ. 36: *Մի լինիցի 'ի տան քում Չափ, և Չափ՝ մեծ կամ փոքր ... Չափ ստոյգ և արդար եղիցի քեզ. Բ. Օրէն. ԻԵ. 14-15: *Կշիռ մեծ և փոքր, և Չափ կրկին՝ պիղծ են առաջի Տեառն երկոքեան. Առակ. Ի. 10: *Զվեցերորդ մասն Չափուն. Եզր. 14: Յորս եբրայականն է էֆահ: *Եւ գինի քսան հազար Չափ, և ձէթ քսան հազար Չափ (Եբր. պաթ). Բ. Մնաց. Բ. 10: *Մի առնիցես անիրաւութիւն 'ի դատաստանի, 'ի Չափս (Եբր. միդդահ), և 'ի Կշիռս, և 'ի Զոյգս. Ղևտ. ԺԹ. 35: *Տուք, և տացի ձեզ. Չափ բարւոք, թաթաղուն, շարժուն, զեղուն՝ տացեն 'ի գոգս ձեր. նովին Չափով՝ որով չափէք, չափեսցի ձեզ. Ղուկ. Զ. 38: *Փութա՛ և զանգեա՛ երիս Չափս (ըստ Ածաշունչ գրոց՝ Գրիւ) նաշիհ ... փութա՛ և արա՛ երիս Չափս նկանակ. Փիլոն: *Գնեսցես հացս տասն, և միս Լտերս տասն, և տասն Չափ գինի ... 'ի ժամու ճաշոյն կերիցես մի հաց, և Լիտր մի միս, և Մար մի գինի արբ. Վարք Հարանց. ԺԱ. 248: *Եւ տանէր (ծովն պղնձի) երիս հազարս Չափ (Եբր. պաթ. Յոյն μετρητής). Բ. Մնաց. Դ. 5:

* Ժողովեցէք 'ի դմանէ ... Չափով ըստ գլխոյ‖. Ելք. ԺԶ. 16 : * Եւ չափեցին Չափովն‖. Անդ. 18 : * Երկուս Չափս առ մի մի‖. Անդ. 22 : * Լցէք լի Չափով զմանանայն յամին մի‖. Անդ. 32 : * Եւ Չափն էր տասներորդ երից Գրուաց‖. Անդ. 36 : Յայսոսիկ յունականն է γομὸρ. Եբր. עמר. Լատ. gomor կամ chomer.

Չափաբանք 'ի ձեռն Արուեստի առնուն զչափ ամենայն անօթոց կամ ընդունարանաց. վասն որոյ և ըստ Շիրակացւոյն * Չափ առաջնորդ Չափուց Արուեստ‖:

Չափ (իբրև երկայնաչափ). Յոյն μέτρον. Լատ. mensura. Եբր. מדה, קו և אמה :

Ի ընդհանուր անուն ամենայն երկայնաձիգ և չափելի տարածութեան, սկսեալ 'ի Կիտէ, և կամ յերկրաչափական Գծէ՝ մինչև ցՓարսախ, և այլն. որ և ըստ Խորենացւոյն կոչի Աշխարհական Չափ : Այլ հասարակօրէն, և յաւէտ 'ի Սուրբ գիրս՝ նշանակէ նա զԼար, զՉող, և զԿանգուն ճարտարապետաց : * Եւ Չափ 'ի ձեռին իւրում. և չափեաց հազար՝ Չափովն, և էանց ընդ ջուրն‖. Եզեկ. ԽԷ. 3 : * Եւ 'ի ձեռին նորա էր Լար շինողաց, և Չող Չափու‖. Անդ. Խ. 3 : * Եւ 'ի ձեռին առնն Չող Չափու 'ի վեց կանգնոյ՝ և թըզաւ‖. Անդ. 5 : * Եւ չափեաց հինգհարիւր՝ Չափով Չողոյն‖. Անդ. ԽԲ. 16 : * Ո՞ եդ զՉափ դորա, թէ գիտիցես. կամ ո՞վ էարկ 'ի վերայ դորա զԼար‖. Յովբ. ԼԸ. 5 : * Եւ ձգեցից 'ի վերայ Երուսաղէմի զՉափն Սամարիայ, և զԿշիռ տանն Աքայաբու‖. Դ. Թագ. ԻԱ. 13 : * Ընտրեաց հիւսն զփայտ, Չափով կշռեաց զնա, և դրօշեաց‖. Եսայ. ԽԴ. 13 : * Տուն իմ վերստին շինեսցի՝ ասէ Տէր ամենակալ. և Չափ ձգեսցի միւսանգամ 'ի վերայ Երուսաղէմի‖. Զաքար. Ա. 16 : * Այլ ըստ Չափոյ կանոնին՝ զոր բաժանեաց մեզ Ած Չափով, հասանել մինչև առ ձեզ‖. Բ. Կորնթ. Ժ. 13 : * Եւ չափեաց զպարիսպն նորա հարիւր և քառասուն և չորս Ասպարէզս. Չափ մարդոյ՝ որ է Հրեշտակի (կամի ասել՝ Հրեշտակն ունէր 'ի ձեռին իւրում զՉափ մարդոյ, և նովաւ չափէր)‖. Յայտ. ԻԱ. 17 : * Այլ

զամենայն Զափով, և Թուով, և Կշռով կարգեցեր ։ Իմաստ. ԺԱ. 21 ։ Յայս բան Իմաստնոյն բառս Զափ բովանդակէ յինքեան ոչ միայն զամենայն տեսակս չափելի անօթոց կամ ընդունարանաց, այլև զհամօրէն չափս երկայնութեան՝ զոր կոչեմք Տարածական ։

Չորեքդրամեան ։

Դրամ և Կշիռ ։

ՉՈՐԵՔԴՐԱՄԵԱՆ. Նբր. Նէղէս. Յոյն τετραδράχμον կամ τετραδίδραγμον. Լատ. quadridrachma.

՛Նշանակէ զդահեկան, որոյ կշիռն է չորս Դրամ կամ Դրաքմէ ։ * Ետուն նմա ... Չորեքդրամեան մի ոսկի անգիր (այսինքն՝ ձոյլ ոսկի, և ոչ կնքեալ) ։ Յովբ. ԽԲ. 11 ։ ՛Նոյն է սա ընդ բառիս Ստատեր. զի և նա կրկին Երկդրամեան է, որ է Չորեքդրամեան ։

Պայուսասիկ ։

Կշիռ ։

ՊԱՑՈՒՍԱՍԻԿ ։ Ունիմք զայս բառ ՛ի Ա. Բ. և Գ. օրինակս կշռոց Շիրակացւոյն ընդ Դրամ բառի՝ այսպէս. * Յաղագս Դրամի ։ Դրամ ըստ Պարսկական լեզուի անուանեցաւ, և յարծաթոյ տպաւորեցաւ. որ է Զ մասն Լտեր ։ Եւ Ստատեր Դ Դրամաց կշիռ ։ Եւ Պայուսասիկն Ծ Լիտր, որ է Ռ Ստատեր. որ լինի Ռ դրամակշիռ և Թիւ ։ Այլ տիրապէս նշանակութիւն այսր բառի (եթէ չկայցէ ՛ի նմա վրիպակ գրչի) անծանօթ է մեզ, քանզի չգտանեմք այլուր ։

Պայուսակ ։

Անօթ ցամաքեղինաց ։

ՊԱՑՈՒՍԱԿ. Նբր. Ճէւ. Յոյն μάρσιππος. Լատ. marsupium, crumena.

‛Նշանակէ զաման քրձեղէն կամ կաշեղէն. և է նոյնանիշ ընդ բառիցս՝ Պարկ, Մախաղ, և Քուրձ։ *Ասէ՞ թէ արդարասցի կաշառօք (Յոյն՝ կշռօք) անօրէնն, և Պայուսակաւ կշռոց նենգութեան‖. Միք. Զ. 11։ ‛Նախնիք մեր զյունականդ μάρσιππος այլուր թարգմանեն Քուրձ, և Աման։ Կասկածիմք, թէ Պայուսակ 'ի վերոյ իցէ նուազականն սորա, և նշանակեսցէ զՔսակ 50 Լիտր դրամոց.

Պատժանակ։

Անօթ հեղանիւթոց։

ՊԱՏԺԱՆԱԿ. Յոյն κύλιξ. Լատ. calix. Ունիմք զայս բառ 'ի գիրս Փիլոնի՝ յիշատակեալ ընդ այլ անօթոց այսպէս. *Բաժակաց և ըմպելեաց բազմութիւն՝ կարգեցելոց և մի ըստ միոջէ եղելոց ըստ իւրաքանչիւր տեսակի. Ափսէք և Տաշտք, և Ըմպիկք և Պատժանակք, և բազմաձև արուեստականագոյն ‛Նաւակք և Ճախարակեայք՝ իմաստուն հանճարեղ արանց ճշգրիտ ստուգութեամբ կազմեալ ձեռագործք‖։ Այլ փոխանակ Ըմպիկ և Պատժանակ բառիցս 'ի Հայումս՝ 'ի յունական բնագրի անդ գտանի միայն բառս κύλικες (Ըմպանակք կամ Սկիհք). միայն թէ ստուգաբանութիւն Պատժանակ բառիս աստանօր՝ ծածկեալ է 'ի մէնջ։

Պարոպսիս. Յոյն παροψὶς.

Անօթ ցամաքեղինաց և հեղանիւթոց։

ՊԱՐՈՊՍԻՍ կամ ՊԱՐՈՊՍԻԴՈՍ. Լատ. paropsis, patina. Յիշատակէ զայս բառ Շիրակացին 'ի կարգս չափուց, և ունիմք 'ի ա͠. օրինակն միայն ընդ Տրիվղոնի այսպէս. *Տրիվղոն (Յոյն τρυβλίον) Սկաւառակ է բոլորակ և խոր. նոյն և Պարոպսիդոս կոչի. և ունի կէս Քսեստի‖։ Որպէս և 'ի վերնագրի անդ դնի.

* Յաղագս Տրիվղոնի և Պարոպսիդ։ Ուր զայսոսիկ առնու նա յԵպիփանէ։ Նախնիք մեր զյունականդ παροψὶς Թարգմանեն միշտ Սկաւառակ։

## Պարզուտ։

Անօթ հեղանիւթոց։

ՊԱՐԶՈՒՏ. Եբր. օեր. Յոյն ὑποχυτήρ. Լատ. suffusorium.
Էր մի յանօթոց տաճարին, որով արկանէին զձէթ 'ի ճրագարանն։ * Եւառ ... և զՍպփոկթն, և զՍմասարակոկթն, և զՊարզուտսն, և զաշտանակսն, և զճաշակսն և զտուփսն ‖. Երեմ. ծբ. 19։

## Պարկ. Պարսակ. Պերկ։

Անօթ ցամաքեղինաց։

ՊԱՐԿ. Եբր. չէգլօ. Յոյն πήρα. Լատ. pera, sacculus. Նշանակէ զՄախաղ կաշեղէն կամ կտաւեղէն։ * Մի՛ Պարկ 'ի ճանապարհի, և մի՛ երկուս հանդերձս ‖. Մատթ. Ժ. 10։ * Մի՛ Պարկ, մի՛ հաց, և մի՛ պղինձ 'ի գօտիս ‖. Մարկ. Զ. 8։ Զյունականդ πήρα Թարգմանեն և ս նախնիք մեր՝ Մախաղ և Քսակեղէթ։

Դարձեալ Պարկ առանձին իմն նշանակէ 'ի մեզ զՔսակ դրամոց. Եբր. խէրէէ. Յոյն θυλάκιον. Լատ. loculus, sacculus. * Ծրարեաց երկու Տաղանդս արծաթոյ յերկուս Պարկս ‖. Դ. Թագ. Ե. 23։ * Եւ եբեր նա զՊարկսն (արծաթոյ) կնքօքն հանդերձ ‖. Տոբ. Թ. 6։

## Պեղիս կամ Պեդիէս։

Անօթ հեղանիւթոց։

ՊԵՂԻՍ կամ ՊԵԴԻԵՍ։ Գտնիմք զայս բառ 'ի կարգս չափուց Ճ իրականացուոյն 'ի ա. օրինակն այսպէս. * Յա-

զաղս Պեղլիսի ։ Պեղլիէս կրկին ապակի է, և ունի նոյն չափ Է մասն Քսեստի ։ Այլ քանզի սխալագիր է օրինակդ, և յայլ օրինակս Շիրակացւոյն, և կամ 'ի բանս Եպիփանու չիք յիշատակութիւն այսր բառի, չունիմք հաւաստի ինչ ասել ։

### Պիթինեայ ։

Չափ հեղանիւթոց ։

ՊԻՄԵՆԻԱՅ ։ Ունիմք և զայս բառ նոյնպէս 'ի Ա̄ սխալագիր օրինակն չափուց Շիրակացւոյն՝ այսպէս . * Յաղագս Պիմենիայի ։ Պիմենիայ ապակեղէն պարզ, Է մասն Քսեստի ։ Այլ քանզի չգտանի և սա ոչ յայլ օրինակս Շիրակացւոյն, և ոչ 'ի բանս Եպիփանու, յայն սակս և վասն սորին չունիմք ինչ ասել հաւաստեաւ ։

### Պղէնձ . Պարսկ . Պիւրինճ կամ Փիրինճ ։

ՊՂԻՆՁ . Եբր . Նէխշէթ . Յոյն χαλκὸς, κέρμα . Լատ . aes, numulus ։ 'Ի կշռաբանութեան նշանակէ զպղնձի Դրամն կամ զԿերմոսս, որպիսի են Դանգ, Լումայ, Փող, և այլն ։ * Եւ ետուն 'ի գործ տանն Տեառն, ոսկի՝ տաղանդս հինգ հազար, և բիւր դահեկան . և արծաթ՝ տաղանդս տասն հազար, և Պղինձ՝ տաղանդս բիւր և ութ հազար ։ Ա̄ . Մնաց . ԻԹ̄ . 7 ։ * Մի՛ ստանայք ոսկի, և մի՛ արծաթ, և մի՛ Պղինձ ։ Մատթ . Ժ . 9 ։ * Տեսանէր, թէ զիա՛րդ ժողովուրդն արկանէր Պղինձ 'ի գանձանակն ։ Մարկ . ԺԲ̄ . 41 ։ * Եւ ըզ-Պղինձս հատավաճառացն ցրուեաց ։ Յովհ . Բ̄ . 15 ։

Զպղինձ կամ զԲաղկոս իբրև կշիռ 'ի մէջ բերէ և Շիրակացին 'ի բառն Սատեր և Դրաքմէ . որ և ըստ Ա̄ . Բ̄ . և Գ̄ . օրինակաց նորա է այսպէս . * Կշիռ Սիմեսի և Դրամարի՝ կոչի ըստ Եբրայեցւոցն Սատեր, և ըստ Հելլենականին Ոբողոս, և ըստ Եգիպտացւոց Բաղկոս . վասն զի Աղեքսանդրացիք զարծաթն Բաղկիմայ կոչեն ։ Եւ ըստ հասարակաց խօսից կոչի

Դրաքմէ. որ է Ը մասն Ունկոյ: Իսկ ըստ Հռովմայեց-ւոյն Կապետոն կոչի. վասն զի Կապու (Կապուտ) գլուխ լսի. քանզի Օգոստոս կայսր եդ. հարկս ըստ Գլխոյ՝ Դրաքմէ մի‖: Նոյն վասն այսորիկ տես 'ի Սատեր և 'ի Դրաքմէ, ևս և 'ի բանս Եպիփանու:

Պնակ. Յոյն πίναξ.

Անօթ հեղանիւթոց:

ՊՆԱԿ. Լատ. catinus, catillus. Նշանակէ զանօթ պղնձի, խեցեղէն և փայտեղէն՝ 'ի պէտս կերակրոց, և արկանելոյ զջուր: * Այժմ դուք փարիսեցիք զարտաքին բաժակին և զՊնակին սրբէք‖. Ղուկ. ԺԱ. 39: * Մինչև ցՊնակ, և ցդգալ (կամ դրգալ)‖. 'Ի Կանոնս որբոյն Սահակայ: * Լուանայր ծերն զՊնակ իւր, և ընոյր զնա ջրով‖. Վարք Հարանց. Է. 126: Նախնիք մեր գլուխնականդ πίναξ թարգմանեն ևս Սկուտեղ: Իսկ Երեմիա 'ի մեկնութեան բառից Ածաշունչ գրոց՝ դնէ համդէպ նորա Սկաւառակ, և Պուտուկ:

Պոյտն:

Անօթ:

ՊՈՅՏՆ. Եբր. Քարուր. Յոյն χύτρα, λέβης. Լատ. olla, lebes.

Է Սան կամ Կաթսայ խեցեղէն 'ի պէտս եփելոյ զկերակուրս: * Եւ եփէին 'ի Պուտան‖. Թուոց. ԺԱ. 8: * Եւ զարգանակն էարկ 'ի Պոյտն‖. Դատ. Զ. 19: * Եւ արկանէր զայն (զմիսն) յԱւազան, կամ 'ի Սան մեծ պղնձի, կամ 'ի Պոյտն‖. Ա. Թագ. Բ. 14: * Եւ յօշեցին զմարմինս նոցա իբրև 'ի կաթսայս, և զմիս նոցա իբրև 'ի Պուտունս‖. Միք. Գ. 3: * Երեսք ամենեցուն իբրև զայրեցած Պուտան‖. Նաւում. Բ. 10: * Երիս ժամս 'ի Պոյտն եփել զայն (զբանջարն) ոչ կարէր. այլ կայր անդէն 'ի կաթսայի նոյնպէս հում

թրջեալ. զի թէպէտ եւ բիւր ինչ ջանային, ջուրն ոչ եռայր։ Վարք Հարանց. Ի. 414։

Պուտնարդ։

Անօթ հեղանիւթոց։

ՊՈՒՏՆԱՐԴ. Եբր. [illegible] կամ [illegible]. Յոյն χυτρόγαυλος. Լատ. labrum, olla magna.

Նշանակէ զԱւազան ջրոյ 'ի ձեւ մեծի Պուտան։ *Եւ արար տասն Պուտնարդս պղնձիս. եւ ունէր Պուտնարդ մի քառասուն սափոր (ջրոյ)։ Ի չորից կանգնոց Պուտնարդ մի չափով, եւ Պուտնարդ մի 'ի վերայ միոյ մեքենովթայ։ Գ. Թագ. Է. 36։

Պուտուկ։

Անօթ հեղանիւթոց։

ՊՈՒՏՈՒԿ կամ ՊՏՈՒԿ։ Ի նուազականն բառիս Պուտն, եւ նշանակէ զԱման կամ զԿաթսայ փոքրիկ։ *Ըստ հրաման երկաթի Պուտկօք հալել կապար։ Ս. Գաբ.։ *Եպիսկոպոս եմ ... խոհակերոցին՝ Պուտկանց, եւ Սափորաց ... կապեմ զնոսա. զՊուտկունսն՝ աղիւ եւ համեմով, զՍափորսն՝ գինւով եւ ջրով։ Վարք Հարանց. ԻԳ. 464։ *Պտտին 'ի խուցն կուժ մի ջրով, եւ Պտուկ, եւ Ս. փսէ։ Ս. Ներս. ԺԵ. 326։

Ջեռուցիչ։

Անօթ։

ՋԵՌՈՒՑԻՉ. Եբր. [illegible]. Յոյն θέρμαι. Լատ. thermae, balnea, caldarium.

Նշանակէ զաւազան պղնձի, կամ զկաթսայ մեծ՝ յորում ջեռուցանեն զջուր։ *Եւ արար Քիրամ զԱմանսն, եւ զՋեռուցիչսն, եւ զՏաշտսն։ Գ. Թագ. Է. 39։

* Եւ զՍանամ, և զ.Գեռուցիչն զերեսին, և ըզ-Տաշտամ։ Ծնդ. 45 ։

Սակաւ. Թերևս 'ի Յոյն σαργάνη.

Անօթ ցամաքեղինաց ։

ՍԱԿԱՌԻ կամ ՍԱԿԱՌ. Յոյն κόφινος. Լատ. cophinus, corbis.

Նշանակէ զԿողով հիւսեալ 'ի ձիւղից կամ յոստոց ծառոց։ * Եւ բարձին զնշխարս կոտորոյն երկոտասան Սակառի լի։ Մատթ. ժԴ. 20։ * Ոչ յիշէք զհինգ նկանակն 'ի հինգ հազարսն, և քանի Սակառի բարձիք։ Մարկ. ժԶ. 9։ Նոյնպէս Մարկ. Զ. 43. և Ը. 19։ Ղուկ. Թ. 17։ և Յովհ. Զ. 13։ * Իսկ Սակառիքն. ոմանք ասեն, թէ պաշար բարձեալ էին. այլք, թէ զհիւանդսն էին բարձեալ՝ և ողջացան. նոքօք և զմնացորդ հացին բարձին։ Եփրեմ. 'ի մեկն. Մատթ. ժԴ. 20։ Նախնիք մեր զՅունականդ κόφινος թարգմանեն և Սարթ՝ սովին նշանակութեամբ։

Սակիտար ։

Չափ հեղանիւթոց ։

ՍԱԿԻՏԱՐ կամ ՍԱՔԻԹԱՑ և կամ ՍԱՑԻՏ։ Տես զայսցանէ 'ի նախադրութիս գործոյս՝ 'ի բանս Եպիփանու և Հիրակացւոյն ։

Սատոն. Յոյն σάτον.

Չափ հեղանիւթոց ։

ՍԱՏՈՆ կամ ՍԱՑՏՈՆ. Լատ. satum. Եբր. սէահ։ Ունիմք զայս բառ յերկիս օրինակս չափուց Հիրակացւոյն. Դ. և Ե. օրինակք ունին այսպէս. * Սար՝ ըստ Հելենացւոցն Սատոն, Ծ Քսեստ. և է չափ հնձանի ։

Իսկ ա. օրինակն դնէ այսպէս. *Չափ ծ. Բատոսի լինի Մար մի. և ըստ Հելլենականին Սատոն կոչի. զոր կոչեն չափ հնձանի‖։ Սատոն ըստ Եպիփանու է չափ՝ ոչ միայն հեղանիւթոց, այլև ցամաքեղինաց. վասն որոյ և նախնիք մեր յԱծաշունչ գիրս թարգմանեն զայն Մար, և Գրիւ։

Սան. Թերևս 'ի Պարսկ. Սահն կամ Սահան։

ՍԱՆ. Եբր. սիր. Յոյն λέβης. Լատ. olla, lebes. Նշանակէ զանօթ պղնձի, կամ զկաթսայ՝ 'ի պէտս եփելոյ զկերակուրս, և այլն։ *Եւ արկանէր զայն (զմիսն) յԱւազան, կամ 'ի Սան մեծ պղնձի‖. ա. Թագ. բ. 14։ *Եփեցին Կատսայիւք և Սանիւք‖. բ. Մնաց. լե. 13։ *Եւ արար Քիրամ զՍանսն, և զջեռուցիչսն, և զտաշտսն‖. բ. Թագ. է. 40։ *Եւ եղիցին Սանք 'ի տան Տեառն իբրև զտաշտս առաջի սեղանոյն‖. Զաքար. ժդ. 20։ *Եւ բերին անկողինս տասն, և օթոցս, և Սանս (Եբր. սաֆ) տասն, և անօթս բրտի, և ցորեան‖. բ. Թագ. ժէ. 28։ *Զի մի՛ բաղբաղեսցես իբրու զբաղանեացն Սան‖. Գրէկ. Մագիստ։ *Իբրև զխոյն 'ի Սանէն խլրտացուցեալ‖. Նոյնն։ Զյունականդ λέβης թարգմանեն ևս նախնիք մեր Կաթսայ, ևս և Աւազան։

Սապատ. Պարսկ. Սէպէտ։

ՍԱՊԱՏ. Եբր. Քալուխ. Յոյն Θήκη. Լատ. theca. Նշանակէ զարկղ կամ զտապանակ հիւսուածոյ իբրև զԿողով։ *Թշուառացին, և սուգ զգեցցին Սապատք զարդուց նոցա‖. Եսայ. գ. 26։ *Առնուին ընդ ինքեանս և գրաստ, և ըստ իւրաքանչիւր անձին Սրբոցն Սապատս չորեքկուսիս ... և ձեռն 'ի գործ արկեալ ժողովեցին զիւրաքանչիւր ոք յականէ՝ 'ի մի մի Սապատ‖. Փարպեցի. 178-179։

## Ստատեր. Յոյն στατήρ.

### Կշիռ:

ՍԱՏԵՐ. Եբր. Չէքէլ. Լատ. stater.
Հասարակօրէն նշանակէ զդրամ արծաթի՝ որոյ կշիռն է Չորեքդրամեան, կամ չորս Դրաքմէ: Իսկ երբեմն նշանակէ զՍիկղ Եբրայեցւոց, որ է Դիդրաքմայ, կամ Երկդրամեան: Եւ երբեմն ևս նշանակէ զԴրամակշիռ, կամ զմի Դրաքմէ: Եւ պատճառ սորին է ըստ Պետաւիոսի՝ տարբերութիւնն 'ի մէջ Դրաքմէի կամ Դրամի ըստ Աղեքսանդրացւոց, և ըստ Ատտիկեցւոց. որպէս ունիս տեսանել 'ի Դրաքմէ և 'ի Դիդրաքմայ:

Ա. Բ. և Գ. օրինակք կշռոց Շիրակացւոյն ունին նախ յաղագս Ստատերի և Դրաքմէի՝ այսպէս. * Կշիռ Սիմեսի և Դրամարի՝ կոչի ըստ Եբրայեցւոցն Ստատեր, և ըստ Հելլենականին Ոբղոս, և ըստ Եգիպտացւոց Բաղկոս. վասն զի Աղեքսանդրացիք զարծաթն Բաղկիմայ կոչեն: Եւ ըստ հասարակաց խօսից կոչի Դրաքմէ. որ է Ը մասն Ունկոյ: Իսկ ըստ Հռովմայեցւոցն Կապետոն կոչի. վասն զի Կապու գլուխ լսի. քանզի Օգոստոս կայսր եդ հարկս ըստ գլխոյ Դրաքմէ մի||: Եւ ապա 'ի բառն Դրամ՝ ունին այսպէս. * Դրամ ըստ Պարսկական լեզուի անուանեցաւ, և յարծաթոյ տպաւորեցաւ: Եւ Ստատեր Դ Դրամոց կշիռ: Եւ Պայուսանիկն Ծ Լիտր է. որ է Ռ Ստատեր. որ լինի Ա Դրամակշիռ և Թիւ||: Իսկ Գ. և Է. օրինակք, ընդ որս մասամբ ինչ և Գ. ունին այսպէս. * Կենդինարն Ճ Լիտր է. և Լիտրն ՀԲ Դահեկան. և դրամով յորժամ կշռես, Ճ Դրամ: Ունկին Զ Դահեկանի կշռորդ է. և ԺԲ Ունկին Լիտր մի: Ունկին դարձեալ՝ Բ Ստատեր է: Մ'ին Ստատերն սակաւ ինչ պակաս է 'ի Դ Դրամէ. որ է կէս Ունկոյ: Յիսուն Ունկին ԲՃ Սիկղ է, որով կշռէին զհերս Աբիսողոմայ. որ է Դահեկան ԳՃ: Ստատերն կէս Ունկոյ է. որ է Դ Դրամի կշռորդ: Դրաքմէն Բ Դրամակշիռ է: Դիդրաքմայն Դ Դրամա-

կշիռ է. Դիդրաքմայն և Ստատերն մի է։ Սիկղն Ի̅ Գրամ. Արքունեան Սիկղն Ի̅ Դանգ ||։ Է̅. օրինակն ունի այսպէս. * Ստատեր և Դրաքմէ մի են. որ է Ը̅ մասն Ունկոյ ... Ստատերն Դ̅ Դրամակշիռ է ||։ Յաւելուած Դ̅. օրինակին համառօտիւ ունի այսպէս. * Ստատերն Դ̅ Դրամ է ||։

Եպիփան յաղագս Ստատերի ունի այսպէս. * Ճարիւր քսան և հինգերորդ մասն Տաղանդի՝ է Լիտր մի. իսկ Լիտր է երկոտասան Ունկի. և Ունկի է՝ երկու Ստատեր։ Եւ Ստատեր՝ որ է կէս Ունկոյ, է Դիդրաքմայ մի ... Սիկղ՝ որ կոչի և Կոդրանտ, է չորրորդ մասն Ունկոյ, և կէս Ստատերի, և երկու Դրաքմէ. քանզի Դրաքմէ ութերորդ մասն է Ունկոյ ||։

Ըստ Կալմեթի Ստատերն է նոյնակշիռ ընդ Սկեղ Արքունեան, որ է Չորեքդրամեան։ Որ և ասէ, թէ Ստատերն՝ զոր եգիտ Պետրոս 'ի բերանի ձկանն, էր վասն վճարելոյ զհարկն ըստ գլխոյ. որ էր կէս Սիկղ կամ Երկդրամեան հրամայեալ 'ի Մովսիսէ վասն տաճարին։ Բայց բազումք՝ ընդ որս և Շիրակացին մեր, համարին զայս հարկ Կայսեր Հռովմայեցւոց, և ոչ տաճարի։ Ըստ Լատին բառարանին Ստատեր նշանակէ զկշիռ և զդրամ Չորեքդրամեան։ Բայց յաւելու ասել, թէ ոչ նոյն է կշիռ և գին նորա առ Եբրայեցիս և առ Յոյնս։

Նմին իրի և Թարգմանիչք մեր դնեն զՍտատեր փոխանակ այլևայլ բառից Յունաց։ Քանզի դնեն նախ՝ հանդէպ յունական բառիս στατήρ 'ի Նորումն Կտակի. * Եւ'րթ 'ի ծով, և ընկեա՛ կարթ, և զառաջին ձուկն՝ որ ելանիցէ, ա՛ռ և բա՛ց զբերան նորա, և գտանիցես Ստատեր. և զայն առեալ տացես նոցա ընդ իմ և ընդ քո ||. Մատթ. ԺԷ. 26։

Երկրորդ՝ դնեն զՍտատեր, կամ զկրկին Ստատեր հանդէպ յունականիս διδραχμὴ կամ δίδραχμον. * Ահա՛ ետու հազար Ստատեր (Եբր. գէսէֆ) եղբօր քում ||. Ծննդ. Ի. 16։ * Չորեքհարիւր Ստատերի արծաթոյ (Եբր. շէգէլ) ||. Ծնդ. ԺԳ. 15։ * Երեսուն կրկին Ստատեր՝ (Եբր. շէգէլ) արծաթ տացէ ||. Ելք. ԻԱ. 32։ Զոր

և հասարակօրէն Թարգմանեն՝ Երկդրամեան, և Դի-դրաքմայ ։

Եւ երրորդ՝ նոյնպէս դնեն զՍատեր, կամ ըզ-կրկին Սատեր՝ հանդէպ յունականիս δραχμή. * Ի ձեռն տայր նոցա երեքհարիւր Սատերս ॥. Բ. Մակ. Դ. 19 ։ * Եօթն բիւր Սատեր կրկին՝ արծաթոյ ॥. Անդ. Ժ. 20 ։ * Զորս Սատերս կրկին ( Յոյն՝ արծաթոյ Դրաքմէս երկու հազար ) ժողովէր ॥. Անդ. ԺԲ. 43 ։ Զոր այլուր Թարգմանեն՝ Դրամ, և Դահեկան ։

Եւ ահա յայտ է 'ի Թարգմանութեանց աստի, և 'ի բանից կշռախօսաց, թէ Սատերն ոչ միշտ զնոյն ունի նշանակութիւն ։ Սակայն և այնպէս հասարակօրէն Սատերն է Զորեքդրամեան, կամ կրկին Երկդրամեան, որ է կէս Ունկոյ ։ Սիկղ է Երկդրամեան, կամ կրկին Դրամոց կշիռ. որ և է չորրորդ մասն Ունկոյ ։ Իսկ Դրամ կամ Դրաքմէ է մի Դրամակշիռ. և է նա ութերորդ մասն Ունկոյ ։ Սատեր հասարակօրէն դնի 'ի մեզ յուղղական հոլով, և երբեմն 'ի սեռական, զորօրինակ. * Ի գոգ նորա ժայթքեալ մարգարիտ մի՝ երկոտասան կշիռ ունելով նմա Սատեր ॥. Մագիստ ։ * Իբր ըզձգդով պահանջումն Սատերն սակի 'ի բերանոյ կիտին կորիւնի՝ Զորեքդրամեանն կշռութեամբ ॥. Նարէկ. ԽԵ. 1 ։

## Սափոր. Պարսկ. Սէպու կամ Ճաֆուլ ։

### Չափ հեղանիւթոց և ցամաքեղինաց ։

ՍԱՓՈՐ. Եբր. Քատ. Յոյն ὑδρία. Լատ. hydria. Ըստ Փիլոնի * Սափորն աման ջրոյ է ॥. բայց երբեմն է նա անօթ և այլ հեղանիւթոց, և ցամաքեղինաց ։ Նախնիք մեր դնեն զՍափոր նախ՝ հանդէպ Յունականիս ὑδρία. * Իջ յաղբիւրն, և ելից զՍափորն իւր ॥. Ծննդ. ԻԴ. 16 ։ * Արբո՛ ինձ սակաւ մի ջուր 'ի Սափորոյ այտի ॥. Անդ. 18 ։ * Թափեաց զՍափորն յաւազանն ॥. Անդ. 20. * Առէք ինձ չորս Սափորս

ջրոյ॥. Գ. Թագ. ԺԸ. 34: * Արշալ բուռն մի ալեւր 'ի Սափորի॥. Գ. Թագ. ԺԷ. 12: Զսա Թարգմանեն եւ՝ Թակոյկ, եւ Կուժ: * Զայս անեն եւ որք փոխեն նեղ բերանոք 'ի Սափորոյն միանգամայն ջուր կամ գինի. զի աւելի հեղեալ լինի, քան թէ 'ի ներքս արկեալ॥. Փիլոն: * Սափոր եթէ ոք առեալ ջրով լի՝ իւղ 'ի վերայ հեղուլ եւ աւազ կամեսցի, աւազն 'ի վայր գնասցէ, իսկ ձէթն 'ի վերայ կայ մնայ. եւ ջուրն զմիջասահման վայրն կալցի՝ վասն թեթեւագոյն գոլոյ քան զհողեղէն նիւթն, յորմէ 'ի վեր կոյս ձնշեալ ոստուցանի॥. Նոյն: * Առեալ մայրն այն (վանիցն) զկնոճին զտաշտ եւ զՍափոր ... լուաց զոտս ծերոյն॥. Ս. Հարանց. Թ. 196: * Առար հաց, եւ չորացոյց յոյժ. եւ մանրեաց զչորն 'ի Սափոր մի նեղաբերան. եւ յորժամ կամէր ուտել, արկանէր զձեռն 'ի Սափորն, եւ որ գայր 'ի ձեռն՝ զայն ուտէր॥. Անդ. ԻԴ. 460: * 'Ի Սափորոյ գինի յորժամ անուցուս Քսեստ մի, պակասի॥. 'Ի Բժշ. հին ձեռագ.

Երկրորդ՝ գնեն հանդէպ Յունականին κεράμιον. Լատ. vas fictile. * Զի ուր գործեսցեն տասն լուծք եզանց, եղիցի անդ Սափոր մի (Եբր. պաթ)॥. Եսայ. Ե. 10: * Որ Սափոր ջրոյ յուս ունիցի॥. Մարկ. ԺԴ. 13: * Այր մի բարձեալ Սափոր ջրոյ॥. Ղուկ. ԻԲ. 10:

Երրորդ՝ στάμνος. Լատ. urna. Եբր. ցինցենեթ: * Առ Սափոր մի ոսկի, եւ արկցես 'ի նա լի Զափովդ մանանայ॥. Ելք. ԺԶ. 33: * Յորում Սափորն ոսկի լի մանանայիւ॥. Եբր. Թ. 4: Զսա Թարգմանեն եւ՝ Ստոման:

Չորրորդ՝ νέβελ. Եբր. նէպէլ. Լատ. uter, lagena. * Եւ Արդուաւ նաշհոյ, եւ Սափորով գինւոյ॥. Ա. Թագ. Ա. 24: Զոր այլուր Թարգմանեն՝ Սար:

Հինգերորդ՝ γομόρ. Լատ. gomor. Եբր. խօմէր: * Զի տասն Քսեստն է Սափոր մի॥. Եզեկ. ԽԵ. 14: Զոր եւ հասարակօրէն Թարգմանեն՝ Զափ, Գորիւ, Արդու, եւ այլն:

Եւ վեցերորդ՝ κοτύλη. Լատ. sextarius. Եբր. պաթ: * Եւ հրաման ձիթոյ՝ Քսեստ իւղոյ, տասներորդ Սա-

փորոյն ||. Նուչէն. խէ. 14: Արդ՝ յայտ է 'ի Թարգմանութեանց աստի, թէ նշանակութիւն բառիս Սափոր՝ ընդարձակ է յոյժ 'ի մեզ:

## Սէմի. Լատ. Semis.

Կշիռ:

ՍԻՄԻՍ. Լատ. semis կամ semissis. Յոյն ἥμισυς: Է կէս Դահեկան. որոյ կշիռ է 12 Կերատ: Ունիմք զայս բառ 'ի հինգ օրինակս կշռոց Տիրակացւոյն: Ա. Բ. և Գ. օրինակք նորա յաղագս Սիմեսի՝ ունին այսպէս. *Կշիռ ԺԲ Կերատաց լինի Սիմէս մի ||: Իսկ Դ. և Ե. օրինակք գտնեն այսպէս. *Սիմէս՝ կէս Դահեկանի է ||, Դ. օրինակն ունի և յաւելուած այսպիսի. *Դահեկանն... Բ Սիմէս է ||: Արդ ամենեքին ուղղութեամբ ունին, և զնոյն նշանակեն. որպէս ունիս տեսանել յաղիւսակն կշռոց նորուն Տիրակացւոյն: Իսկ Լատին բառարանին՝ semis ելանէ 'ի Յունական բառէս ἥμισυς, և նշանակէ զկէսն Ասսարիոնի կամ Դանգի. և առանձին իմն՝ զոսկի Դահեկան ինչ, որ կոչի Դրամակէս:

## Սէնգ. Պարսկ. Սէնկ.

Կշիռ:

ՍԻՆԳ կամ ՍԻՆԿ: Ունիմք զայս բառ 'ի կարգս կշռոց Տիրակացւոյն. Ա. Բ. և Գ. օրինակք նորա յաղագս Սինգի ունին այսպէս. *Կշիռ Դ Կերատաց կոչի Սինգ ||: Արդ մեք զբառ ինչ համեմատ սմին 'ի կշռաբանութեան անդ՝ ոչ կարացաք գտանել 'ի Յոյն և 'ի Լատին բարբառս:

## Սիկղ. Յոյն σίκλος.

### Կշիռ և Դրամ։

ՍԻԿՂ (սեռ. Սկեղ) Եբր. շէգէլ. Լատ. siclus. Է անուն կշռոյ. նա և ոսկի կամ արծաթի դահեկանի. և է կրկին՝ մեծ, և փոքր։ Մեծն կոչի Սիկղ սրբութեան. և է նոյնանիշ ընդ Ստաթերի, և է կէս Ունկի։ Իսկ փոքրն կոչի Սիկղ արքունական կամ հասարակաց. որ և է նոյն ընդ բառիցս Դիդրաքմայ կամ Երկդրամեան, և է չորրորդ մասն Ունկոյ։ Եօթանասնից օրինակք կշռոց Ը իրակացուցին դնեն զՍիկղ կշիռ Դահեկանի և կիսոյ, և չորրորդ մասն Ունկոյ։ ա. բ. և գ. օրինակք կոչեն զնա Ձիթ, այսինքն՝ Կշիռ. զի Սիկղ է անուն կշռոյ։ Որք և յաղագս Սկեղ և Մնասի միանգամայն՝ ունին այսպէս. * Կշիռ Դահեկանի և Սիմէսի կոչի ըստ Եբրայեցւոցն Սիկղ. և ըստ Հելլենականին Մնա. և ըստ Հռովմայեցւոցն Մեղքարիս. և ըստ Հայոց Փորչէ։ Որ է գ մասն Ունկոյ. և ունի լգ Կերատաց կշիռ ||։ գ. ե. և գ. օրինակք ունին այսպէս. * Յիսուն Ունկին բճ Սիկղ է, որով կշռէին զհերս Աբիսողոմայ. որ է Դահեկան գճ... Սիկղն բ Դրամ. Սրբութեան Սիկղն ի Դանգ ||։ Յաւելուած բ. օրինակին ունի այսպէս. * Սիկղ չորրորդ մասն է Ունկոյ, Դահեկանի կիսոյ չափով ||։ Ունի և գ. օրինակն յաւելուած այսպիսի. * Սիկղն, և Երկդրամեան, և Դիդրաքմայն՝ բ Դրամ են ... ի Դանգն բ Դրամ, որ է Սիկղ մի ... ին Սիկղն Մնաս մի է ||։ Սիկղ ըստ Լատին բառարանին՝ է անուն դրամոյ Եբրայեցւոց, որոյ կշիռ է բ Դրաքմէ. և գին նորա 10 Դանգ. և է չորրորդ մասն Ունկոյ. և այս է Սիկղն՝ որ կոչի հասարակաց։ Իսկ Սիկղն սրբութեան է կրկինն նորա, այսինքն է՝ չորս Դրաքմէ, և կէս Ունկի. և սա նոյն է ընդ Ստաթերի։

Կամէթ 'ի բառարանի Ա՟ծաշունչ գրոց ոչ ընդունի զզանազանութիւնն Սկեղ. և նոյնացուցանէ զայն ընդ Ստաթերի։ Որ և յաւելու ասել. * Սիկղն սրբութեան

ըստ բազում Մեկնչաց կրկինն է հասարակաց Սկեղ. բայց ոչ ստուգութեամբ։ Մեք նոյն համարիմք զայն ընդ հասարակացն Սկեղ. և կոչի Սիկղ սրբութեան՝ վասն արդար և ճիշդ լինելոյ կշռոյ նորա ըստ կշռոյն՝ որ կայր 'ի խորանին վկայութեան, կամ 'ի տաճարի անդ ||։ Սակայն մեզ այլոցն կարծիք ընտրելագոյն թուի. որում բաց 'ի Շիրակացւոյն մերմէ՝ և Եպիփան ձայնակից լինի. քանզի ասէ. * Լիտր է երկոտասան Ունկի. և Ունկի է երկու Սատեր. և Սատեր՝ որ է կէս Ունկոյ, է Դիդրաքմայ մի ... Սիկղ՝ որ կոչի և Կոդրանտ, է չորրորդ մասն Ունկոյ, և կէս Սատերի, և երկու Դրաքմէ. քանզի Դրաքմէ ութերորդ մասն է Ունկոյ ||։ Նախնիք մեր 'ի թարգմանութեան Ս. Ծաշունց գրոց հանդէպ Յունականին σίκλος, հասարակօրէն դնեն Սիկղ, և երբեմն ևս Կշիռ. և թերևս վասն այսորիկ Շիրակացին զՍիկղ կոչէ ըստ Հելլենականին Մէտ (կամ Կշիռ)։

* Հարիւր Տաղանդ (արծաթոյ), և հազար և եօթն հարիւր և եօթանասուն և հինգ Սիկղ՝ ըստ սրբութեան Սկեղն. Դրամ (կամ Դրաքմէ) մի առ գլուխ՝ կէս Սկեղ ըստ սրբութեան Սկեղն ||. Ել. ԼԸ. 25։ * Առցես հինգ Սիկղ ըստ գլխոյ՝ ըստ սրբութեան Երկդրամենին. առցես քսան Դանգ առ Սիկղ ||. Թւոց. Գ. 47։ * Եւ գին նորա հինգ Սիկղ՝ ըստ սրբութեան Սկեղն, որ է քսան Դանգ ||. Անդ. ԺԸ. 16։ * Ահա գտանի 'ի ձեռին իմում չորրորդ մասն Սկեղ արծաթոյ ||. Ա. Թագ. Թ. 8։ * Եւ յորժամ փոքրէր, և կշռէր զհերս գլխոյ իւրոյ՝ երկերիւր Սիկղ (Եբր. շէգէլ) ըստ արքունական Սկեղ (Եբր. էպէն) ||. Բ. Թագ. ԺԴ. 26։ * Գրիւ մի նաշհոյ՝ Սկեղ միոյ, և երկու Գրիւք գարւոյ՝ Սկեղ միոյ ||. Դ. Թագ. Է. 1։ * Եւ զկերակուրն քո կերիցես կշռով՝ քսան Սիկղ յաւուրն ||. Եզեկ. Դ. 10։ * Եւ քսան կշիռն Դանգ. և քսան Սիկղ, և քսան և հինգ Սիկղ. և 'ի քսան և հինգ Սկեղէ եղիցի ձեզ Մնաս մի ||. Անդ. ԽԵ. 12։ * Եւ տուժեսցեն 'ի նմանէ հարիւր Սիկղ (Եբր. գէսէֆ) ||. Բ. Օրէնս. ԻԲ. 19. * Եւ կշիռ նիզակի նորա յերեքհա-

ընդ Սկեղէ (Նշմր. Գշգաւ) կուռ պղնձոյ ‖. Ը. Թագ. իա. 16 :

Արդ՝ յայտ է 'ի վկայութեանց աստի, և 'ի բանից կշռախօսաց, թէ Սիկղն կրկին է. մին Սրբութեան, և միւսն Արքունական։ Սիկղ Սրբութեանն է Երկդրամեան, կամ քան Գրանք։ Գարձեալ Սիկղ նշանակէ զդրամ Երկդրամեան կամ զՍատեր՝ արծաթի և կամ ոսկի :

## Սկահ. Յոյն σκύφος.

### Անօթ հեղանիւթոյ :

ՍԿԱՀ կամ ՍԿԱՀԱՁԵՒ. Եբր. հաւէող. Յոյն κρατὴρ. Լատ. crater, scyphus.

Նշանակէ զանօթն իւղոյ հաստատեալ 'ի ստեղունս աշտանակին՝ 'ի ձև սկուոյ կամ բաժակի : * Դախարակեայ գործեսցես զաշտանակն. զի բունն, և ստեղունքն, և Սկահքն, և գնտակքն, և շուշանքն անդստին 'ի նմանէ իցեն ‖. Ելք. իե. 31 : * Երեք Սկահաձևք ընդուզաւզարդք յօրինեալք 'ի միում ստեղանն ‖. Նոյ. 33 : Օյունականդ κρατὴρ այլուր թարգմանեն Նախնիք մեր՝ Խառնելիք, և Թակոյկ :

## Սկաւառակ. Պարսկ. Բուշկէբէ կամ Սէկէուրէ :

ՍԿԱՒԱՌԱԿ. Եբր. գաֆ, գէղաառահ և մըղաաք. Յոյն τρυβλίον, παροψίς և φιάλη. Լատ. catinus, patina. paropsis և phiala.

Նշանակէ զափսէ, կամ զտաշտ : * Զտաշտսն, և զՍկաւառակսն, և զտուփսն ‖. Գ. Թագ. է. 50 : * Դնէր 'ի վերայ սեղանոյն Սկաւառակս, և բուրուառս, և նուիրակս, և ճաշակս : Սկաւառակքն խորտկացն նշանակք էին. և ճաշակքն խրախճանութեան՝ որովք անապակն չափի. և բուրուառքն խնկոցն ամանք, և նուիրակքն գինւոյն՝ որ նուիրի ‖. Փիլոն : * Որ մխեաց ընդ իս զձեռն իւր 'ի Սկաւառակդ ‖. Մատթ. իզ. 23 :

Յունականդ τρυβλίον Թարգմանեն եւ նախնիք մեր՝ Ափսէ կամ Ափսեայ, Կոնք, Տուփ, և Խնկաղաց։

* Զի սրբէք զարտաքին բաժակին և զՍկաւառակին ։ Մատթ. իգ. 25։ * Ոչ վայրապար բաժակ և Սկաւառակ կոչէ (զմարմինն). այլ վասն դիւրաբեկ գոլոյն, և զօրէն փխրանի լուծանելոյն. կամ թէ՝ ամանն է հոգւոյն. զոր և ոմն պարկ անուանեաց ... Սկաւառակի արտաքին մարմնոյն՝ ներքին հոգին է, որպէս ասացաք. արդ՝ ցուցանէ, թէ սորա սրբութիւնն հարկաւոր է. յորում կերակրի Ած. և արտաքինն զհետ երթայ սրբութեան սորա ։ Ներշնչ. 'ի մէջն. բնաբանիս։ * Եօթն Սկաւառակս լի ցասմամբ ։ Յայտ. ժե. 7։ Յունականդ φιάλη 'ի հին Կտակարանս հասարակօրէն Թարգմանեն նախնիք մեր Տաշտ. իսկ 'ի Յայտ. Ե. 8. դնի համդէպ նորա Բուրուառ։

Շիրակացին 'ի կարգս չափուց յիշատակէ և զՍկաւառակ ընդ Յունական բառսդ Տրիվղոն և Պարոփսի՝ առեալ յԵպիփանէ. որ և գտանի 'ի ա. օրինակն միայն՝ այսպէս. * Յաղագս Տրիվղոնի և Պարոպսի։ Տրիվղոն Սկաւառակ է բոլորակ և խոր. նոյն և Պարոպսիդոս կոչի. և ունի կէս Քսեստի ։

## Սկէհ. Յոյն σκύφος.

### Չափ հեղանիւթոց.

Սկիհ. Եբր. կաւէաղ, քասաւ. Յոյն κόνδυ, σπονδεῖον. Լատ. calix, scyphus. libatorium.

Նշանակէ զբաժակ գինւոյ, և արեան։ * Եւ զՍկիհսն իմ արծաթի դիջիք յաման կրտսերոյն ... և եգիտ զՍկիհսն յաման Բենիամինի ... առ որում Սկիհսն գտաւ ։ Ծննդ. խդ. 2-12-16. և այլն։ Յունականդ κόνδυ Նախնիք մեր Թարգմանեն եւս Բաժակ։ * զՍկիհսն, և զտաշտսն, և զխնկաղացսն ։ ա. Մակ. ա. 23։ Նմանօր յունականն է σπονδεῖον. զոր այլուր հասարակօրէն Թարգմանեն Նուիրանոց։

Սկիհ առանձին իմն նշանակէ զբաժակն անապական

խորհրդոյն (Յոյն ποτήριον. Լատ. calix). * զՍկիհն կալցես 'ի ձեռին քում 'ի ժամ հաղորդութեանն ‖. Մաշտ. հայրապ. ԺԴ. 334:

Սկուտեղ. Յոյն σκυτάλη.

Անօթ:

ՍԿՈՒՏԵՂ. Յոյն πίναξ. Լատ. discus, scutella.
Է անօթ տափարակ, և սակաւ մի գոգաւոր 'ի ձև Սկաւառակի: * Տուր ինձ աստ այսր 'ի վերայ Սկտեղ ըզգլուխն Յովհաննու Մկրտչի ‖. Մատթ. ԺԴ. 8: * Իբրև զխորտիկ ինչ նուիրական՝ զերանելի գլուխ Մկրտչին Սկտեղը առաջի խնդրեր բերել ‖. Ներբ. 'ի Մկրտ. բնաբանին: * Նա առեալ անտեան խորովէր զնա (զձուկնն) 'ի տապակ. և եդ 'ի Սկտեղն ‖. Մաշտ. հայրապ. Ի. 404: * Զայն որ կիզուն ընութիւն (այսինքն՝ զարեգակն) 'ի ներքս 'ի Սկտեղն արգել փակ ‖. Փիլոն: * Նափորտն բեհեզեայ, զոր տեսանէիր ծալեալ, և եդեալ 'ի վերայ Սկուտեղին ‖. Փարպ. 58: * Զերկիր ... ասացին, թէ ձևացեալ է իբր Սկուտեղ, և ոմանք ասացին իբրև զգունդ ‖. Շիրակ. յԱստեղագէտսն: Նախնիք մեր յԱծաշունչ գիրս զյունականդ πίναξ թարգմանեն և Պնակ:

ՍՏԱԴ, ՍՏԱՆԴ և ՍՏԱԴԻՈՆ. տես ԱՍՊԱՐԷԶ:

Ստոման. Յոյն στάμνος.

Անօթ:

ՍՏՈՄԱՆ. Նոր. Կտակ. Յոյն στάμνος և ξεστής. Լատ. urna, urceus, sextarius.
Նշանակէ զփոքրիկ Սափոր կամ զԱնօթ ջրոյ, գինւոյ, և այլն: * Ստոման մի մեղու ‖. Գ. Թագ. ԺԴ. 3: * Մկրտութիւնս բաժակաց և Ստոմանաց ‖. Մարկ. Է. 4-8: * Եկաց նա զԽ աւուրս 'ի վերայ սակաւ ոսպան,

և միոյ Սողոմոնի ջրոյ, և միոյ սփռիդի ‖. Վարք Հարանց. Ե. 120 : * Եւ ոչ գոյր նոցա ջուր, բայց միայն մի Սա-մանաւ. և արարեալ ոսպնալթան՝ ծախեաց 'ի նա ըղ-ջուրն զայն ‖. Ընդ. Է. 159 : Երեմիա 'ի մեկնութեան բառից Ճաշոցն գրոց՝ դնէ հանդէպ նորա՝ Կուժ գինւոյ :

## Սրուակ :

### Անօթ իւղոյ :

ՍՐՈՒԱԿ. Եբր. ցափախաթ. Յոյն καμψάκης կամ καψάκης, φακός. Լատ. campsaces, vas olearium. lens, lenticula.

Նշանակէ զԿամփսակ իւղոյ ոսպնաձեւ : * Եւ զաղախինն . . . զՀաղաղակն գինւոյ, և զՍրուակն իւղոյ ‖. Յուդիթ. Ժ. 5 :

* Եւ էառ Սամուէլ զՍրուակն իւղոյ, և եհեղ 'ի գլուխ նորա ‖. Ա. Թագ. Ժ. 1 :

Զյունականդ καμψάκις հասարակօրէն թարգմանեն նախնիք մեր՝ Կամփսակ (իւղոյ), և Կուժ (ջրոյ). իսկ զφακός Ոսպն ըստ առաջին նշանակութեանն, և Կուժ ըստ երկրորդին :

Յիշատակէ զՍրուակ և Շիրակացին 'ի կարգս չափուց ընդ Կապսակի՝ առեալ յԵպիփանէ : Ա. օրինակն ունի այսպէս. * Յաղագս Կապսակի : Զափ չորից Քսեստաց՝ կոչի Կապսակ. զոր Հայն Սրուակ ասէ ‖ : Իսկ Դ. և Ե. օրինակք դնեն այսպէս. * Կափսափ այրւոյն՝ զոր Հայն Սրուակ ասէ, Դ Քսեստաց չափ՝ որպէս Սափորն մանանային ‖ : Ըստ այս բառ միշտ նշանակէ 'ի մեզ զանօթ իւղոյ : Իսկ երբեմն լայնաբար զՇիշ կամ զԿողջիւր արեան բժշկաց : * Ըստ օրինակի Սրուակի բժշկաց՝ Կ' ծծէ, Կ' ձգէ ջերմութեամբն զոր ունի՝ զխոնաւութիւն արեան, և ժողովէ և ածէ զնա առ ինքն ‖. Մեջօր. Դ. 51 :

## Սէրէդ. Յոյն σπυρίς.

### Անօթ ցամաքեղինաց ։

ՍՓՐԻԴ կամ ՍՓՐԻԹ. Լատ. sporta, fiscella. Նշանակէ զԶամբիւղ հիւսեալ 'ի տերևոյ՝ յաւէտ յարմաւոյ ։ * Եթէ գայ խորհուրդ բարի, ձգեմ խիճ մի յաջու կողման Սփրիդին. իսկ եթէ չար գայցէ խորհուրդ, ձգեմ 'ի ձախոյ կողման ‖. Վարք հարանց. Թ. 201 ։ * Լցեալ Սփրիթ մեծ աւազով՝ եբարձ զնա 'ի թիկունս իւր. իսկ և 'ի Զամբեղ փոքր էարկ աւազ սակաւ ... Քուրձս այս մեծ՝ լի և ծանր, են անթիւ մեղք իմ ... իսկ և 'ի փոքր այս Զամբեղ են մեղք եղբօր իմոյ ‖. Անդ. Ճ. 208։ Ուր զնոյն անօթ իբրև փոքր՝ կոչէ Զամբիղ, իսկ իբրև մեծ՝ կոչէ Սփրիթ և Քուրձ ։ Նախնիք մեր յՃաշուենջ գիրս զյունականդ σπυρίς թարգմանեն և Զամբիւղ և Սանդակ՝ նովին նշանակութեամբ ։

## Սանդակ. Պարսկ. Պէնդ ։

### Անօթ ։

ՍԱՆԴԱԿ. Յոյն σπυρίς և σαργάνη. Լատ. sporta, cista. Ըստ որում անօթ չափելի՝ նշանակէ զԶամբիւղ, կամ զՍակառի, առեալ զանուննն 'ի վանդակաձև հիւսուածոյն ։ * Ընդ պարիսպն կախեալ՝ իջուցին Սանդակաւ (զՊօղոս) ‖։ Գործ. Թ. 25 ։ * Ընդ պատուհանն Սանդակաւ կախեցայ ընդ պարիսպն, և փախեայ ‖. Բ. Կորնթ. ԺԱ. 33 ։ Յայսոսիկ բանս 'ի Յոյնն առաջինն է σπυρὶς. զոր այլուր թարգմանեն Նախնիք մեր՝ Զամբիւղ. և երկրորդն σαργάνη. և զսա թարգմանեն Սակառի ։

## Սեցդանգեան. Պարսկ. Շէշ դանգ:

### Կշիռ:

ՍԵՑԴԱՆԳԵԱՆ: Նշանակէ զդրամ կամ զկշիռ վեց Դանգաց: Ունիմք զայս բառ յԱշխարհագրութեան անդ Խորենացւոյն՝ այսպէս. * Յորում ազնիւ մարգարիտ ելանէ. և գոհարք մարգարտին՝ այս է դրակ, Սեցդանգեան. արժէ քառասուն հազար դումիայ, հինգ հարիւր: Այլ մթին են այս բանք. և որպէս թուի, 'ի յետնոց մուծեալ:

## Ստաւան. Պարսկ. Տէվան:

### Չափ երկայնութեան:

ՍՏԱՒԱՆ, ՍՏԵՒԱՆ, ՍՏԱՎԱՆ և ՍՏԵՎԱՆ. Յոյն στάδιον. Լատ. stadium. և 'ի մեզ ևս տառադարձութեամբ Ստադ կամ Ստադիոն:

Է չափ հեռաւորութեան ճանապարհի, կամ Ձիրնթայից. որ և է հասարակօրէն Ասպարէզ մի, այսինքն՝ 125 Քայլ երկրաչափական. իսկ երբեմն՝ որպէս երևի մեզ 'ի թարգմանութենէ նախնեաց մերոց, նշանակէ զկէս նորա, կամ զՆետաձիգ մի: Խորենացին յԱսպարիսական չափս իւր նոյն համարի զԱսպարէզ և զՍտաւան. և կոչէ զԱսպարէզն Ստաւան՝ առեալ զայն իբրև զչափ ձիրնթացից, և ասէ. * Ասպարէզն է հեռակացութիւն, այսինքն է՝ Ստաւան: Այլ 'ի պատմութեան իւրում զՍտադիոնն կամ զԱսպարէզն Յոյնական թարգմանէ Ստաւան. ունելով բանին այսպէս. * Լցեալ զհրապարակն Անտիոքացւոց քսան Ստաւանաւ (Յոյն στάδιον) երկայնութեամբ: Բ. 24: Բայց Նորգիկացին 'ի Ճէն. Մեկ. Է. 41. թէպէտև նոյնաչափ դնէ զՍտաւան ընդ Ասպարիսի, բայց չփոթէ զնա ընդ Մղոնի և Փարսախի՝ յասելն. * Մղոնն Փարսանգն է. զոր Ձիրնթաց մի ոմանք անուանեն, և այլք Զայնահաս, և կէսք Քարընկէց, և ոմանք

Նետաձիգ մի. բայց ճշմարտապէս Ասպարէզն է, որ է Մտաւան. հազար Քայլ ըստ երկրաչափական արհեստին‖։

Իսկ Թարգմանիչք մեր յԱ՟ծաշունչ գիրս թէպէտեւ զյունականդ Ստադիոն անխտիր թարգմանեն Ասպարէզ, եւ Մտաւան, բայց երբեմն ոչ նոյնաչափ դնեն զնա ընդ Ասպարիսի կամ Ստադիոնի. որպէս ունիս տեսանել 'ի յետագայ բանսդ։ * 'Ի բացեայ էր յԵրուսաղէմէ իբրեւ վեց հարիւր Մտաւանաւ (Յոյնն նոյնչափ Ստադիոն դնէ)‖. բ. Մակ. ժբ. 29։ * Մեկնեցան 'ի կողմն Քարայի իբրեւ Մտաւանօք հինգ հարիւր եւ յիսուն (Յոյնն 750 Ստադիոն)‖. Անդ. 17։ * Եւ անտի կարթեցին իբրեւ քսան Մտաւանաւ (Յոյնն 9 Ստադիոն)‖. Անդ. 10։ * Օր էր անտի անդ Մտաւանք իբրեւ չորեքհարիւր եւ ութսուն (Յոյնն 240 Ստադիոն)‖. Անդ. 9։ Եւ ահա հայեցեալ 'ի տարբերութիւն թուոցդ՝ որ 'ի սոսա, թուի մեզ, թէ Թարգմանիչք մեր առնուն երբեմն զՄտաւան իբրեւ կէս Ստադիոնի կամ Ասպարիսի։ 'Ի հաստատութիւն կարծեացս՝ ունիմք եւ զայս. զի նախնիք մեր Մտաւան թարգմանեն եւ զյունականդ τόξου βολὴν, այն է՝ նետաձիգ կամ նետընկեց. * Նստաւ յանդիման նորա 'ի բացէ իբրեւ Մտաւանաւ (Յոյնն՝ իբրեւ Նետաձիգ մի)‖. Ծննդ. իա. 16։ Եւ յայտ է թէ Նետաձիգն փոքր է քան զԱսպարէզ. քանզի եւ Շիրակացին յԱստեղաբաշխութեան իւրում այլեւայլ չափ համարի զԱսպարէզ, եւ զՆետաձիգ։

Այս բառ հասարակօրէն գրի Մտաւան, բայց գտանի եւ Մտեւան, Մտավան կամ Մտեվան։ * Իսկ 'ի միջի ուղւոյն՝ զոր ընտրեաց, ունէր հեռի 'ի միմեանց իբրեւ երկոտասան Մտեւանս‖. Մովս. Խորեն. ժա. 216։ * Եւ ելին ընդ առաջ նորա Մտավանս ('ի միում գըրչագիր օրինակի Մտեվանս) եօթն‖. Անդ. Թ. 195։

## Տակառ. Պարսկ. Թաղար:

### Անօթ:

ՏԱԿԱՌ. Յոյն κεράμιον. Լատ. dolium.
Առ նախնիս ոչ ունիմք զայս բառ, այլ՝ զԿարաս. զոր դնեն հանդէպ յունականիս πίθος. իսկ զκεράμιον թարգմանեն՝ Սափոր, Աման, Անօթ. որք են նոյնանիշ ընդ բառիս Տակառ:

Այլ զՏակառապետ բարդեալ 'ի սմանէ՝ դնեն նախնիք մեր հանդէպ յունական բառիցս ἀρχιοινοχόος (պետ մատռուակաց) Լատ. princeps pincernarum, և οἰνοχόος (մատռուակ) Լատ. pincerna, pocillator. բայց այս նշանակութիւն լայնաբար և եթ հայի 'ի Տակառ: Մեք զՏակառ նոյնահնչիւն համարիմք ընդ Թաղար, և նոյնանիշ ընդ Կարասի:

## Տաղանդ. Յոյն τάλαντον.

### Կշիռ:

ՏԱՂԱՆԴ կամ ՏԱՂԱՆՏ. Եբր. քիքար. Լատ. talentum.
Է անուն կշռոյ, որ և է 125 Լիտր: Ա. Բ. և Գ. օրինակք կշռոց Ճիւրակացւոյն այլևայլ կշիռս սահմանեն Տաղանդի և Քանքարի, իմն զՔանքար մեծագոյն համարին քան զՏաղանդն, թէպէտև նախնիք մեր 'ի թարգմանութեան անդ զՏաղանդ յունական, և զՔանքար եբրայական՝ անխտիր դնեն փոխանակ միմեանց: Այլ երեքին օրինակք Ճիւրակացւոյն յաղագս Տաղանդի ունին այսպէս. * Տաղանդն ձիէ Լիտր է: Զսա թուողք (թուաբանք) Մոնադ կոչեն: Իսկ մանր բաժանելով զՏաղանդն՝ լինի Ունկի ռչ, Միկղ ջ, Սատեր ժբռ, Միժէս ժըռ, Տրմէս իէռ, Գրամար լգռ, Մինգ ծդռ, Կերատ ըձժգռ, Փշիտ ըձձըռ, Գանգ դձլբռ, Գարեհատ ըձկդռ: Իսկ լինի Տաղանդն Գահեկան քլ: Դ. և Ե. օրինակք, ընդ որս և Զ. օրինակն թերակատար՝ դնեն այսպէս. * Տաղանդն կըշ-

ւոյ անուն է, որ է ՃԻԵ Լիտր. և ՃԻԵ Լիտրն՝ ԹՌ Ասարիոն ըստ Համերոյ։ Եւ Եբրայեցիք զՏաղանդն Քանքար կոչեն։ Եւ Մնաս և Մնաւթ նոյն է‖։ Գ. օրինակն ունի և յաւելուած այսպիսի. *Քանքարն և Տաղանդն ԶՌ Դահեկան է ըստ Եբրայեցւոցն... Դար. ձեալ՝ Քանքար և Տաղանդ Գ (ԹՌ) Դահեկան է ըստ քերթողացն և բառգրոցն‖։ Երզնկացի 'ի Թէկն. Մատթ. ԺԸ. 24. ունի այսպէս. *Տաղանդն Քանքար ասի ըստ Եբրայեցւոցն, որ է ՃԻԳ (պարտ է լինել ՃԻԵ) Լ իտր. և ըստ կշռոյ ԹՌ Դահեկան‖։ Նա ինքն 'ի ԻԵ. 15. ասէ դարձեալ այսպէս. * Տաղանդն Քանքար ասի ըստ Եբրայեցւոցն. որ է ԹՌ Դահեկան. և ոմանք Ռ (հազար) ասեն‖։ Այսպէս դնէ և Գ. օրինակն Շիրակացւոյն։ Երեմիա 'ի մեկնութեան բառից Ածա. շունչ գրոց դնէ այսպէս. *Քանքար, Տաղանդ, Մը. նաս՝ եբրայեցերէն, դաղմատերէն, յունարէն՝ մի և նոյն է‖։

Ըստ Եպիփանու *Տաղանդն է մեծագոյն քան զա. մենայն չափս կշռոց. և ըստ կշռոյ Լտեր՝ է ՃԻԵ Լիտր‖։ Յորոյ 'ի ծանօթութեան ասէ Պետաւիոս. * Վասն Տաղանդի, և պէսպէս լինելոյ նորա՝ անթիւ են բանք Մեկնչաց։ Եպիփան աստանօր իմանայ զՏաղանդն Սրբութեան Հրէից. որ է Ճ Մնաս, և ըստ Հռով. մայեցւոց՝ 125 Լիտր. զի Լիտրն է 96 Դրաքմէ, և Մնաս՝ 100. Հարիւր և քսան Մնաս՝ առնէ 12000 Դրաքմէ. զոր բաժանեալ 'ի ձեռն 96, ելանէ թիւդ 125 Լտերաց՝ ըստ Հռովմայեցւոց‖։

Կալմէթ զՏաղանդն կոչէ ըստ Եբրայեցւոց Քիքար, և ընծայէ նմին 3000 Սիկղ։ Իսկ զհասարակ Տաղանդն ըստ Աթենացւոց՝ դնէ կշիռ 2400 Լտերաց։ Եւ յաւե. լու ասել. *Բազումք կրկին Տաղանդս դնեն առ Եբ. րայեցիս՝ մեծ և փոքր, իմն ըստ սրբութեան, և հա. սարակաց. զմեծն ասեն կրկնապատիկ լինել փոքուն. այլ մեք չգտանեմք այսպիսի ինչ 'ի Սուրբ գիրս‖։

Ըստ լատին բառարանին՝ Տաղանդն է կշիռ և Դրամ. 60 Մնաս կամ 6000 Դրաքմէ ըստ հասարակ Տաղանդի Ատտիկեցւոց. իսկ ըստ մեծագոյն Տաղանդի նոցա՝

83 Մնաս, և 4 Ունկի։ Ըստ Յոյն բառարանին Տա-
ղանդն նշանակէ նախ՝ զկշիռ. երկրորդ՝ զչափ 125 Լտե-
րայ. և երրորդ՝ զգումար ինչ դրամոց. որ և ըստ Հա-
սարակաց հաշուի է 750 Թալէռ, և ըստ Ատտիկեցւոց
և Ռաբելացւոց՝ 1000։ Այսչափ կարծեաց միջի մեք
հաւանեալ եմք ընդ Տաղանդ Շիրակացւոյն՝ որ է հա-
սարակաց. և է նա կշիռ 125 Լտերաց, և 9000 Դա-
հեկանի։

Նախնիք մեր 'ի Թարգմանութեան անդ Ածաշունչ
գրոց համդէպ յունականին τάλαντον դնեն՝ է՛ զի Տա-
ղանդ, և է՛ զի Քանքար. բայց սովին զանազանութեամբ.
զի 'ի գիրս՝ որոց բնագիրն է եբրայական, համդէպ
Քանքարի դնեն Տաղանդ. իսկ յորս բնագիրն է յու-
նական, Քանքար դնեն համդէպ Տաղանդի։ * 'Ի Տա-
ղանդէ միոյ ոսկւոյ սրբոյ արասցես զայն ամենայն սպաս‖.
Ելք. ԻԵ. 39։ * Եւ կշիռ ոսկւոյ նուիրացն քսան և
ինն Տաղանդ, և եօթն հարիւր և երեսուն Սիկղ‖.
Անդ. ԼԸ. 24։ * Եւ կշիռ նորա (պսակին Մելքոմայ)
Տաղանդ մի ոսկւոյ‖. Բ. Թագ. ԺԲ. 30։ * Եւ էր
կշիռ ոսկւոյն եկելոյ Սողոմոնի 'ի միում տարւոջ՝ վեց
հարիւր վաթսուն և վեց Տաղանդ ոսկւոյ‖. Անդ. Ժ.
14. և այլն։ * Եւ ստացաւ Ամրի զլեառն Սոմորոն
'ի Սամերայ տեառնէ լերինն երկուց Տաղանդաց ար-
ծաթոյ‖. Անդ. ԺԶ. 24։ * Եղիցի անձն քո ընդ ան-
ձին նորա, կամ Տաղանդ մի արծաթոյ կշռեսցես‖.
Անդ. Ի. 39։ * Էառ 'ի ձեռին իւրում տասն Տա-
ղանդ արծաթոյ, և վեց հազար դահեկան (Յոյն՝ ոս-
կի)‖. Դ. Թագ. Ե. 5։ * Եդ արքայն Ասորեստա-
նեայց 'ի վերայ Եզեկիայ արքայի Յուդայ երեքհա-
րիւր Տաղանդ արծաթոյ, և տասն Տաղանդ ոսկւոյ‖.
Անդ. ԺԸ. 14։ * Ըստ աղքատութեան իմում պատ-
րաստեցի ոսկի 'ի տուն Տեառն՝ Տաղանդս հարիւր հա-
զար, և արծաթ՝ Տաղանդս հազարս հազար‖. Ա. Մնաց.
ԻԲ. 14։ * Երիս հազարս Տաղանդս ոսկի 'ի Սոփե-
րայ, և եօթն հազար Տաղանդ ընտիր արծաթ՝ օծա-
նել նոքօք զորմս տաճարին‖. Անդ. ԻԹ. 4։ * Եւ ե-
տուն 'ի գործ տանն Տեառն ոսկի՝ Տաղանդս հինգ հա-

ղար, և բիւր Դուհեկան. և արծաթ՝ Տաղանդս տասն հազար, և պղինձ՝ Տաղանդս բիւր և ութ հազար‖. Ընդ. 7: * Եւ կարկուտ մեծ իբրև կշիռ Տաղանդի միոյ իջանէր յերկնից‖. Յայտ. ժզ. 21:

### Տաշտ. Պարսկ. Դաշտ:

Անօթ հեղանիւթոց և ցամաքեղինաց:

ՏԱՇՏ. Եբր. Միզրաք. Յոյն φιάλη. Լատ. phiala. Նշանակէ զկոնքաձև անօթ՝ նման Բաժակի, և Սկաւառակի: * զՏաշտսն և զմսահանսն‖. Ել. իէ. 3: * Տաշտ մի արծաթի յեօթանասուն Սիկղէ‖. Թուոց. է. 13: * Զսանսն, և զջեռուցիչսն, և զՏաշտսն‖. Գ. Թագ. է. 40: * Իբրև զՏաշտս առաջի սեղանոյն‖. Զաքար. ժդ. 20: * Զանօթս նորա իբրև զՏաշտս խընկոց‖. Երգ. Է. 13: * Ափսէք և Տաշտք և ըմպելիք և պատժանակք‖. Փիլոն: * Առեալ մայրն այն (վանիցն) զլխովին զՏաշտ և զՍափոր՝ և ելից զՏաշտն ջերմ ջրով, և անուշահոտ ծաղկովք ... և լուաց զոտս ծերոյն‖. Վարք Հարանց. Թ. 196: * Ունէր Տաշտ ոսկի 'ի մատունս իւր‖. Բուզանդ. լէ: * Մինչդեռ բերանն 'ի բաժակին էր յըմպել, զուլն հարկանէր սակրաւն ... և գինին Տաշտին անկանէր‖. Ընդ. 342: * Տաշտին՝ որ է աման գինւոյ‖. Վարդան 'ի Ծն. Երգ. 90: * Ըզխորհուրդս մարդկան զժողովեալն 'ի սիրտս սուրբս՝ իբրև 'ի Տաշտս, սփռեն առաջի մարդկան‖. Նարեկ. 'ի Ծն. Երգ. 103: * Տաշտք խնկոց՝ աղօթք սրբոց‖. Լամբ. 'ի Ծն. պատարագի: Զյունականդ φιάλη նախնիք մեր յԱծաշունչ գիրս Թարգմանեն եւ՝ Սկաւառակ, և Բուրուառ:

### Տապակ. Պարսկ. Թաւա կամ Թաւաէ:

Անօթ:

ՏԱԳԱՆ. Եբր. Մախաթ. Յոյն τήγανον. Լատ. sartago. Է անօթ տափարակ, և շրթնաւոր՝ յորում տա-

պակեն զխմորեղէնս , զձուկն , և այլն ։ * Իսկ եթէ զոհ 'ի Տապակէ իցէ պատարագն քո , նաշիհ զանգեալ իւղով բաղարջ լինիցի ॥ . Ղեւ . Բ . 5 ։ * Ամենայն որ գործիցի 'ի կասկարայս կամ 'ի Տապակի ॥ . Անդ . Է . 9 ։ * 'Ի վերայ նաշհոյ պատարագացն , և քաքարացն , բաղարջացն , և Տապակին , և զանգելոցն իւղով ॥ . Անդ . ԻԳ . 29 ։ * Եւ եառ զՏապակն , և թափեաց առաջի նորա . և ոչ կամեցաւ ուտել ( զբլիթսն ) ॥ . Բ . Թագ . ԺԳ . 9 ։ * Պատառ մի 'ի Կասկարայից , և քաքար մի 'ի Տապակէ ॥ . Անդ . Զ . 19 ։ * Եւ առցես դու քեզ զՏապակ երկաթի ॥ . Եզեկ . Դ . 3 ։ * Հրամայէր իշխանն արկանել զոմանս յեռացեալ կաթսայս , և զայլս խորովել 'ի Տապակս ॥ . Մարտ . Հարանց . ԺԲ . 265 . * Եւ առեալ տնտեսն խորովէր զնա ( զձուկնն ) 'ի Տապակ , և դնէր 'ի սկտեղն ॥ . Անդ . Ի . 404 ։

Սովորք մեր յԱծաշունչ գիրս դնեն զՏապակ միանգամ և հանդէպ յունականին ἀσπιδίσκη . Լատ . scutulum, parvum scutum . * Զարդարեցին զկոնքսն , և ըզվարագուրաձիգսն յանդիման տաճարին՝ ոսկի պսակօք , և ոսկւովք Տապակօք ॥ . Ա . Մակ . Դ . 57 . զոր այլուր Թարգմանեն Վահանակ ։

## Տապան . Պարսկ . Թնէպէնէ ։

### Անօթ ։

ՏԱՊԱՆ . Եբր . Թապահ . Յուն κιβωτὸς . Լատ . arca . Նշանակէ զԱրկղ մեծ . վասն որոյ և դնի նախ՝ փոխանակ նաւին , զոր շինեաց Նոյ ։ * Արա դու քեզ Տապան 'ի չորեքկուսի փայտից . խորշս խորշս գործեսցես զՏապանն . յերեքհարիւր կանգնոյ զերկայնութիւն Տապանին , և 'ի յիսուն կանգնոյ զլայնութիւնն , և յերեսուն կանգնոյ զբարձրութիւնն ։ Ժողելով գործեսցես զՏապանն , և 'ի մի կանգուն կատարեսցես զնա 'ի վերուստ . և զդուրս Տապանին 'ի կողմանէ արասցես , ներքնատունս , և միջնատունս , և վերնատունս

գործեսցես 'ի նմա՛. Ծննդ. Զ. 14-16: Երկրորդ՝ դնի փոխանակ Արկեղ կամ Շիրիմ մեռելոյ. Եբր. առօն, կովէդ. Յոյն σορὸς. Լատ. loculus, urna. * Եւ թաղեցին զնա, և եդին զնա 'ի Տապանի յԵգիպտոս՛: Ծննդ. Ծ. 25: * Ինքն 'ի գերեզմանս գնաց, և 'ի Տապանի տքնեցաւ՛. Յոբ. ԻԱ. 32:

Տապանակ. Պարսկ. Թէպէնկէ.

Անօթ:

ՏԱՊԱՆԱԿ. Եբր. տէբա, Թէպահ. Յոյն κιβωτὸς, Θίβη. Լատ. arca, fiscella.

Նշանակէ զԱրկղ փոքրիկ: * Արարցես Տապանակ վկայութեան յանփուտ փայտից. յերկուց կանգնոց և 'ի կիսոյ զերկայնութիւն նորա, և 'ի կանգնոյ և 'ի կիսոյ զլայնութիւն նորա, և 'ի կանգնոյ և 'ի կիսոյ զբարձրութիւն նորա՛. Ելք. ԻԵ. 10: * Եւ էառ Յովիադա քահանայ Տապանակ մի, և ծակեաց ծակ 'ի բերան նորա, և եդ զնա 'ի կողմանէ սեղանոյ Տեառն ... իբրև տեսէս եթէ բազում է (արծաթ տուեալ յողորմութիւն) 'ի Տապանակի անդ՛. Դ. Թագ. ԺԲ. 9-10: * Էառ մայրն նորա Տապանակ պրտուեայ, և ծեփեաց զնա կպրածիւթով, և եդ 'ի նմա զմանուկն, և ընկեց զայն 'ի խաղ մի առ ափն գետոյն՛. Ելք. Բ. 3:

Տառաղան. Յոյն τάλαρος կամ ταλάριον.

Անօթ:

ՏԱՌԱՂԱՆ. Լատ. quasillus, calathus, corbiculus.

Նշանակէ զԿողով կամ զԿթոց: * Երկրագործքն 'ի վայրէ զանուշահոտ ծաղիկս ժողովեալ, և 'ի Տառաղանս (տպ. վրիպանօք Տաղանդս) եդեալ՝ մատուցանեն տերանց իւրեանց՛. Կիւրեղ. պարապ. Ը.

## Տիկ ։

Անօթ հեղանիւթոց ։

Տիկ. Եբր. ՆԷՎԷԼ, նօդ, նէվէլ. Յոյն ἀσκός. Լատ. uter. Նշանակէ զանօթ հեղանիւթոց՝ կաշեղէն ։ * Եւ եառ հաց և Տիկ ջրոյ ... և նուաղեաց ջուր 'ի Տկէ անտի ... և չոգաւ և ելից զՏիկն ջրով ‖. Ծննդ. իա. 14-15-19 ։ * Եւ Տիկս գինւոյ հնացեալս և պատառատունս և կարկատեալս ‖. Յես. թ. 4 ։ * Եւ եբաց զՏիկ կաթինն, և արբոյց նմա ‖. Դատ. դ. 29 ։ * Արդու մի հացի, և Տիկ գինւոյ ‖. Ա. Թագ. ժզ. 20 ։ * Որովայն իմ իբրև զՏիկ քաղցու կապեալ եռայ ‖. Յոբ. լբ. 19 ։ * Ոչ ոք արկանէ գինի նոր 'ի Տիկս հինս. ապա թէ ոչ՝ Տիկքն պատառին, և գինին հեղանի, և Տիկքն կորնչին ։ Այլ արկանեն զգինի նոր 'ի Տիկս նորս, և երկոքին պահին ‖. Մատթ. թ. 17 ։ Զսա կոչեմք և Ջաղաղակ ։

## Տուփ ։

Անօթ ցամաքեղինաց ։

Տուփ. Եբր. ԿԱՖ. Յոյն Θυίσκη. Լատ. mortariolum, thuribulum.

'Ի Սուրբ գիրս նշանակէ զանօթ խնկոյ, կամ զխընկաման. իսկ արտաքոյ՝ զո՛ր և իցէ անօթ խփաւոր, և զպահարան ։ * Եւ արասցես զխնկաղացս, և զՏուփս նորա, և զձաշակս, և զնուիրանոցս նորա ‖. Ելք. իե. 29 ։ * Տուփ մի ոսկի 'ի տասն դահեկանէ՝ լի խնկով ‖. Ընդ. է. 19 ։ * Եւ զսանսն, և զկատսայսն, և զտաշտսն, և զՏուփսն ‖. Դ. Թագ. իե. 14 ։ * Ա՛ռ յինէն ոսկի որչափ և կամիս, և գործեա՛ Տուփ Աւետարանի (որդւոյ իմոյ) ‖. Վարք Հարանց. ժդ. 296 ։ Նախնիք մեր զյունականդ Θυίσκη թարգմանեն և՛ Խնկաման, Խնկարան, Խնկաղաց, Խբարդեայ, և Արիւնակալ ։

## Տրւվղոն. Յոյն τρυβλίον.

Անոթ:

ՏՐԻՎՂՈՆ կամ ՏՐԻՎՂԻՈՆ. Լատ. catinus, patina. Զայս բառ դնէ Շիրակացին 'ի կարգս Չափուց՝ առեալ յԵպիփանէ. և ունի ա. օրինակն այսպէս. * Յաղագս Տրիվղոնի և Պարոպսի: Տրիվղոն՝ սկաւառակ է բոլորակ և խոր. նոյն և Պարոպսիդոս կոչի. և ունի կէս Քսեստի ||: Զորմէ տես 'ի Սկաւառակ: Նախնիք մեր յԱ̃ծաշունչ գիրս զՏրիւբղիոն Յունաց թարգմանեն՝ Սկաւառակ, Նափէ, Կոնք, և Խնկաղաց:

## Տրմէս. Պարսկ. Թմէրմսէ:

Կշիռ և Դրամ:

ՏՐՄԷՍ. Յոյն τριτημόριον. Լատ. triens. Է կշիռ 8 Կերատաց, և է երրորդ մասն Դահեկանի: ա. բ. և գ. օրինակք կշռոց Շիրակացւոյն յաղագս Տրմեսի ունին այսպէս. * Կշիռ Ը կերատաց լինի Տրմէս մի ||: գ. և Ե. օրինակք դնեն. * Տրմէս երրորդ մասն Դահեկանի է ||: գ. օրինակն ունի և յաւելուած այսպիսի. * Դահեկանն՝ գ̃ Տրմէս է ||: * Դրամակէսս և Տրմէսս, այսինքն՝ Դրամք երկու, գողանայր, և տայր կարօտելոց ||. Վարք Հարանց. ժգ. 290:

Յայս բան Դրամակէս և Տրմէս՝ նշանակեն զկէս Դահեկանի, և զերրորդ մասն նորա. վասն որոյ ոչ կարեն լինել երկու Դրամ կամ Դահեկան: Նոյնպէս և Դրամակէս՝ առեալ զայն Դահեկան մի և կէս, և Տրմէս՝ երրորդ մասն Դահեկանի, ոչ լինին երկու Դրամք կամ Դահեկանք: Վասն որոյ՝ թուի թէ, բացատրութիւնդ Դրամք երկու մուծեալ է 'ի տգիտաց անտի:

## Փարսախ. Պարսկ. Ֆարսէխ.

### Չափ երկայնութեան.

ՓԱՐՍԱԽ, ԽՐԱՍԱԽ, ՀՐԱՍԱԽ, ԽՐԱՍԽ, ՓԱՐՍԱՆԳ, և ՖԱՐՍԱՆԳ. Պարսկ. Ֆարսէխ և Ֆէրսէնկ. Յոյն παρασάγγης. Լատ. parasanga, leuca.

Է չափ երկայնութեան ճանապարհի ըստ երից Մղոնաց, որ է 3000 Քայլ երկրաչափական: Այսպէս դնէ Խորենացին յԱշխարհագրութեան իւրում՝ առեալ 'ի Պապպոսէ Աղեքսանդրացւոյ, ընդ նմին և Դ. և Ե. օրինակք չափուց և կշռոց Շիրակացւոյն: * Մղոնն է եօթն Ասպարէզ. որպէս զի լինել գետնաչափութեամբ Մղոնն հազար Քայլ. և Փարսախն երեք Մղոն է‖: Այնպէս համարին և արդի Ուսումնականք առհասարակ. Թէպէտև յառաջին ժամանակս սովոր էին ևս դնել երկու Մղոն, ըստ առածին. * Քայլ քսան և հինգ՝ ընդ հարիւրին, Ասպարիսին՝ չափու չափին: Այլ Ասպարէզ՝ ըք ութեքին, Մըղոնաչափ՝ յերկարաձգին: Իսկ երկրորդեալ՝ չափ Մղոնին, հանգիստաչափ՝ է Փարսախին‖: Ըստ բառարանին պարսից Մղոնն է երրորդ մասն Ֆէրսէխի. Թէպէտև ըստ նոյն բառարանին Ֆէրսէխին կամ Ֆէրսէնկն երբեմն ևս նշանակէ զմիջոց չորից Մղոնաց:

Ըստ տաճկական բառարանին * Ֆէրսէխ և Ֆէրսէնկ է ճանապարհ երից մղոնաց. կամ երկոտասան հազար Կանգուն, կամ Քայլ‖: Ըստ Ստրաբոնի գիրք. ԺԱ. երես. 375. * Ոմանք (առ Նախնիս) վաթսուն Ասպարէզ (դնէին զՓարսախ), և այլք երեսուն կամ քառասուն‖: Զորոյ զբանս յառաջ բերեալ Գէլարիոսի 'ի Նախերգանս Աշխարհագրութեան իւրոյ՝ ասէ. Թէպէտև այլևայլ էին Փարսախք առ Նախնիս, բայց քանզի Հերոդոտոս, Հեսիւքիոս, Սուիդաս և Հերոնն * միաբանին յԱսպարէզս երեսուն, զայս Թիւ ստուգագոյն՝ գէթ համարիմք հասարակաց‖: Այլ ըստ հաշուի Խորենացւոյն՝ որ դնէ զՄղոնն եօթն Ասպարէզ, Փարսախն է քսան և մի Ասպարէզ. իսկ ըստ

արդեաց՝ որք զՄղոնն հաշուեն ութ Ասպարէզ, է նա քսան և չորս Ասպարէզ։ Երզնկացին թուի շփոթել զՄղոն ոչ միայն ընդ Փարսախի, այլև ընդ Ասպարիսի. քանզի ասէ. * Մղոնն Փարսանգն է. զոր ձիընթաց մի ոմանք անուանեն, և այլք ձայնահաս, և կէսք քարընկէց, և ոմանք նետաձիգ մի. բայց ճշմարտապէս Ասպարէզն է. որ է Ս տաւան. հազար Հայլ ըստ երկրաչափական արհեստին ‖. 'Ի Գծ. Մատթ. Ե. 41։ Բայց բանք սորա չունին ինչ ստնանել բանից Խորենացւոյն։ Միայն հայելով յայլևայլ բանս հեղինակաց՝ ունիմք ասել, թէ Փարսախն ոչ միշտ զնոյն չափ ցուցանէ յամենայն ազինս։

* Հրամայեաց հանել 'ի բանտէ անտի զամենեսեան կապանօք, և հեռացուցանել 'ի քաղաքէ անտի երկոտասան Փարսիկ Հրասախաւ ‖. Եղիշ. պատմ. 158։ * Հեռի 'ի գեղջէն որպէս Փարսիկ Հրասախաւ միով ‖. Ղազար. փարպ. 167։ * Հեռի 'ի տեղւոյն իբրև երիւք Փարսիկ Հրասախօք ‖. Նոյնն. 179։ * Եւ զՋրհոր բարձաւանդակին՝ որ առ Սիպարացւոց քաղաքին, շուրջ փորեաց Ե Հրասախ, և խորութիւն Ի Գիրկ ‖. Ստեփ. օրբէլեան։

ՓԱՐՍԱՆԳ. տես ՓԱՐՍԱԽ։

ՓԵՐԱԿ. Թերևս 'ի Յոյն ἀποθήκη.

Անօթ։

ՓԵԹԱԿ. Լատ. cella.

Նշանակէ զՄեղուանոցն կամ զանօթն՝ ուր ամբարեն մեղուք զմեղր իւրեանց։ * Եւ են արարեալ փեթակք (մեղուաց) ըստ գործակցութեան մարդկան ‖. Փիլոն։ * Եւ մեղուք վաճառեալ յաշնան ... անկշիռ վաճառեալ, և կամ կշռաւ՝ նովին փեթակաւ ‖. Մխիթար. Դատաստանագիրք. ղէ։

## փշէտ. Պարսկ. փեշեյշ կամ փեշեյտ ։

### Կշիռ և Դրամ։

ՓՇԻՏ. Յոյն ὀβολὸς. Լատ. obolus.
Յանուն դրամոյ, և կշռոյ. որ և է Լումայ կամ Դանգ։ Շիրակացին դնէ զսա 'ի կարգս կշռոց. որոյ ա. բ. և գ. օրինակք յաղագս փշտի՝ ունին այսպէս. * Կշիռ գ. Դարեհատաց ըստ Պարսկական լեզուի կոչի փշիտ ‖ ։ * Որք (տղայք) վասն անտեղեկութեան զՄ.պելլականաւն զանց արարեալ նկարուք դաստակացն՝ առ այնոցիկ որ ընդ փշտին գրեն (այսինքն՝ վասն միոյ Լումայի կամ Դանգի նկարեն) անցեալ կան. զարմանալով ընդ այն՝ որ ծաղուն արժանին է, և աղարտելով զայն՝ որ ամենայն ընդունելութեան արժանի է ‖. Փէլտն ։ Որ 'ի լուսանցս հանդէպ բառիս փշիտ՝ դնի Լումայ, 'ի բացատրութիւն նորին ։ Ըստ բառարանին Պարսից փեշեյշ նշանակէ զԼումայ կամ զխերեէշ՝ իբրև զփող Թուրքաց, կամ զՄանգուր Արաբացւոց ։

### փող. Յոյն φόλλις.

ՓՈՂ. Պարսկ. ֆուլ կամ ֆէուլ. Լատ. follis, obolus. Նշանակէ ընդհանրապէս զամենայն տեսակ դրամոց, ևս և զգումար նոցա. բայց առանձին իմն՝ զմանր և զպղնձի դրամս, կամ զԴանգ ։ * Դնաց երբեմն 'ի վաճառ, զի գնեսցէ հանդերձ իւր և չուխայ. և առեալ ետ Դահեկան. և պակասեաց Դրամս ինչ 'ի գնոց նորա. և նա եդ զչուխայն 'ի ներքոյ իւր, և սկսաւ համարել զփողս ‖. Վարք Հարանց. բ. 50 ։ * Ժողովեցից սակաւ ինչ Կերմոսս ... և սկսեալ ժողովեաց, և ելից աման ինչ լի փողովք ‖. Անդ. է. 161 ։ * Դանկս երկուս առնում յաւուր մի 'ի ձեռագործէ. և ծախեմ 'ի պէտս իմ երկու փողս, և զայլն տամ սէր ‖. Անդ. ժա. 233 ։ * Դիւրաւ վաճառէ Ած զառողջութիւն՝ որոց կամին գնել, փոքու իւիք հացիւ, կամ բաժակաւ ցուրտ ջրիւ, և միով փողով. և ոչ իբրև զմարդ 'ի ծա-

ծուկ առնու զփոքր փողն||. Անդ. ժզ. 274: *Քա-
նո՞յ (վաճառես զգամբիւղսն). ասէ ցնոսա. տասն տասն
փողոյ||. Անդ. ժէ. 326: *Յառնէ միոջէ խնդրեաց
փող մի, և ետ նմա փող. և առեալ գնեաց երիս
փոքր նկանակս հացի||. Անդ. իզ. 506: Չիք գործա-
ծութիւն այսր բառի ՚ի հին և յընտիր Մատենագիրս
մեր: Ο φόλλις Յունաց Սուիդաս ՚ի բառարանի իւ-
րում մեկնէ Ոբոլոս՝ որ է ըստ Թարգմանչաց մերոց
Դանգ: Եպիփան յիշատակէ զփող ՚ի կարգս կշռոց.
և ունի այսպէս. *փող՝ որ և Տաղանդիոն կոչի, է
կրկնակի՝ ՚ի կրկին Արգիւրոնաց բաղկացեալ. որ լինի
մի Դենար: Եւ է փողն՝ երկու Լեպտոն ըստ կշռոյ
Դենարի, այլ ոչ Արգիւրոնի||: Պետաւիոս՝ զկնի
բազմօք աշխատ լինելոյ ՚ի բացատրութիւն բանիցս՝
ասէ. *Չիք ինչ այնպէս դժուարին յայս գիրս Եպի-
փանու, որպէս փող նորա. որ և յարոյց անհնարին
երկպառակութիւն ՚ի մէջ իմաստնոց, և տագնապե-
ցոյց զնոսա||: Իսկ ինքն զկնի ընդերկար խօսելոյ՝ կնքէ
զբան իւր ասելով, թէ փողն երկու ինչ նշանակէ. մի՝
զտեսակ մանր դրամոց. և միւս ևս՝ զգումար, զկշիռ,
և զքսակ այսչափ ինչ դրամոց. քանզի և փող յունա-
րէն և լատիներէն Քսակ լսի:

## Փորչէ:

### Կշիռ:

ՓՈՐՉԷ: Ունիմք զայս բառ ՚ի ա. բ. և գ. օրինակս
կշռոց Շիրակացւոյն ընդ բառիցս Սիկղ և Սէտ. և
դնի այսպէս. *Յաղագս Սկեղ և Սետի: Կշիռ Դա-
հեկանի և Սիմեսի կոչի ըստ Եբրայեցւոց Սիկղ, և
ըստ Հելլենականին Սէտ, և ըստ Հռովմայեցւոց
Մեղիարիս, և ըստ Հայոց փորչէ. որ է գ մասն Ուն-
կոյ. և ունի լզ Կերատաց կշիռ||: Այլ մեք զայս բառ
չգտաք այլուր. թերևս ՚ի ժամանակս Շիրակացւոյն
էր բառ ռամկական, և կամ առանձին գաւառի սեպ-

հական։ Վզիռ նորա ըստ ոռուշ չորրորդ մասն Ունկոյ՝ լինի Երկդրամեան կամ Միկղ մի։

## ՔԱՂԿԻՄԱՑ և ՔԱՂԿՈՍ. տես ՄԱՏԵՐ և ՊՂԻՆՁ։

## ՔԱՅԼ։

### Չափ երկայնութեան։

ՔԱՅԼ. Յոյն βῆμα. Լատ. passus.
Ըստ Երկրաչափից նշանակէ զերկայնութիւնն՝ որ է հինգ Ոտնաչափ. վասն որոյ և առած է առ Ուսումնականս. * Չորք Գարեհատք՝ են 'ի Մատին, և Մատնաչափք՝ չորք 'ի յՈւղկին։ Քառեակ Ուղուկք՝ յՈտնաչափին, հինգ Ոտնաչափք 'ի Քայլ դընին ||։ Խորենացին՝ ընդ նմին և Շիրակացին, յիւրում Ասպարէսական չափու՝ վեց Ոտնաչափ կամ Ոտն դնէ զՔայլ. որպէս և զՈտն՝ վեշտասան Մատն. և այս վասն այսորիկ՝ զի ըստ հաշուի նորա Ասպարէզն է եօթներորդ մասն Մղոնի. իսկ ըստ արդի Ուսումնականաց ութերորդ մասն նորա. որով և Քայլ Խորենացւոյն, և Ոտնաչափ, և Մատն՝ ըստ համեմատութեան Ասպարիսի նորա մեծ լինին քան զարդեացս. Թէպէտև Մղոնն ամենեցուն է միշտ 1000 Քայլ։ Ըստ Լատին բառարանին կրկին է Քայլ՝ փոքր և մեծ. փոքրն է երկու Ոտնաչափ և կէս, որ է բնական քայլափոխ ընթացից մարդկան. իսկ մեծն՝ որ և կոչի երկրաչափական, է կրկնապատիկ նորա. և է հինգ Ոտնաչափ ըստ Ուսումնականաց։ Յոյնք երբեմն փոխանակ երկրաչափական Քայլի 'ի գործ ածեն զբառս ὀργυία, որ է ըստ թարգմանչաց մերոց՝ Գիրկ կամ Գրկաչափ. որպէս և Լատին բառս passus նշանակէ եթէ զՔայլ, և եթէ զԳրկաչափ։

* 'Ի Քիլս ձեռին, և 'ի Քայլս ոտին, թէպէտև ոչ զընաւին տարերս, այլ զբազում տեղիս չափեցին ||. Կոչէն. 'ի պատմ. Խաչին։ * Եւ ոչ Քայլ մի ոտին ||. Ա.

Օրէնք. Բ. 5: *Օ՜ի որքան Րայլք փոխեցցես վասն սիրոյ, թուեալ են ամենայն‖. Սարգ. Հարանց. ԺԸ. 371:

Րանդուկ. Պարսկ. Րէնդուկ:

Աման:

ՐԱՆԴՈՒԿ. Յոյն θησαυρὸς. Լատ. armamentarium. Նշանակէ զհամբարանոց կամ զշտեմարան ընդեղինաց: *Լինի և 'ի Բրիւթանիա հող սպիտակ, զոր մանր աղացեալ, և ցանեալ 'ի Րանդուկս 'ի վերայ ցորենոյ՝ ճճի ոչ ուտէ ‖. Խորէն. յԱշխարհագր: Ստրաբոն յիւրում Աշխարհագրութեան գիրք ԺԲ. կոչէ զՐանդուկ Խորենացւոյն յունական բառիւ θησαυρὸς. յորոյ 'ի Լատին թարգմանութեան դնի armamentarium. և բանք Ստրաբոնի են այս. *Նա (ունի Կիւզիկոն քաղաք 'ի Բրիւթանիա) ճարտարապետս երիս՝ վերակացուս համարակաց շինուածոց, և գործարանաց. և երիս գանձս զինուց, գործեաց, և ցորենոյ. և առնէ զցորեանն անապական՝ քաղկիդեանն խառնեալ‖: Րէնդուկ ըստ բառարանին Պարսից՝ է անօթ կաւեղէն նման կարասի՝ յորում պահեն զընդեղէնս: Այն այս է ըստ մերումս կարծեաց և Րանդուկ Խորենացւոյն:

ՐԱՆՈՆ, ՐԱՆՆՈՎՆ և ՐԱՆՈՒՆ. տես ԿԱՆՈՆ:

Րանքար. Եբր. Րէքար:

Կշիռ:

ՐԱՆՔԱՐ. Յոյն τάλαντον. Լատ. talentum. Տաղանդ. Գանձար:
Նոյն անուն կշռոյ՝ որ է 138 Լիտր ըստ հաշուի Շիրակացւոյն. և սովոր իմանամք մեք զՐանքարն և զՏաղանդն մեծ ըստ Եբրայեցւոց և ըստ Յունաց. իսկ ըստ որում նոյն ընդ փոքր Տաղանդի նոցա՝ է նա կշիռ 125 Լիտերաց, կամ 9000 Դահեկանի ըստ հաշուի նո-

րուն Շիրակացւոյն։ Արդ՝ ա. բ. և գ. օրինակք կշռ-
ռոց նորա յաղագս Քանքարի առանձին իմն ունին այս-
պէս. *Քանքարն ճլբ Լիտր է։ Իսկ մանր բաժանեալ
զՔանքարն՝ լինի Պահեկան թռջլգ, Միջս ժթռպհբ,
Տրմիս իթռպը, Գրամար գճղէռխդ, Մինգ եճղգռժզ,
Կերատ բճլբռնկգ, Փշիտ դճժէռջծբ, Գանգ
դճհգռջիր, և Գարեհատ թճծգռպծգ։ Իսկ հաւա-
քեալ զամենայն մասունս Քանքարի՝ լինի Պահեկան
քջլգ։ Իսկ դ. և գ. օրինակք նոյնաչափ դնեն զՔան-
քար, զՏաղանդ, և զՄնաս ընդ միմեանս. և այս յայն
սակս՝ զի 'ի Թարգմանութեան անդ Նախնեաց երեքին
սոքա երբեմն լայնաբար դնին փոխան միմեանց։

Նախնիք մեր 'ի Թարգմանութեան անդ Ածաշունչ
գրոց զՅունականդ τάλαντον յեղուն 'ի մեզ՝ է զի Տա-
ղանդ, և է զի Քանքար. բայց սովին օրինակաւ. զի
ուր ուրեք եբրայական բնագիրն է Քանքար, անդա-
նօր 'ի Հայումս դնեն Տաղանդ. և ուրանօր յունական
բնագիրն է Տաղանդ, անդանօր Քանքար։ Զվկայու-
թիւնս Տաղանդի եդելոյ հանդէպ եբրայական Քան-
քարի՝ ունիս տեսանել 'ի Տաղանդ. իսկ զՔանքար
եդեալ են հանդէպ յունականիս Տաղանդի յայսոսիկ
տեղիս։ *Կարգեցից 'ի գանձս արքունի բիւր Քան-
քարս արծաթոյ‖. Եսթեր. գ. 9։ *Տալ նմա երեք-
հարիւր Քանքար‖. ա. Մնաց. ժա. 28։ *Պարտապան
մի բիւր Քանքարոյ‖. Մատթ. ժը. 24։ Որ ասէ Երզն-
կացին. *Տաղանդն Քանքար ասի ըստ Եբրայեցւոցն.
որ է ճիգ Լիտր. և ըստ կշռոյ թռ Պահեկան‖։
Զայսոսիկ առնու նա 'ի բանից Շիրակացւոյն, բայց
ոչ ուղղութեամբ։ *Ումեմն ետ հինգ Քանքար, և
ումեմն երկուս, ումեմն մի՝ իւրաքանչիւր ըստ իւրում
կարի‖. Մատթ. իե. 15։ Իսկ արտաքոյ Սուրբ գրոց
հանդէպ յունական Տաղանդի հասարակօրէն դնեն զեբ-
րայականդ Քանքար։ * Քանքար Միակի (ըստ Շի-
րակացւոյն՝ Մնասի) նմանեցաւ. երկին մի գոլ, և
ոչ ումեք այլոց նման ըստ ձևոյ և զօրութեանց ... և
մասունքն երկրի ... ասեն կ չափեալ. Քանքար կար-
գեալ դասեաց զկերպարան նորա. քանզի վաթսուն

Մնէ (կամ Մնաս) է Քանքար ‖. փիլոն ։ * Զ մի 'ի շարագրածացն իւրոց՝ այն որ կոչի մեծ Արամազդաշխարհ, հարիւր՝ որպէս ոմանք ասեն, և այլ ևս աւելի քան զԱտտիկեցի Քանքարն, յորդուն համարեցաւ ‖. Նոյնն ։ * Անուն՝ հասեալ 'ի Մակեդոնիա, դահեկանս ոսկւոյ՝ Քանքարս բիւրս, հազարս և ութ հարիւր և վաթսուն ‖. Պատմ. Աղեք ։ Այլ որպէս ասացաք 'ի վերոյ, զՔանքար դնեն նախնիք մեր երբեմն և հանդէպ յունականին μνᾶ. զոր հասարակօրէն թարգմանեն Մնաս ։ * Ոսկի վահանաւ 'ի հինգ հազար Քանքարէ ‖. ա. Մակ. ժդ. 24 ։ * Վահան ոսկի 'ի հազար Քանքարէ ‖. Անդ. ժե. 18 ։ 'Ի թարգմանութեանց աստի սոցա յայտ է, թէ Քանքար 'ի մեզ ոչ միշտ զնոյն չափ նշանակէ, այլ երբեմն դնի փոխանակ որոշ ինչ քանակութեան կամ կշռոյ ։ Սակայն ըստ ճիշդ կըշռաբանութեան Շիրակացւոյն ունի նա զատանձին չափ. և որոշի՝ ոչ միայն 'ի Մնասէ, այլև 'ի Տաղանդէ անտի ։

## Քարընկէց ։

### Չափ երկայնութեան ։

ՔԱՐԸՆԿԷՑ. Յոյն λίθου βολή. Լատ. jactus lapidis.

Նշանակէ զչափ հեռաւորութեան ցոր վայր կարէ ժամանել քարն ընկեցեալ ։ * Մեկնեցաւ 'ի նոցանէ իբրև Քարընկէց մի ‖. Ղուկ. իբ. 41 ։ * Լուաւ ծերն զմախաղն, և մեկնեցաւ յինէն Քարընկէց մի. և արարեալ աղօթս՝ եբեր զնա լի ջրով առ իս ‖. Վարք հարանց. ժդ. 270 ։ * Զոր ձիընթաց մի ոմանք անուանեն, և կէսք Քարընկէց, և ոմանք Նետաձիգ մի ‖. Եփրեմ. 'ի Ղկն. Մատթ. Է. 41 ։

ՔԹՈՑ. տես ԿԹՈՑ ։

# ԹԻԶ:

### Չափ երկայնութեան :

ԹԻԶ. Յոյն παλαιστὴ կամ σπιθαμὴ. Լատ. palmus. Տաճկ. ՔԷՐԷ. Պարսկ. ՓԷՍԹ :

Ի երկայնութիւն տարածութեանն ընդ մէջ բութամատի և ցուցամատին : * Ո՞ չափեաց ափով իւրով զջուրս, և զերկինս Թզաւ, և զերկիր ամենայն Թզաւ (Յոյն δράξ կամ χείρ) ‖. Եսայ. Խ. 12 : * Ի զուր է ճամարտակելն նոցա՝ զի այնչափ մեծութիւն երկնից տան քան երկրի. զի Ա.ծատուր գիրք զերկինս Թզաւ ասեն, և զերկիր Թզաւ. և ոչ աւելի զԹիզն քան զԹիզն գտանեմք ‖. Սւնէց. ծը. 195 : * Թզաւ երկայնութիւնն, և Թզաւ լայնութիւնն վասն այսորիկ՝ զի Թիզ վեցերորդ մասն է Կանգնի. քանզի կանգուն վեցաքլեան է. զի իցէ վեցերորդն մի՝ երկայնութեամբ և լայնութեամբ ‖. Փիլոն : * Ի Թիզս ձեռին, և 'ի Թայլս ոտին, Թէպէտև ոչ զենաւին տարերս, այլ զբազում տեղիս չափեցին ‖. Նարեկ. 'ն դառն. Խոսքն :

Բառս Թիզ 'ի մեզ հասարակօրէն նշանակէ զչափ երկայնութեանն՝ զոր եդաք 'ի վերոյ : Բայց երբեմն 'ի Թարգմանութեան անդ գոլով եդեալ հանդէպ այլևայլ բառից Յունաց, նշանակեն զԹիզ, և զԹզուկ. որպէս ունիս տեսանել 'ի նոսա. քանզի և Յունական բառքդ παλαιστὴ և σπιθαμὴ դնին երբեմն փոխանակ միմեանց, կամ զերկոսին ևս նշանակեն. նոյնպէս և Լատին բառս palmus. Իսկ Տէօք ըստ բառարանին Պարսից նշանակէ զԹիզ, և զԹիզ: Այլ զԹիզ Իտալացիք հասարակօրէն կոչեն quarta (չորրորդ). որով իմանան զչորրորդ մասն միոյ կանգնոյ:

# ՔՈՌ. ՆԵՐՔ. ՔՈՌ:

## Չափ ցամաքեղինաց:

ՔՈՌ. Յոյն κόρος. Լատ. corus.
Ըստ ոմանց է 40 Մոդ, և ըստ այլոց 30: Ա. օրինակ չափուց Եբրայեցւոյն յաղագս Քոռի ունի այսպէս. * Չափ պձ Քսեստի լինի Քոռ մի. և կոչի Եբրայեցւոցն և Ասորւոց՝ 'ի Հայոց առեալ. և է Խ Մոդոյ չափ: Եւ Քուռն (կամ Քոռն) ըստ Հելլենականին Կորոս լսի. և է նոյն չափ Խ Մոդոյ, որ ունի պձ Քսեստ||: Իսկ Գ. և Ե. օրինակք դնեն այսպէս. * Կորոս ըստ Հելլենացւոցն, և Եբրայեցւոցն Քոռ. որ է Լ Մոդ||: Ըստ այսոցիկ օրինակացս ունի և Եպիփան այսպէս. * Երդ՝ առեալ եղև Կորոսն յեբրայական 'բարբառոյ՝ որ կոչի Քոռ, և է Լ Մոդ: Եւ Քոռ կոչի 'ի նմանութենէ բլրոյ, քանզի Քարխա կոչեն զբլուրն. և երեսուն Մոդ բլրաձև դիզացեալ առնէ բեռն մի ուղտու||: Յորոյ 'ի ծանօթութեան ասէ Պետաւիոս. * Քոռ և Խոմէռ զնոյն չափ նշանակեն առ Եբրայեցիս ըստ Ռաբբի Դաւթի Քիմխեան. և է տասն Էփօթ. որ առնէ երեսուն Սատոն||: Սոյնպէս դնէ և Կալմէթ յիւրումն բառարանի: Բայց մեք զԵբրայեցւոյն հաշիւ ընդ Եպիփանու՝ ընտրելագոյն դատիմք: Նախնիք մեր 'ի Թարգմանութեան Ածաշունչ գրոց զյունականդ Կորոս միշտ յեղուն 'ի մեզ Քոռ՝ եբրայական հնչմամբ: * Եւ այս ռոճիկք էին Սողոմոնի 'ի միում աւուր. երեսուն Քոռ նաշհոյ, և քառասուն Քոռ ալեր գերմակոյ||. Գ. Թագ. Դ. 22: * Անձիկ ծառայից քոց՝ քսան հազար Քոռ ցորենոյ, և քսան հազար Քոռ գարւոյ||. Բ. Մնաց. Բ. 10: * Պատրաստ արարէք ... ցորեան Քոռս հարիւր, և գինի նոյնչափ||. Բ. Եզր. Է. 22: * Ըստ սերման իւրում Քոռի միոյ գետնոյ||. Ղևտ. ԻԷ. 16: * Որ սակաւ ժողովեաց (զլորամարգին) տասն Քոռ||. Թուոց. ԺԱ. 32: * Զատանիցէք զվեցերորդ Չափուն 'ի Կորուէ (Յոյն և Լատ κόρος) ցորենոյ, և զվեցերորդ

Արդուի 'ի Քոռէ գարւոյ ||. Եզեկ. ԽԵ. 13: * Հարիւր Քոռ ցորենոյ ||. Ղուկ. ԺԶ. 7: * Սարձեցայ ես ինձ հնգետասան արծաթոյ, և Քոռի (Յոյն γόμορ հանգոյն Եբրայականին) միոջ գարւոյ ||. Ովս. Գ. 2: Այլ 'ի վերոյ եդեալ վկայութիւնսդ եբրայական բնագիրն' է զի Քոռ ունի, և է զի Խոմէռ:

## Քուզայ. Յոյն χοῦς.

### Չափ հեղանիւթոց:

ՔՈՒԶԱՑ կամ ՔՈՒԶ. Լատ. congius. Դնէ զայս բառ Շիրակացին 'ի կարգս չափուց' առեալ յԵպիփանէ. և ունի ա. օրինակ նորա յաղագս Քուզայի այսպէս: * Չափ Զ Քսեստի ըստ Եբրայեցւոցն' կոչի Քուզայ. որ է ԺԶ մասն Արդուի ||: Իսկ բանք Եպիփանու են այս. * Քուս է Ը Քսեստ, իսկ որ կոչին Արքութեան' Զ Քսեստ. որ է երկոտասաներորդ մասն Մետրետեսի (ըստ Շիրակացւոյն Արդուի) ||: Յորոյ 'ի ծանօթութեան ասէ Պետաւիոս. * Քուս է վեց Քսեստ միայն' երկոտասաներորդ մասն Մետրետեսի. զի Մետրետես է 72 Քսեստ ||: Մետրետէս սորա և Եպիփանու' նոյն է ընդ Արդուի Շիրակացւոյն: Նախնիք մեր զχοῦς Յունաց իբրև զչափ' Թարգմանեն յԱծաշունչ գիրս Կապիճ: Բայց ըստ Յոյն բառարանին է նա բառ Ատիկեցւոց, և է չափ հեղանիւթոց:

## Քուրձ:

### Անօթ ցամաքեղինաց:

ՔՈՒՐՁ. Եբր. սաք. Յոյն σάκκος, μάρσιππος. Լատ. marsupium, saccus, crumena.

Հասարակօրէն նշանակէ զԽորգ մազեղէն, և երբեմն զամենայն անօթ հիւսուածոյ: * Եւ լուծեալ միոյ զՔուրձ իւր տալ կերակուր գրաստու ||. Ծնն. ԽԲ. 27: * Եւ հրաման Յովսեփ լնուլ զամանս նոցա ցորե-

նով, և գնել զարծաթն իւրաքանչիւր 'ի Քրձի իւրում։ Ծնդ. 25. և այլն։ * Եւ մեք Քուրձ մի ալիւր տանէաք նմա յամին։ Վարք Հարանց. Զ. 114։ * Բարձեալ բերէր անօթս կաւեղէն՝ Քրձիւ։ Ծնդ. Զ. 134։ * Լցեալ Սփրիթ մեծ աւազով ... Քուրձս այս մեծ լի և ծանր՝ են մեղք իմ։ Ծնդ. 208։

Քսակ. Պարսկ. Քէյսէ։

Աման։

ՔՍԱԿ. Նոր. Տէս և Ծէրօֆ. Յոյն μαρσύππιον և βαλάντιον. Լատ. marsupium.

Նշանակէ զՊարկ, կամ զՔուրձ փոքրիկ։ * Զվիճակ քո արկ ընդ մեզ. զՔսակ հասարակաց ստասցուք ամենեքեան. գանձարան 'ի միասին եղիցի մեր։ Առակ. Ա. 14։ * Կնքեցեր զանօրէնութիւնս իմ 'ի Քսակի։ Յոբ. ԺԴ. 17։ * Մի բառնայք զՔսակ, և մի մախաղ։ Ղուկ. Ժ. 4։ * Ոսկի գտեալ ուրուք՝ 'ի Քսակ արկանէ։ Խոսրով. 38։

Քսեստ. Յոյն ξέστης.

Չափ հեղանիւթոց և ցամաքեղինաց։

ՔՍԵՍՏ. Լատ. sextarius.

Է անօթ հեղանիւթոց և ցամաքեղինաց. որոյ չափ է երկու Լիտր ըստ Աղեքսանդրացւոց, և ըստ Շիրակացւոյն։ Ա. սխալագիր օրինակն չափուց Շիրակացւոյն սկիզբն արարեալ 'ի Քսեստէ՝ ունի յաղագս նորա այսպէս. * Չափ առաջնորդ Չափուց Քսեստ. և այսպէս ամենայն լեզուք անուանեն. բայց ըստ աշխարհաց աշխարհաց այլ և այլ չափ է։ Ըստ Աղեքսանդրացւոց և Իտալացւոց և Պոնտացւոց Բ Լտերաց կշռորդ է. ըստ Կեսարացւոց ԻԲ Ունկեաց կշռորդ. իսկ 'ի Նիկոմիդիա Ի Ունկեաց կշռորդ է։ Բայց ըստ Հելլենականին Քսեստն սակաւ ինչ պակաս է 'ի Զ Լտերաց կշռ-

ւորդէ»։ Գ. և Ե. օրինակք ունին այսպէս. * Քսեստ ըստ ամենայն լեզուաց կոչի. բայց ըստ գաւառի գաւառի այլևայլ չափ է։ Ըստ Աղեքսանդրացւոց Բ Լտերաց կշռորդ է. և ըստ Իտալացւոց և Սպաստրացւոց Ի Ունկեաց»։ Այնպէս դնէ գրեթէ և Եսայի վարդապետ 'ի մեկնութեան Եզեկիէլի խԵ. 24. * Քսեստն ըստ ամենայն լեզուաց կոչի. բայց ըստ գաւառի գաւառի այլևայլ չափ է. ըստ Աղեքսանդրացւոցն Բ Լտերաց կշռորդ է. և ըստ Իտալացւոց Ի Ունկոյ, որ է Խ Սատեր»։ Երեմիա 'ի մեկնութեան բառից Ածաշունչ գրոց յայլևայլ տեղիս յիշատակէ զսա՝ ասելով. * Քոռն ՂԶ Քսեստ է. մէկ Քսեստն է Բ Լիտր ... Մարն Ծ Քսեստ է. մէկ Քսեստն Բ Լիտր է ... Ըրդու ՀԲ Քսեստ է. Ա Քսեստն, որ է Լիտր Բ ... Գորիւ ԻԲ Քսեստ է. Ա Քսեստն Բ Լիտր. Լիտրն զանազան է ըստ այլևայլ լեզուս»։

Եպիփան 'ի կարգի անդ չափուց հանդոյն օրինակաց Կիպրացւոյն համառօտիւ ունի այսպէս. * Քսեստ ըստ Աղեքսանդրացւոց՝ ունի զկշիռ երկուց Լտերաց իւղոյ»։ Ըստ Յոյն բառարանին Քսեստ նշանակէ զՍտոման, և է չափ ցամաքեղինաց և հեղանիւթոց. և ելանէ 'ի Լատին բառէս sextus. Ըստ Լատին բառարանին է նա չափ՝ որ ունի երկու Հիմէն կամ Կոտիւղ, այսինքն՝ երկոտասան Կիւաթոս. և է կշիռ նորա 20 Ունկի. և կոչի sextus կամ sextarius, զի է վեցերորդ մասն Քուղայի։ Եւ յաւելու ասել, թէ quadrantal մի գինւոյ՝ է 48 Քսեստ. և Մոդ մի ցորենոյ՝ 16 Քսեստ։ Վասն որոյ՝ Քսեստն է չափ հեղանիւթոց և ցամաքեղինաց։

Նախնիք մեր 'ի թարգմանութեան Ածաշունչ գրոց զյունականդ ξέστης, որ գտանի միայն 'ի Նորումն Կտակի, թարգմանեն Ստոման։ Բայց դնեն զՔսեստ հանդէպ կրկին Յունական բառից. որոց առաջինն է κοτύλη, Եբր. պար. Լատ. cotyla, sextarius. * Եւ հրաման ձիթոյ՝ Քսեստ մի իւղոյ, տասներորդ Սափորոյն. զի տասն Քսեստն է Սափոր մի»։ Եզեկ. խԵ. 14։ Զոր այլուր թարգմանեն միշտ Ճաշակ։ Եւ

երկրորդն ։ Յն. Եբր. Հին. Լատ. sextarius. hemina.
* Քսեստ մի իւղ ըստ հացին ‖. Եզեկ. խե. 24. և
խզ. 6. և այլն ։ Եւ զսա այլուր Թարգմանեն Կոռ-
րակ, և Հիմէն ։ Յորոց յայտ է, Թէ լայնաբար առ-
նուն նոքա զնշանակութիւն բառիս Քսեստ ։ * Նախն
զկերակուրն. և զՔսեստ գինւոյն ընդ իւրեանս ‖.
Վարք Հարանց. ժէ. 366 ։ * Ուտէր Լիտր մի հաց յա-
միսս է, և Քսեստ մի ձիթոյ ‖. 'ի վարս Եւագրի ։ * 'Ի
Սամիորոյ գինի յորժամ առնուցուս Քսեստ մի, պա-
կասի ‖. 'ի Բժշ. հին. ձեռագ ։

## Օթևան ։

### Չափ երկայնութեան ։

ՕԹԵՒԱՆ կամ Օթ. Յոյն μονή. Լատ. mansio.
՝Նշանակէ զչափ երկայնութեան ճանապարհի ըստ
օթից ճանապարհորդաց. որ և հասարակօրէն համա-
րեալ լինի ութևտասն հազար Քայլ ։ * Եւ երթեալ
բազում անգամ Օթս զհետ, և ոչինչ կարացեալ գտա-
նել հնարս. և մերձեալք որպէս Թէ Օթևանաւ միով
'ի սուրբ տեղի տան նահատակին Գրիգորի ‖. Պատմ.
Տարօն. 242 ։ * Հեռի երեսուն Օթևանօք ‖. Ճառընտ ։
* Իբր հնգետասան Օթևանօք 'ի բացեայ վանքն այն ‖.
Վարք Հարանց. իզ. 461 ։ * Հեռի էին 'ի կարաւանէն
իբրև Օթիւք հնգետասան ‖. Եղիշ. պատմ. եր. 143 ։

ՓԱՐՍԱՆԳ. տես ՓԱՐՍԱԽ ։

# ԱՐԴԻ

# ՉԱՓՔ ԵՒ ԿՇԻՌՔ

# ԳԱՂՂԻԱՑՒՈՑ։

*Չափք և կշիռք նախնեաց առին զծագումն իւրեանց յաւէտ յանդամոց մարդկային մարմնոյ՝ որպէս յայտ է յանուանցս կանգուն, ոտն, թիզ, մատն, և այլն։ Բայց որպէս հասակք մարդկան, նոյնպէս և չափք և կշիռք ազգաց տարբեր են 'ի միմեանց. մինչև չտարբերիլ լեզուաց այլևայլ ազգաց այնչափ 'ի միմեանց, որչափ չափուց նոցա և կշռոց։*

*Յոյն սակս 'ի դիւրութիւն վաճառականութեան՝ յանցեալ դարու հնարեցին Գաղղիացիք նորոգ դրութիւն ինչ չափուց և կշռոց, եդեալ 'ի մտի մուծանել զայն յամենայն ազինս։*

*Եւ եդին հիմն դրութեան իւրեանց զանվրէպ չափն առեալ 'ի մասնէ շրջապատի հողագնտոյս։ Քանզի չափեալ նոցա զքառորդ շրջապատի երկրիս, կամ որ նոյն է՝ չափեալ զհեռաւորութիւն բևեռին 'ի հասարակածէ անտի, և բաժանեալ զայն 'ի տասն միլիոն հաւասար մասունս, զմին 'ի տասն միլիոն մասանց անտի՝ որ մերձաւորագոյն ևս էր նախնի չափուց իւրեանց, եդին հիմն նորոգ չափուց և կշռոց իւրեանց։*

*Եւ կոչեցին զայն յունական ձայնիւ* mètre, *մետրոն կամ չափ. զոր և 'ի կիր արկին առանձին իմն 'ի գծաչափութեան կամ յերկայնաչափութեան անդ։*

*Այս մետրոն իբրև միութիւն տեսակարար կացեալ 'ի միջին տեղւոջ՝ ունի ստորև քան զինքն զբաժանմունս իւր՝ 'ի տասնաւոր, 'ի հարիւրաւոր, և 'ի հազարաւոր. կամ լաւ ևս ասել՝ բաժանի 'ի տասն, 'ի հարիւր, և 'ի հազար մասունս։ Իսկ 'ի վերոյ քան զինքն՝ զբազմա-*

պատկութիւնս իւր 'ի ձեռն տասնաւորի, հարիւրաւորի, հազարաւորի, և բիւրաւորի, կամ որ նոյն է՝ բազմապատկի 'ի ձեռն տասին, հարիւրոյ, հազարի, և բիւրոյ. յորոց իւրաքանչիւր հաւասար է տասն, հարիւր, հազար, և բիւր Մետրոնի։

'Ի մակերևութական կամ 'ի մակարդակ չափս միութիւնն տեսակարար է are, ար, կամ Գիլոյ փէղոյ, ձևացեալ յամենայն կողմանց 'ի տասն Մետրոնեան քառակուսւոյ։

Որպէս Մետրոնն, նոյնպէս և նա գոգցես զմիջին տեղին ունի այլոց եօթանեցունց մակերևութական չափուց. յորոց չորք առաւելուն քան զինքն՝ բազմապատկեալ 'ի ձեռն տասին, հարիւրոյ, հազարի, և բիւրոյ, և երեք նուազին՝ բաժանեալ 'ի ձեռն տասին, հարիւրոյ, և հազարի։

Հիմն պարունակական կամ ընդունարան չափուց է litre, լիտրն. որ է խորանարդ ձև. և արմատ նորա է տասներորդ մասն Մետրոնի. և է չափ ցամաքեղինաց և հեղանիւթոց։ Այլ սա ևս նոյնպէս բազմապատկի 'ի ձեռն չորից չափուց ըստ առաւելութեան, և բաժանի 'ի ձեռն երից ըստ նուազութեան։

Միւս ևս խորանարդ ձև ընդարձակ՝ կարգեցին 'ի տեղի չափու հաստատուն մարմնոց. որոյ արմատն է Մետրոն մի ամբողջ։ Զսա կոչեցին յունական բառիւ stère, ստերոն. և է նոյնպէս բազմապատկեալ 'ի ձեռն չորից առաւելական չափուց, և բաժանեալ 'ի ձեռն երից նուազականաց։

Իսկ վասն կշռոց հաստատեցին միւս այլ խորանարդ կամ կիւլոս. որոյ արմատն է հարիւրերորդ մասն Մետրոնի։ Այս խորանարդ մի ջրոյ՝ զոր թորեալ վերածին 'ի վերջին աստիճան խտութեան, եղև չափ տեսակարար միութեան այսր կշռոյ։ Այլ զայս միութիւն կոչեցին յունական բառիւ gramme, Գրամ կամ Գրամար։ Նոյնպէս և զսա բազմապատկեցին 'ի ձեռն չորից նորոգ կշռոց ըստ առաւելութեան, և բաժանեցին 'ի ձեռն երից ըստ նուազութեան։

Այլ այսպէս երեսուն և երկու նորոգ չափք՝ ութ

գծական, ութ մակերևութական, ութ պարունակա-կան, և ութ հաստատուն՝ ընդ այլ ութից նորոգ կըշ-ռոց, կացուցանեն զնոր դրութիւնն չափուց և կշռոց Գաղղիացւոց։

Իսկ հինգ-նոր արմատական բառք՝ Մետրոն, Արէ, Լիտրոն, Ստերէոն, և Գրամմ, ընդ այլ երեսուն և հնգից՝ որք ծագին 'ի սոցանէ, առաջի առնեն զողջոյն դրութիւնն չափուց և կշռոց ըստ արդի Գաղղիացւոց։

## ՉԱՓՔ։

Երրեակ են նորոգ չափք Գաղղիացւոց։ Ա. Գծական, զոր 'ի կիր առնուն՝ եթէ 'ի չափել զերկայնութիւն ճանապարհի, և եթէ զկտաւուց, և այլն։ Բ. Դաշ-տական կամ Մակերևութական, որով չափեն զդաշտավայրս կամ զարտորայս։ Գ. Պարունակական. որ և է կրկին. մին 'ի պէտս չափու հաստատուն մարմնոց, և միւս ևս վասն չափու յամաքեղինաց և հեղանիւթոց։

### Գծական Չափք։

| | |
|---|---|
| 1. Myriamètre, | Բիւրաչափ։ |
| 2. Kilomètre, | Հազարաչափ։ |
| 3. Hectomètre, | Հարիւրաչափ։ |
| 4. Décamètre, | Տասնաչափ։ |
| 5. Mètre, | Չափ։ |
| 6. Décimètre, | Տասներորդ-չափու։ |
| 7. Centimètre, | Հարիւրերորդ-չափու։ |
| 8. Millimètre, | Հազարերորդ-չափու։ |

Յորոց իւրաքանչիւրն տասն տասն մասամբ առաւե-լու քան զհետևորդ իւր։

Չորս հազար Բիւրաչափ, կամ՝ քառասուն միլիոն Մետրոն կացուցանէ զողջոյն շրջապատն հողագնտոյս։

Մետասան Բիւրաչափ, և իններորդ մասն միոյ Բիւ-րաչափի՝ է աստիճան մի աշխարհագրական։

### Մակերեւութական Չափք ։

1. Myriare, Բիւրակալ ։
2. Kiliare, Հազարակալ ։
3. Hectare, Հարիւրակալ ։
4. Décare, Տասնակալ ։
5. Are, Կալ ։
6. Déciare, Տասներորդ-կալոյ ։
7. Centiare, Հարիւրերորդ-կալոյ ։
8. Milliare, Հազարերորդ-կալոյ ։

## ԳԱՐՈՒՆԱԿԱԿԱՆ ՉԱՓՔ·

### Հաստատուն Մարմնոց ։

1. Myriastère, Բիւր-հաստատուն ։
2. Kilostère, Հազար-հաստատուն ։
3. Hectostère, Հարիւր-հաստատուն ։
4. Décastère, Տասն-հաստատուն ։
5. Stère, Հաստատուն ։
6. Décistère, Տասներորդ-հաստատնոյ ։
7. Centistère, Հարիւրերորդ-հաստատնոյ ։
8. Millistère, Հազարերորդ-հաստատնոյ ։

### Ցամաքեղինաց եւ Հեղանիւթոց ։

1. Myrialitre, Բիւր-Լիտրոն ։
2. Kilolitre, Հազար-Լիտրոն ։
3. Hectolitre, Հարիւր-Լիտրոն ։
4. Décalitre, Տասն-Լիտրոն ։
5. Litre, Լիտրոն ։
6. Décilitre, Տասներորդ-Լիտրոնի ։
7. Centilitre, Հարիւրերորդ-Լիտրոնի ։
8. Millilitre, Հազարերորդ-Լիտրոնի ։

## ԿՇԻՌՔ ։

1. Myriagramme, *Բիւր-գրամար ։*
2. Kilogramme, *Հազար-գրամար ։*
3. Hectogramme, *Հարիւր-գրամար ։*
4. Décagramme, *Տասն-գրամար ։*
5. Gramme, *Գրամար ։*
6. Décigramme, *Տասներորդ-գրամարի ։*
7. Centigramme, *Հարիւրերորդ-գրամարի ։*
8. Milligramme, *Հազարերորդ-գրամարի ։*

*Իւրաքանչիւր 'ի սոցանէ՝ սկսեալ յերկրորդէ մինչև ցութերորդն, հաւասար է տասներորդ մասին կշռոյն՝ որ 'ի վերոյ քան զինքն. և տասնիցս պարունակէ զկշիռն որ 'ի ներքոյ իւր ։*

*Արտաքոյ սոցա յիշի և* quintal, *Կուինթալ. որ տասն մասամբ առաւելու քան զԲիւր-գրամարն, վասն որոյ և է տասն Բիւր-գրամար ։*

### Կշիռք Դրամոց ։

*Կշիռ միոյ դահեկանի ոսկւոյ՝ որ արժէ քսան Ֆրանգ կամ Լիտր Գաղղիացւոց, է վեց գրամար, չորս տասներորդ-գրամարի, և յիսուն և երկու հարիւրերորդ միոյ տասներորդ-գրամարի ։*

*Կշիռ միոյ արծաթի դրամոյ՝ որ արժէ մի Ֆրանգ կամ Լիտր, է հինգ գրամար ։*

*Կշիռ միոյ պղնձի դրամոյ՝ որ արժէ հարիւրերորդ մի՝ է կրկին գրամար ։*

## ԱՌԱՆՁԻՆ ԴԱՍԱԿԱՐԳՈՒԹԻՒՆ

## ԿՇՌՈՑ ԵՒ ՉԱՓՈՑ

## ՀԱՆԴԵՐՁ ՏԱՃԿԱԿԱՆ ԲԱՌԻՒՔ

---

### ԿՇԻՌՔ ԵՒ ԴՐԱՄՔ.

| | |
|---|---|
| *Աշխարհագիր.* | Խարաճ, ճէզիէ, վէրկի։ |
| *Ասարիոն. տե՛ս Դանգ։* | |
| *Արգիւրոն. տե՛ս Արծաթ, Արծաթի։* | |
| *Արծաթ կամ Արծաթի.* | Կիւմիւշ։ Նօգրէ։ |
| *Բինիոն.* | Մանկըր։ |
| *Դարեհատ կամ Դարի.* | Ալթըն։ |
| *Դրամար, 6 Կերատ.* | Թաշ։ Դըրհէմ։ 6 Ջէվիզրէկէն։ |
| *Դահադրամ.* | Օն տիրհէմ։ Օնլուք։ |
| *Դահեկան, 24 Կերատ.* | Տինար։ Դուգաաաաղ։ Օսմանլը, Ֆլօրին։ 24 Ջէվիզրէկէն։ |
| *Դանգ կամ Դանկ, 2 Դարեհատ.* | Մանկըր։ Տէնկ։ 2 Ալթըն։ |
| *Դենար. տե՛ս Դահեկան։* | Տինար։ |
| *Դիդրաքմայ. տե՛ս Երկդրամեան։* | |
| *Դրամ, 80 մասն Լտեր.* | Ակճէ։ Տիրէմ։ Մէտէլին 80 քայը։ |
| *Դրամակէս.* | Եարըմ Տիրէմ, եանի՝ պէր պուչուք Տիրէմ։ |
| *Դրամակշիռ.* | Պէր Տիրէմ։ |

| | |
|---|---|
| Դրաքմէ. տե՛ս Դրամ: 18 Կերատ: | Տիրհէմ: 18 Չէքիրտէք: |
| Եղջիւր. տե՛ս Կերատ: | |
| Երեքդանգեան. | Իւչ աքճէլիք: |
| Երկդրամեան. | Իքի Տիրհէմ: Իքիլիք: |
| Զոյգք. | Թէրազի, Վէզնէ: |
| Լաղարիկոն. տե՛ս Լիտր: | |
| Լիտր, 12 Ունկի. | Ռէտիլ: Պարմաք: 96, եախօտ՝ 144 Տիրհէմ: |
| Լիտրայ. տե՛ս Լիտր: | |
| Լծակք կամ Լուծք կշռոց. | Թէրազի, Վէզնէ: |
| Լումայ. | Մանկըր: |
| Կապետոն. տե՛ս Աշխարհագիր: | |
| Կենդինար, 100 Լիտր. | Իւզլիւք: 100 Ռէտիլ: |
| Կերատ, 4 Գարեհատ. | Չէքիրտէք: Պուղտայ: 4 Արփայ: |
| Կերմոս. | Ագճէ. մանկըր. փուլ: |
| Կետ. | Տէմ. տամկիկէր: |
| Կինսոն. տե՛ս Աշխարհագիր: | |
| Կշիռ. | Գանթար: Թէրազի: Տարթըլըքի: Տիրհէմ: |
| Կորիզ. տե՛ս Կերատ: | |
| Հաշտադրամ. | Սէքիզ Տիրհէմ: Սէքիզլիք: |
| Հաւթադրամ. | Եէտի Տիրհէմ: Եէտիլիք: |
| Ղանթար. տե՛ս Քանքար: | |
| Ղեպտոն. տե՛ս Դանգ և Լումայ: | Մանկըր: |
| Ղիտր. տե՛ս Լիտր: | |
| Ման. տե՛ս Մնաս: | Մէն, Մէնն: Գանթար: |
| Մէտ, 36 Կերատ կամ Դահեկան և կէս. | Տէնկ, աղըրլըք: 36 Չէքիրտէք: |
| Մթխալ. տե՛ս Դահեկան: | Մըսգալ: |
| Մնաս, 44 Ունկի. | Մէն. Պէհրէ. Գանթար: 44 Մըսգալ: |
| Մոնադ կամ Մոնաթ. տե՛ս Տաղանդ: | |

